# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՄԱՏԹԷՈՍԻ ՈՒՌՀԱՅԵՑՒՈՅ

Matthew of Edessa
Patmutiwn Matteos... 553

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ
# ՄԱՏԹԷՈՍԻ ՈՒՌՀԱՅԵՑԻՈՅ

Ի ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ

## Տ. Տ. ԳԷՈՐԳԱՅ

ԱՐԲԱԶԱՆ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ

ՀՐԱՄԱՆԱՒ
ՍՐԲՈՅ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ՊԱՏՐԻԱՐՔ

## Տ. Տ. ԵՍԱՅԵԱՅ

ՍՐԲԱԶԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ



ԳՐԱԴԱՐԱՆ
ՌՈՒԲԷՆ ԱՊԱՃԵԱՆԻ
22
597p.

Ի ՏՊԱՐԱՆԻ
ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ԱԹՈՌՈՅ Ս. ՅԱԿՈԲԵԱՆՑ
ՅԵՐՈՒՍԱՂԷՄ

-1869-

Goal
EREN
280
1.11.99

# Ի ՅԻՇԱՏԱԿ

ՇՆՈՐՀԱԳԱՐՏ ՈԳԻՈՅ

ՆՈՒԻՐԷ

ԵՍԱՅԻ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ ԵՒ ՊԱՏՐԻԱՐՔ
ՍՐԲՈՅ ՔԱՂԱՔԻՍ

ԶԱՅՍ ՄԱՏԵԱՆ

ԱՐԺԱՆ ՅԱՒԷԺԱԿԱՆ

ՓՈԽԱՐԷՆ ԵՐԱԽՏԵԱՑՆ ԶՈՐ ՑՈՒՑԻՆ
ՑՈՒՂԵՒՈՐՈՒԹԵԱՆ ՆՈՐԻՆ

ՅԵՒՐՈՊԱ

ՅԱՄԻ ՓՐԿՉԻՆ 1863

*ԶՄԻՒՌՆԱՑԻ ՄԵԾԱՀԱՄԲԱՒ ԵՒ*
*ՀԱՐԱԶԱՏ ԵՂԲԱՐՔ*
ՍՊԱՐԴԱԼԵԱՆ

ԵՒ ԱՅԼ ԲԱՐԵՊԱՇՏ ԵՒ ՄԵԾԱՐՈՑ
ՎԱՃԱՌԱԿԱՆՔ ԲՆԱԿԵԱԼՔ
Ի ՄԱՆՉԷՍԹԷՐ

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Զմատթէի Ուռհայեցւոյ վարուցն եւ զկենաց չունիմք ինչ ստուգագոյնս ցուցարանս ասել, քանզի եւ ոչ մի յիշատակութիւնս գէթ թափառացին աւանդեցին մեզ նորին ժամանակակիցք եւ որ զկնի նորա երեւեցան 'ի պատմական ասպարիսի ազգային դպրութեանս, եւ ոչ 'ի մնացորդս մատենագրութեանց դէպ եղեւ հանել ածել մեզ 'ի լոյս զնորա կենաց ինչ հանգամանս, զծննդեան, զսննդեան եւ զվախճանին, այլովքն հանդերձ: Նա ինքն Մատթէոս անձամբ ցանձնեն խօսի յիւրական պատմութեան անուանելով զինքն Ուռհայեցի եւ վանական (յերես 134), յորմէ համարիմք զնա աներկբայ 'ի նմին քաղաքի ծնեալ, եւ անդ զվարժս ուսմանց իւրոց ստացեալ, եւ զառոյն զայս պատմական երկասիրութիւնն 'ի գրի հարկեալ. քանզի ասէ յերես 342. «Զամս բազումս քաջաջան քննութեամբ կացի, եւ արիաբար մտօք 'ի քաղաքս Միջագետաց Ուռհայ ժողովեալ գրեցաք»:

Սկիզբն առնէ պատմութեան իւրոյ յամէ 952, եւ հասուցանէ մինչեւ ցամն 1136: Զկնի մահուան իւրոյ Գրիգոր Երէց, որ համարի լինել աշակերտ նորին, շարունակէ զպատմութիւնն գրելով նովին ոճով լեզուին եւ նովին ոգւով, եւ հասուցանէ մինչեւ ցամ Տեառն 1162: Թողեալ զմանրամասն քննութիւն գրոցս եւ շուրջ զկենաց հեղինակիս ընթերցողաց 'ի յառաջաբանի Թարգմանութեան (1) նոյն գրոց, զոր հանճարաւոր քննութեամբ արար Եդուարդ Դիւլօրիէ գաղղիացի՝ յիւրում լեզուի, յորմէ առեալ փոխադրեն եւ Հ. Գարեգին 'ի պատմութեան հայերէն դպրութեանց (2), մեք ասացուք համառօտ ինչ տեղեկութիւն զգրչագիր օրինակաց մերոց, որոց հետեւեցաք յառաջիկայ տպագրութեանս:

---

(1) Տպեալ 'ի Բարի

(2) Տպեալ 'ի Վենե

կրկին օրինակք էին առ ձեռնպատրաստ 'ի սկսանելն ցհրատարակութիւն գրոցս. առաջինն 1107 համարաւ, բոլորագիր հին հաստատակ թղթեայ եւ առանց թուականի, երկրորդն 1051 համարաւ, նօտրագիր, անթուական եւ նոյնատեսակ թղթոյ, որոց գրչութիւն ոչ անցանէ զԺԷ դարն։ Երկոքին եւս ունին 'ի սկիզբն զպատմութիւն Սրբոյն Ներսեսի Պարթեւի արարեալ 'ի Մեսրոպայ Երիցու է. եւ ընթիւ գլխակարգութեանցն խառնեալ կամ ցերկրորդին ընդառաջնոյն կցեալ։ Դամբանական ճառն Քարեաց վարդապետի 'ի միում եւեթ նօտրագիր օրինակին գտանէր, որ չէր ազատ 'ի բազմապատիկ վրիպակաց իմաստից եւ բառից, որպէս էին եւ ամբողջ օրինակքն երկոքին, վասն որոյ 'ի տեղիս տեղիս զխթագոյն եւ զդժուարիմաց բանս եւ զիմաստս ուղղեցաք 'ի վերայ գաղղիական թարգմանութեան, ոչ զանց առնելով եւ առանձին 'ի կարգի ծանօթութեանցն նշանակել զընթերսն, եւ ուրեք 'ի փակագծի ամփոփեցաք զբառսն որ ինքնին պահանջէին 'ի չաւասարութիւն մասցն։ Երրորդ օրինակ մի եւս նօտրագիր եւ հաստատակ թղթեայ եւ անզգաստ գրչութեամբ գաղափարեալ, եհաս 'ի ձեռս մեր 'ի յԱմթայ 'ի սկիզբն տպագրութեան երրորդ մասին գրոցս, յորում զաւանդք գտանէր զճառսն Քարեաց վարդապետի առ 'ի համեմատել ընդ միւսսն, եւ ոչ միայն պակասէր այն ճառ, այլ եւ զելս մասն գրոցս զանց արարեալ էին ընդօրինակողք 'ի ՃԾԲ գլխոյ եւ այլուր. [illegible] յաւելեալ օրինակին եւս կամ խառն եւ կամ [illegible] մասամբ պակասակին վերնագիրք գլխոցն, վասն որոյ եւ մեք խառն զանց արարաք զնէ, չահամարելով չնչին զթերութիւն նոցին առաւանցն Յանկիւ։

Այսչափ ինչ համառօտ տեղեկութիւն արարեալ զանձնէ եւ զգրոց հեղինակին, բաւական համարիմք առ այժմ տալ ծանուցմանսդ եւ պատմականդ ազգայնոցս զառաջին հրատարակութիւն պատմագրութեանս, թողլով հմտագոյն գրչագրաց չեւս առ յապայս ընթերցութիւն այսր եւ զայլոց գրոց տոհմային պատմչաց։

մօրեխ յայնմ գաւառէ որպէս զաւազ ծովու, և ապականեաց զերկիր։ Եւ սաստկանայր սովն առաւել քան զառաւելն. և զայրացեալ բազմաց, և գազանաբար անողորմ յարձակեալ զմիմեանս ուտէին, և իշխանքն և մեծամեծքն ընդօք և մրգօք կերակրէին. և եղեւ անցումն անասնոցն. և այլ ոչ շինեցան մինչեւ ցայսօր ժամանակի։

Բ. Դարձեալ 'ի թուականութեանս Հայոց 'ի ՆԷ (958-959) ամին զօրաժողով լինէր ազգն Արաբկաց յԱլեպա 'ի յամենայն Եգիպտացւոց աշխարհէն, ահագին բազմութեամբ անցեալ ընդ մեծ գետն Եփրատ, և եկեալ 'ի վերայ ամուր քաղաքին որ կոչի Սամուսատ։ Եւ ելանէր 'ի պատերազմ զօրավարն Հոռոմոց (2), որում անուն էին ասէին Պառակամանոս (3), այր զօրաւոր և քաջ. և 'ի դուռն քաղաքին բախէին զմիմեանս, և յաւուրն յայնմիկ հարին Տաճկունք զզօրն Հոռոմոց, և արարին կոտորած մեծ առ դրան քաղաքին. և յետ աւուրց ինչ առաւ քաղաքն Սամուսատ, որ է մերձ 'ի քաղաքն Ուռհայ։

Գ. Իսկ 'ի թուականութեանս ազգիս Հայոց 'ի ՆԸ (959-960) ամին, զօրաժողով արարեալ Թագաւորն Հոռոմոց Արմանոսն (4), և գայ 'ի վերայ Տաճկաց. և անցեալ ընդ Հա-

մատուցած ծովն Միլկիանս, և նաւովք անցանէր ’ի մեծ կղզին որ ասի Կիպրոս. և աստիկ պատերազմաւ առեալ զնա ’ի զօրացն Եգիպտոսի. վասն զի զամենայն կղզիսն և զամենայն ծովեզերեայս աշխարհն Ասորւոց ազգն ունէին զամս չորս հարիւր։ Յայսմ ամի կոտորեցին զօրքն Հայոց զՀամտունին՝ զօրապետն Տաճկաց։

Դ. Յամի և ’ի ժամանակութեանս Հայոց ՆԺ (961—962) զՆիկեփորոս և զՀալալէառ Սրապիկն (5) ’ի Թագաւորէն. Մերայ, և անթիւ արար զկոտորածն ’ի քրիստոնէիցն քան խուժանց ազգին։

Ե. Յայսմ ամի զօրաժողով արար զօրապետն (6) Հայոց զմարզպետական դունդն քառասուն և հինգ հազար արանց քաջանց զօրք (7) ’ի յարքունական գնդէն. և ժողովեցան ամենայն իշխանքն աշխարհաց տանն Հայոց առ սուրբ հայրապետն Անանիա, վասն զի տացեն զօծումն թագաւորութեան Աշոտ Պռազկայ (8) ըստ առաւելին օծմանն հարց իւրոց. վասն զի չեւ ես էր նստեալ յաթոռ թագաւորութեան տանն Հայոց, և ոչ էր եդեալ թագ ’ի վերայ գլխոյ իւրոյ։

Զ. Հարկաւորեալ կոչեցին զամենադավեհին զանէր Յովհաննէս կաթուղիկոսն Ս

ղուանից աշխարհին, և քառասուն եպիսկո-
պոսունք ընդ նմա. և մեծաշուք իշխանու-
թեամբ կոչեցին զՓիլիպպոս Թագաւորն Ա-
ղուանից՝ զայր աստուածային և զսուրբ, զոր-
դին Կոշապղգակեայ որդւոյ Աշոտանայ, որ է-
ին Թագաւորք Աղուանից աշխարհաց։ Եւ
յայնմ աւուր եղեւ ժողով ահագին մեծ 'ի
քաղաքն Անի, որ եղեւ յայժմու ժամանա-
կիս Թագաւորանիստ քաղաք Հայոց։ Եւ
յայնմ ամի օծաւ արքայ Աշոտ 'ի յօծումն
հարց իւրոց, և նստաւ 'ի գահոյս առաջին
Թագաւորացն Հայոց ազգին. և լինէր ու-
րախութիւն մեծ ամենայն ազգին Հայոց.
վասն զի տեսին նորոգեալ զաթոռ Թագա-
ւորութեան աշխարհին Հայոց ըստ առաջին
հարցն։ Եւս առաւել ուրախ լինէին յա-
ղագս քաջութեանն Գագկայ, վասն զի էր
կորովի և այր պատերազմող։ Եւ յայնմ ա-
ւուր լինէր հանդէս զօրացն նորա հարիւր
հազարաց վառելոց ընտիր ընտիր արանց 'ի
մարտ պատերազմի անուանեաց և քաջ կո-
րովեաց. վասն զի որպէս զկորիւնս առիւծուց,
կամ որպէս զձագս արծուեաց յուզէին զօր
պատերազմին։ Եւ լուեալ զայս ամենայն
շուրջակայք ամենայն Թագաւորք ազգաց,
Եգիպտացւոց և Յունաց, Բաբելացւոց և Պար-

սից, տուրս և նէրս հանդերձ պատուական ընծայիւք յուղարկէին 'ի փառաւորութիւն Հայոց Թագաւորութեանն: Եւ յայնժամ զԹագաւորն Աղուանից զՓիլիպպէ և զկաթողիկոսն զտէր Յովհաննէս, զեպիսկոպոսունս և զզօրսն որ եկին զհետ Թագաւորին և Հայրապետին, յուղարկեցին մեծամեծ տրօք և սիրով 'ի յաշխարհն Աղուանից, որ էր աթոռ սուրբ առաքելոյն Եղիշէի, որք էին նախահայրեաց առաջինք Հայոց մեծաց:

Իսկ զկնի անցանելոյ երկու ամին՝ մեռաւ Թագաւորն Հոռոմոց Ռոմանոս, և մնացեալ լինէր իւր երկու որդի, Վասիլ և Կոստանդին, որդիքն Ռոմանոսի ծերոյն: Եւ եղեւ յամի ՆԺԲ (963—964) Թագաւորեաց Նիկեփոր 'ի վերայ տանն Յունաց. և էր այր քաջ սուրբ և աստուածասէր, լցեալ ամենայն առաքինութեամբ և արդարութեամբ, յաղթող և քաջ 'ի վերայ ամենայն պատերազմաց, ողորմած 'ի վերայ ամենայն հաւատացելոցն Քրիստոսի, այցելու այրեաց և գերեաց, դարմանիչ որբոց և տնանկաց: Զօրաժողով արարեալ անհամարին բազմութեամբ, և անցեալ ընդ համատարած ծովն Ովկիանոս և գայր 'ի վերայ Տաճկաց, մռնչեալ որպէս առիւծ սաստիկ պատերազմաւ. և խա-

զայր յաշխարհն Կիլիկեցւոց, և մեծաւ յաղթութեամբ առնու զհռչակաւորն ըզ Տարսիս (Տարսօն) քաղաք։ Եւ անցեալ էառ զՄամեստ և զՄոփս և զանկանաւորն զԱնաւարզա. և ահագին և սաստիկ կատարած էած 'ի վերայ ազգին Տաճկաց մինչև 'ի դուռըն Անտիոքայ քաղաքին։ Եւ թագաւորն դարձաւ Նիկեփոր մեծաւ յաղթութեամբ, անթիւ գերութեամբ և բազում աւարաւ. և գնայ մտանէ 'ի թագաւորաբնակ քաղաքն 'ի Կոստանդինուպօլիս, և զօրքին Մամեստոյն զԱսափըն և զԿոստանդին առ իւր պահէ 'ի պալատան տանն մեծաւ պատուով և փառաւորութեամբ։

Է. Դարձեալ 'ի թուականութեանն՝ ոմն մահապարտ և արգելական 'ի կղզւոջն կայր, որում անունն կոչէին Չմշկիկ. գաղտ յուղարկեաց առ նա անօրէն և պիղծ թագուհին, և հրամանաւ թագաւորին եհան զնա 'ի կղզւոյն և եբեր 'ի Կոստանդինուպօլիս առանց գիտելոյ թագաւորին. և 'ի ծածուկ արար ընդ նմա դաշինս սպանանել զՆիկեփոր թագաւորն, և խոստացաւ լինել նմա կին, և նստուցանել զնա յաթոռ թագաւորութեանն։ Եւ հաւանեցաւ առնել զհրամանս անօրէն թագուհւոյն։ Եւ Նիկե-

փոր սուրբ Թագաւորին նստեալ կայր 'ի գահոյսն իւր 'ի ժամ երեկոյին, և վառեալ մոմեղինօք, և ընթեռնոյր զաստուածային կտակարանն: Եւ եկեալ Թագուհին շա-ղապատէր զԹագաւորաւն, և զԹուրն որ կայր մօտ առ իւր, մխակալս արարեալ ընդդագաղյնս. և ելեալ գնաց առ չարա-խորհուրդն իւր. և ձեռօք իւրովք առնոյր զԹուր մահաբերին 'ի նա' հեղլով զարիւն արդարոյն: Եւ եկեալ Զմշկին և ծածկա-բար 'ի ներքս փախեաց 'ի սենեակ Թագաւո-րին: Եւ տեսեալ զնա Թագաւորին' ասէր ընդ նմա. « Ո՞ւն կատարեցե՞լ, զի՞նչ յուզես աստ »: Եւ քաջասպէս յարուցեալ Թագա-ւորն յուղէր զԹուրն, և տեսեալ սատակա-պէս ընդդեալ. և յայն' Զմշկինն յարձակե-ցաւ 'ի վերայ Թագաւորին, և անխնայ զա-ղանաբար խողխողէր զամենաբարի արքայն. և հերձեալ զնա յերկս մասունս, և ծած-կեալ մնէր 'ի մէջ արեան իւր. աւանդէր զհոգին 'ի Քրիստոս չարաչար և դառն մա-հուամբ. Եւ անօրէնքն զի այծէս զգեցեալ էր Թագաւորին մերկօյց 'ի վերայ մարմնոյն ծածկեալ ծիրանեօքն. և արիւնն սփռեալ ցայթէր զերեսօք սպանողացն զառն Նշան-ծոյ. և զմարմին նորա Թագեցին մօտ առ

տուրք թագաւորաց յարժանաւոր գերերկնա-
նի (9)։ Այս նստաւ յաթոռն թագաւորու-
թեան Յունաց անօրէն Զմշկիկն. ամբարտա-
էառ զԿոստանդնուպօլիս, և զամենայն աշխ-
մեծս աշխարհին Հոռոմոց առաջ ընդ իշխա-
նութեամբն իւրով. և զորդիսն Ռոմանոսի
թագաւորին փախոյց 'ի յանօրէն թագուհ-
ւոյն, 'ի Մասակաւան 'ի Հանձիթ գաւա-
ռին տարան զՎասիլն և զԿոստանդին առ
Ապլամիկն մեծ Մխիթարայ մայրն, վասն զի
մի դեղ մահու տացեն նոցա և սպանանի-
ցեն զնոսա։ Այս յաղագս անիրաւ մահուա-
նըս այս կայր 'ի մեծի տրամութեան Թա-
գաւորն Զմշկիկ անհանգիստ վիրաւորեալ։

Ը. Իսկ 'ի վերանալ թուականութեանս
Հայոց 'ի ամ ՆԻ (971—972) մեռանէր Հայոց
արքայն Գագիկ խաղաղութեամբ մահուամբ։
Այս եղեւ հակառակութիւն և աղմուկ մեծ
'ի մէջ երկու որդւոց թագաւորին Գագկայ՝
ընդ Յովհաննէս և ընդ Աշոտ։ Յովհաննէս
աւագ էր քան զԱշոտ, և իմաստուն և հան-
ճարեղ էր յոյժ, բայց մարմնովն թանգ էր.
Իսկ Աշոտ կտրիճ երեւէր՝ այր քաջ և զօրա-
... յաղթող 'ի պատերազմու-
... եաց Յովհաննէս զաթոռ
... Հայոց. և Աշոտ չէր

՚ի պատերազմ ընդ Աշոտոյ. քառասուն հազար հետեւակաց և քսան հազար ձիաւորաց։ Եւ յայնժամ՝ մի ոմն իշխան ՚ի զօրաց Թագաւորին Վրաց՝ ՚ի դեսպանութիւն եկեալ էր առ Յովհաննէս. վասն զի մայրն Յովհաննիսի և Աշոտոյ դուստր էր Վրաց Թագաւորին Գուրգէ՝ Կուրապաղատին Թագուհին. և ասէր իշխանն Վրաց ընդ Թագաւորին Յովհաննէս. «Ով տէր Յովհաննէս, հրամայեա՝ զի ցուցանիցեն ինձ միայն զԱշոտ, և ես ձերբակալ արարից զնա, և կապանօք բերից զնա առաջի քո»։ Վասն զի այրն այն էր քաջ և անպարտելի ՚ի պատերազմ. և ասէր Յովհաննէս Թագաւորն ցայրըն այն. «Նա այր հզօր է Աշոտ, դու զիա՞րդ կարես ածել առաջի իմ»։ Եւ ասէր իշխանն Վրացի. «Ձիովն առից զնա կենդանի»։ Եւ ասէ ցնա Յովհաննէս եթէ՝ «Զկորիւն առիւծու մի արհամարհեսցես՝ մինչեւ տեսանիցես»։ Եւ յորժամ ճակատեցան ընդ միմեանս, և իշխանն որ յԱփխազաց՝ որպէս զարծուի ընթացեալ ՚ի ձայն բարձր և յուզէր զԱշոտ, և ասէր. «Ո՛վ Աշոտ, յառաջ եկեսցես»։ Եւ լուեալ Աշոտ և եղեւ զայրացեալ իբրեւ զինծ և յուզել զմիմեանս ընթանային առ իրեարս. և իշխանն Վը

բաց զնիզակին եգեալ (10) Աշոտոյ. իսկ Աշոտ խորբեւ զկայծակն 'ի ներքս անցանէր և հարկանէր զնա պողովատովն 'ի վերայ տաղարթին (11). և զերկաթապատ մարմինն պատառռեաց մինչ ցոտն, և հանդերձ միջօքն յերկիր ընկենոյր։ Եւ եղեւ յաւուր յայնմիկ սաստիկ պատերազմ. և դարձուցին զքաղաքն 'ի փախուստ, մինչեւ փախուցեալքն ոչ ժամանէին մտանել 'ի քաղաքն, 'ի յԱխուրան գետոյն անկանէին. և դարձաւ Աշոտ մեծաւ յաղթութեամբ։ Եւ յետ աւուրց ինչ խորհեցան Բագրատունիքն և Պալհաւունիքն և այլ ամենայն ազատապետունք զօրացն հայկազանց՝ առնել խաղաղութիւն 'ի մէջ Յովհաննիսի և Աշոտոյ։ Եւ յայնժամ սուրբ հայրապետն Պետրոս և իշխանքն եկին առ Աշոտ, և մեծաւ երդմամբ նստուցին զԱշոտ դրուց աշխարհին՝ թագաւոր ամենայն տանն Հայոց (12), եւ Յովհաննէս նստցի թագաւոր 'ի քաղաքն Անի. և եթէ մեռանի Յովհաննէս, Աշոտ լինի թագաւոր ամենայն տանն Հայոց։ Եւ յայնժամ եղեւ խաղաղութիւն ամենայն աշխարհին Հայոց։

Ժ. Յայնմ ժամանակի նստաւ Աբաս 'ի Կարս թագաւորական իշխանութեամբ՝ հրամանաւ ազգապետին իւրոյ Գագկայ Հայոց

արքային, և Գուրգէն՝ յԱղուանից աշխարհէն. վասն զի յազգէ Հայոց թագաւորացն էին, և կային հնազանդութեամբ տանն Հայոց Շիրակայ: Իսկ Աշոտ թագաւորն ոչ ժամանեաց մտանել ՚ի քաղաքն Անի մինչև ցօր մահուանն իւրոյ:

Իսկ յայսմ աւուրս Ապիրատ անուն, որ էր մեծ իշխան Հայոց՝ որդի Հասանայ. սա վասըն Աշոտոյ միաբանութեանն զոր ունէր յառաջագոյն, երկուցեալ ՚ի թագաւորէն Յովհաննիսէ, ապստամբեալ փախեաւ ՚ի նմանէ և գնաց ՚ի Դուին քաղաք առ Աբուսուար Պարսից զօրավարն, և երկոտասան հազար ձիաւոր ընդ նմա. եւ Աբուսուար մեծարեալ զնա բազում աւուրս: Յայնժամ մտանեան առ Աբուսուար չարոք խօսիւք և ասեն, եթէ «Ապիրատ այր յաղթող և զօրաւոր և զօրօք բազմօք եկեալ է առ քեզ, կորուստ գործէ քեզ և ամենայն տանդ Տաճկաց»: Յայնժամ ոխս առեալ ամիրային ՚ի սրտին իւր, և գաղտ ՚ի յայլ զօրացն ՚ի զրոյց սիրոյ կոչեաց զԱպիրատն, և ՚ի ծածուկ կորոյս զդանակիւ այրն քաջ և հզօր և անուանի ՚ի մէջ ամենայն աշխարհէն Հայոց:

Իսկ իշխան ոմն Սարի անուն, որ էր զօրավար մեծ իշխանին Ապիրատին, առեալ

զկինն և զորդիս նորա և զհեծելագունդ զօրսն, և գնաց 'ի քաղաքն Նիփ. և Թագաւորն Յովհաննէս կարի յոյժ ապաշաւէր զանկման մահն Սպիտակին Հայոց իշխանին։ Եւ որդւոցն նորա Սարջահայայ և Վասակայ, Աբրէ, և ամենայն զօրացն տայր Թագաւորն Հայոց գաւառն և զիշխանութիւնն (13)։

ԺԱ. Յայսմ ժամանակի զօրաժողով առարեալ Թագաւորն Գելումեաց. և անկարծս գայր հասանէր 'ի Սիգս գաւառին Հայոց՝ մերձ 'ի յամուրն Չնի։ Եւ Վասակ սպարապետն Հայոց սիրեցեալ որդւոյն խորով Գրիգորի և այլ փառաւոր ազատօքն նստեալ կայր 'ի մեծ ուրախութեան. և հայեցաւ Վասակ 'ի յառապարս Ճանապարհին, և ահա գայր մի 'ի շտապս ընդ հետեւակ գնացս Ճանապարհին. և տեսեալ Վասակայ ասէր. «Դուժաբեր է այրն այն»։ Եւ հասանէր այրն 'ի դուռն բերդին Չնոյ, ձայն աղաղակի բարձեալ՝ ասէր. «Գերեցաւ ամենայն գաւառն Սգաց»։ Յայնժամ՝ որպէս զառիւծ գոչեաց քաջ զօրավարն Վասակ. և յարուցեալ զգենոյր զգեստ երկաթապատ, և զկնի նորա եւթն ազատ, և ըստ պատահելոյ ժամուն այլ հեծելազօրս զկնի նոցա։ Եւ կազմեցան ազատքն զկնի

Սատաղայ. և սրածայր քաջ և աւերէր անուանն Փիլիպպէ և Գորգ Զօրտուանէն և այլք ոմանք. և այս այրք քաջ.ք և յաղթող.ք 'ի պատերազմունս, և ոչ կարաց Վասակ համբերել սրոյն, մինչև զօրքն ժողովեցան. վասն զի կային ընդ ձեռամբ նորա արս իբրև հինգ հազար. և առ հպարտութեան զօրութեան իւր, և հինգ հարիւր արամբ յառաջեալ որպէս զառիւծ 'ի Նգայց գաւառին, և յանձն արարեալ զոտն և զամուրն Բջնի որդւոյ իւրում Գրիգորի։ Եւ համանէր Վասակ 'ի վանք մի. հաղորդեցաւ խորքն և ամենայն զօրքն և խոստովանեցան զմեղս իւրեանց բարի խոստովանութեամբ որ 'ի Քրիստոս Յիսուս։ Եւ 'ի Ճանապարհին համդիպեալ 'ի գիւղ մի, և տեսին զի այլազգիքն առ հասարակ կոտորեալ էին զամենայն գիւղն, և զօրք այլազգեացն պատեալ էին շուրջ զեկեղեցեաւն. և զհաւատացեալսն որ 'ի ներսն էր, կային և կոտորեցին անխնայ սրով։ Եւ տեսեալ զայն քաջին Վասակայ, ձայնիւ գոչեաց որպէս զառիւծ, և յարձակեցաւ 'ի վերայ զօրաց այլազգեացն. և կոտորեցին զնոսա արս երեք հարիւր, և մնացեալքն փախստականք լեալ անկանէին 'ի զօրսն այլազգեացն։ Եւ շարժեալ գային

Վա.

չին Նաւասարդի : Յայնժամ հասանէր զա-զանաբար այրն այն, առ մի եղեալ քաջին Վասակայ, որպէս թէ տացէ զնա 'ի ծայր գե-ղարդեանն իւրոյ. և 'ի շտապս լեալ Վասա-կին՝ երասգս (14) զինեաց, և պողովառ Թորոսին 'ի վերայ սաղաւարտին զահեաց, և երկուս հերձեաց զխափշիկն քաջ, որ և մեռանէր մարմնոյն յերկիր անկանէր. և հաստատեցան 'ի պատերազմին և անհնարին գործոյն : Եւ 'ի տեսանելն մարտին և 'ի բազմանալ խռո-ւած ուսերացն՝ պակասեաց քաջն Եփիան. փախեան զի անհնարին պատերազմին 'ի մի-մեանց մոլորեալ եղեն զաւք ազատացն, որ և զերերուց մահ ոչ կարացին տեսանել :

ԺԲ. Յայնժամ քաջն Վասակ դարձա-միացեալ, և գնայր խարբե զաւրուծ զայրա-ցեալ՝ ընդ մէջ զօրացն այլազգեաց անցա-նէր և էր ձանձրացեալ 'ի մեծի պատե-րազմին, և դիմեաց ելանէր 'ի լեառն որ կո-չէր Սերկեւելոյ, և 'ի բազում հալածանաց պատերազմին նստեալ ընդ հովանեաւ քա-րանց, և տեսեալ զնա շինականացն որք փախուցեալ էին : Յայնժամ մի ոմն նմանեալ Կայենի ապաշաւգին, եկեալ դատանէր զնա զի նիքէր 'ի վզսայնն ուժգին. քակեաց զնա, և ընկէց զնա ընդ բարձրու քարին. և այս-

այնս կատարեցաւ քաջին Վասակ պահլաւունին։

ԺԳ. Դարձեալ այս ինչ գործեցաւ ՚ի Հայոց թուականութեանն՝ յամի ՆԻԱ (972—973). վասն զի զօրավարն Հոռոմոցաց Դեմեստիկոսն(15), որում անուն Միլեհ ասէին, եկեալ բազում զօրօք գայր ՚ի վերայ Տաճկաց, և ՚ի տեղիս յաղթեաց նոցա(16) օգնականութեամբն Քրիստոսի. և գայր հասանէր ՚ի վերայ քաղաքին Մծբինու. և բազում չարչարանօք նեղեալ զքաղաքն առգելեալ ՚ի հացէ և ՚ի ջրոյ, և այնու հաւանեցուցանէր զքաղաքն Մծբինի, և յարուցեալ գնայր մեծաւ ուրախութեամբ խնդանէր ՚ի վերայ Տիգրանակերտ քաղաքին, որ անուանեալ կոչի Ամիթ, ՚ի վերայ Դգլաթ գետոյ։ Եւ զօրք Տաճկաց ելեալ ՚ի պատերազմ ընդ զօրուն Հոռոմոց, և արարին սաստիկ պատերազմ մերձ առ դուրս քաղաքին Ամթայ, և զօրքն Տաճկաց դարձան ՚ի փախուստ առաջի զօրացն Հոռոմոց, և բազում կոտորածս եղեալ ՚ի նոցանէ մինչև ՚ի քաղաքն. և զօրքն Հոռոմոց բանակեցան առ ափն գետոյն, ՚ի տեղին որ կոչի Աւաղ, մերձ ՚ի քաղաքն երկու նետընկէց։ Եւ յետ սակաւ աւուրց աստուածատուր բարկու-

,թիւնն շարժեցաւ յերկնից, և ահա եղանէր հողմն ուժգնակի, մինչև ՚ի սաստկութենէ զաշխարհն շարժէր երկիրն, և ՚ի բռնութենէ հողմոյն հող երկրին ՚ի վեր հանեալ տարածէր ՚ի վերայ զօրաց քրիստոնէիցն. և թանձրացեալ զփոշին ծածկէր զմարդ և զանասունս, և զամենայն կարասի նոցա ՚ի գետ անդըր ձիւր, և ՚ի փոշւոյն խաւարեալ կուրանային մարդ և անասուն, և յաստուածասաստ բարկութենէ փոշւոյն և փակեալ մըթացան ամենայն աչք ՚ի լուսոյ. և եղեն պաշարեալ ամենայն զօրքն Հոռոմոց, և զեր իւրաքն ոչ կարէին գտանել։ Եւ յայնժամ զօրքն պաշարեալ տեսին զբարկութեան կատարած ՚ի վերայ քրիստոնէից, և գիտացեալ զի Աստուած պատերազմի ընդ նոսա, և առհասարակ բախեցան պաշարեալ զօրք ՚ի վերայ քրիստոնէից զօրացն, և յանխնայ սրախողխող կոտորեցին զնոսա անողորմ, որ էին արք իբրև յիսուն հազար, և սակաւք էին որ կարացին փախչել յերեսաց սրոյն. մեծ մասն զօրացն կոտորեցան։ Ու զօրավարն զԻեմալիկոսն և զայլ մեծամեծ իշխանսն Հոռոմոց ձերբակալ արարին և ածին ՚ի քաղաքըն Սմիթ, քառասուն իշխանք մեծամեծք և անուանիք ընդ նոսա. Եւ յորժամ տեսին

իշխանքն այլազգեացն զկորուստ զօրացն Հռոմայ, զարհուրեալ երկեան յոյժ. և ասացին՝ եթէ «Ո՜վ այս ամենայն արիւնս զոր հեղաք 'ի սահմանէն Հռոմայ, մեզ ոչ մնայ. գան Հռոմայեցիքն և անցուցանեն զատուես Տածկաց: Եկայք արասցուք սէրս և միաբանութիւնս ընդ զօրապետսն և ընդ իշխանսն Հռոմայ, և առցուք երդմունս 'ի նոցանէ և արձակեսցուք զնոսա խաղաղութեամբ յաշխարհն իւրեանց»: Եւ 'ի խորհելն նոցա զայս՝ եհաս համբաւ ապանմանն Նիկեփորայ Թագաւորին Հռոմայ: Եւ յայնժամ իշխանք այլազգեացն յուղարկեցին զիշխանս քրիստոնէից զքառասունսն առ Խալիֆայն 'ի Պաղտատ քաղաք, և ամենեքեան անդ մեռան: Եւ գրեաց Դեմեստիկոսն 'ի Կոստանդինուպօլիս Թուղթ, և գրեաց 'ի նա անէծս ցաւագինս, և ասէր այսպէս, եթէ «Մեք ոչ էաք արժանի ըստ օրինի քրիստոնէից մտանել 'ի յօրհնեալ հող գերեզմանի; այլ եղաք ժառանգորդս անիծեալ հողոյ և չարագործաց գերեզմանի. և ահա մեք զձեզ ոչ գիտեմք, որ նստաւ յաթոռ սուրբ Թագաւորութեանդ Հռոմայ. և զմահս մեր և զարիւն զոր հեղաք 'ի դուռն Ամիթ քաղաքին, և զոտար մահս մեր 'ի գլխոյ քո խնդ-

գրեսցէ Քրիստոս Աստուած մեր 'ի յաւուր դատաստանին, եթէ ոչ արասցես վրէժխնդրութիւնս 'ի քաղաքէն Սմթայոյ։ Եւ իբրև հասանէր թուղթս այս առ Թագաւոր Զըմշկին 'ի Կոստանդնուպօլիս. և եղև յորժամ լուաւ զայս Թագաւորն, շարժեցաւ լինէր մեծաւ բարկութեամբ, և լի խոկ եղեւ ամենայն արտմութեամբ. և 'ի նոյն ամին զօրաժողով արար առ հասարակ զամենայն աշխարհն, յարեւմտից գայր հասանէր զաւրացեալ և որպէս հուր բորբոքեալ լինէր, և յարձակեցաւ 'ի վերայ Տաճկաց, և կամեցաւ զմնուռն յաշխարհն Հայոց առնել։

ԺԳ. Յայնժամ ամենայն Թագաւորազունքն Հայոց, ազատքն և իշխանք մեծամեծք աշխարհաց տանն արեւելից ժողով արարին առ Թագաւորն Հայոց Աշոտ Բագրատունի. Թագաւորն Կարսանին Մուշեղ, և Թագաւորն Աղուանից Գուրգէն, Աբաս Կարուց տէրն, և Սենեքերիմ Վասպուրական տէրն, և Գուրգէն Անձեւացեաց տէրն. և բովանդակ ամենայն տունն Սասանու. և բանակ հարեալ 'ի Հարքայ գաւառին առք իբրև ութսուն հազար։ Եւ եկեալ հրեշտակ Թագաւորին Հոռոմոց առ նոսա, և տեսին պատրաստական զամենայն տունն Հայոց

տանէին Կիւռժան, դարձաւ 'ի պատերազմ 'ի վերայ Տաճկաց, և մեծաւ յաղթութեամբ և սրտմտութեամբ, կոտորածով և արեամբ ելից զամենայն երկիրն. և զբազում քաղաքս և զամուր բերդս 'ի հիմանց քարատակս արար՝ երեք հարիւր, մինչև 'ի սահմանս Պաղտատ քաղաքին: Բայց զՈւռհա ոչ արար աւեր յաղագս կրօնաւորացն որ բնակեալ էին 'ի լերինն և յամենայն սահմանս նորա՝ իբրև երկոտասան հազար. և դայր հասանէր 'ի վերայ Ամթայ քաղաքին բազում սրտմտութեամբ: Իսկ տէրն Ամթայ քաղաքին կին էր, որ էր քոյր Համտնոյ ամիրային Տաճկաց: Եւ յառաջ ժամանակաց Թագաւորն խոստնակեալ էր ընդ նմա մեղօք, և վասն այնորիկ չարար հնարս առնելոյ զքաղաքն Ամիթ. Եւ ելեալ կնոջն 'ի վերայ պարսպին քաղաքին, ասէ ցԹագաւորն. «Ի վերայ կնոջն դաս 'ի պատերազմ, և չհամարիս զայդ քեզ նախատինս: Եւ ասէր Թագաւորն. «Երդուեալ անիմ առ իս քակել զպարիսպս քաղաքիդ. և ազատեսցին մարդիկդ»: Ասէր տիկինն քաղաքին. «Եղ քակեա զկանդուարսդ՝ (18) որ կայ 'ի վերայ Ամթայ դրանց, և այնու կատարեսցես զերդումնքդ»: Եւ արար Թագաւորն այնպէս. և առ բազում գանձս ոսկւոյ

ծնութիւնն Քրիստոսի Աստուծոյ մերոյ. և գիտասցես թէ որչափ օգնեացէ Աստուած քրիստոնէից յամենայն ժամանակի քան յետ հարկաւոր առնելոյ թագաւորութեանս մերոյ զամենայն արեւելս Պարսից։ Եւ կամ թէ որպէս հանաք զնշխարս որբոյ հայրապետին Յակոբայ ՚ի Մծբնայ քաղաքէն Տաճկաց. և առաք ՚ի Տաճկաց զհարկն մեր, և զգերութիւնն հանաք ՚ի նոցանէն, և երեալ գնացաք։ Եւ վասն ամբարտաւանութեանն և հպարտութեանն Ամիր-էլ-մոմնոյ իշխանին Եգիպտացւոց, զոր Մախոր Արապին (19) կոչեն, որ և բազում զօրօք եկեալ ՚ի վերայ մեր, և առ ժամ մի ՚ի փախստի արկին զօրսն մեր. և այս յաղթեցաք նոցա մեծաւ զօրութեամբ և օգնականութեամբն Աստուծոյ, և անօթեալք դարձան որպէս զայլ թշնամիսն։ Եւ յայնժամ ՚ի բուռն (20) առաք զնեղբերին կողմն աշխարհին նոցա, և ՚ի սուր սուսերի մաշեցաք զզաւառս բազումս, և փութապէս դարձաք ՚ի գունդս, և արարաք ձմերոց, և զամենայն հեծելազօրսն մեր հրովեցաք այդրիլի ամսեանն ՚ի մուտն. զինեալ խաղացաք ՚ի յաշխարհն Փիւնիկեցւոց և Պաղեստինացւոց և Քանանացւոց, զառնէաք զմիրն Ակրիկեցիքն որք եկեալ էին ՚ի գաւառն Ճա-

մայ։ Իսկ եկեալ ամենայն զօրօք մերովք դե-
մեալ խաղաղով գնացաք 'ի Անտիոքայ, և
անցաք ընդ ամենայն գաւառն մերոյ թա-
գաւորութեանս. և հնազանդ արարաք մե-
ծաւ հարկաւորութեամբ և անհամար գե-
րութեամբ և հասանէաք մինչև 'ի Հէմս(21)
քաղաք. և եկեալ ընդունեցան զմեզ բար-
ւոք որք մեր հարկատուքն էին գաւառա-
կանքն. և հասանէաք մինչև 'ի Պաաղպէքն,
որ անուանեալ կոչի Իլուպօլիս, որ է Արեգ
քաղաք, երևելի և ահաւոր պատուարեալ
մեծ յոյժ և հարուստ։ Իսկ եկին պատերազ-
մաւ ընդ առաջ մեր, և բազմութիւն զօ-
րաց մերոց հալածական արարին զնոսա, և 'ի
բերան սրոյ կոտորեցին։ Իսկ յետ սակաւ ա-
ւուրց պաշարեցաք զԱրեգ քաղաքն. և բա-
զում գերութիւնս, մանկունս և աղջկունս
առին զօրքն մեր, և գանձս ոսկւոյ և ար-
ծաթոյ և բազում ապրանս առին. և ահա
անտի յառաջացաք 'ի մեծ քաղաքն Դամաս-
կոս, կամեցաք և զայն պաշարել։ Իսկ 'ի քա-
ղաքն կայր ամիր Ճարտար և այր իմաստուն,
առաքեաց առ թագաւորութիւնս մեր, և
բազում ընծայիւք աղաչեաց զմեզ չանկա-
նել 'ի գերութիւն և ոչ գնալ 'ի ծառայու-
թիւն, որպէս Պաաղպէքայ(22) զբնակիչսն, և

ոչ զգաւառն աւերել որպէս զնոցայն։ Եւ բերին բազում տարբս պատուականս և յոլով ձիս և ջորիս երեւելիս, և գեղեցկատարբ ոսկւոյ և արծաթոյ. և հարկս Նաբաքացեացս ոսկւոյն քառասուն հազար դահեկանս. առին ՚ի մէնջ զօրականս և տային մեզ գիրս. վասն զի յաւիտեան ծառայք կացցեն Թագաւորութեանս մերում. ազգք զհետ ազգի և ցեղս զհետ ցեղի։ Եւ կարգեցաք անդ զօրավար զայր մի որ կոչէր Թովմաս. այր փառաւոր Գաղատացի. որ եկն առ մեզ ՚ի ծառայութիւն հինգ հարիւր ձիաւորով, և հաւատաց ՚ի Քրիստոս. որ և յառաջին ծառայեալ էր Թագաւորութեանս մերում։ Եւ Պամփակացիքն առարին դաշինս երդման, զի տացեն զհարկն անխափան. և տացին զօր Թագաւորութեանս մերում. և ընդ մեր Թշնամիսն մարտնչել. և յաղագս այսորիկ անպաշարելի Թագաւորս զնոսա։ Եւ անտի յարուցեալ գնացաք ՚ի Տիբերական ծովն, ուր Տէրն մեր Յիսուս Քրիստոս երկու (23) ձըկամբն զբազմանչելիս արար. կամեցաք եւ զայն քաղաքն պաշարել. իսկ նոքա եկին ՚ի հնազանդութիւն մերոյ Թագաւորութեանս, և բերին մեզ ընծայս բազումս որպէս Պամփակացիքն, և հարկս երեսուն հա-

զոր դաւանեկանս առանց (25) այլոց, և խնդրեցին զօրավարս 'ի մէնջ՝ գիր ծառայութեան տուեալ մեր հաստատուն որպէս զԱրամակացիքն՝ հնազանդ լինել մեզ յաւիտեան, և տալ անխափան զհարկն մեր։ Այնժամ Թագաք զնոսա 'ի գերութենէ, և ոչ աւերեցաք զքաղաքն և ոչ զգաւառն՝ և ոչ արարաք զնոսա աւարս, վասն զի հայրենի տուն էր որդւոց առաքելոցն։ Նա աւանիկ և զՆազարէթ ուր զաւետարան իսկ 'ի հրեշտակէն լուաւ Աստուածածին սուրբ կոյսն Մարիամ. Նոյնպէս գնացաք և 'ի Թափօրական լեառն, և ելաք այն տեղւոջն ուր այլակերպեցաւ Քրիստոս Աստուած մեր։ Եւ մինչդեռ յայն տեղւոջն կայաք, եկին առ մեզ 'ի Սամէէ և Երուսաղէմէ աղաչել զԹագաւորութիւնս մեր, ողորմութիւն գտանել 'ի մէնջ. խնդրեցին զօրավար, և եղեն հարկատուք, և լինել մեզ 'ի ծառայութիւն, զոր արարաք։ Իսկ կամեցաք զսուրբ գերեզմանն Քրիստոսի Աստուծոյ մերոյ ազատել 'ի պատուհասից Տաճկացն Արաբկաց։ Կարգեցաք զօրավարս յամենայն Թեմս, որք հնազանդեցան և եղեն հարկատուք Թագաւորութեանս մերում, որ է Պենխաղա, որ կոչի Դեկապօլիս, և Գեննեսարէթ և Յիպարկեա (26) որ կոչի Պաղա-

ամիս. և զբով յանձին կալեալ առ յամէ անխափան տալ զհարկն. և լինել ընդ ծառայութեամբ մեր։ Գնացաք 'ի Կեսարիա, որ է յեզր մեծի ծովուն Ովկիանոսի, հնազանդեցան և եկին ընդ մերով իշխանութեամբ։ Իսկ եթէ ոչ էին փախուցեալ 'ի ծովեզերեայ բերդերին, որք էին բնակեալ այիգծ Մսրիկեցիքն զարհուրեալք 'ի մէնջ, օգնականութեամբն Աստուծոյ 'ի սուրբ քաղաքն Երուսաղէմ էաք գնացեալ և 'ի սուրբ տեղիսն Աստուծոյ էաք յաղօթս կացեալ։ Իսկ իբրև եթէ [27] փախեան ծովեզերեայց բնակիչքն, յայնժամ զմերին կողմն աշխարհին հնազանդեցուցաք, և ընդ Հռոմոց իշխանութեամբ արարաք. և կարգեցաք անդ զօրավար և 'ի մեր կոյս արարաք. և զոչ հնազանդեալս պատերազմաւ պաշարեցաք. և առեալ գնացաք ընդ ծովեզերբն ափողոտայն, որ դէմ յանդիման երթայր 'ի Վախտուն քաղաքն յերբեւելին և անուանին պարապեցաւ յայժ, որ այժմ ասի Պէրութ, պատերազմեալ և սաստիկ կռուով առեալ զնա և հազար Մսրիկեցի ձերբակալ արարաք. նոյնպէս և զԱուսերի [28] զՄիր—էլ—մումինոյ և զայլ լուսաւոյն իշխանսն, և յայն քաղաքն զօրավար եդաք. և անտի կամեցաք 'ի Սիդոն անցանել։ Իսկ յորժամ լուան Սիդոնացիքն,

առաքեցին առ մեզ զծերան քաղաքին իւ-
րեանց. եկին և աղաչեցին զԹագաւորու-
Թիւնս մեր, և խնդրեցին զի հարկատուք լի-
նիցին մեզ մեծաւ ահիւ, և կալ մնալ մեզ
'ի ծառայուԹիւն. զորս լուաք խիկ աղաչա-
նաց նոցա և կատարեցաք զկամս նոցա, և
առաք 'ի նոցանէ զհարկն, և տուաք նոցա
զօրավարս: Եւ անտի յարուցեալ գնացաք
'ի Նիբոզոն (29) հին և յամուր բերդն, և զայն
եւս պատերազմեալ առաք, և զբնակիչս նո-
րա 'ի գերուԹիւն մատնեցաք. և մեծաւ ա-
ւարաւ և գերուԹեամբ անցաք ընդ ամենայն
ծովեզերաց քաղաքին ընդ դժուարս և ընդ
նեղ ճանապարհին՝ ընդ որ այլ զօրք հեծելոց ոչ
երբէք էր անցեալ, նեղ և նուրբ և չար ճա-
նապարհն. և անդ գտանէաք չէն և վայե-
լուչ քաղաքանի և ամուր բերդեր, յորում
կային Տաճիկ պահապանք, զամենայն պա-
շարեցաք, և քարխատակս (30) կործանեցաք, և
զբնակիչսն 'ի գերուԹիւն վարեցաք: Եւ յա-
ռաջ քան զհասանելն մեր 'ի Տրապօլիս հե-
ծեալ զօրս առաքեցաք զԹիմացիսն և զՏաճ-
կաստացիսն (31) 'ի կապանն որ կոչի Բարե-
րես, վասն զի լուեալ էր մեր եԹէ պիղծ Արի-
կեցիքն անդ նստէին 'ի կապանին. և հրա-
մայեցաք քմինս դնել, և դարմանս մահու

գործեցաք նոցա. և որպէս պատուիրեցաք՝ նոյնպէս և արարին. և երկու հազարք 'ի նոցանէ յայտնի եղեւ 'ի վերայ զօրաց մերոց՝ զբաղուածս 'ի նոցանէ սպանին, և յոլովս 'ի նոցանէ արարին կալանաւս, և ածին առաջի մերոյ թագաւորութեանս. նոյնպէս և ուր հանդիպեցին՝ փախստականս առնէին զնոսա։ Եւ խաղաղ ընկեցաք զամենայն աշխարհն Տրապոլիս, զայգիսն և զձիթենիսն և զբուրաստանս նոցա առհասարակ կոտորեցաք. և աւեր դարձուցաք և արմատախիլ արարաք զամենայն գաւառն. և ափրիկեցիքն որ էին անդ՝ համարձակեցան և ելին 'ի պատերազմ ընդդէմ մեր։ Յայնժամ արձակեցաք 'ի վերայ նոցա և կոտորեցաք առ հասարակ զամենեսեան. և այսպէս առաք զմեծ քաղաքն զՆուէլն, որ Գաբաւոնն(32) կոչէին, և զՄազանեացն և զՄիհունն(33), և զինքն իսկ զհրաչակաւորն Ջուրզաւ, և ոչ մնաց մինչեւ ցԸ-Սամէ և Կեսարիա՝ ոչ ծով և ոչ ցամաք որք ոչ հնազանդեցան թագաւորութեանս մերում, և արարաք ծառայս զնոսա մեր։ Արն զի յամիսս եւթն շրջեցաւ թագաւորութիւնս մեր յայնմ աշխարհին հանդերձ զօրօք բազմօք. և սպառեցաք զքաղաքս և զգաւառս և ոչ իշխեաց ելանել Միրալմոմն

նի 'ի Բաբելոնէ ընդդէմ մեր . և կամ հեծեալս արձակել յօգնութիւն իւր զօրացն : Այս եթէ չէր լեալ խստագոյն խորշակ և անջրդի ճանապարհ 'ի յայն աշխարհն որ մերձ է 'ի Բաբելոն, որպէս և քո փառաւորութիւնդ իսկ գիտես , թագաւորութիւնս մեր մինչեւ 'ի Բաբելոն երթեալ , որ և զինքն իսկ 'ի յերկիրն Եգիպտացւոց հալածեցաք . և իսպառ յաղթահարեցաք շնորհօքն Աստուծոյ որ թագաւորեցոյցն զիս :

« Ազատեցան այժմ ամենայն Փիւնիկէ և Պաղեստին և Ասորիք 'ի ծառայութենէ Տաճկաց, և հաւանեցան ընդ Հռովմայ իշխանութեամբ : Այլ և Լիբանանու մեծ քաղաքն հնազանդեցան ընդ մերով իշխանութեամբս և զամենայն Տաճկունս որ անդ կային ահագին բազմութեամբ , գերութեամբ առաք և բաշխեցաք հեծելոց մերոց . և զԱսորեստան քաղցրապէս և մարդասիրապէս բաժանեցաք . հոգիք իբրեւ քան հազար հանաց, և 'ի Գաբաւոն բնակեցուցաք : Ահա գիտացեր (34) , զի այսպիսի յաղթութիւն ետ Աստուած քրիստոնէից, որ ոչ եղեւ երբէք : Այս գտաք յայնմ քաղաքին 'ի Գաբաւոն զուրբ հողաթափ Քրիստոսի Աստուծոյ , որով և շրջեցաւ իսկ 'ի մերում աշխարհի . նոյն-

պէս և զպատկերն Փրկչին զոր Հրէայք յեւս ժամանակի խոցեալ էին, ուստի վաղվաղակի ել արիւն և ջուր. և գլխոյ տիգին ոչ գտաք յայնմ քաղաքին. զպատուական հերաց գլխոյ Կարապետին և զՄկրտչին Յովհաննու, և առեալ տանիմք ՚ի պահպանութիւն աստուածապահ քաղաքին մերոյ։ Եւ արդ ՚ի սեպտեմբերի ամսոյն հաճութեամբն Աստուծոյ զմեր աստուածակեցոյց զօրքս ՚ի յԱնտիոք հանեաք, և վասն այնորիկ քո Փառաւորութեանդ գիտացուցաք. վասն զի ՚ի ձեռըն մեր հրամանացս զարմանաս, և դու ինքըն խոկ փառաւորես զԱստուծոյ մեծ մարդասիրութիւնն. և գիտասցես թէ որչափ բարիս գործեցան այժմիկ, և կամ քանի՞ աւերան, և լայն և ընդարձակ եղեւ իշխանութիւն արքայ Խաչին Քրիստոսի. մինչեւ ցայս անդէք Աստուծոյ անունն գովի և փառաւորի, և Ճօխանայ թագաւորութիւնս մեր անուամբ մեծութեամբ, և զօրութիւնն Աստուծոյ բարեբանեալ գովի ՚ի բերանէ մերմէ. զորս ընդ ձեռամբ մերով հնազանդեցոյց Աստուած, ընդ որում հանապազօր օրհնեալ տէր Աստուած Իսրայէլի։

«Յանախոտէն պատուասպարթրին Պետջնոյ, Լեւանի և Տարօնոյ զօրավարքին ողջոյն և

ցըն Քրիստոսի Աստուծոյ մերոյ, և սուրբ հե-րացն Մնկրաշին Յովհաննու: Եւ արդ ահա հաւան ունիմ և զայս խնդ 'ի քէն, վասն զի խառ-նեսցիս ընդ մեր խնամատարեացն և ընդ փիլի-սոփայիցն մերոց, և ուրախացուցաք մեք 'ի ձեզ. և Աստուած 'ի մեզ և 'ի ձեզ. և ամէն Յիսուս եղիցի ընդ իւրում ծառայիցդ. ո՜ խոկ. յորժամ՝ լուաւ զայս վարդապետն Հա-յոց. Պետրոս, յարուցեալ գնաց 'ի Կոստան-դինուպօլիս, և առաջին ասէր հրաշափառ հաղթականացն Աստուծոյ և հերացն սրբոյն Կարապետին: Եւ եղեւ յայնժամ առաւել մեծ ուրախութիւն 'ի Կոստանդինուպօլիս, և խօ-սեցաւ վարդապետն Հայոց առաջի Թագա-ւորին ընդ ամենայն իմաստասիրացն Հոռո-մոց, և անպարտելի երեւեցաւ 'ի մէջ վար-դապետացն տանն Յունաց. վասն զի յա-մենայն հարցմունս հաճելի երեւեցաւ: Եւ բազում զոհութեամբ բարեբանեցին զնա և զաւանդն նորա, և մեծաւ պատուե-լով 'ի Թագաւորէն երեւելիս և պատուա-կանս շնորհեցաւ նմա. և գնաց մեծաւ ու-րախութեամբ յաշխարհն Հայոց 'ի մեծ տունն Շիրակայ:

ԺԵ. Արդ յետ բազում պատերազմացն և յաղթութեանցն զոր վանեաց կայսրն

իւրոց Վասլին, և զամենայն թագաւորու-
թիւն առեալ Յունաց նմա յանձն արարեալ։
Եւ առեալ 'ի Վասլին զիւր հայրենական ա-
թոռն, և ինքն դիմեալ յանապատ, և յանձն
իւր առեալ զկարգս կրօնաւորութեան՝ 'ի
վանս ընթացեալ բնակէր։ Ահա որ երե-
կեան աւուրն թագաւոր, և այսօր ընդ աղ-
քատս նստեալ դադարէր կամաւոր աղքա-
տութեամբ, վասն զի ժառանգեսցէ զերա-
նութիւն սուրբ Աւետարանին, և վճարեսցէ
զմեղն անպարտ անձինն Նիկեփորայ։

ԺԸ. Դարձեալ 'ի բարձրանալ թուա-
կանութեանս Հայոց ազգիս ամի ՆԻԴ
(975—976). թագաւորեաց Վասիլ Հայրն ա-
մենեցուն՝ որդի Ռոմանոսի ծերոյ, որդւոյ
Կոստանդեայ կայսերն Հոռոմոց բարի ազ-
գաւ 'ի մէջ Յունաց։ Եւ կարի յոյժ երե-
ւելի երեւեալ այրս այս Վասիլն եղբայրն
Կոստանդէ (Կոստանդեայ)։ Սա տիրեաց
թագաւորական աթոռոյն Յունաց, և բա-
զում պատերազմս արար Հնազանդս, և ա-
նուն բարի ստացաւ 'ի վերայ արարածոց.
ողորմած 'ի վերայ այրեաց և գերեաց, և ի-
րաւարար զրկելոց.

ԺԹ. Յայսմ աւուրքս եղեւ կոտորած
զօրացն Հայոց Ջնձեւացեաց գաւառին,

՚ի բանակին կոչեցեալ անուն [illegible] Նենգու-Թեանք առն քաջին Սպղղարիայոյ ։ Վասն զի Թագաւորն Սնձեւացեաց , որում անուն Դերբենդիկն ասէին , եհան զՍպղղարիան ՚ի յասպարապետութենէ զօրաց իւրոց , զայր հզօր եւ քաջ , եւ եդեալ ՚ի տեղի իւր զՍար-գիս զոմն ազատ , եւ կարի յոյժ վիրաւորեալ լինէր հզօրն Սպղղարիայ ։ Եւ յայնժամ բա-նատու լինէր առ զօրսն այլազգեաց , եւ զա-մենայն պատճառս ծանուցանէր նոցա եւ ա-սէր , թէ՝ « Ես ոչ եկից ՚ի պատերազմ ընդ ձեզ . եւ արդ՝ ՚ի գիշերի յարուցեալ եկայք ՚ի վերայ բանակիս մեր . եւ ահա այս նշան ձեզ իմոյ վրանին , յորդան կարմիր է , եւ ՚ի վերայ բլրին հարեալ կայ, եւ զօրք իմ ընդ իս ։ Իսկ զօրքն այլազգեաց եկին ՚ի վերայ նոցա յանկարծական ժամու ։ եւ էր Թագաւորն . եւ զօր-քն իւր ՚ի մեծ ուրախութեան , եւ ՚ի գի-շերի անկան ՚ի վերայ զօրացն Հայոց զօրք այլազգեացն , եւ արարին կոտորած մեծ ։ եւ մե-ռան բազումք պատերազմողք երեւելիք եւ քաջք ։ Եւ այս ապաշաւելի այս իսկ էր , վա-սն զի չէր պատերազմ ՚ի պատեհ ժամու ։ եւ արարին ձերբակալ զԴերբենդիկն զԹագա-ւորն . եւ ընդ Սպղղարիայոյ վասն որոյ ոչ իշ-խեաց անցանել ոք , վասն զի կայր ՚ի վրանին

ԻԱ. Յայսմ ժամանակի ապստամբեցաւ ամենախլխան անօրէն 'ի վերայ Վասլին Հռոմոց Թագաւորին, որում անէին Սկլերոս (44), զօրաժողով արարեալ բազմութեամբ անհիրաւաց եւ անօրինաց, եւ սրով անցուցանէր զաշխարհն Հռոմոց. եւ բազում զօրաց գայր հասանէր եւ մտանէր յաշխարհն Հայոց, եւ արար անխիղճ կոտորած սպառուցեալն յԱստուծոյ։ Իսկ յայնժամ զօրքն Հայոց հասանէին 'ի վերայ նորա, եւ յաղթեցին անօրէն իշխանին այն մեծաւ յաղթութեամբ. եւ կոտորելով մախաստականն արարին զնա. Իսկ նա ոչ համարձակեցաւ դառնալ յերկիր Հռոմոց, արար գնայ խուր 'ի յազգն Տաճկաց, եւ գնաց անօրէնն եւ մտաւ 'ի Բաղդատ քաղաքն. եւ զկնի երկուց ամի եղեալ անդ, եւ գայր մեռանէր յաշխարհն Հռոմոց 'ի յազգն իւր։

Դարձեալ 'ի թագաւորութեանն Հայոց ՆԼԲ (983–984) ամի, մեռանէր սուրբ հայրապետն Հայոց Վահան, կացեալ զամս հինգ 'ի յաթոռ սրբոյն Գրիգորի. եւ ձեռնադրեցին յաթոռ կաթուղիկոսութեանն Հայոց զտէր Ստեփաննոս՝ զայր աստուածազգեաց, զարդարեալ ամենայն բարի առաքինութեամբ որ 'ի Քրիստոս Յիսուս. Նոր-

տուեցանէն զնա հայրապետս Հայոց հրամանաւ և օրհնութեամբ անուան Վահանայ. որ էր իսկ գլուխ ժողովոյն կաթուղիկեան Աղուանից տէր Յովհաննէս, ընդ ժամանակաւ Վասլի Յունաց թագաւորին. և Յովհաննիսիւ և Աշոտոյ Հայոց արքայից, և Սենեքերիմայ որդւոյ Ապուսահլի. որդւոյ Աշոտոյ Դերենիկեանն (45), որդւոյ Գագկայ Արծրունեաց ազգաւ, յազգէն Սանասարայ.

ԻԲ. Արդ 'ի սոյն աւուրս զօրաժողով արարեալ անօրէն և արբշիռ բռնակալն Պարսից Սամկան, ամիրապետեան . . . . . . . . . . . և ժանդաբարոյ գազանութեամբն իւրով իբրեւ զարիւնարբու վիշապ յարձակեալ գայր 'ի վերայ հաւատացելոց Քրիստոսի, և խորհեցաւ կոտորած մեծ առնել 'ի վերայ աշխարհին. Նա գայր խաղայր ահագին և անհամար բազմութեամբ, երկիր դղրդէր և ընդ դաշտս զօրօք իւրովք. և յանհետ անօրինին սասանեալ դողայր ամենայն երկիր. ապա և հրով կերեաց զբազում տեղիս. և զեկեղեցիս հրակէզ արարեալ խափանեաց յօրհնութեանցն Աստուծոյ, և բազում' բանս հայհոյութեանց 'ի վեր 'ի բարձունս խօսեցաւ առ Բարձրեալն. Նա անդ էր տեսանել լաց մեծ և զահեղ կոտորածն քրիստոնէից 'ի

յիշեա տէր իմ զոր արարեր ընդ Սամփսակ և ընդ Սենեքերիմայ անօրէն թագաւորին Ասորեստանեայց. զի ահա զայս բանք անօրէնութեան և նա խօսեցաւ, տէր իմ Յիսուս Քրիստոս. մի՛ անտես առներ զհաւատացեալս յանուն քո ։

ԺԹ. Յայնժամ հրամայեաց ժողով լինել զօրաց, զազատս և զամենայն հեծելազօրս իւր, զՎաչէ (47) և զՏեւդատ և զՄիհրան, և զայլ զօրսն Հայոց աշխարհին. հետեւակս աղեղնաւորս երեք հազար, և ձիաւորս երկու հազար և հինգ հարիւր ։ Եւ անօրէնն Սանկին կայր բանակեալ յԱպահունիս ի գեղն որ Խոսսնս կոչէին, երկու հարիւր հազարաւ ։ Եւ Դաւիթ յարուցեալ գնայր ընդդէմ չար գազանին Սանկինայ, և զամենայն աշխարհն յաղօթս և ի պաղատանս և յաղաչանս մեծաւ հաւատովք ի խնդրուածս կացուցանէր առաջի Աստուծոյ ։ Եւ գնաց իջաւ Դաւիթ ի սահմանս Ապահունեաց. և զԿարմրակէքն զայր քաջ եօթն հարիւր ձիաւորօք պահապան գիշերոյն կացուցանէր. և ինքն Դաւիթ զամենայն գիշերն յաղօթս Աստուծոյ անցուցանէր ։ Եւ յառաւօտուն պահուն գայր մին ի զօրաց այլազգեացն հազար ձիաւորօք, որ էր և նա պա-

հայրական զօրաց Նորա ։

Նա 'ի գիշերին ընդ միմեանս հարան. և էր լոյսն լուսնին սաստիկ, և յայնժամ էր սակաւ ինչ անձրեւ 'ի վերայ լերանցն, և ամենայն լերինքն փայլատակէին իբրեւ զհուր հրոյ. և տեսին զայն զօրք պղալեացն, կարծեցին եթէ այն ամենայն բազմութիւն զօրաց քրիստոնէից են, և յայնժամ առ հասարակ 'ի փախուստ դարձան ։ Նա Կայսերն կէլն տեսեալ զփախուստ նոցա՝ և սրով 'ի վերայ նոցա յարձակեցան, իբրեւ զանտառ մայրի կոտորէր զնոսա անխնայ. և կալաւ զկինն Սամղանայ և զիւր պատերազմու ձին, և վազվազակի յուղարկեաց առ Դաւիթ, և ձայն աւետեաց մատուցանէին նմա՝ եթէ հարաք զնա՝ զՍամլան ։ Նա նա դեռ յաղօթս կայր առ Աստուած. և լուեալ զայս Դաւիթ հիւանդայր ։ Նա յայնժամ զհետ մտեալ ամենայն զօրօքն՝ արարին զզօրս անօրինացն փախստական սաստիկ կոտորածով. ապա ին անթիւ և անհամար գերութիւն և աւարս ոսկւոյ և արծաթոյ ։ Նա անօրէնն Սամլան փախեաւ (48) ամօթով յաշխարհն իւր, և ամբարտաւանեալ յոյժ ընդ Աստուած՝ և յերկինս ոչ հայեցաւ բնաւ, և զիւր անարժան աղօթսն ոչ մատուցանէր Աստուծոյ ։

ԻԶ. Իսկ յասացեալ ժամանակաց տոմարիս Հայոց ՚ի յամի ՆԼԵ (986—987). ապստամբ եղեալ անձն ՚ի վերայ թագաւորին Վասիլի իշխանն Հոռոմոց Սկլերոս Վարդ (51), և արար աւերակս զմեծ մասն Հոռոմոց աշխարհին. և զօրացեալ երթայր ընդ երկիր սրով և գերութեամբ. Եւ ժողովեալ զօրքն Հոռոմոց ՚ի վերայ նորա, հալածական արարին զնա յաշխարհն Տաճկաց, զոր յետ ամի միոյ եկեալ մեռանէր ՚ի թագաւորէն Վասլէ.

ԻԷ. Պարծեալ ՚ի թուականութեանս Հայոց ՆԼԵ (986—987) ամի, եղեւ սաստիկ շարժ ընդ ամենայն արարածս, և փլաւ սուրբ Սոփիա ՚ի Կոստանդնուպօլիս. Եւ յայսմ ամի կամեցաւ թագաւորն Վասիլ զաշխարհն Բուլղարաց ածել ՚ի հնազանդութիւն իւրոյ թագաւորութեանն. և առաքեաց առ Սամփսոնոս (52) թագաւորին Բուլղարաց և առ ամենայն աշխարհաց իշխանացն՝ գալ հնազանդութիւն իւրոյ թագաւորութեանն. իսկ նոքա ոչ եկին զհետ հրամանաց Վասիլ թագաւորին.

ԻԸ. Յայնժամ թագաւորն Վասիլ ժողով արար զամենայն աշխարհն իւրոյ թագաւորութեանն, և մեծաւ պատրաստութեամբ յարձակեցաւ ՚ի վերայ աշխարհին Բուլղարաց,

և սրով և գերութեամբ ապականէր զերկիր ։ Իսկ Թագաւորն Բուլղարաց Ալիւսիանոս ժողով արարեալ, և գայր բազում զօրօքն 'ի վերայ Վասլին, և արարին սաստիկ պատերազմ ընդ միմեանս ։ Այլ Թագաւորն Բուլղարաց յաղթեաց Վասլին, և դարձոյց զամենայն քաջութիւն զօրացն 'ի փախուստ մինչև 'ի Կոստանդնուպօլիս . և առին բազում աւար և գերութիւն 'ի զօրաց Վասլին . և Վասիլն լի ամօթով մտանէր 'ի Կոստանդնուպօլիս ։ Այլ յետ երկու ամի դարձեալ ժողովք արար Թագաւորն Վասիլ, և գնաց 'ի վերայ Թագաւորին Բուլղարաց առ 'ի խնդրել զվրէժս իւր . և հանդիպեալ զօրացն Բուլղարաց, դարձոյց 'ի փախուստ զնոսա և վարէր առաջի իւր ։ Այլ Նեղեալ Վասիլն զաշխարհն Բուլղարաց սովով և սրով և գերութեամբ, և դարձաւ եմուտ 'ի Կոստանդնուպօլիս ուրախութեամբ ։

Արդ յորժամ բարձրացաւ Թուականութիւն Հայոց ամի ՆԽ (991—992), մեռանէր Հայոց կաթողիկոսն տէր Խաչիկ, կացեալ յաթոռ հայրապետութեանն Հայոց ամս վեց . և ձեռնադրեցաւ յաթոռ իւր զտէր Սարգիս, որ էր այր կարողի գիտութեամբ պատուիրանացն Աստուծոյ . և էր սա հաճոյ

Աստուծոյ և մարդկան , և էր կիրթ վարուց առաքինութեան , և լուսաւոր վարդապետութեամբ իւրով զարդարեալ զեկեղեցի Աստուծոյ ։

ԼԹ. Յայսմ ամի զօրքն Եգիպտոսի որ Մսըր Արապիկք (53) կոչին , մտին յաշխարհըն Անտիոքայ քաղաքին , և բազում աւերմամբ լցին զամենայն գաւառն . և ժողովեցան ամենայն զօրք Հոռոմոց ընդդէմ նոցա 'ի պատերազմ. և 'ի հանդիպել միմեանց արարին փախստական զզօրսն Հոռոմոց , և ըզմեծամեծ իշխանսն գերի առին և տարան յԵգիպտոս ։ Իսկ յետ երկու ամի եկանէր մեծ տունկն Հոռոմոց և գայր բազում զօրօք 'ի վերայ աշխարհին Հայոց . որոք և գերութեամբ անողորմ յարձակեցաւ 'ի վերայ հաւատացելոց Քրիստոսի . և գազանաբար ապանմամբ ընթանայր իբրեւ զօձ Թիւնաւոր , որ ելից զանեղի անհաւատ ազգաց ։ Եւ եղեւ 'ի մտանելն նորա յաշխարհն Հայոց . ժողովեցան ընդ առաջ նորա զօրք Հայոց ազատացն , և 'ի դիպելն ընդ միմեանս բախեցին գազանաբար . և քաջք ընդ քաջս երանէին , և անպարտելի հանդիսանային (զօրք) երկոցունց կողմանցն ։ Եւ անդ էր տեսանել զկատարածն երկոցունց կողմանցն , և յայն-

ժամ 'ի սաստկանալն մեծի պատերազմին, եղեն պարտեալ զօրքն Հոռոմոց առաջի զօրացն Հայոց, և դարձան 'ի փախուստ դիմօք յաշխարհն իւրեանց յամօթ երեսօք մազապուրծ փախմամբ ։

Լ. Յայսմ ամի ելեալ դայր ամիրայն Տաճկաց, որոյ անուն Երկայնաձեռն կոչէին, և զօրօք բազմօք 'ի յաւեր և 'ի գերութիւն մատնեաց զԵդեսացւոց աշխարհն, և վիշտս մեծամեծս 'ի վերայ Ուռհայոյ. և անցանէր ընդ մեծ գետն Եփրատ, և գերեաց զայն կոյս զսահմանս աշխարհիս Հայոց, և դարձեալ մեծաւ յաղթութեամբ յաշխարհն Ափրիկեցւոց ։

ԼԱ. Եւ եղեւ 'ի փոխել թուականութեանս Հայոց ամի ՆԽԶ (997—998), եղանէր յերկինս աստղ մի գիսաւոր, և երեւեալ սոսկալի և ահաւոր տեսլեամբ լուսաւոր և զարմանալի ։

ԼԲ. Իսկ յամի ՆԽԹ (1000—1001) թուականութեանս Հայոց, եղեւ սէր և միաբանութիւն մեծ ընդ թագաւորն Վասլին և ընդ Սենեքերիմ արքայ Հայոց ։ Եւ յայսմ ամի եղեւ վախճան Սահակոյ մարզպանին Վարաժնունեաց տեառն ։

ԼԳ. Յորժամ լինէր թուականն Հայոց

ՆԾԵ (1006—1007) ամ՝, զօրաժողով ա-
րար Թագաւորն Վասիլ զամենայն աշխար-
հըս տէրութեան իւրոյ (54), և խաղայր գը-
նայր ՚ի վերայ աշխարհին Պուլղրաց. և բա-
զում ժամանակս արարեալ յաշխարհն այն
մեծաւ պատերազմաւ։ Եւ յայսմ աւուրքս
մեծ խռովութիւն եղեւ ՚ի քաղաքն ՚ի Կոս-
տանդինուպօլիս և յամենայն աշխարհն Յու-
նաց. վասն զի յաւուր մեծ Զատկին մոլո-
րեալ եղեն ՚ի կատարելոյ զաւուրբք Յարու-
թեան օրն Զատկին, և ամենայն վարդա-
պետք տանն Յունաց ընդ ստութեամբ փա-
կեցին զուղղորդ պատուիրանս Աստուածա-
շունչ գրոց, և զսուտ և զխաբեբայ դրոց
տումարն հակառակամարտին Աբիոնի (55) ըն-
կալան, և զճշմարտագիր տոմարն մեծին
Անդրէասի ոչ ընկալան. այլ ածին նոքա
զլրումն Զատկին ՚ի կիրակիէն ՚ի շաբա-
թըն. և զկնի աւուր մի Զատիկ արարին,
զոր պարտ էր զկնի ութ աւուրն կատարել.
և ամենայն տանն Յունաց մոլորեալք ՚ի
սուրբ Զատկէն, և եղեւ սուգ մեծ ՚ի վե-
րայ եկեղեցւոյն Կոստանդինուպօլսի, եւս
առաւել ՚ի սուրբ և յաստուածակերտ քա-
ղաքն Երուսաղէմ, զի հպարտութեամբ
բարձրացեալ ածին զԶատիկն ՚ի յաւուր

Ծաղկազարդին, և եղեն հակառակողք ամենայն ազգեաց տանն Յունաց, եւս առաւել Քրիստոսի, վասն զի պատերազմեցան ընդ Հոգւոյն սրբոյ տուեն փիլիսոփայից: Եւ յայնմ մի Զատկի ոչ փառեցաւ լոյս կանթեղացն 'ի սուրբ գերեզմանն աստուածընկալ 'ի քաղաքն Երուսաղէմ. վասն զի սուտ էին, անօրէնութեամբ արարին Զատիկն իւրեանց: Իսկ յայնմ աւուր ազգն . . . . . . . որ կայր 'ի քաղաքն Երուսաղէմ, իբրեւ տեսին զԶատիկն քրիստոնէից 'ի մէջ սուրբ Յարութեանն, կոտորեցին սրով զամենայն քրիստոնեայսն՝ հոգիք իբրեւ տասն հազար, և լցաւ սուրբ Գերեզմանն Քրիստոսի արեամբ աղօթաւորայն. և դեռ մինչեւ ցայս օր կան ոսկերք նոցա լցեալ 'ի յայրին անդ յարեւմտից Կուսէ քաղաքին Երուսաղէմի, զոր այժմ Մանկանց նշխարք (ԾԶ) կոչեն զնոսա: Նոր-գայս այսպէս արարին հանճարեղ և իմաստունքն Յունաց:

ԼԴ. Իսկ Թագաւորն Վասիլ իբրեւ յաղթեաց և էառ զԹագաւորութիւնն Բուլղարաց, դարձաւ 'ի Կոստանդնուպօլիս մեծաւ ուրախութեամբ: Եւ յորժամ լուաւ զայս ամենայն կոտորածս որ եղեւ վասն սուրբ Զատկին, կոչեաց զամենայն իմաստ-

տունքս Յունաց, և հարցանէր զպատճառն. և նոքա լուռ կամաց երկեանց սկսան բազմադիմի մերժեցուցանել զԹագաւորն օտարոտի պատասխանատրութեամբ։ Նա ծանեաւ Թագաւորն զայլակերպ պատասխանիսն նոցա, իմացաւ՝ որ սուտ էին և մոլորեալք։ Իսկ յառաջագոյն լուեալ էր Թագաւորն վասն Հայոց վարդապետացն՝ եթէ յաղթողք և կորովիք են ՚ի գիրս պատուիրանաց, և յանուանէ գիտէր վասն Յուսեփայ Ընծայուց (57) հօրն և յաղագս Յովհաննիսի որ համանուն ասէին Կոզեռն. և յայնժամ գրեաց առ Յովհաննէս արքայն Հայոց, զի առաքեսցէ զնոսա առ ինքն ՚ի Կոստանդինուպօլիս, զի ՚ի նոցանէ գիտասցէ զճշմարիտ պատճառն և զուղղորդ Զատիկն։ Իսկ նոքա ոչ առին յանձն գնալ, այլ Թղթօք գեղեցկազարդ (58) բանիւք հասկացուցին զԹագաւորն ամենայն խորին քննութեամբ։ Նա յայնժամ հակառակեալ կղերիկոսք, և ոչ հաւանեցան Թղթոյն, մինչեւ դարձեալ Թագաւորն Վասիլ յուղարկեալ ՚ի Հայս առ Յովհաննէս շահնշահ և առ տէր Սարգիս կաթուղիկոսն Հայոց, և մեծաւ խնդրուածովք եւս բերել առ ինքն զՀայոց վարդապետսն զՍամուէլ, զայր կո-

բազմի և յաղթող. և կացուցանէր զնա յատե-
նի խօսել ընդ վարդապետացն Յունաց։
Իսկ իմաստունքն Յունաց շարժեցին 'ի վե-
րայ Սամուէլի զամենայն գրեանս տանն
Յունաց, և ոչ կարացին շարժել զնա 'ի
ճշմարտութեանց անտի։ Եւ սկիզբն արար
Սամուէլ յառաջին աւուրն յարարչութե-
նէն, և գայր հասանէր մինչև ցվերջին
պատկեր օրն. եւ զամենայն պատճառ-
պատճենից բառ (59) առաջին իմաստնոցն
հաստատուն կացուցանէր։ Եւ հաճոյ լի-
նէր Թագաւորին ամենայն բանքն նորա.
և իմաստունքն Յունաց ասէին առ Թագա-
ւորն. «Ով տէր արքայ, հրամայեա և ած
այր զմեծ վարդապետն Եբրայեցւոց որ
բնակեալ կայ 'ի կղզւոջն Կիպրացւոց, այր
կորովի և հմուտ տոմարի և ամենայն ար-
ուեստից 'ի մանկութենէ իւրմէ։ Եւ յու-
ղարկեալ Թագաւորն 'ի Կիպրոս, և ածէր
զՄ՚ուսի զվարդապետ Եբրայեցւոցն։ Եւ
նա կացեալ յատենի առաջի Թագաւորին
Վաղի, այր ճարտարաբան և հզօր, և սկսա-
նէր խօսել վարուեստ տոմարին, և յամօթ
և սուտ արար զամենայն իմաստունս տանն
Յունաց. և գովէր զբանքն Սամուէլի Հա-
ոց վարդապետին։ Իսկ Թագաւորն յոյժ

սրտմտեալ 'ի վերայ վարդապետացն Յունաց և զբազումս եհան 'ի պատուոյ եկեղեցւոյն, և ընկէց 'ի փառացն. և զվարդապետն Հայոց յուղարկեալ մեծաւ պարգևօք յաշխարհն Հայոց։

ԼԵ. Դարձեալ 'ի յաւուրս Վասլի Յունաց թագաւորին և 'ի Հայոց թուականութեանն ՆԾԲ (60), (1003—1004) ամի երևնէր աստղ մի 'ի տեսիլ հրոյ երևեալ 'ի յերկինս, նշան բարկութեան արարածոց և կատարածի աշխարհի։ Եւ եղեւ շարժ սաստիկ ընդ ամենայն երկիր, մինչև կարծել բազմաց՝ եթէ եհաս օրն վերջին և կատարած աշխարհի, և որպէս առ ջրհեղեղաւն՝ երերեալ դողաց ամենայն արարած. յա-հէ և բարբառոյ բարկութեննէն ոչ ժամանէին խոստովանութեան և հաղորդութեան։ Մարդ և անասուն պակասեցան յերկրէ, և մնացեալ չորքոտանիք՝ անմարդ մը-նացեալ՝ շրջէին 'ի վերայ երկրի։

ԼԶ. Իսկ 'ի թվականն Հայոց ՆԿ (1011—1012) ամին զօրաժողով արար թագաւորն Վասիլ, և գնայր 'ի վերայ աշխարհին Պուլ-ղարաց, և յաղթեաց թագաւորութեան նո-ցա, և 'ի սուր սուսերի մաշեաց զբազում գաւառս մեծաւ բարկութեամբ. և յաւեր

և 'ի գերութիւն մատնեալ զամենայն արեւմուտս, և բնաջինջ եբարձ զամենայն թագաւորութիւն Պուլղարաց, և դեղ մահու արբուցանէր Ալէւսիտանոսին առն քաջի՝ Պուլղարաց թագաւորին. և այսպիսի օրինակաւ (հան) զնա 'ի կենաց, առեալ զկինն նորա և զորդիսն անկանէր 'ի Կոստանդինուպօլիս:

ԼԷ. Յորժամ թուականութիւնն Հայոց հասանէր 'ի յամն ՆԿԷ (1018–1019), զարթեաւ աստուածատուր բարկութիւնն 'ի վերայ ամենայն քրիստոնէից ժողովրդեանն և երկրպագողաց սուրբ խաչին. զարթեաւ վիշապն մահաշունչ հանդերձ մահաբեր հրով եհար զհաւատացեալս որդւոց Նորոգութեանն: Յայսմ՝ թուականութեանս սատանեցան հեծեալք առաքելականացն և մարգարէականացն. ելանն զի օձք թեւաւորք հարին, և կամին ցոլանալ ընդ ամենայն աշխարհս հաւատացելոց Քրիստոսի. այս է առաջին եկն արիւնարբու գազանացն: Ընդ աւուրսն ընդ այնոսիկ զօրաժողով լինէին խուժադուժ ազգքն անօրինաց, որք անուանեալ կոչին Թուրք. և հասեալ մտանէին յաշխարհն Հայոց 'ի Վասպուրական գաւառ (61) և անողորմ 'ի սուր բերան կոտորէին զհաւատացեալս Քրիստոսի:

ԼԸ. Յայնժամ հասանէր համբաւ կոտորածիս այս առ Թագաւորն Սենեքերիմ. և յայնժամ աւագ որդին նորա Դաւիթ ժողովեալ զզօրսն ապատաց, հասանէր 'ի վերայ Թուրքն բանակին. և հարան սաստկապէս ընդ միմեանս ահաւոր պատերազմաւ։ Իսկ յայնժամ ժամանակին չէին բնաւ տեսեալ Թուրքք զօրք հեծելոց. և 'ի հանդիպելն նոցա՝ տեսին այլակերպ գնուս, աղեղնաւորս և հերարձակս իբրեւ զկանայս. և յայնժամ զօրքն Հայոց չէին սովոր պատրաստ լինել ընդդէմ նետիցն. և քաջաբար 'ի վերոյ այլազգեացն յարձակեցան, և առ հասարակ մերկացուցին զսուսերսն իւրեանց 'ի պատենիցն, և արիաբար 'ի պատերազմ ընթանային արիական գունդն Հայոց, և զքաջուսն այլազգեացն սատակէին։ Իսկ այլազգիքն նետաձգութեամբն զքաջուսն 'ի զօրացն Հայոց վիրաւորէին խոցելով. Եւ տեսեալ զայն ամենայն Շապուհ (62) ասէր ցԴաւիթ. «Պարոն, Թագաւոր, յերեսաց Թշնամեացս, վասն զի 'ի նետիցս վիրաւորեալ եղեն մեծ մասն զօրացս. դնասցուք և ընդդէմ այսմ զինուցս զոր տեսանեմք առ այլազգիսդ, այլ զգեստ պատրաստեսցուք ընդդէմ նետիցդ»։ Իսկ Դաւիթ առ մեծութիւնն իւր հայելով, հպարտացեալ

մեծաւ ամբարտաւանութեամբ, ոչ լսելով Շապհոյ, և դառնայր 'ի պատերազմ։ Յայն ժամ Շապուհ բարկութեամբ դիմեաց ի վերայ Դաւթի, և բռնցի հարեալ զթիկունըս ուժգնակի մղէր զնա դառնալ. վասն զի Շապուհ էր այր քաջ և պատերազմող հզօր, և էր մանկակալ և սնուցիչ Դաւթի. վասն այնորիկ անահ էր 'ի նմանէ. և այսպիսի օրինակաւ դարձուցանէր զԴաւիթ հանգերձ զօրօքն։ Եւ գնացին յՍեբաստ քաղաք, և պատմեցին թագաւորին Սենեքերիմայ. և ասացին զորպիսութիւն կերպարանաց պղագգեացն։ Եւ լուեալ Սենեքերիմայ յոյժ վիրաւորեալ լինէր. ոչ եկեր և ոչ արբ, այլ կայր մտախոհ լի տրտմութեամբ. և զգիշերն ամենայն անքուն անցուցանէր, և նստեալ քննէր զժամանակագրութիւնս և զասացուածս աստուածախօս տեսանողացն, զսրբոց վարդապետացն, և գտանէր գրեալ 'ի գիրըն զժամանակին ելանելոյ Թուրք զօրականացն. և ծանեաւ զկորուստ և զկատարած ամենայն երկրի. և գտանէր 'ի գիրսն գըրեալ այսպէս, եթէ «Ի ժամանակին յայնմիկ փախիցեն յարեւելից յարեւմուտս, 'ի հիւսիսոյ 'ի հարաւ, և հանգխառ ոչ գտանեն 'ի վերայ երկրի, վասն զի արեամբք ծածկին

դաշունք և լերինք . և այս էր զոր ասաց Եսա_յեա, եթէ « Սմբակք երիվարաց նոցա հաս_տատուն . միշտ և հանապազ 'ի գինարբուս դեգերին վասն օրոց և ցանկութեան չար և աղիւծ ախտին » : Հայրապետք և եպիսկոպո_սունք և քահանայք և կրօնաւորք արծաթա_սէրք առաւել քան աստուածասէրք : Որ_դեակք իմ, ահա յայսմ հետէ սատանայի կամքն առաւել կատարեսցի յորդիս մարդ_կան՝ քան Աստուծոյն . և 'ի ձեռն անարժան պատարագողացն որ յայսմ հետէ լինելոց է, բարկանայ Աստուած 'ի վերայ աշխարհացս, ևս առաւել 'ի վերայ մատուցանողին զնա . զի յանարժանիցն պատարագելոց է Քրիստոս և յանարժանն բաշխեսցի, և առաւել վե_րաւորելոց է Տէր մեր Յիսուս Քրիստոս 'ի յանարժան քահանայիցն՝ քան զչարչարեալն և զխաչեալն 'ի Հրէիցն . զի արձակեցաւ սատա_նայ 'ի հազարամէ կապանաց իւրոց զոր կա_պեաց Քրիստոս Եւ զայս պատուիրեմ ձեզ, որդեակք . հառաչանօք սրտիւ լալով և ող_բալով . վասն զի քակին բազումք 'ի հաւա_տոց, և պարծանօք ուրանան զՔրիստոս, և վասն այնորիկ (խաւար) կալաւ զամենայն արա_րածս : Այս այսպէս ասաց սուրբ հայրապե_տըն Հայոց(63) վասն կատարածի բարկութեան

նշանին և այլ բազում ինչ ճառեաց որ կատարելոց է 'ի վերայ հաւատացելոցս ։ Զոր ահա ամենայն ինչ կատարեցաւ մի առ մի 'ի ձեռն ելից . . . . . . . . . . ազգին Թուրքաց անօրէն և պիղծ որդիքն Քամայ ։

Յայնժամ ամի Թուականութեանս և ահաւոր նշանիս մեռանէր սուրբ Թագաւորն Վասիլ. և Թագաւորեաց Թագաւորութեանն Հոռոմոց ամս յիսուն և ութ , և կոչեաց զեղբայր իւր զԿոստանդին , և մինչդեռ կենդանի էր դնէր զԹագն 'ի գլուխ եղբօրն իւրում. և նստուցանէր զնա յաթոռ Թագաւորութեանըն իւրոյ , և երկրպագանէր 'ի վերայ երեսաց իւրոց , և զամենայն Թագաւորութիւնըն իւր նմա յանձն արար , և անդարձ արար նմա վասն աշխարհին Հայոց , զի հայրաբար սիրով խնամեսցէ զազգն այն ։ Դարձեալ զորդին Սենեքերիմայ նմա յանձն արար զԴաւիթ և զԱտոմ և զԱպուսահլ և զԿոստանդին և զամենայն իշխանս տանն Հայոց . և պատուիրեաց նմա բարի մտօք կալ հանապազ 'ի վերայ հաւատացելոց Քրիստոսի ։ Վասիլն զամս յիսուն և ութ Թագաւորեաց 'ի վերայ Հոռոմոցս , սրբութեամբ և կուսութեամբ վարեաց զայս կեանս, և բարի խոստովանութեամբ ննջեաց 'ի Քրիստոս

Յիսուս, և Թաղեցին զնա ընդ սուրբ Թա-գաւորս բարի յիշատակաւ։

ԼԹ. Յայսմ ամի մեռաւ և Սենեքերիմ Թագաւորն Հայոց, և տարան զնա 'ի գե-րեզմանատունն հարց իւրոց, ուր առաջին Թագաւորքն Հայոց Թաղեալ կան 'ի Վարագ՝ 'ի վանքն սրբոյ Նշանին. և անդ Թաղեցին զՍենեքերիմ ընդ հարսն իւր, և հաստա-տեալ լինէր Թագաւորական իշխանութիւն տանն Հայոց յաւագ որդին իւր 'ի Դաւիթ, վասն զի էր այր փառաւոր և պատուական և ահարկու 'ի վերայ երկրի։

Խ. Յայսմ ամի մեռաւ և Գուրգէն Թա-գաւորն Վրաց, և նստուցին յաթոռ նորա զորդին նորա զԲագրատ, Թագաւորեալ 'ի վերայ ամենայն աշխարհին Վրաց։

ԽԱ. Սոյն 'ի յայսմ ամի Թագաւորեաց Կոստանդին եղբայր Վասլին 'ի վերայ ամե-նայն աշխարհին Հոռոմոց։ Եւ եղեւ Կոս-տանդ այր բարի և աստուածասէր, ողորմած այրեաց և գերեաց, անյիշաչար 'ի վերայ յան-ցաւորաց, վասն զի արձակեաց զամենայն բանտարկեալսն 'ի կապանաց. և զկորստական տունն զոր արարեալ էր Վասիլն, հրամայեաց հրով այրել, զոր Վասիլն իսկ արարեալ էր իշխանօքն Յունաց, վասն ահի Թագաւորու-

թեանն գաղտ ՚ի ծածուկ խեղդամահ արա-
րեալ զփառաւորն Յունաց, և կախեալ
կան զգեստօքն ընդ փողոցն ՚ի ճանկս երկա-
թիս. զոր տեսեալ Կոստանդ՝ իջոյց զնոսա, և
հրամայեաց զնոսա թաղել, և զաւանն հրով
ասաց այրել. և մեղադիր լինէր եղբօրն իւ-
րոյ և ասէր, եթէ «Նորա մահն առաջի կայ,
այս էր է չարաչար մահս վասն մարմնաւոր
և անցաւոր կենացս»։ Իսկ ինքն Կոստան-
դին խաղաղութեամբ կացեալ յաթոռ թա-
գաւորութեան Հոռոմոց, և հոլովեաց քաղ-
ցրութեամբ զամենայն հաւատացեալս Աս-
տուծոյ. և կացեալ յաթոռ թագաւորու-
թեանն զամս չորս, և մեռանէր բարի խոս-
տովանութեամբ ՚ի Քրիստոս Յիսուս. և
բարի յիշատակաւ գնաց առ հարս իւր, և
սուգ մեծ լինէր աշխարհին՝ զրկեալ յայն-
պիսի թագաւորէն։ Իսկ մինչդեռ կենդանի
էր Կոստանդին, սա զդուստր իւր զԶոյ թա-
գյհի (64) կին ետ Ռոմանոսի մեծ իշխանին,
վասն զի որդի ոչ գոյր նոցա։ Իսկ Ռոմա-
նոսն նստեալ յաթոռ թագաւորութեանն
Հոռոմոց, և ամենայն երկիր եկին նմա ՚ի
հնազանդութիւն։

ԽԲ. Իսկ ՚ի թուականութեանս Հայոց
յամի ՆՀԹ (1030—1031), զօրաժողով արար

թագաւորն Հոռոմոց Ռոմանոս զամենայն զօրս Յունաց աշխարհին. և խաղայր հասանէր բազմութեամբ յաշխարհն Տաճկաց, և եկեալ բանակեալ 'ի վերայ ամուր բերդին որ կոչի՝ Հալապայ մերձ՝ Եզալ քաղաք. և ժողովեցան զօրքն Տաճկաց անթիւ բազմութեամբ. և եկին 'ի վերայ թագաւորին Ռոմանոսի: Եւ թագաւորն զարհուրեալ լինէր և ոչ համարձակէր ելանել 'ի պատերազմ ընդ զօրսն Տաճկաց, զի թուլամորթ էր և տկար և յոյժ չարաքարոյ, և կարի հայհոյիչ ուղղափառ հաւատոյ. և յաղագս այսորիկ զօրքն ոչ էին միաբան ընդ 'նմա, և խորհէին զի 'ի ժամ պատերազմին թողցեն զնա 'ի մէջ զօրացն Տաճկաց, և ինքեանք զերեսն դարձուցանեն 'ի պատերազմէն զի սատակեսցի անօրէն թագաւորն: Յայնժամ մի ոմըն իշխան 'ի զօրաց իւրոց, որ կոչէր Եպուքարայն, որ յառաջն վրանապահ էր լեալ Դուլթի կիւրապաղատին Վրաց, սորա ազդ-արարեալ թագաւորին զնենգութիւն զօրացըն. և զայս լուեալ թագաւորն և երկեաւ յոյժ, և յարուցեալ լինէր փախստական 'ի գիշերի հանդերձ մեծամեծօք իւրովք: Եւ լուեալ զայս զօրքն Տաճկաց յարձակեցան զօրքըն հետ զօրույն Հոռոմոց և արարին սատակ

կոտորածս իբրեւ քսան հազարաց, և ցրուեցան զօրքն Հոռոմոց մի առ մի ընդ երեսս երկրի։ Այլ զկնի չորեքտասան աւուր չինական ամն 'ի քաղաքէն Կուրիսոյ (65), գտանէր ըզԹագաւորն Սամանոս անկեալ 'ի մէջ ծառոցն, և կայր ընդարմացեալ (66) իբրեւ ըզմեռեալ 'ի ցրտոյն. Թողեալ զգործս իւր և տարաւ զնա 'ի տուն իւր, և դարմանեալ էած զնա 'ի կենդանութիւն, և ոչ գիտէր թէ ով ոք իցէ. և յետ աւուրց եհան արձակեաց զնա զհետ արանց։ Այլ հասեալ 'ի Սարուչ քաղաք, ժողովեցան առ նա մնացեալ զօրքն և տարան զնա 'ի Կոստանդինուպօլիս։ Իսկ զկնի աւուրց ինչ անցանելոյ կոչեաց Սամանոս 'ի կոչ զայրն զայն, և արար զնա տէր ամենայն գաւառին Կուրիսոյ. մեծաւ պարգեւօք յուղարկեաց զնա 'ի տուն իւր՝ մեծաւ գոհութեամբ։

ԽԳ. Դարձեալ 'ի վերանալ Հայոց Թուականութեանս յամս ՆՁ (1031–1032), մեռանէր ամիրայն Ուռհայոյ քաղաքին, որում անունն ասէին Շէպլ։ Յայնմ ժամանակին նստէր յՈւռհայ երկու ամիրայ, Շէպլն և Ուտայր (67). և կայր 'ի քաղաքն Ուռհայոյ երեք կլայ, երկու կլայն և երկու բաժին քաղաքին՝ Շէպլոյ էր, և մէկ կլայն և մէկ





բաժին քաղաքին՝ Թորոսի։ Եւ երկոքեանն ունէին խորհուրդ զմիմեանս կորուսանել։ Եւ յաւուր միում Թորոս զԸէպլն ՚ի ճաշ հրաւիրեաց. և հանեալ զնա արտաքոյ քաղաքին որ կոչի Արծիծի վանք, ուր քարէ սիւնն կայ հանդէպ կլային, գաղտ ՚ի միմեանց։ Եւ յորժամ Ըէպլն ած արար զօրացն իւրոց սպանանել զԹորոս, հասին փաղփաղակի զօրքն Թորոսայ և սպանին զԸէպլն։ Եւ արար Թորոս ժողով ՚ի վերայ աւագ կլայ-ին Ըէպլոյ, և կամեցաւ պատերազմաւ առնուլ զնա։ Եւ էր Սալման ոմն բերդապահ ՚ի վերին կլայն, և նեղեաց Թորոս զՍալման սաստիկ պատերազմաւ. եւ անձարա-կեալ Սալման եւ առաքեաց առ ՙԱլորոսլ, որ էր մեծ ամիրայ Տաճկաց որ նստէր ՚ի Մուփարկին (68), և տայր զկլայն Ուռհայոյ ՚ի նա. և ՙԱլորոսլ առաքեաց ՚ի կլայն Ուռհայոյ զՊալէլ—ուայիան (69) հազար ձիաւորով, և տարաւ զՍալման առ ինքն կնաւ և որդւովք, և արար իւր մեծ պարգեւք։ Իսկ Թորոս այլ ինչ ոչ կարաց առնել, այլ նենգութեամբ միաբանեցաւ ընդ Պալէլ—ուայի-ւին գաղտ և խորհէր սպանանել զնա. զոր իմացեալ Պալէլ, և մինչ էին ՚ի գինարբու-ւսն արտաքոյ քաղաքին, սպանանէր Պալէլն

զամիրայն Ուտայր, և տիրեաց ամենայն քաղաքին Ուռհայոյ։ Յայնժամ կին Ուտայրայ յորժամ ետես թէ սպանաւ Ուտայր, քաջապէս յարեաւ 'ի վերայ Պալէլին, և կապեաց սեւանչանակ և մտաւ ճիչկան յամենայն ազգն Արապկաց և ասէր, եթէ « Բուրթ ազգն եկին և առին զհայրենի քաղաքն Արապկաց, և սպանին զայրն իմ զամիրայն Ուտայր »։ Եւ այսու արար ժողովս բազումս, և յարուցեալ գայր 'ի վերայ Պալէլին. զոր իմացեալ Նսրտօլ գայ բազում զօրօք ընդդէմ Արապկաց. և դընաց կինն Ուտայրի ընդդէմ Նսրտօլայ եւ սաստիկ պատերազմաւ դարձուցանէր զնա 'ի փախուստ. և ինքն գայր իջանէր 'ի վերայ Պալէլ-ռայխոյն, և արար 'ի վերայ կըլային ահագին պատերազմ։ Եւ անճարակեալ Պալէլն, եւ իրացն ոչ գտանէր, յուզարկեալ առ Նսրտօլ և ծանուցանէր զվըտանգն և ասէր, թէ 'ի նեղութեան կամ ես և ամենայն Բրդուստան։ Ապա անճարակեալ Նսրտօլ առաքեաց զՍալման 'ի կըլայն Ուռհայոյ, եւ տարաւ զՊալէլն 'ի քաղաքն իւր 'ի Մուփարկին. և կինն Ուտայրի ոչ դադարէր զամենայն աւուրսն պատերազմել ընդ Սալման։ Յայնժամ ձանձրացեալ

'ի Նմանէ Սալման, և առաքեաց 'ի Սամուսատ առ Մանիակ իշխանն Հոռոմոց, որ անուանեալ կոչէին Գորգ. գրեաց առ նա Սալման և ասէր. “Եթէ առցես 'ի Հոռոմոց թագաւորէն ինձ իշխանութիւն և գաւառըս, ես տաց զՈւռհայ 'ի ձեռս քո”։ Զոր լուեալ Մանիակայ յոյժ ուրախ լինէր, և խոստացաւ նմա մեծաւ երդմամբ զի 'ի թագաւորէն Հոռոմոց կատարեսցէ զամենայն զոր ինչ խնդրեաց։ Եւ տայ նմա հայրենիս եւ իշխանութիւնս իւր և որդւոց իւրոց։ Եւ յայնժամ կոչեաց Սալման զՄանիակ և երետ (ետ) զկլայն Ուռհայոյ 'ի նա։ Եւ գայ Մանիակ չորս հարիւր արամբք և 'ի գիշերի գաղտ գայր 'ի դուռն կլային. և ազդ արարին Սալմանայ զգալն Մանիակայ. և Սալման առեալ 'ի ձեռս իւր զբանալին կլային, և ելանէր առ Մանիակ՝ երկիրպագանէր նմա և տայր զկլայն 'ի Մանիակ, և ինքն 'ի նոյն գիշերին առեալ զկինն և զորդիսն իւրեանց և տանէր 'ի Սամուսատ։ Եւ իբրև լուան զգալն Մանիակայ ազգն Տաճկաց, բազում և ահագին պատերազմ յարուցին 'ի վերայ Մանիակայ, և ժողովեցան 'ի վերայ Ուռհայոյ անթիւ ժողովս, բախեցին ազգն Տաճկաց և ելան 'ի քաղաքէն։

Իսկ Նորիք ամրացան 'ի մեծ եկեղեցին 'ի
սուրբ Սոփի. և զի վասն կանանց իւրեանց
և բազում ոսկւոյ և արծաթոյ, ոչ համար-
ձակեցան մտանել 'ի կլայն, զի մի յափշտա-
կեսցին 'ի Նոգանէն, զի յետ սակաւ մի ա-
ւուրց հրով այրեցան բազումք 'ի Նոգանէ,
և ամենայն ստացուածք իւրեանց. և մնա-
ցեալքն փախստական անկան 'ի կլայն առ
Մանիակ և ապրեցան։ Վասն զի պատերա-
զմ մեծ յարուցին 'ի վերայ Տաճկունքն
եկեղեցւոյն սրբոյն Սոփէի. վասն զի 'ի հիւ-
սիսական կողմանէն մքնայ (մեքենայ) եդին
և ուժգին հարկանէին զեկեղեցին, մինչև
'ի հիմանց խախտեալ եղև. և ապա հուր
ձգէին 'ի ներս, այրեցին զբազումս և ան-
թիւ ստացուածք և մթերք ամենայն բազ-
մութեան քաղաքին այրեալ լինէր։ Եւ զկնի
այսորիկ դղրդեալ և ամենայն տունն Տաճ-
կաց դային 'ի վերայ Մանիակայ. և Մանիակ
չորս հարիւր արամբք կայր 'ի հանդէս մեծ
նահատակութեան 'ի կլայն Ուռհայոյ. Եւ
ամենայն մեծամեծ ամիրայքն յիւրաքանչիւր
գաւառաց հասանէին 'ի քաղաքն Ուռհայ,
Եգիպտոս և ամենայն աշխարհն Բաբելաց-
ւոց։ Եւ ահա գայր Չըպլն 'ի Խառնայ,
այն որ զլսոցն էառ 'ի ծառայէն Մանիակայ

՚ի յՍեւռուղ առնէն որ Թղթաւոր պատճառանօք յանկասկածս գնաց. եւ իբրեւ մօտեցաւ, հարաւ ՚ի վերայ ամիրային և ճըկռոմն հարկանէր զուսոմն, և ինքն որպէս զարծուի ՚ի քաղաքէն խանդակն հասեալ անկաւ. իսկ ձին ՚ի սաստիկ խոցուածոյն սատակեալ լինէր։ Դայր և Սալէհ ամիրայն ՚ի Հալպայ, Մեմոտն (Մահմուտ) ՚ի Դըմըշկայ (Դամասկոս), Մահմէտ ՚ի Հըմսայ, Ազիզն ՚ի Մորայ, Ալի ՚ի Մընպիճայ, Ապոլա (Ապտուլլահ) ՚ի Պաղտատայ, Խուրէշ ՚ի Մուսլայ, Նսրտօլ ՚ի Մուփարկնայ, Ալի ՚ի Ամթայ, Պօշարայ ՚ի Ճեզէրայու, Ահմատ ՚ի Խլաթայ, Զաւրա ՚ի Բաղեշու, Հուսէնն՝ ՚ի Հերայ, Կուտանն՝ ՚ի Սղողմաստայ (Սալմաստ), Ահի ՚ի Արզունէն [70], Ահվար ՚ի Տիգրոնէ [71], Ահլու ՚ի Բասարայու. Կըրէանըն ՚ի Կերկեսերոյն, Շահվար ՚ի Նսեպուն (Մծբին). և այլ եւս քառասուն ամիրայք որ ժողովեցան ՚ի վերայ կլային Ուռհայոյ. և զամենայն ժամանակն ամառնային ներզէին զկլոյն մեծաւ պատերազմաւ։

Եւ յետ բազում աւուրցս կամեցան Տաճկունքն հրով այրել զամենայն քաղաքն և գնալ. զոր բնակիչք քաղաքին մեծաւ աղաչանօք և կաշառօք Թափեցին յայրելոյ ըզ

քաղաքն. և տեսացին՝ եթէ Հռոմք 'ի մէջ Տաճկաց ոչ կարեն պահել իւրեանց քաղաք, առ սակաւ մի ժամանակ թողուն և փախչին, եւ դառնայ ամենայն մարդ 'ի տուն իւր: Եւ հաճոյ թուեցաւ բանքս այս 'ի լըսելիս ամենայն մեծամեծացն Տաճկաց: Եւ յետ բազում նեղութեանց և պատերազմաց գնաց ամենայն զօրքն Տաճկաց 'ի գաւառս իւրեանց. և Մանիակ կայր անդադար 'ի պատերազմի 'ի կլայն Ուռհայոյ. և գաւառացիքն ոչ դադարէին զտիւ և զգիշեր պատերազմել ընդ Մանիակ: Եւ ամենայն արքն ընդ Մանիակումն՝ կային 'ի մեծ նեղութեան, վասն զի հատաւ կերակուր 'ի կլայէն՝ անմուտ լեալ 'ի քաղաքն գտանել[72] իւրեանց կերակուրս: Եւ լուեալ զայս ամենայն թագաւորն Ռոմանոս զոր ինչ արար Մանիակ, յոյժ ցնծալով ուրախ լինէր. և լուան բերկրանօք ամենայն ազգ հաւատացելոց Քրիստոսի: Յայնժամ առաքեաց թագաւորն և տարաւ զՍալման և զորդիս իւր և արար զնոսա փառաւոր իշխանս, և տայր նոցա գաւառս, և եղեն քրիստոնեայք. և ամ յամէ թագաւորն զօրս առաքէր յՈւռհայ, և շինեաց յիւր անուն բերդ, եւ անուանեաց զնա Ռոմանոպօլիս: Իսկ գաւառաց Եփրա-

պինկքն յոյժ 'ի նեղութիւն արկանէին զզօրս Հոռոմոց 'ի Սեւաստեայ ճանապարհին մինչեւ 'ի Ուռհայ. և ամ յամէ անթիւ կոտորած լինէր քրիստոնէիցն, որ ոչ բաւէ բերան պատմել, զի որպէս քարահոսս երեւէին ոսկերք անկելոցն. և Մանիակ կայր 'ի մեծ վտանգի: Եւ գլխի այսորիկ Թագաւորն Ռոմանոս խորհեցաւ շաքկալ հաց արկանել 'ի քաղաքն, և գային 'ի գիշերի վաթսուն հազար Հոռոմ կոնդոռածք, անցանէին ընդ Եփրատ գետն և գային Ուռհայ. իսկ այլ չէին ոչ գիր 'ի գաւառն Ուռհայոյ, բայց միայն Լատարն: Յորժամ հասան մինչեւ 'ի Գարսուր, անկաւ Շիպխայն 'ի վերայ նոցա, և մինչեւ 'ի Դեանաձորն կոտորեաց զվաթսուն հազար կոնդոռածն. և այսպիսի նեղութեամբ կայր Ուռհայ, մինչեւ զօրացաւ քաղաքն, և յաղթահարեաց զթշնամին. և արար Թագաւորն ընդ նոսա սէր, և եղեւ խաղաղութիւն 'ի վերայ Ուռհայոյ. եւ դադարեալ եղեւ հալածանք քրիստոնէից: Նոյն ամենայն եղեւ 'ի Թագաւորութեանն Աշոտոյ Բագրատունւոյ, և 'ի հայրապետութեանն տէր Պետրոսի Հայոց կաթողիկոսի: Եւ յաւուրսն Տախրիկ Սուլտանայ Պարսից տէրութեան առաւ 'ի Տաճ-

*կաց քաղաքն Ուռհայ։ Իսկ յետ այս ամե-նայն անցից և նեղութեանցս և չարչարա-նացս զոր կրեաց քաղքն Սանիակ. փոխեաց զնա Սամանոսն և տայ զՈւռհայ Նշուքա-պայ վրանապահուն Դութի Սեբաստապաղա-տին։*

ԽԴ. *Իսկ ՚ի փոխել Թուականութեանս Հայոց տումարի ամս* ՆՁԱ (1032—1033)*, եղեւ սով սաստիկ ընդ ամենայն երկիր, և բազումք ՚ի մարդկանէ մեռանէին յերեսաց սովոյն, և բազումք վաճառէին զկանայս և զորդիս իւրեանց յաղագս կարօտութեանց հացի. ՚ի բարկութենէ նեղութեանցս ընդ խօսելն ելանէր հոգին ՚ի մարդկանէ։ Եւ այսպիսի օրինակաւ մաշեցաւ երկիր ՚ի սովոյն։*

ԽԵ. *Դարձեալ ՚ի Թվականութեանս մե-րում յամս* ՆՁԴ (1035—1036)*, մեռաւ Սա-մանոս Թագաւորն դառնով նենգութեամբ ՚ի Թագուհւոյն իւրմէ։ Քանզի դեղ մա-հու արբուցանէր անօրէն Թագաւորին և լուծանէր ՚ի կենաց. և նստեալ լինէր յա-թոռ Թագաւորութեան Յունաց Միխայ-լին հրամանաւ Թագուհւոյն իւրոյ՝ դստե-րըն Կոստանդիոյ։*

ԽԶ. *Յայսմ ժամանակի մեռանէր պա-*

քայն Դաւիթ որդի Սենեքերիմայ արքային Հայոց, և տայ զիշխանութիւն հայրենեաց իւրոց 'ի յեղբայր իւր Ատոմ, որ էր լցեալ Ատոմ առաքինութեամբ և արդարութեամբ և սուրբ վարուք 'ի Քրիստոս Յիսուս, լը-ցեալ հեզութեամբ եւ քաղցրութեամբ, ողորմած 'ի վերայ տառապելոց, դարմանիչ աղքատաց և յոյժ սիրելի կրօնաւորական դասուն. և շինող եկեղեցեաց և բազմացու-ցիչ վանորայց։

ԽԷ. Արդ 'ի յամս և 'ի թվականութեա-նըս Հայոց ՆՁԴ (1035—1036), խաղացեալ բազում զօրօք Տաճկաց, և գային 'ի վերայ Ուռհայոյ. և անցան յայնկոյս գետոյն Եփ-րատայ, որով և գերութեամբ աւար հար-կանէին զամենայն երկիրն. և բազում քը-րիստոնեայք վարեցան 'ի գերութիւն յաշ-խարհն Տաճկաց, կոտորեցին զԱյարն եւ զՍեւաւերակն (73), և զամենայն աղբերա-կունքն և զջրագնացսն նորա լցին արեամբ. և այնքան սաստիկ կոտորած էին, որ հոսեալ լինէր երկիրն յարենէ քրիստոնէիցն։ Յայն-ժամ ժողովեցան զօրքն Հոռոմոց և գային 'ի վերայ Տաճկաց. և էր զօրավար եղբայր Միխայլին՝ Թագաւորին Յունաց. և հե-ծելոց բազմութեամբն հասանէր մինչեւ 'ի

քաղաքն Մելտենի. և զարհուրեալ եղեւ և ոչ ելանէր ընդ զօրսն Տաճկաց 'ի պատերազմ։ Եւ լուեալ զայս զօրացն Տաճկաց և դարձան յաշխարհն իւրեանց։ Նոյնպէս արարին և զօրքն Հոռոմոց. ոչ իշխեաց մըտանել յաշխարհ Տաճկաց, և դարձան խաղաղութեամբ յաշխարհն իւրեանց, և 'ի դառնալն առաւել խաւար արկանէին քրիստոնէից քան զզօրսն Տաճկաց։

ԽԸ. Յայսմ տօմարիս և 'ի թվականութեանս Հայոց ՆՁԵ (1036—1037), խաւարեցաւ արեգակն ահաւոր և սոսկալի տեսլեամբ։ Վասն զի՝ զոր օրինակ եղեւ խաւարեալ 'ի խաչելութեանն Քրիստոսի, նոյն օրինակ ծածկեաց զլոյսն իւր և խաւար ըզգեցաւ. և լուսաւորք աշխարհիս 'ի մութն և 'ի սեաւ դարձան, և ամենայն երկիրք իբրեւ զկամար կապեցաւ խաւարաւն. և եղեւ սեւացեալ արեգակն 'ի միջօրէի, և ամենայն աստեղքն առ հասարակ երեւէին որպէս 'ի մէջ գիշերի։ Եւ սաստկացաւ խաւարն և մութն, և գոչեաց առ հասարակ ամենայն արարածք, և հնչեցին ամենայն լերինք և բլուրք, և դողաց սասանելով լերինք և ամենայն ապառաժք, և երերալով ծփայր համատարած մեծ ծովն Ովկիա-

անոս, և սուգ առեալ լայր զամենայն որդիս մարդկան։ Եւ եղեւ 'ի տեսանել զայս ամենայն որդւոց մարդկան, ահաբեկեալ լինէին յերկիւղէն որպէս մեռեալ։ Յայնժամ՝ լայր որդի առ հայր իւր, և լայր հայր 'ի վերայ որդւոց իւրոց. տղայքն զարհուրեալ 'ի յահէն անկանէին 'ի գիրկս ծընողացն. մայրքն աղետեալ սաստիկ ողբմամբ իբրեւ հրով՝ լային զտղայս իւրեանց։ Եւ այսպէս ահաբեկեալ կայր ամենայն արարածք, և յերկիւղէն պաշարեալ կային և ելս իրացն ոչ գտանէին, ընդ. սոսկալի նշանն զարհուրեալ հիմանային, և ահաբեկեալ կային առ հասարակ։ Յայնժամ՝ տէր Պետրոս հայրապետն Հայոց և Թագաւորն Յովհաննէս յուզարկեալ արք փառաւորք առ սուրբ հայրապետն Հայոց Յոհաննէս զոր կոչէին Կոզեռն, վասն զի 'ի նմանէ գիտասցեն զմեկնութիւն մեծ նշանին, զի էր այր սուրբ և զքանչելի ճգնութեամբ զարդարեալ, եւ մեկնիչ հին և Նոր Կտակարանացն Աստուծոյ, լցեալ վարդապետական շնորհօք։ Իսկ որք առաքեցան առ Հայոց վարդապետն, Գրիգոր Մագիստրոսն որդին Վասակայ, և հայկազն մեծն Սարգիս, և այլք ոմանք յազատաց տանն Հայոց և այլք 'ի քահանայիցն.

զի զերկրորդեալն ահաւոր նշանին գիտասցեն ։ Եւ եղեւ իբրեւ գնային առ վարդապետն Հայոց, գտանէին զնա՝ զի դարձեալ կայր 'ի գետինն երեսք 'ի վայր 'ի խոր տրտմութեան, եւ Թացեալ լինէր արտասուօք զգետինն. և 'ի սաստկութենէ լալոյն և 'ի դառն հառաչանաց որ ելանէր 'ի բերանոյ նորա, ոչ ոք իշխէր ինչ հարցանել ցնա. վասն զի տեսանէին զնա 'ի խորին սուգի և յահագին տրտմութեան, և անդադար հեղոյր զարտասուսն և կոծէր զկուրծս իւր ։ Եւ յայնժամ նստան իշխանքն Հայոց մերձ առ վարդապետին Յոհաննէսի մեծի, և զկէս ժամ աւուրն ոչինչ համարձակեցան խօսել և հարցանել վասն ահաւոր նշանին, և լային առ հասարակ ամենայն եկեալքն առ նա ։ Յայնժամ իբրեւ ետես վարդապետն Հայոց զողբումն ամենայն եկելոցն, բացեալ զբերան իւր՝ սկսաւ խօսել հառաչանօք և բազում արտասուօք և սկսաւ լալ զամենայն ազգս հաւատացելոց. լայր և ըզկարգ քահանայական, և զեղծումն սրբութեան սրբոց խորհրդոյն, լայր և զեկեղեցի Աստուծոյ և զ.քակտումն պատուիրանաց որ 'ի նմա ծածկեալ կան աստուածեղէնքն ։ Եւ սկսաւ այսպէս ասել ցիշխանսն Հայոց.

«Ո՜վ փառաւոր որդիք իմ, լուարուք զբանըս զայս 'ի վիրաւոր եւ 'ի վշտագնեալ Յոհաննիսէ. զի ահա այսօր լցան հազար ամ չարչարանաց խաչելութեանն Քրիստոսի, եւ արձակմանն անօրէն Բելիարայ, զոր կապեալ էր զնա Փրկիչն 'ի Յորդանան գետ, զոր յառաջ նշանէն ցուցաւ մեզ յառաջ քան չորեքտասան ամս զոր տեսայք, եւ այժըմ դարձեալ երկրորդեաց, զի նախ երկինք պատառեցաւ եւ երկիրս մթեցաւ։ Ո՜ւ ահա յայսմ ամի լուսաւորքդ խաւարեցան եւ արարածս, վասն զի յայսմ հետէ ամենայն ազգք հաւատացելոց Քրիստոսի 'ի խաւարի շրջելոց են. զի այսուհետեւ խաւարին կարգք սուրբ եկեղեցւոյ Քրիստոսի ամենայն ազգաց հաւատացելոց, թուլանան 'ի պահոց եւ յաղօթից, պակասին յոյս հանդերձելոցն, երկիւղ դատաստանին Աստուծոյ արհամարհի, բառնայ ճշմարիտ հաւատք յամենայն ազգաց, տկարանայ աստուածպաշտութիւն, առեն զպատուիրանն Աստուծոյ, դիմադարձ լինին բանից սուրբ Աւետարանին Քրիստոսի. ամենայն ոք հակառակ գտանին սրբոց պատուիրանաց Աստուծոյ, արհամարհեն զբանս սուրբ վարդապետաց, անգոսնեն եւ զհրամանս կանո-

նաց որոց հայրապետացն, և այնու բազումք անկանէին 'ի բարձրութենէ հաւատոց, և ատեն զդրունս սուրբ եկեղեցւոյ, և 'ի ծուլութենէ պահոց և աղօթիցն՝ կուրանան յաստուածպաշտութեանցն. բազումք մտանեն ընդ լծովն անիծից, վասն զի ոչ հաւանին խրատու աստուածեղէն բանիցն սուրբ առաջնորդացն: Որդիք անիծանելն 'ի ծնողաց իւրեանց առ 'ի ոչ հնազանդութենէ զաւակաց, ծնողքն չարչարին 'ի ծննդոց իւրեանց. ցամաքեսցի գութ սիրոյ բարեկամաց 'ի հարց և 'ի զաւակաց: Եւ ահա յայսմ հետէ բազում հերձուածք մտանեն յեկեղեցի Աստուծոյ 'ի ծուլութենէ հայրապետաց, վասն զի թուլամորթին և տկարանան և հաւատոյ քննութիւն ոչ առնեն, և կան յիմարեալք: Յաղագս արծաթոյն թողուն 'ի բաց զհաւատն, և պակասին օրհներգութիւնք 'ի տանէն Աստուծոյ. երկիւղ և ահ սոսկալի դատաստանին Աստուծոյ յաւուրն ահաւորի որ լինելոց է՝ փարատեալ խափանին յամենայն մտաց. մոռանան զհատուցումն արդարոց և մեղաւորացն, վասն զի մեղսասէրք և ցանկացողք լինելոց են չար ճանապարհին. փափագանօք երթան 'ի մեղաց ժողովարանն, զի ահա 'ի թագաւորաց

և յիշխանաց և յառաջնորդաց ապականե-
լոց է երկիր։ Առաջնորդք և իշխանք լինե-
լոց են կաշառասէրք և ստախօսք և սու-
տերդմունք. և 'ի ձեռս կաշառոյն թիւրեն
զդատաստանս իրաւանց աղքատին, և յա-
ղագս այսորիկ առաւել բարկանայ Աստ-
ուած 'ի վերայ նոցա, զի զառաջնորդու-
թիւնն և զիշխանութիւնն ընդ երեսաց
վարեն և ոչ ըստ Աստուծոյ. և տիրեալ իշ-
խանաբար 'ի վերայ վիճակին, և ոչ ահիւն
Աստուծոյ հովուել և ուսուցանել, որպէս
պատուիրեալ սուրբ առաքելոյն Պօղոս։
Իշխանք և դատաւորք պոռնկասէրք առա-
ւել քան աստուածասէրք, և ատեցողք լի-
նին սուրբ ամուսնութեան, և փակին ընդ
պոռնկութեամբ ախտին, և սիրեն զկո-
րուստ նմանեաց իւրեանց. մեծարեն ըզ-
մատնիչսն և զգողս, յափշտակեն անիրաւա-
բար զաշխատողաց ինչսն, անողորմ 'ի վերայ
ուղիղ դատաստանաց։ Որդեակք իմ, ա-
հա յայսմ հետէ 'ի հակառակութենէ ա-
ռաջնորդաց փակեալ են դրունք սուրբ
եկեղեցւոյ. և վերանան օրհնութեան կարգն
յամենայն ազգէ. և յաղագս արծաթսիրու-
թեան տան ձեռնադրութիւն բազում ան-
արժանից, և զամենայն պղծեալք ածեն 'ի

կարգ քահանայութեան . և յայնժամ պատարագի Քրիստոս 'ի ձեռն անարժան քահանայիցն , և բազումք անարժանութեամբ հաղորդին 'ի նմանէ , ոչ եթէ 'ի փրկութիւն՝ այլ 'ի դատապարտութիւն և 'ի կորուստ հոգւոյն ։ Եւ ուրեք (74) կայ Ճշմարիտ պատարագող Քրիստոսի սուրբ խորհրդոյն յազգս ազգս , որ 'ի ձեռաց նոցա ծաղրմի Աստուած աշխարհի ։ Որդեակք , զսուրբսն և զառաքինիսն վիրաւորեն , և զանարատն դարձուցանեն 'ի քահանայութենէ առ 'ի չունելոյ արծաթ , ոչ տան զձեռնադրութիւնն ։ Եւ որպէս ասացաք՝ յառաջ քան զչորեքտասան ամն լինելոյ միւսումն նշանին , եթէ պակասին բազումք 'ի հաւատոց աստուածպաշտութեանց . վասն զի բազումք 'ի քահանայից և 'ի կրօնաւորաց թուլամորթին 'ի կրօնից իւրեանց . լինելոց են ցանկասէրք , ախտից փափագողք , որոճալով որոճեն զերգըս դիւականս . կրօնաւորք փախչին յանապատէն , և ատեն զսուրբ երամս Ճգնաւորացն , և զվարս առաջին կրօնաւորացն ատեալ անարգեն . լինիցին խանգարիչք կարգաց և կրօնից , փախչին 'ի ձայնէ սաղմոսերգութեանցն Աստուծոյ ։ Այս ամենայն լինելոց է , որդեակք իմ . յաղագս այս յղիա-

նան տաճկորդք աշխարհի արծաթսիրութեամբ, եւ զամենայն անկեալս և զորշեալս 'ի շնորհաց Սրբոյն Աստուծոյ՝ յառաջ կոչեն, եւ ածեն զնոսա 'ի կարգ քահանայական, եւ զամենայն մերժեալսըն գլուխ եւ տաճկորդ կացուցանեն 'ի վերայ ժողովրդեանն Աստուծոյ, և ոչ գիտեն զինչ գործեն, վասն զի կուրանան 'ի սաստկութենէ արծաթսիրութեանն։ Այլ առաւել ունիմ զայս ասել. զի ահա յայտնեալ է մեծաւ խոցմամբ վերաւորեալ է Քրիստոս յանարժան քահանայից՝ քան զխաչիլն և զչարչարիլն 'ի Հրէից, զի պակասն 'ի նոցանէ վճարեալ է, և ընեալ է՝ եթէ «Ընկեր, վասն որոյ մտեր յայս հարսանիս»։ Յայնժամ կապեալ ոտիւք և կապեալ ձեռօք հանեն զնա 'ի խաւարն արտաքին, եւ զոր ժողովեացն՝ կուռի կորստեամբ 'ի վերայ նորա։ Արդեակք իմ, ահա այս ամենայն ըններեալ է 'ի յետին ժամանակն. զի արձակեցաւ սատանայ 'ի հազար ամէ կապանացն զոր կապեաց Քրիստոս խաչիւն իւրով. և երեւեցին Ճշմարիտ հաւատացեալքն Քրիստոսի՝ կալով ընդդէմ նորա 'ի պատերազմն, զի ունի 'ի պատերազմել ընդ սուրբսն որք պատուիրանաւն Աստուծոյ պահպանեալ կան

՚ի կարգս ճշմարիտ խոստովանութեան Քրիստոսի Աստուծոյ մերոյ, որք կան յազգս ազգս։ Այսու հետեւ լինին յարձակմունք այլազգեաց .... որդւոցն Թամայ .... զօրքն Թուրքաց ՚ի վերայ ազգաց քրիստոնէից, և ՚ի սուր սուսերի մաշեցին զամենայն երկիր, աւերով և գերութեամբ անցանէ ամենայն ազգ հաւատացելոց Քրիստոսի. յանմարդ դառնան բազում գաւառք, բառնալոց է զօրութիւնք սրբոց յերկրէ, քակտին բազում եկեղեցիք ՚ի հիմանց, խափանեսցին խորհուրդ խաչին Քրիստոսի. ՚ի բազմանալ անօրէնութեն խափանին տօնախմբութիւնք սրբոցն։ Դրդուին որդիք ընդ հարս, ատեցողք լինին հարք առ որդիս. յարիցեն եղբարք ՚ի վերայ միմեանց, ապանութեամբ և արեան հեղութեամբ ջանան կորուսանել զիրեարս, ուրանան զգութ և զսէր եղբայրսիրութեանն, ցամաքեսցի արիւն եղբայրութեան նոցա, և այսպիսի գործովք հաւատաբակից լինին անօրինացն. և յազգաց անօրինացն ծփի երկիր, և ցօղ արեան զգենուն բոյսք անդաստանաց, և զամս վաթսուն սրով և գերութեամբ աւերելոց է երկիր։ Իսկ յայնժամ ելցեն ազգն արիականք որ են Փռանկք, և բազմութեամբ զօրօք առցեն

զաւուրս քաղաքն Երուսաղէմ, և ազատի 'ի ծառայութենէ սուրբ Գերեզմանն Աստուածընկալ։ Եւ զկնի այսորիկ զամս յիսուն տագնապի երկիր սրով և գերութեամբ 'ի զօրացն Պարսից, և եւթնապատիկ առաւել քան զորս յառաջն կրեցին հաւատացեալքս, և ահաբեկին ամենայն ազգք հաւատացելոց Քրիստոսի. և 'ի բազմութենէ նեղութեցն յուսահատին զօրք Հոռոմայեցւոց. բազում անցումն և կոտորած կրեն յազգէն Պարսից, և ընտիր ընտիրս 'ի քաջ զօրականացն խողխողեն սրով և գերութեամբ, մինչև 'ի փրկութենէ յուսահատին զօրքն Հոռոմայեցւոց։ Եւ զկնի յիսուն ամացն սկիզբն առնուն 'ի զօրանալ առ սակաւ սակաւ, և որք ուրեք լինի մնացեալ յառաջին գնդէն. և ամ յամէ յառաջ գան և հաստատին իբրև տեղապահ գոլով աշխարհաց և գաւառաց։ Եւ յայնժամ որպէս 'ի քնոյ զարթուցեալ լինի թագաւորն Հոռոմոց, և հասանէ որպէս զարծուի 'ի վերայ զօրացն Պարսից ահագին բազմութեամբ որպէս զաւազ առ եզր ծովու. եղէ որպէս զհուր բորբոքեալ, և յահէ նորա դողան ամենայն արարածք. և Պարսիկք և ամենայն զօրք այլազգեացն արասցեն փախուստ իւրեանց յայնկոյս մեծ

գետոյն Ջահունեից։ Եւ յայնժամ Թագաւորն Հռոմայեցւոց տիրելով տիրէ ամենայն աշխարհի զամս բազումս. և Նորոգումն առնու ամենայն երկիր, և շինութեան հիմն արկանի, և այնպէս նորանայ որպէս զկնի ջրհեղեղին, և բազմանան ծնունդք մարդկան և անասնոց, բղխեցեն աղբերք զգնացս ջրոց։ Պտղաբերին անդաստանք առաւել քան զառաւել. և այնուհետև անկանի ահն 'ի յաշխարհն Պարսից զբազում ամս, մինչև յորձակեալ զմիմեանս ուտիցեն. և յահէ զօրութեան Թագաւորին Հռոմայեցւոց բազում իշխանք Պարսից ելցեն 'ի քաղաքաց և 'ի գաւառաց իւրեանց, և առանց պատերազմի զփախուստ արասցեն յայնկոյս Ջահուն գետոյ. և զամենայն ժողովս մթերից իւրեանց զամաց բազմաց՝ զոսկւոյ և արծաթոյ, և ամենայն բազմութիւն զանձուցն որպէս պհող կամ զքարակոյտ այնչափ համօրէն տացեն յաշխարհէն Պարսից, և բարձեալ տարցեն յաշխարհն Հռոմայեցւոց. և զամենայն մանկունս և զաղջկունս և զկանայս տարցեն 'ի գերութիւն յաշխարհն Հռոմայեցւոց. աւերակս և անմարդս լինելոց է տունն Պարսից 'ի զօրացն Հռոմայեցւոց, և հաստատի ամենայն իշ-

խանութիւն երկրի ՚ի ներքոյ ձեռին Թա-գաւորին Հոռոմայեցւոց»։ Զայս այսպէս ա-սաց սուրբ վարդապետն Յովհաննէս, և ար-ձակեալ յուղարկեաց զիշխանս Հայոց խա-ղաղութեք, և գնացին յաշխարհն իւրեանց։

ԽԹ. Յայսմ ժամանակի զօրաժողով արար իշխանն Հայոց Գանձի, և գնացեալ էառ ըզ-քաղաքն Ներկրի յարեւելս՝ ՚ի Պարսից, և կո-տորեաց առհասարակ զամենայն քաղաքն և ՚ի սուր սուսերի մաշեաց զօրսն Տաճկաց, և բա-զում աւուրս պատերազմեցաւ ՚ի վերայ կը-լային, և ՚ի մեծ վտանգ արկ զնոսա, և բա-զումք սատակեալ լինէին ՚ի ջրոյ։ Իսկ յայսպի-սի պատերազմ անհոգացեալ կային զօրքն Հայոց և էին ՚ի մեծ գինարբութեան. և Խտրիկն որ էր ամիրայ քաղաքին Ներկրոյ, և սորա տեսեալ զանպատրաստութիւն զօ-րացն Հայոց, գրեաց ՚ի քաղաքակիցսն իւր գալ ՚ի յօգնութիւն իւր։ Իսկ արարին ժողով այլազգիքն, և եկեալ գտին զնոսա անպատ-րաստ. եւ ընդ առաւօտն յարձակեցան ՚ի վերայ քրիստոնէիցն զօրաց, և արարին սաս-տիկ կոտորածս զնոսա. և սպանաւ յաւուրքն յայնմիկ մեծ իշխանն Հայոց Գանձի, եւ մնաց Տաճատ ՚ի տան հայրենեաց իւրոց, որդի նորա և Գանձի (75), և ամենայն զօրքն

խուրեանց անկան 'ի քաղաքին Ներկիլ։

Իսկ 'ի փոխել թագաւորութեանն Հայոց 'ի յամի ՆՁԶ (1037—1038), յարուցեալ տէր Պետրոս կաթուղիկոս Հայոց յաթոռոյ իւրմէ ծածկաբար, և գնաց 'ի Վասպուրական՝ խռովութեան աղագաւ, զի թագաւորն և ամենայն նախարարք և ազատագունդ զօրք Հայոց ոչ լինէին ունկնդիր աստուածային պատուիրանացն։ Իսկ եղեւ տէր Պետրոս 'ի Վասպուրական զամս չորս. և կացեալ էր 'ի Ձորոյ վանքն, զոր շինեալ էր սուրբ Հայրապետն Ներսէս. և անչափելի տրտմութիւն եղեւ աշխարհին Հայոց 'ի թողուլն նորա զաթոռ հայրապետութեանն։ Իսկ յայնժամ թագաւորն Յովհաննէս և ամենայն նախարարք Հայոց գրեցին նենգութեամբ թուղթ առ տէր Պետրոս՝ լինել ունկնդիր ամենայն հրամանաց նորա, և ականջալուր լինել ամենայն լուսաւոր վարդապետութեան նորա. գրեցին զայս հանդերձ մեծամեծ երդմամբ, և զիշխանսն Հոռոմոց որք եկեալ էին կողմնապահք՝ կացուցանէին զնոսա միջնորդք։ Իսկ լուեալ տէր Պետրոս սուտ երդմանն նոցա, դառնայր յաթոռ իւր։ Իսկ եղեւ յորժամ մըտանէր 'ի քաղաքն Անի, հրամանաւ թա-

զաւուրսն Յովհաննէսի արգելական արարին զնէր Պետրոս զտարի մի և զամիսս հինգ. և առաքեաց Թագաւորն 'ի վանքն 'ի Սանահին և ետ բերել զմեծն Դէոսկորոս զհայր վանիցն: Նա եկեալ նա և կացեալ հակառակ տէր Պետրոսի. և նստուցին զնա կաթողիկոս յաթոռ հայրապետութեանն Հայոց ըզտարի մի և զամիսս երկու, և ոչ ըստ Աստուծոյ հրամանացն. և ահա կարի յոյժ խաբեալ եղեւ մեծ հռետորն Դէոսկորոս, և կորոյս զանչափ պատիւն զոր ունէր, եւ ոչ ոք ընդունէր զձեռնադրութիւն նորա որպէս օրէն է սուրբ Աթոռոյն. և ոչ քարոզեցաւ անունն նորա 'ի մէջ եկեղեցեաց ընդ այլ հայրապետսն. վասն զի անարժան համարեցան զնա այնր պատուոյ. և եղեւ սուգ մեծ 'ի վերայ տանն Հայաստանեայց. և 'ի ձեռնադրութեանն նորա ոչ ԺԲ· ժողովեցան եպիսկոպոսք և քահանայք և հայրապետք, այլ նա յանդգնեալ ըստ սրտին խորհրդոյն և զբաղումս անարժանիցն ձեռնադրեաց յեպիսկոպոսութիւն. այլ և որք վասն յայտնի յանցանաց իւրեանց մերժեալ էին յաթոռոյ յառաջին հայրապետացն, զամենեսեան զնոսա յառաջ կոչեաց: Իսկ եպիսկոպոսքն և վարդապետքն Հայոց առ-

խարհին նզովիւք փակեցին զԹագաւորն և
զամենայն նախարարքն Հայոց վասն հակա֊
ռակութեանն որ եղեւ 'ի մէջ եկեղեցւոյն։
Իսկ յայնժամ Թագաւորն և իշխանքն Հայոց
արտաքսեալ 'ի յահէն անիծիցն, կամեցան
դարձուցանել զտէր Պետրոս յաթոռ իւր.
և նա զաւուրս բազումս ոչ առնոյր յանձն,
և ամենեքեան խնդրէին թողութիւն 'ի նը֊
մանէ, և նա պնդեալ կայր. յայնժամ գը֊
րեաց Թագաւորն թուղթ և ամենայն իշ֊
խանքն Հայոց 'ի յԱղուանս, և կոչեցին ընդ֊
զկաթողիկոսն Աղուանից աշխարհին զտէր
Յովսէփ, զի գայցէ 'ի բարեխօսութիւն և
'ի հաստատութիւն տէր Պետրոսի։ Զօր ընդ֊
ունեալ տէր Յովսէփ, առնու զեպիսկոպո֊
սունսն Աղուանից աշխարհին եւ գայ 'ի
հաստատութիւն տէր Պետրոսի 'ի քաղաքն
Անի։

Ծ. Իսկ եղեւ 'ի Թուականութեանն
Հայոց ՆՁԷ (1038–1039) ամին լինէր ժո֊
ղով մեծ 'ի քաղաքն Անի, եպիսկոպոսաց,
հայրապետաց, կրօնաւորաց, վարդապե֊
տաց, ազատաց և իշխանաց իբրեւ չորք հա֊
զարաց. որ էր գլուխ ժողովոյն ծերունին
Յովսէփ՝ կաթողիկոսն Աղուանից. և սուգ
մեծ հասուցանէին Դէոսկորոսի, և յորժ

պարտաւորեցին զնա, և մերժեցին 'ի պատուոյ և ընկեցին յաթոռոյ հայրապետութեանն, և զամենայն ձեռնադրեալս 'ի նմանէ ընդ բանադրութեամբ փակեցին, և զի մի ոք զնոսա 'ի կարգ քահանայութեան կոչեսցէ, և հաստատեցին զտէր Պետրոսն յաթոռ հայրապետութեան իւրոյ. և եղեւ խաղաղութիւն սուրբ եկեղեցւոյն Հայաստան աշխարհին. և Դէոսկորոս գնաց 'ի Սանահինն 'ի վանքն իւր, և կայր յայժ ամաչելով ընդ գործս իւր:

ԾԱ. Դարձեալ 'ի թվականութեանս Հայոց յամի ՆՁԹ (1040–1041). եղանէր աստղ մի գիսաւոր՝ ջահաւոր կերպարանօք. և երեւեալ նորա յարեւմուտս կոյս յերեկորէն և յետոյ՝ սողալով գնայր. և եհար զքաղմաստղն եւ զլուսինն, և ինքն աներեւոյթ եղեւ և յարեւմուտս դարձաւ:

ԾԲ. Ի նմին ամին յարեաւ Պուլղարք 'ի վերայ Հոռոմոց, և զօրաժողով արար թագաւորն Հոռոմոց Միխայլն զամենայն աշխարհն Յունաց, և անհամար բազմութեամբ գնայ 'ի վերայ Պուլղարաց. և մեծասաստ բարկութեամբ արար աւար և գերութիւն զբազում գաւառս. և սրով հատանէր մինչեւ 'ի գերութիւն Պուլղարաց. և զօրք Պուլղարաց

ժողով արարին ընդդէմ Թագաւորին Յունաց։ Նա եղեւ յաւուրն յայնմիկ պատերազմ սաստիկ, և լինէր օր մեծ 'ի վերայ երկոցունց կողմանցն, և եղեւ սաստիկ կոտորած յաւուրն յայնմիկ. և յաղթեցին զօրքն Բուլղարաց զօրացն Հոռոմոց, և փախստական արարին զնոսա առաջի իւրեանց, և սրով յարձակեցան զհետ նոցա, և յաւուր յայնմիկ արեամբ ծածկեցաւ ամենայն երեսք դաշտացն. և Թագաւորն Միխայէլ փախստական անկանէր 'ի Կոստանդնուպօլիս. և զօրացան Բուլղարք 'ի վերայ Յունաց, և առին զամենայն աշխարհն իւրեանց, և զերծան 'ի ծառայութենէ Հոռոմոց, և եղեւ խաղաղութիւն մեծ 'ի վերայ ազգին Բուլղարաց։

ԾԴ. Յայսմ ամի մեռաւ Թագաւորն Հայոց Աշոտ Բագրատունի որդի Բագկայ և եղբայր Յովհաննիսի, և մնաց իւր տղայ որդի մի Բագրիկ անուն ամաց երկոտասանից. և բերաւ Աշոտ 'ի քաղաքն Անի. և թաղեցին զնա 'ի տապանատունն առաջին Թագաւորացն Հայոց. և վասն զի 'ի կենդանութեանն իւրում Աշոտ ոչ եմուտ 'ի քաղաքն Անի մինչեւ 'ի յօր մահուան իւրոյ. զի յոյժ երկնչէր Յովհաննէս 'ի յԱշոտոյ, զի էր այր քաջ և հզօր։ Նա եղեւ ըն-

կնի մահուանն Աշոտոյ թուլամորթեցան զօրքն Հայոց, և առեցին զարուեստս պատերազմի, մինչև ընդ լծովն ՚ի ծառայութիւն ազգին Հոռոմոց. նստան ՚ի գինարբուս, սիրեցին զքարբուս և զերգս գուսանաց. հեռացան ՚ի միաբանութենէ միմեանց, և յօգնութիւն իրերաց ոչ հասանէին, և երկիր՝ որ սով անցանէր, նոքա լալականութիւն առնէին և զմիմեանց զկատարածն լային, և զմիմեանս մատնելով (77) ՚ի սուր տանն Յունաց. և եղեն աւերիչք ազգականաց իւրեանց, և ՚ի կողմն հակառակաց իւրեանց դարձան:

ԾԴ. Յայսմ ժամանակիս զօրաժողով արար մեծ ամիրայն Պարսից Ապուսուար իբրեւ հարիւր յիսուն հազար՝ զազգս յանօրինաց, և մեծաւ սրտմտութեամբ յարձակեալ գայր ՚ի վերայ քրիստոնէից. և դառնաշունչ բարկութեամբ մտաւ յաշխարհն Աղուանից ՚ի Դաւթի Անհողինի գաւառին, և բազում վիշտ էած հաւատացելոց. և Դաւիթ երկուցեալ ՚ի բազմութենէ զօրացն այլազգեաց՝ ոչ ելանէր ՚ի պատերազմ: Իսկ անօրէն Ապուսուար էառ զբազում գաւառս և թիմաքերդս չորք հարիւր. և տարի մի կացեալ՝ արար յիւր հնազանդութիւն զմեծ մասն աշխարհին. և կամեցաւ

գալ 'ի վերայ Դաւթի. յայնժամ անձարակեալ Դաւիթ և յուղարկէր առ թագաւորըն Յովհաննէս որ նստէր յԱնի, և ասէր՝ թէ «Ահա Ապուսուար զամենայն գաւառս Հայոց աշխարհիս և գայ 'ի վերայ իմ. եւ եթէ ինչ ոչ օգնես ինձ, և ես երթամ իւր 'ի հնազանդութիւն, և լինիմ իւր առաջնորդ, և խաւար անձեմ գաւառիդ Շիրակայ»: Իսկ լուեալ զայս Յովհաննէս, յուղարկէր Դաւթի արս երեք հազար. նոյնպէս եւ յուղարկեալ 'ի Կապանին թագաւորն, զի և նա տայր նմա արս երկու հազար: Իսկ այսպիսի օրինակաւ սպառնացեալ Ափխազաց թագաւորին, և նա յուղարկէր յօգնութիւն Դաւթին արս չորս հազար. և ինքն Դաւիթ ժողովեալ զիւր զօրսն իբրեւ տասն հազար, և յուղարկեաց առ կաթուղիկոսն Աղուանից և ասէր, եթէ «Այս ազգս անօրինաց վասն քրիստոնէական հաւատոցն գան 'ի վերայ մեր, և կամին զօրէնս խաչապաշտացն խափանել եւ զհաւատս հաւատացեալ Քրիստոսի ջնջել. և ահա արժան է և իրաւունս ամենայն հաւատացելոց ընդդէմ սոցա երթալ և մեռանել 'ի վերայ քրիստոնէական հաւատոցն: Իսկ արդ ժողովեա զամենայն եպիսկոպոսունսդ Հայոց աշխար-

հիւղ որ յԱղուանան են, և 'ի բանակ այսր հասիր. զի ընդ մեզ մեռանիցիք”: Որ և արար խոյս. երկերիւր եպիսկոպոսք գնայր առ Յովսէփ 'ի բանակն քրիստոնէից: Պր-րեաց և 'ի վանորայսն առ հայրսն գալ միաբան ամենայն կրօնաւորքն 'ի զօրսն հաւատացելոցն. և ժողովեաց զամենայն քահանայս Աղուանից աշխարհին և զսարկաւագունսն, և քարոզ կարդաց ընդ ամենայն զաւառսն և ասէր. “Եթէ այր իցէ և եթէ կին, որ ցանկացող է մարտիրոսական մահուն, ահա հասեալ եղեւ յայսմ ամի 'ի վերայ մերում. պիտոյ է Քրիստոս վաղվաղակի առ մեզ հասցէ (78)”: Եւ լուեալ զայս հայր որդւովքն եւ մայր դստերօքն 'ի բանակն հաւատացելոց հասանէին. և լցաւ դաշտն առ հասարակ անթիւ բազմութեամբ իբրև զհօտս հանդերձ գառամբք: Եւ լուեալ զայս Ապուսուար ծիծաղեցաւ 'ի վերայ եղելոցս այս, և խաղայր գայր 'ի վերայ զօրացն քրիստոնէից: Եւ յայնժամ հրամանեաց Դաւիթ քարոզ կարդալ եպիսկոպոսացն և կրօնաւորացն և քահանայիցն, զի ամենայն ոք իւր զէնքն պատերազմի` խաչ առցէ 'ի ձեռս իւր, և միայն զաւետարանն Քրիստոսի, եւ այնիւ ընդդէմ թշնամեաց

տոյն ընթացուք ։ Իսկ յայնժամ ամենայն բանակին խաչ և աւետարան դարձաւ. և ահա մերձեցան զօրք անօրինացն և քաղմութիւն քահանայիցն կային ընդդէմ նոցա։ Իսկ Դաւիթ քան հազարով հաստանէր ՚ի վերայ այլազգեացն արանց քաջաց. երբեւ ճակատ զճակատ հարան, ձայն բարձին քահանայական դասքն միաբան առ Աստուած լալով, որ և հնչեաց երկիրն ՚ի ձայնէն, և առէին. «Արի տէր օգնեա մեզ և փրկեա զմեզ վասն անուանդ քում սրբոյդ»։ Իսկ զօրքն հաւատացելոցն երբեւ զծով մխեցան ՚ի մէջ բանակին անօրինացն, որ և ծածկեցան իսկ։ Յայնժամ քահանայական դասքն շարժեցան միաբան քրիստոնական սուրբ նշանիւքն, և ՚ի վերայ թշնամեացն դիմեալ յարձակեցան, և հուր սաստկագէս ցոլացեալ ՚ի նոցանէ, և եհար զզօրսն այլազգեացն և տահատարակ ՚ի փախուստ դարձան, և զօրքն Հայոց՝ սրով զհետ նոցա, և զաւուրս հինգ անհագին կոտորածով վարեցին զզօրս այլազգեացն, որ և արեամբք ծածկեցան դաշտք և լերինք. առին անթիւ գանձս ոսկւոյ և արծաթոյ և աւարս բազումս, և մնացեալ զօրքն Պարսից մազապուրծ մերկ և բոկ անկան յաշխարհն իւրեանց ։ Իսկ յաւուրս ե-

ըստ տիրանայր Պաւխթ ամենայն գաւառա-ցըն զոր էառ այլազգին, և մեծաւ պարգևւօք յուղարկեաց զամենայն զօրսն որք եկեալ էին 'ի յօգնութիւն իւր. և բաշխէր բազում ինչս յաւարէն՝ եպիսկոպոսացն և քահանայիցն և ամենայն եկեղեցին առ նա, և արձակեաց զնոսա և եղև խաղաղութիւն:

Ու յայսմ ամի ոմն անօրէն և չար իշխան 'ի յազատացն Սենեքերիմայ, գնաց առ Թագաւորն Յունաց և չարաչար մատնեաց զԱտոմ և զԱպուսահլ զՍենեքերիմայ որդիսն և ասէր, եթէ կամին ապստամբել 'ի վերայ քո, և յարուցանել քեզ վիշտս և հալածանս: Ու լուեալ զայս Թագաւորն Միխայլն, հաւատաց ստախօս բանիցն, և առաքեաց 'ի Սեբաստիա զակողութն (79) իւր հնգեստասան հազարօք՝ բերել զնոսա առ իւր, զի մի փախփախիցեն (80). և հասանէր ակողութն զօրօքն 'ի Սեբաստիա քաղաքն: Ու լուեալ զայս որդւոցն Սենեքերիմայ, հիացեալ զարհուրեցան. և տեսեալ ակողութն զիմաստութիւնն (նոցա որում) ոչ էր նման նոցա, բայց նոքա երկնչէին գնալ:

ԾԽ. Յայնժամ Շապուհ իշխանն ասէր ցԱտոմ և ցԱպուսահլ. «Կամիք զի զզօրաժողովս ցիր և ցան ածեմ ընդ երեսս դաշ-

տայ »: Եւ արար զքահս եօթն կրկնակի, և զարկանէր թրով 'ի վերայ և 'ի վայր հեղոյր մանր զերկաթն: Եւ ասեն որդիք թագաւորացն Հայոց. « Մի՞ երկիցի տղայքս, այլ երթամք զհետ կոչնականացն »: Եւ առեալ սուրս քաղուածս զօրապլխին, և գնացին զհետ նորա 'ի Կոստանդինուպօլիս. և 'ի մտանել 'ի քաղաքն դիմեցին լռով 'ի գերեզման թագաւորին Վասլին, և զերդման թուղթն իւրեանց 'ի վերայ գերեզմանին ընկեցին և ասէին՝ եթէ « Դու բերեր զմեզ յաշխարհս Հոռոմոց, և ահա մահու սպառնան մեզ: Դու արա մեզ յասխէն մերմէ, ձիլ հայր մեր »: Եւ լուեալ զայսպիսի իմաստութիւն թագաւորն Միխայլ՝ հիանայր յոյժ, և հրամայեաց զմանիչն կոտուանել:

Ծ2. Ի Հայոց տօմարիս և 'ի թվականութեանս ամի ՆՂ (1041—1042), մեռաւ թագաւորն Հայոց Յովհաննէս եղբայրն Աշշոտոյ, որդի Գագկայ՝ Բագրատունի ազգաւ, և թաղեցին զնա 'ի քաղաքն Անի 'ի գերեզմանս առաջին թագաւորացն Հայոց: Եւ եղեւ իբրեւ լուան զայս սպքն Հոռոմոց, ժողով արարեալ թագաւորն Հոռոմոց Միխայլն, և հասանէր յաշխարհն Հայոց,

և տուար հարկանէր զտունն Հայոց սրով և գերութեամբ։ Վասն զի Յովհաննէս ի կենդանութեան իւրում գիր էր տուեալ Հոռոմոց՝ եթէ զկնի մահուան իմոյ Անի Հոռոմոց լինի, և այնու առնոյր տուրս և իշխանութիւնս 'ի Հոռոմոց զամս հնգետասան։ Եւ զկնի մահուանն Յովհաննիսի այր ոմն յիշխանաց տանն Հայոց, որ էր այր նենգաւոր, անուն Սարգիս Հայկազն (81), ազդ առնէր Հոռոմոց և 'ի տուր տայր զաշխարհն Հայոց, և զգանձատունն առաջին Թագաւորացն Հայոց յափշտակեաց և տարաւ յԱփխազք, բերդամուտ եղեալ. և ամենայն քաղաքն էառ ընդ ձեռամբ իւրով, եւ կամեցաւ Թագաւորել 'ի վերայ Հայոց, զոր ոչ ընդունեցան զնա ազգքն Բագրատունեաց, վասն զի Հայկազն էր։

ԾԷ. Յայսմ ամի բազում անցումն եղեւ տանս Հայոց 'ի ձեռն Պաւլթի Անհաղձի՝ աղգապետին Յովհաննիսի Հայոց արքային։ Սա յարուցեալ 'ի վերայ Թագաւորութեանն Հայոց և մատնեաց 'ի սուր և 'ի գերութիւն զգաւառս քաղաքին, և զայլ անցանէր զօրօք յաշխարհն Հայոց։ Խաղեալ զաշխարհն Աղուանից. և զայր 'ի վերայ աշխարհին Հայոց. բազում նեղութեամբ և

անթիւք կրակով այրեցան 'ի զօրացն նորա. և դարձաւ 'ի յաշխարհն Նշուանից 'ի տունն իւր։

ԾԸ. Յայսմ ամի յարեան Հոռոմք կրկնակի 'ի վերայ աշխարհին Հայոց՝ և առ 'ի չըգոյէ գլուխ զօրացն Հայոց, բազում տեղիք հաւանեցան Հոռոմոց, և վասն զի էր կատարած մեծ 'ի վերայ աշխարհին Հայոց։ Եւ յայնժամ ժողովեցան զօրք Հոռոմոց 'ի վերայ Թագաւորաբնակ քաղաքին Անւոյ հարիւր հազարաց, և բանակ հարկանէին 'ի դուռն քաղաքին Անւոյ։ Յայնժամ ժողովեցան մնացեալք զօրքն Հայոց առ մեծ սպարապետն Վահրամ Պահլաւունին, և խնդրէին ելանել 'ի պատերազմ 'ի վերայ զօրացն Հոռոմոց, վասն զի զօրքն Հոռոմոց սաստիկ հայհոյութեամբ և բազում նախատանօք գային 'ի վերայ պատերազմել։ Յայնժամ մեծաւ սրտմտութեամբ լցեալ լինէին զօրք Հայոց, և բարկութեամբ որպէս ըզգազանս զայրացեալք, և առ հասարակ ելեալ 'ի պատերազմ արք երեսուն հազար հետեւակք եւ ձիաւորք՝ ընդ դուռն որ Ծաղկոցի անուն, և որպէս զկայծակն հեղան 'ի վերայ զօրացն Հոռոմոց, և զայնքան հպարտացեալ եւ զամբարտաւանեալ զզօրսն ընդ կրունկն դարձուցեալ 'ի փա-

խուռն և անողորմ ՚ի բերան սրոյ կոտորէին զնոսա, և ախտաբեկան զգետին որ կայր՝ ՚ի յարեւն դարձոյս. և ՚ի ձայնէ զաղանացեալ զօրացն Հայոց փախստականքն ոչ կարէին փախչել, այլ կային յիմարեալք և մնանեալք ՚ի ձեռս սրոյ։ Իսկ անդ էր տեսանել զահեղ և զմեծ օրն ՚ի վերայ զօրացն Հոռոմոց, ՚ի քան հազարէն հարիւր լինէր մնացեալն։ Յայնժամ ընդ մէջ անցեալ պատանեալ եւ մեծ ապարանքեան Վահրամ Պահլաւունի, և բազում ողոքանօք աղաչէր պատգամաւորութեամբն առ զօրսն Հայոց, և հայցէր կարող հաւանեցուցանել որ զօրքն Հոռոմոց սատակ յետ եղանէին. և այնու զերծեալք լինէին զօրքն Հոռոմոց որ մնացին. և այլ ոչ եւս խնդրեսցին զօրքն Հոռոմոց զքաղաքն Անի, և դարձան ամօթով և գնացին ՚ի Կոստանդինուպօլիս առ Միխայէլն։

ԾԹ. Յայնժամ զարթուցեալ մանուկ միութ և տասն ամաց՝ Գագիկ անուն, ՚ի նոյն շառաւիղէն Բագրատունեաց, որդի Աշոտ արքային, որդւոյ Գագկայ՝ որդւոյ Աշոտոյ՝ որդւոյ Աբասայ՝ որդւոյ Սմբատայ՝ որդւոյ Երկաթոյ (88). Իսկ մանուկս այս Գագիկ էր յոյժ իմաստուն և երկիւղած և աստուա-

ծառէր. և ժողովեցան ամենայն նախարարքն Հայոց առ հայրապետն տէր Պետրոս, և օծին զԳագիկ Թագաւոր 'ի վերայ ամենայն տանն Հայոց շնորհօք Հոգւոյն սրբոյ եւ հրամանաւ մեծ իշխանին, որով և օծեաց զնա սրբակեացն մեծն Սարգիսն (83) որ էր ազգաւ հայկազնեան եւ հայրենեօք Պալհաւունի, որոյ անուն ըստ նախնոյն իւրոյ Գրիգոր Ճանաչի, և էր յազգէն սրբոյն Գրիգորի: Սա երկրորդ Սամուէլ երեւեալ որ օծ զԴաւիթ արքայ 'ի վերայ տանն Իսրայէլի. սա Թագաւորեցոյց զԳագիկ 'ի վերայ տանս Հայաստանեայց, յոյժ բարեպաշտ և աստուածասէր և անպարտելի յիմաստասիրական ջոկն. սա ջանայր իմաստութեամբն իւրով հաստատել զաթոռ Թագաւորութեան Հայաստան ազգին, և հայցէր յԱստուծոյ օժանդակ լինել նմա և ազգին Պալհաւունեաց:

Կ. Յայնժամ Գագիկ 'ի ձեռն զօրաց իւրոց ըմբռնեալ զՍարգիս, և 'ի խաչտանգանս ազգի ազգի արկանէր զնա 'ի նեղ, մինչեւ յոչ կամիցն նորա տիրանայր բերդից և գաւառաց և քաղաքաց և ամենայն գանձատանն հայրենի իւրոյ, զոր յափշտակեաց (Սարգիս): Յայնժամ կամօք բարերարին Աս-

տուծոյ խաղաղանայր զօրքն Հոռոմոց, եւ այլ ոչ յաւելան 'ի խնդրել զքաղաքն Անի, և ոչ այլ պատերազմ յարուցանել ընդ Հայս։ Եւ եղեւ յաջողեալ երկու ամ թագաւորութիւնն Գագկայ շնորհօք Հոգ-ւոյն սրբոյ։ Իսկ յաւուրս յայսոսիկ ժողովել արար թագաւորն Գագիկ, և գնայր խաղայր ընդ աշխարհս հայրենեաց իւրոց, եւ զամենայն անհաւանսն 'ի հնազանդութիւն ածէր, և զթշնամին մեծաւ քաջութեամբ դարձուցանէր, և երթայր քաջութեամբ զօրօք, բանակ հարկանէր յԱյրարատեան գաւառն առնուլ զվրէժխնդրութիւն յազգէն հարաւայնոց։ Յայնժամ սպառազինեալ մեծ իշխանին Գրիգորոյ որդի Վասակայ Պահլաւունւոյ, և երթեալ զօրօքն բանակս հարկանէր 'ի վերայ գետոյն Հուրաստանի մերձ 'ի Բջնի մեծի ամրոցին։ Յայնժամ զօրք այլազգեացն գան 'ի վերայ զօրացն Հայոց. եւ եղեւ պատերազմ սաստիկ, և զօրքն Հայոց յաղթեցին զզօրսն Պարսից. և արարին կոտորածս մեծս 'ի վերայ գետոյն Հուրաստանայ, և զիշխանս Թուրք զօրացն արարին ձերբակալս, եւ մնացեալքն փախստական գնացին 'ի Պարսիկս։

ԿԱ. Յայնժամ յազդմանէ չարին կրկին

շարժն լինէր Յունաց դաւաճանութեամբ եւ կեղծաւորութեամբ սուտ քրիստոնէից Դաւթի Անհաղթին, զոր հարկ եղեւ մեզ զանուն նորա փոխել և ասել Թէ Դաւիհդ, վասն զի 'ի միհն տառապանաց էած զազգս քրիստոնէից, և ինքն հոգւոյն տանջեալ եղեւ 'ի բանսարկուէն, և 'ի միհն կորըս-տեան յաւիտենից տանջանացն մատնեալ լինէր։

ԿԲ. Յայսմ ամի զօրաժողով արար Թա-գաւորն Հոռոմոց Միխայլն զամենայն աշ-խարհն Յունաց, և այլ 'ի Հայոց զօրայն որք ընդ Հոռոմոց իշխանութեամբն էին՝ Սեբաստիա և Տարօն և ամենայն Վասպու-րական. և անթիւ բազմութեամբ հաս-նէր Թագաւորն Միխայլ յարեւմուտս, և գերի առեալ զամենայն աշխարհն Գնդաց, և զապստամբսն ածէր 'ի հնազանդութիւն, և արար իւր հնազանդ զամենայն աշխարհն և դարձաւ 'ի Կոստանդնուպօլիս. և մերձ ընդ մեռանել (84) Թագաւորն Միխայլ։

ԿԳ. Եւ Թագաւորեաց 'ի վերայ Հոռո-մոց փոխանակ նորա քուր (քեռ) որդին իւր որ Կեսառոսն էր, և զամիսս չորս կալեալ զԹագաւորութիւնն՝ և այլ ոչ եւս։ Վասն զի խորհեցաւ խորհուրդս չարս, և անձամբ

անձին իւրոյ. որոգայթս պատրաստեաց, ըստ այնմ թէ՝ «Որ փորէ խորխորատ ընկերի իւրոյ, անձամբ իւրով լցցէ զնա»: Իսկ առ-բա այնչափ հպարտացեալ՝ որ զգործն իւր ոչ իմացաւ. վասն զի զԿիւռապաղատի դաւաճանն զԿոստանդէ կայսերն իբրեւ զքող խուզել համարձակեցաւ, եւ կապանօք աքսորեաց զնա 'ի կղզւոջ. և պատրիարքն զԿոստանդի-նուպոլսի բռնեաց, և եդ զնա կապանօք 'ի բանդ, վասն զի կամեցաւ ազգաւն իւրով ժառանգել զաթոռ թագաւորութեանն, վասն զի էին ազգք պիղծք և անօրէնք և ա-պականիչք աշխարհի: Նա յետ աւուրց ինչ օգնութիւն հասանէր յԱստուծոյ պատրիար-քին, և այլափոխեալ զինքն զգեցեալ 'ի կա-պանաց բանդին և փախստական լեալ ան-կանէր 'ի սուրբ Սոփի, և շարժեալ զամե-նայն քաղաքն Կոստանդինուպոլսի 'ի վերայ Կեսառոսին, և եղեւ ահագին պատերազմ 'ի մէջ քաղաքին Կոստանդինուպոլսի: Նա լինէր յայնմ աւուր սաստիկ պատերազմ և կոտորած 'ի յերկուց կողմանցն և արեան ճապաղիք լինէր յամենայն քաղաքն, և յա-ւուրն յայնմիկ կայր սուրբ Սոփի 'ի մէջ բազում արեանց. և յաղթեաց պատրիարքն Կեսառոսին, կալաւ զնա և զաչս նորա խա-

սասստնկապէս զայլազգիսն և յերկիր Թուա-
լեցուցանէր։ Նա ահա տեսանէր զի առաջ
որդի նորա զերծեալ լինէր յարգելանոցէն
և գայր ՚ի պատերազմ. իբրև ետես Խաչիկ՝
բեկեալ, քանզի առաջ էր և գեղեցիկ. եւ
գայր Խչխան անուննն իբրև զկորիւն առիւ-
ծոյ, և ուժգին բախէր զպատերազմն եւ
առ ախմարտութեանն բաղձալեաս մտանէր։ Նա
խմացեալ զնա Թէ որդի առն քաջին է, փա-
կեցին զնա ՚ի մէջ և կալան սպանին։ Նա
տեսեալ Խաչիկ՝ բեկեալ ողն նորա, և անկաւ
առաւելին ՚ի ձեռաց նորա. և տեսեալ զայն
զօրաց այլազգեացն՝ դիմեցին ՚ի վերայ նո-
րա, կալան զնա և սպանին. և մնացեալքն
փախստականն գնացին ՚ի տունս իւրեանց.
Նա զկնի աւուրց ինչ գային որդիքն Խաչի-
կայ յարեւմտից, զի լուեալ էին զմահ հօրն
իւրեանց և զառաջ եղբօրն, և գային սեւա-
զգեստաւորք, և լացին բազում լալիւն։ Նա
յայնժամ Հասան կալաւ սայիս մի Քուրթ,
որ էր իւր սահմանակից, և տայ նմա հա-
զար դահեկան, և ասէր. «Մուտ ՚ի Հէր
և ՚ի Սալամաստ, և ասա՝ Թէ Թոռնեանն
և ամենայն աշխարհն անմարդ է, զի կայք
պատրաստ. բազում հօտս ոչխարաց և ծառայս
ընդ ձեզ չերթին»։ Նա արար սայիսն այնպէս

Այլ ժողովեցան այլազգիքն արս հնգետասան հազար, եկին մտին 'ի նոյն տեղին. և գայր ռայիսն և պատմեաց Հասանայ և Ը՛նծըղկուն. և ժողովեալ Հասանայ զօրս իւր արս հինգ հազար, և մեծաւ զայրացմամբ իբրեւ զխոցուած գազանն հասանէր 'ի վերայ բանակի անօրինացն: Այլ ձայն տուեալ Հասան արտասուալից գոչմամբ 'ի ճակատ այլազգեացն և ասէր. “Ո՞ւր է այրն այն որ եսպան զհայրն իմ զխաչիկ. յառա՛ջ եկեսցէ”: Այլ ահա գայր մի ոմն յայլազգեացն սեաւ մի և հզօր, և ձայնեալ ասէր՝ թէ “Այս եմ որ սպանի զառիւծն զխաչիկ, և ահա պատերազմու ձինն և զգեստն և իւր նշանակըն և. թուրն զոր ունիմ ես”: Այլ տեսեալ Հասան որդի նորա ելաց, և հանեալ ըղթուրն 'ի պատենիցն եւ որպէս զառիւծ հասանէր 'ի մէջ այլազգեացն, և հարեալ զնա՝ ընդ երկուս պատառեաց, յերկիր ընկենոյր, և առեալ զձին և զնշանակն անվնաս ելանէր: Այսպիսի օրինակաւ ձայն տուեալ բարձր՝ եղբայրն Հասանայ Ը՛ընծղուկն և ասէ. “Ո՞վ է որ եսպան զեղբայրն իմ զԽ՛չկան անուն. եկ՛է յառաջ զի տեսից զնա”: Այլ գայր Պարսիկ մի քաջ, և ձայն տուեալ և ասէր. “Այս եմ որ սպանի զԽ՛չ-

խան անուննն, և ահա իւր ասպիտակ ձին և իւր վառ նշանակն և իւր Թուրն ։ Եւ որպէս կայծակն հասաւ Ճ'նճղուկն 'ի վերայ նորա. և սատակեաց զնա, և առեալ զձին և զնշանակն և գայր առ Հասան. և ձայն տըւեալ Հասան զօրացն և քաջապէս բախեալ 'ի պատերազմ՝ դարձուցին 'ի փախուստ, և կոտորեցին 'ի նոցանէ արս չորս հազար. և դարձան խաղաղութեամբ և մեծաւ ուրախութեամբ, և փոխեցին զանաւ զգեստս իւրեանց ։

ԿԴ. Իսկ 'ի բարձրանալ Թուականութեանս Հայոց ամի ՆՂԲ (1043—1044). Թագաւորեաց 'ի վերայ Հոռոմոց Մոնոմախըն, որ ասէին յանուն Կոստանդին. Յայսըմ ամի եղեւ պատերազմ սաստիկ 'ի վերայ Հոռոմոց, զի իշխանն Մանիակ, այն որ յառաջն էառ զՈւռհա քաղաք, զօրաց ժողով արարեալ 'ի վերայ Մոնոմախին եւ կապեաց Թագ 'ի գլուխն, և արար ժողով զամենայն արեւմուտս, և օգնական կալեալ իւր զաշխարհն Հոռոմայեցոց. և յահէ և յերկիւղէ նորա ժողովեցան առ նա ամենայն արեւմուտք, վասն զի էր յաղթանդամ և քաջ 'ի պատերազմի ։ Յայնժամ Թագաւորն Մոնոմախ արար ժողով զամե-

նոյն ազգն Յունաց և այլ 'ի զօրաց Հայոց աշխարհին, և յարուցեալ գնացեալ 'ի յաշխարհըն արևմտից ընդդէմ Մանիակայ՝ որ 'ի ձեռն քաջութեան իւրոյ խնդրէր զաթոռ թագաւորութեան. և էր երկիւղ մեծ 'ի վերայ զօրացն Հոռոմոց։ Իսկ յառաջ քան զխմբել պատերազմին՝ բարկութիւն Աստուծոյ հասանէր 'ի վերայ արևմտից զօրաց, և յաղթողն Մանիակ յանկարծամահ լինէր, և բարձաւ չարն 'ի միջոյ և եղև խաղաղութիւն մեծ. և ամենայն ապստամբքն փախեան, և զոմանս հնազանդեցոյց, և թագաւորն դարձաւ 'ի Կոստանդնուպօլիս։

ԿԵ. Յայսմ ժամանակիս սկսաւ անօրէնն Սարգիս յառաջ բերել զչար նենգութիւնըն իւր. և ազդ. արարեալ Մոնոմախին և ասէր, եթէ « Կոչեա առ քեզ զԳագիկ 'ի Կոստանդնուպօլիս սիրոյ պատճառանօք, և յայնժամ խաղաղութեամբ առցես 'ի նոմանէ զքաղաքն Անի »։ Իսկ լուեալ զայս Մոնոմախ թագաւորն, և ուրախ լինէր յոյժ, և բուսաւ 'ի սիրտ նորա բոյս չարութեան առ 'ի բառնալ զթագաւորութիւնն Հայոց։ Իսկ գրեաց թուղթ առ Գագիկ արքայ Հայոց հանդերձ մեծամեծ երդմամբ, և այնչափ մաղթանօք՝ մինչև զքրիստոնեական

աւետարանն և զնշանն սուրբ խաչին Քրիստոսի միջնորդս և երաշխաւորս յուղարկեալ ՚ի Հայք, և այսպիսի օրինակաւ կոչէր զԹագաւորն Հայոց վասն սիրոյ և տեսութեան։ Եւ լուեալ զայս Գագիկ և ոչ էառ յանձն գնալ զհետ ստութեան, վասն զի գիտէր զՀոռոմոց նենգութիւնն։ Յայնժամ նենգաւորն Սարգիս և այլք յազատացըն յառաջ մատեան որք բանաստուքն էին առ Մոնոմախին, և քաջալերէին զնա գնալ, և ասէին. «Ով Թագաւոր, վասն էր երկընչիս և ոչ գնաս վասն այսպիսի երդմանցս և միջնորդութեամբ սրբոյ Աւետարանին և սրբոյ Նշանին Քրիստոսի. և յաղագս մեր մի երկնչիր, վասն զի ահա անձինք մեր մեռանին ՚ի վերայ քո»։ Եւ կացուցին միջնորդս զտէր Պետրոս, և արարին երդմունս սաստիկս յաւուր յայնմիկ. և բերին ըզսուրբ խորհուրդն մարմնոյ և արեան Որդւոյն Աստուծոյ և Թանայրին զգրիչն յարիւնն Կենարարին, և արարին երդման գիր հայրապետն և ամենայն իշխանքն Հայոց. Եւյայնժամ գնաց Գագիկ արքայ Հայոց ՚ի Կոստանդինուպօլիս առ Թագաւորն Մոնոմախ։ Եւ ամենայն քաղաքն բախեալ ելանէին ընդառաջ Գագկայ Հայոց արքային, մեծ

փառաւորութեամբ տարան զնա առ Թագաւորն՝ որպէս վայել է Թագաւորին, եւ աւուրս ինչ մեծարեաց զնա Մոնոմախն: Այլ յայնժամ աստուածուրաց Նենգաւորքն որք արեամբն Աստուծոյ կապեցին զերդումն սուտ կալի, առաքեն զքառասուն բանալի քաղաքին Անւոյ առ Թագաւորն Մոնոմախ, եւ ՚ի հետ թուղթ՝ թէ Անի քաղաքն եւ ամենայն արեւելք քեզ եղեւ: Այլ կոչեաց Թագաւորն զԳագիկ եւ զբանալիսն ետանն եւ զքաղաքին եւ զթուղթն առաջի նորա եդեալ՝ եւ ասէր ցԳագիկ, եթէ զԱնի եւ զամենայն արեւելք ետուն ՚ի ձեռս իմ: Այլ ծանեաւ Գագիկ զնենգութեան գործքն, յոգւոց եհան արտասուօք եւ ասէր. «Գիտա արարչէ Քրիստոս ընդ իս եւ ընդ նենգաւորսն իմ»: Այլ ասէր Գագիկ ցՄոնոմախն, եթէ «Տէր եւ Թագաւորն ես եմ տանն Հայոց. եւ ահա ես ոչ տամ զՀայք ՚ի ձեռս, վասն զի դու զնա խաբէութեամբ ածեր ՚ի Կոստանդինուպօլիս»: Այլ զաւուրս երեսուն այնդեալ ոչ հաւանեցաւ Գագիկ. եւ յորժամ ելս իրացն ոչ գտանէր, յայնժամ տայր զԱնի ՚ի ձեռս Հոռոմոց. եւ տայր Մոնոմախն Գագկայ ըզԿալօն-պեղատն եւ զՊիզու, եւ ոչ յաւ դարձկեաց զԳագիկ ՚ի քաղաքն Անի, եւ զտունն

հայրենի իւրոյ տայր քերել ՚ի Հոռոմն. և կայր գեղգեղեալ թագաւորն պանդխտեալ ՚ի մէջ անողորմ և չար ազգին Յունաց։ Բայց ուր հասանէր Գագիկ, նեղութիւն մեծ արկանէր ՚ի վերայ ազգին Յունաց պէս պէս խայտառակութեամբ, վասն զի որպէս թագաւոր անհարկութեամբ կայր ՚ի մէջ նոցա և Հոռոմոց. բայց սատրիկ սուգ ունէր ՚ի սրտի իւրում վասն հայրենի աթոռոյն իւրոյ, զոր նենգութեամբ յափշտակեցին աստուածուրաց և նենգաւոր ազգն հեռետիկոսաց։

ԿԶ. Արդ յորժամ փոխեցաւ թուականութիւնն Հայոց ՚ի յամն ՆՂԳ (1044—1045) զօրաժողով արար թագաւորն Մոնոմախ զամենայն աշխարհն Յունաց, և անհագին բազմութեամբ յուղարկեաց զնոսա յարևելքս ՚ի խնդրել զքաղաքն Անի, և կացուցանէր զօրագլուխ զՊառականոմանոսն (86) զայր ներքինի կուրդ գոլով, և գայր զօրօք բազմօք հասանէր ՚ի դուռն Անւոյ։ Եւ զայրկին կամէր գնել (կոյարն) պահապան աշխարհին Հայոց, փոխանակ հզօր քաջին Գագկայ. և Գագիկ այլ ոչ թողու երանել յարևելք։ Իսկ Հայոց ազգն որք էին ՚ի քաղաքն Անի, ոչ հաւանեցան տալ զքաղաքն,

այլ ուղէրով ուղէին զԹագաւորն իւրեանց. և հալածեալ նախատէին զամենայն ազգն Հոռոմոց։ Եւ յայնժամ եղանէին միաբան ամենայն քաղաքն ’ի պատերազմ ընդ զօրսն Հոռոմոց, և լինէր սաստիկ պատերազմ ’ի դուռն քաղաքին Նուոյ, և դարձուցին ’ի փախուստ զզօրսն Հոռոմոց և կոտորելով առաւրին հալածականս, և ալափեցին առ հասարակ զամենայն բանակն նոցա. և դարձան զօրքն Հայոց ’ի քաղաքն Նիի մեծաւ յաղթութեամբ, և գնացին զօրքն Հոռոմոց ամօթով յաշխարհն իւրեանց, և Պառակամանոս ձմերեաց յՆուղթիքն։ Եւ խմացան զօրքն Հայոց թէ Թագաւորն Հայոց այլ ոչ եղանելոց է յարեւելս, և ծանեան զխնդութիւն նախարարացն Հայոց, լցին առ հասարակ ամենայն տունն Հայոց. և առաքին ամենայն քաղաքն ժողով ուր էին գերեզմանք Հայոց ամենայն Թագաւորացն առաջնոց; և անդ լացին զանտիրանալին ազգն Հայոց, լացին և զանկումն Թագաւորութեանն իւրեանց, և կոծ եդեալ առ հասարակ լային զԹագաւորն իւրեանց զՊապին. լացին եւ զամենայն ազգն Արշակունեաց, և անէծքս ցուցադրին կարդային նենգաւորացն Պապկայ։ Եւ յայնժամ անձնապանկեալ հա-

բանծոցս վասն մեղաց մերոց. եւ յամառնայնոյն ժամանակին խաւար եւ մութ լինէր ի վերայ երկրի, մինչեւ արեգակն եւ լուսինն ի կերպս արեան երեւէին, եւ յորժամ ելանէր ի կամարն՝ յխաւարակ էր։

ԺԸ. Յայսմ ամի եւ յաւուրսն աշնանայնոյն խաղաց զօրքն Հոռոմոց եւ գնացին ի վերայ քաղաքին Նծբնայ. եւ ի խնդրել պատերազմին՝ բարկութիւն հասանէր Աստուծոյ ի վերայ զօրացն Հոռոմոց, եւ լինէին պատառեալք յերեսաց այլազգեացն, եւ դարձան ի փախուստ. եւ եղեւ կոտորած մեծ ի վերայ քրիստոնէից, եւ բազումք ի զօրացն Հոռոմոց անկան ի սուր եւ ի գերութիւն, ընդ որ եւ մեծ սպարապետն Հայոց Վահրամ համանդերձ որդւովն իւրով Գրիգորիւ սպանաւ ի մեծ պատերազմին ի Նծբին քաղաքին։

ԺԹ. Յայսմ ամի շարժեալ եղեւ բազկութիւն մեծ ի տանէն Պարսից, եւ ելեալ գայլին ազգք երեք ի տիւանէն՝ ի Տուղրիլ սուլտանէն, Պաւղի, Բուկի, Անազուղի. եւ հասանէին բազում զօրօք յաշխարհն Տաճկաց, եւ անհնարին գերութեամբ գայր բանակ հարկանէր ի վերայ Արեան գեղոյ ի սահմանս Մուսոյ։ Եւ յայնժամ զօրա-

պետն Սամուելոյ որ ասէին Խուրէշ, աներն Սամուէլայ, զօրաժողով արարեալ գայր 'ի վերայ նոցա արապիկ զօրօքն. և արարին պատերազմ սաստիկ յերկոցունց կողմանցն. և յայնժամ Թուրքն յաղթեաց արապիկ զօրացըն և արար փախստական զնոսա, և զկանայս և զորդիս նոցա էառ 'ի գերութիւն. Եւ յայնժամ ամիրայն Տաճկաց Խուրէշ կապեաց սէր Նշանակ և մնաց Ճիչկան յարապիկք, և արար ժողով մեծ և գայր 'ի վերայ Թուրքին, և սաստիկ պատերազմաւ յաղթեաց նոցա, և առեալ զգերութիւնն իւր և զնոցայն. և գնաց Թուրքն փախստական մինչև 'ի Պաղին՝ արարեալ բազում կոտորածս 'ի բազում տեղիս, և 'ի գաւառս Թլխմոյ եղև բազում (արեան) հեղութիւնըս քրիստոնէից: Եւ այսպիսի գերութեամբ զօրքն Թուրքաց դիմեալ երթային յաշխարհն Պարսից, և հասանէր մինչև յԱրճէշ քաղաք Հայոց: Եւ էր անդ զօրավար մի Հոռոմոց՝ որում անուն ասէին Ստեփան կատապան (86), և ամիրայքն Պարսից յուղարկեցին բազում տուրս Հոռոմոց զօրավարին՝ զի տացէ նոցա անց զի գնասցեն յաշխարհն իւրեանց: Իսկ նորա հպարտացեալ եղանէր 'ի պատերազմ 'ի վերայ զօրա-

ցըն Թուրքաց. և յայնժամ յաղթեցին զօ-
րացն Հոռոմոց Թուրքն և արարին սաստիկ
կոտորածս, և կալան զՍտեփան կատապանն
և տարան 'ի Հեր քաղաք, և զկնի բազում
չարչարանացն մեռանէր 'ի ձեռաց ....
ացն, և քերթեցին զմորթ մարմնոյ նորա
և լցեալ զնա խոտով և կախեցին զպարսպէն.
զոր լուեալ ազգի նորա, եկեալ գնեցին ըզ-
մարմինն և զմորթն 'ի տասն հազար դահե-
կան:

Հ. Դարձեալ 'ի Թուականութեանս Հա-
յոց ՆՂԵ (1046—1047) ամին. զօրաժողով ա-
րարեալ Մոնոմախ Թագաւորն Յունաց, և
կացուցեալ զգլուխ մեծ զօրացն իշխան Հո-
ռոմոց՝ որում անունն ասէին Տելլիարի [87]
կուրս և Ներքինի գոլով, և գայր ահագին
բազմութեամբ և անթիւ զօրօք 'ի վերայ քա-
ղաքին Դվնայ, և բանակ հարկանէր 'ի դու-
ռըն քաղաքին. և էր ձմեռային ժամանակ,
և 'ի սաստկութենէ սառնամանեացն և 'ի
բախմանէ յորդաբուխ անձրևացն ոչ ինչ
կարաց առնել, այլ դառնայր անյաղթելի,
այլ խաղայր գնայր 'ի Հոռոմոց աշխարհն:

ՀԱ. Իսկ յորժամ փոխեցաւ Թուականն
Հայոց ՆՂԶ (1047—1048) ամին, դար-
ձեալ գայ Տելլիարին զօրօք բազմօք, և իշխա-

նէր 'ի վերայ քաղաքին Դվնայ. և բազում չարչարանս և տագնապս գործեաց այնմ գաւառին, որով և գերութեամբ ապականեաց զամենայն ազգն Տաճկաց, և դարձաւ յաշխարհն Յունաց խաղաղութեամբ։

ՀԲ. Յայսմ թուականութեանս Հայոց ամի պատրիկ անուն Թոռնիկ ապստամբեաց 'ի վերայ Մոնոմախին, որ է 'ի քաղաքէն Կոստանդնուպօլսէ, այր քաջ և հզօր և պատերազմող. և սորա ժողով արարեալ զամենայն աշխարհն արևմտից և զԳնդից, և ահագին բազմութեամբ գայր 'ի Կոստանդնուպօլիս և 'ի մեծ տագնապ և 'ի նեղութիւնս արկանէր զքաղաքն. և թագաւորն ոչ իշխեաց ելանել 'ի պատերազմ. և այնչափ ձանձրացան քաղաքն Կոստանդնուպօլիս 'ի պատերազմէն, մինչև քարուկրով կալան զդուռն քաղաքին. և այնչափ ահագին արարեալ Թոռնիկ զպատերազմն, մինչև զսուրբ Մնարծամթքն (եկեղեցին) որ կայ արտաքոյ քաղաքին՝ քարիյատակ արարեալ, և զամենայն բարին առ հասարակ 'ի Մելկիանոսն ընկէց՝ զմեծ եկեղեցին զսուրբ վկայիցն։ Իսկ թագաւորն Մոնոմախ և ամենայն իշխանքն քաղաքին Կոստանդնուպօլսի յահէ կալեալ, և երբ իրացն ոչ կարէին գտանել,

և ընդդէմ քաղաքացւոց Թոռնկեայ ոչ կա-
րէին կալ։ Իսկ պատրիարքն և մեծ իշխանքն և
թագաւորն խորհեցան չար խորհուրդ զհան
Թոռնկեայ, և գրեցին երդմունս ահաւորս
և սուտ, և խաբանօք երդուան Թոռնկեայ
դնել զնա Կեսար. և զկնի մահուան Մոնո-
մախին Թոռնիկն լինի թագաւոր. և այսպի-
սի գրեցին և երդմամբ հաստատեցաւ-
ցին զերդմանց նենգութիւնն. և ասէին թէ՝
դատք 'ի գիրս զի զկնի մահուան Մոնոմա-
խին զու նստցիս յաթոռ թագաւորութեան։
Եւ եկեալ պատրիարքն առ Թոռնիկն և քա-
հանայքն և իշխանքն, և երկրպագեալ զեր-
դումն առաջի Թոռնկեայ, և եդեւ սէր և
խաղաղութիւն, և միաբան. ածին զնա 'ի
Կոստանդինուպօլիս, և յետ սակաւ աւուրց
ուրացան զերդումն իւրեանց, և ուրացան
զՄիջնորդն Աստուած՝ որպէս և սովոր են
ազգն Հոռոմոց երդմամբ կորուսանել զամե-
նայն մեծամեծս աշխարհի. և յանձեամ խա-
ւարեցուցին զաչսն Թոռնկեայ զառն քաջի։

ՀԳ. Յայսմ Թուականութեանս Հայոց
ՆՂԸ (1049—1050) ամին, յաւուրս Մոնոմա-
խի կայսերն որ նենգութեամբ և երդմամբ
երբարձ զթագաւորութիւնն Հայոց 'ի յազ-
գէ Բագրատունեաց, յայսմ թագաւորու-

թեանն. և 'ի հայրապետութեան տէր Պետ-
րոսի Հայոց կաթուղիկոսի, զարթեաւ աս-
տուածասաստ բարկութիւնն 'ի տանէն
Պարսից հրամանաւ Տուղրէլ սուլտանին. և
եկեալ երկու զօրապետք բազում զօրօք 'ի
տիւանէ անուրի որք անուանեալ ասէին Ըբ-
րէէմ և Գւթլմուշ, և անթիւ բազմու-
թեամբ գան 'ի յաշխարհն Հայոց, վասն զի
'ի ձեռացն Հոռոմոց գիտացին անտէր եւ
անպաշտպան զամենայն աշխարհն Հայոց.
զի զարս քաջս և զհզօրս քակեալ հանին յա-
րեւելից Հոռոմք, և կուրս զօրապետօք ջա-
նային պահել զաշխարհն Հայոց և զամե-
նայն տունն արեւելից. Եւ ահա յայսմ ա-
մի զօրք . . . . այն հասանէին 'ի հռչակա-
ւորն. և 'ի բազմամբոխ քաղաքն Հայոց որ
կոչի Արծն. և գտեալ անպարիսպ զքաղաքն
և անթիւ բազմութեամբ լցեալ արանց եւ
կանանց, և անհամար չափս ոսկւոյ և ար-
ծաթոյ. Եւ քաղաքացիքն տեսեալ զզօրսն
այլազգեաց՝ միաբան 'ի պատերազմ ելեալ,
և խմբեցաւ շուրջ զեզերօք քաղաքին սաս-
տիկ և ահաւոր պատերազմ. և եղեւ զմեծ-
ցաւ անդաստանքն (88), վասն զի ոչ գոյր
տեղի փախստեան և ոչ օգնականի, միայն ըզ-
մահն ունէին յոյս. և 'ի բազմութենէ . . .

ու․․ այն ձանձրացեալ զօրքն քաղաքին և 'ի փա-
խուստ դարձան. և այլազգիքն սրով յարձա-
կեցան 'ի մէջ քաղաքին. սաստիկ կոտորա-
ծով առ հասարակ 'ի ներքոյ սրոյ անցուցին
զամենայն քաղաքն իբրև բիւրս հնգետասան։
Այլ զոսկւոյ և զարծաթոյ և զդիպակաց ա-
ւելորդ է ասել, վասն զի ոչ արկանէր ընդ
գրով. բայց զայս բազում անգամ լուեալ է
մեր 'ի բազմաց յաղագս քորեպիսկոպոսին`
որ ասէին Կուլթուկ, եթէ զգանձատանն
նորա, տունն նորա (89) ութ հարիւր և մեղ-
կի երամոց ելանէին 'ի տանէ նորա։ Եւ կայր
յայնժամ ութ հարիւր եկեղեցիք ընդ սպա-
տարագով։ Եւ այսպիսի գաւառն կոտորա-
ծիւս և չարաչար մահուամբս սրով անցեալ
վայելուչ և փառաւոր քաղաքն Անին, և կամ
որպէս լալով ասացից` զանցուածս իշխանացն
և զքահանայիցն որք անթաղք կերակուր գա-
զանաց լեալ, և փառաւոր կանայք հանդերձ
աղախնօքն վարեցան 'ի գերութիւն յաշխարհն
Պարսից յանդգնին ծառայութիւն։ Եւ ահա այս
ակներևն եղեւ Հայոց կործանման. լուր` միա-
դիք կատարածիս և անցմանս արեւելից. մի
առ մի ամ յանձէ. վասն զի այս է առաջին
քաղաք որ առաւ սրով և գերութեամբ 'ի
Հայոց։ Իսկ յորժամ լուաւ զչար համբաւս

բիւր և քսան՝ հեծեալս 'ի ձորոց, հետեւակ
պաշտօնեայս երկերիւրս։ Եւ էր զհետ տէր
Պետրոսի Նախնականն եւ լուն 'ի բնաւից
Ուլխաց վարդապետն, եւ ամենագովելին
խաչատուր դպրապետն, և Թադէոս՝ որ էր
այր անպարտելի գրչութեամբ, Գէորգ
Բարնեղեցին և Յովհաննէս Բարնեղեցին.
Մատթէոս Հաղբատացին. Մխիթար Գե-
նայրեցին և Տիրանուն իմաստասէրն Կա-
պանեցին. Մխիթարիկն. Վարդան Անա-
հեցին, Բարսեղն Բաշխատացին, և համա-
վայելուչն և շքեղն տէր Եղիսէ և Բար-
սեղ Նորին եղբայրն. Գէորգ՝ Ջուլահակ ձա-
գըն, և տէր Եփրեմ և տէր Ցնանէ և տէր
Խաչիկ։ Արդ այս ամենայն վարդապետք և
իմաստասէրք և հմուտք հին և Նոր Կտա-
կարանացն Աստուծոյ։ Եւ Ընքն ամենագո-
վելին տէր Պետրոս աւագ հետեւեալ ճա-
նապարհորդութեամբ հասանէր 'ի Կոստանդ-
նուպօլիս։ Եւ յորժամ լուան զգալն Նորա,
դղրդեցաւ ամենայն քաղաքն Կոստանդինու-
պօլիս ընդառաջ տէր Պետրոսի, հանդերձ
մեծամեծօք և ահաւոր փառօք տարան զնա
'ի սուրբ Սոփի, և անդ հանդիպեալ Թա-
գաւորին և պատրիարքին, և իջուցին զնա
'ի փառաւոր տանն։ Եւ հրամայեաց Թա-

գաւորն տալ ծախս տէր Պետրոսի, և յառաջին աւուրն ետուն կենդինար մի. իսկ յերկրորդ աւուրն գնաց տէր Պետրոս առ թագաւորն 'ի պալատն. և լուեալ թագաւորն զգալն՝ ելանէր ընդ առաջ նորա, և հրամայեաց նստուցանել զտէր Պետրոս յոսկի սելլին, զոր 'ի ժամ գնալոյն՝ յինքն առեալ տէր Եղիսէ. իսկ սպասաւորք թագաւորին ջանային առնուլ, և նա ուժգին ոչ տայր. և տեսեալ թագաւորն հարցանէր զպատճառըս չտալոյն: Եւ յայնժամ պատասխանի ետ տէր Եղիսէ և ասէր. «Ով թագաւոր, հայրապետական աթոռ է, և ոչ ոք է արժանի 'ի սմա նստել, բայց միայն տէր Պետրոսի»: Եւ լուեալ զայս թագաւորն՝ և իրաւունս համարեցաւ զբանն զայս զոր ասաց տէր Եղիսէ. եւ ասաց թագաւորն. «Թո՛ղ տուք զառաքելական աթոռդ 'ի դըմա»: Յայնժամ ասէ թագաւորն, տէր Եղիսէ հազար (91) դահեկան է աթոռդ, պահեսցես զդա տեառն քում, զի մի այլ ոք նստցի 'ի դմա»: Եւ այսպիսի փառաւորութեամբ կացեալ տէր Պետրոս 'ի Կոստանդնուպօլիս 'ի մէջ Հոռոմոց զամս չորս, և աւուր աւուր յաւելոյր փառօք և պատուովք 'ի մէջ Յունաց. և յորժամ երթայր 'ի Պա

զաս Թագաւորին, նախ զհայրապետականն գաւազանն յառաջ տանէին. յորժամ տեսանէր Թագաւորն՝ երկիր պագանէր և հրաման տայր մեծամեծաց իւրոց երանել ընդդէմ տէր Պետրոսի։ Եւ զկնի չորս ամաց շնորհէր Թագաւորն և պատրիարքն տէր Պետրոսի բազում ընծայս՝ գանձս և դիպակս ոսկւոյ և արծաթոյ, և ազգի ազգի զարդարանս, և իշխանութիւնս տայր ազատաց նորա. և զքուրորդին իւր զտէր Անանէ առնէր Սինգելոս (92). և զամենայն պատուական զգեստս տուեալ հայրապետին Հայոց, և յուղարկեցին զնա խաղաղութեամբ հանդերձ մեծամեծ տրօք. և ՚ի քաղաքն Անի ոչ ժամանեաց, այլ երթեալ բնակէր ՚ի Սեբաստիա քաղաք առ ազգն Սենեքերիմայ մեծաւ փառաւորութեամբ։

Արդ յորժամ հասանէր զօրք Յունաց ՚ի յարեւելս, Կամենն և Նոօնն (93) և Գրիգոր Վասակայ որդին կոչեցին զհետ իւրեանց զԼիպարիտն զՕրբաց իշխանն, և հասեալ նոքա ՚ի բերդն որ կոչի Կապուտռու, ՚ի տեղին որ Արճովիտ ասի. և լուեալ Թուրքք զօրացն զալեզի առ ին, և բնակեցան Հոռոմոց զօրքն ՚ի յԱրճովիտ։ Եւ յայնժամ եկին զօրք այլազգեացն ՚ի վերայ Լիպարիտին առն քա-

քին. և նորա հանեալ զպահապան գիշերին զքուրորդին իւր զՉորտուանէլն զայր հզօր և պատերազմող, և յայնժամ սկսան զօրքն այլազգեացն 'ի գիշերին պատերազմել, եւ հասանէր ձայն պատերազմին առ Ալփասլանըն՝ թէ «Հասիր, զի զօրք այլազգեացն պատեաց զմեզ»: Եւ ասէր Ալփասլան՝ եթէ «Շաբաթ է, և ոչ է Արացեացս ելանել յաւուր շաբաթու 'ի պատերազմ»: Յայնժամ Չորտուանէլն որպէս զառիւծ 'ի գիշերին բախէր զճակատ այլազգեացն. եւ մինչդեռ վարէր զնոսա, դիպեալ եղեւ նետ մի 'ի բերան նորա և ընդ ծածրակն ելանէր, և այնպէս մեռանէր Չորտուանէլն այր քաջ և հզօր: Եւ յորժամ լուաւ Ալպարիտն զմահ Չորտուանէլին, որպէս զգազան զայրացեալ ելանէր ընդ պատերազմ, և վարեաց զամենայն այլազգիսն ընդ երեսս դաշտացն, և արեան ճախճախիս արարեալ զնոսա: Եւ յորժամ տեսանէր զօրքն Հոռոմոց զքաջութիւն Ալփասլանին, 'ի սուր ետուն զնա և թողին զԱլփասլան 'ի մէջ նոցա և փախեան, վասն զի մի տացէ անուն քաջութեան: Եւ տեսեալ զայն զօրաց . . . . . ացն, դարձան միաբան * 'ի պատերազմ ընդ Արաց զօրացն. և յորժամ տեսա-

Իտալին և Օգոստոսին՝ վասնզի ազգին 'ի հզօր ջնջէ։

ՀԵ. Դարձեալ 'ի թուականութեանն Հայոց ամի ՆՂԹ (1050—1051), եղեւ տարաժամ խռովութիւն 'ի տունն Հոռոմոց, և բազում գաւառք մաշեցան 'ի սուր սուսերի. Եւ եղեւ կատարածք մեծամեծք և աւուրք դառնաշունչք 'ի ձեռն գիշակեր և անօրէն պիղծ ազգին Պածենկաց՝ չար և արեանարբու գազանացն. վասն զի ազգ օձիցն եկին և հարին զխարտեշքն, և խարտեշքն եկին և հարին զՈւզն և զՊածինակն, և միաբան բարբառեցան 'ի վերայ տանն Հոռոմոց, և բազում նեղութիւնս անցուցին ընդ Կոստանդինուպօլիս, և փառաւոր իշխանք մատնեցան 'ի գերութիւն, զորս ոչ կարեմ պատմել զաղէտս թախանձանացն զոր կրեաց տունն Հոռոմոց յամին յայնմիկ. վասն զի գազանացեալս և անողորմ գերեցին զազգն Յունաց. եւ թագաւորն զարհուրեալ ոչ իշխեաց ելանել 'ի պատերազմ, զի անթիւ և անհամար էին զօրք թշնամեացն, և բազում աւուրս կացեալ՝ գնացին յաշխարհն իւրեանց, և այսպէս այնուհետեւ եղեւ խաղաղութիւն աշխարհին Հոռոմոց։

ՀԶ. Իսկ յորժամ բարձրացեալ աւագ-

*անեցաւ թուականն Հայոց ազգիս 'ի յամի* Շ (1051—1052), *մատնեան առ թագաւորին Մոնոմախոս չարաթոյնք և լեզուք նենգաւորք, և մատուցանէին չարախօսութիւնս վասն փառաւոր իշխանացն Հայոց որք 'ի գաւառն Պաղնայ բնակեալ կային, և ասացին թէ անհնազանդ կան հրամանաց քոց. և կամին ապստամբ լինել 'ի քէն։ Իսկ առաքեաց զօրապետս հանդերձ զօրօք 'ի Պաղին, և անիրաւաբար հեղոյր զչարութեան թոյնս իւր 'ի վերայ անմեղաց. և բարկութեամբ սկսաւ ապականել զամենայն գաւառն, եւ զամենայն իշխանսն սկսաւ 'ի փառաց ընկենուլ, վասն զի էր այր պիղծ և չար, որ էր զօրագլուխ սատանայի, որոյ անուն նորա Պետրոս Ճանաչի. և կամեցաւ որ զմեծ իշխանսն զորդիսն Հաբէլի ձերբակալ առնել, զՀարպիկ զայր քաջ և հզօր և զԴաւիթ և զԼեւոն և զԿոստանդին զորս եղբարսն, այսմ օրինակաւ և զայլ իշխանսն։ Յայնժամ ամենայն իշխանքն ծածկաբար խորհուրդ արարին զի ամենայն ոք զիւր ամրոցն բռնեսցէ՝ մինչեւ ծանուցանեն թագաւորին զաւերումն գաւառին յանօրէն Պետրոսէ. և միաբան արարին զերդումն միաբանութեան՝ զի յայդ չարաթու տացէ ամենայն ոք զիւր*

ամրոցն։ Եւ յայնժամ մի ոմն ՚ի միաբանելոցն Թորոսակ անուն՝ տէրն Թլպաղոայ, ուրացաւ զերդումն եւ ազդ արարեալ անօրէն Պետրոսին, եթէ ամենայն իշխանքն միաբանեցան չգալ ՚ի կոչումն քո. և զայս ամենայն ոչ գիտացեալ Հաբելի որդեացն, և որպէս յառաջն տուեալ էին՝ յաւուր շաբաթուն առին զմեծ ամրոցն որ կոչի Արկնի, որ էր մերձ ՚ի գաւառն Թլխմոյ. և այլ ամենայն միաբանքն գնացին ՚ի կոչն Պետրոսին։ Եւ լուաւ զայն զոր արարին որդիքն Հաբելի, առաք ժողով ՚ի վերայ բերդին Արկնոյ զօրս բազումս. և տեսանէր զամրութիւն բերդին և հզօրանայր յոյժ, և ոչ կարէր պատերազմել, վասն զի բարձր էր յոյժ և անառ էր ՚ի թշնամեաց, և ոչ կարաց մերձենալ ՚ի նա։ Եւ յայնժամ խորհեցաւ զայս ինչ չար՝ և ասաց. « Եթէ դու բերցես զգլուխն Հարպկան առ իս, առցես զանձ ոսկւոյ և արծաթոյ բազում, և իշխանութիւնս և մեծութիւնս ՚ի թագաւորէն »։ Եւ լուեալ զայս անդամակիցք և նախանձանօթք իւր որք առ ինքն էին ՚ի բերդն, և խորհեցան խորհուրդ անօրէնութեան զՅուդայի և զկայենի եղբայրասպանին։ Եւ էր մօտ ՚ի բերդին տեղի հակառակ, և Հարպիկն առեալ

տրս և երեւալ պահէր պտեղին, և զաւուրս երեք ոչ իշխեաց ննջել ամենեւին, և տուեն նենգաւորքն. « Աստ էր ոչ ննջես, տէր մեր, զի ահա այսօր անձինք մեր մեռանին 'ի վերայ քո անձինդ »։ Եւ հաւատացեալ նոցա՝ ննջեաց, զի ձանձրացեալ էր յոյժ. և իբրեւ քաղցրացաւ 'ի քունն իւր, յարուցեալ ազգականն իւր հատանէր զգլուխն Հարպկանն զաւն հզօրի և քաջի, և զնոյն գիշերին հասուցանէին զգլուխն առ Պեռոս կատապանն. և սպանողքն ոչ ինչ օգտեցան՝ բայց միայն անէծս ։ Եւ հրամայեաց Պեռոս 'ի ձող ցցեալ զգլուխ Հարպկանն և տանել ընդդէմ դրան բերդին. և 'ի լուսանալն տեսեալ եղբարցն նորա և ծանեան, և վաղվաղակի բացեալ զդուռն և արկեալ հող 'ի վերայ գլխոց իւրեանց, և լալով գային երեք եղբարքն և անկանէին առաջի հատեալ գլխոյ Հարպկանն. և այնչափ կոծ առեալ նոցա, մինչեւ ողբս առեալ լային ամենայն զօրք բանակին ։ Եւ այսպիսի օրինակաւս տիրանայր Պեռոսն ամուր բերդին Սրկնոյ եւ զեղբարսն Հարպկանն զօրդիս Հաբելի տարաւ 'ի Կոստանդինուպօլիս առ Թագաւորն Մնամախ ։ Եւ տեսեալ զնոսա Թագաւորն եւ ամենայն տունն Յունաց,

հիանային ընդ. սոսկալի տեսիլ կերպարանաց նոցա, վասն զի ահաւոր էին տեսլեամբ, և Թիկամբք հանդերձ բարձր էին քան զամենայն տունն Յունաց. և յաղագս գեղեցիկ տեսլեանն ոչ ինչ արարին խրատ նոցա, այլ հրամայեաց անցուցանել զնոսա 'ի կղզի՝ ընդ. Դաւիթ և զԼեւոն և զԿոստանդին, որք քաջք և հզօրք և իշխանք երեւելիք Հայոց։



# ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

---

ՆԵՐԴ մինչեւ ցայս վայրս բազմաջան և աշխատաւոր քննութեամբ գտեալ գըրեցաք զշարագրական գրեալս զհարիւրից ամաց, զորս 'ի բազում ժամանակաց հետաքննեալ հասու եղաք։ Ընդ այնքանեաց տեսողացն և լսողացն որք էին 'ի հին ամաց ծնեալք, և ընդ ընթերցողսն յառաջին պատմագրացն՝ որք ականատեսք էին լեալք ամենայն եղելոցս և նեղութեանցս այսոցիկ զոր վասն մեղաց կրեաց տունն Հայոց եւ ահաւոր։ Զայս բազում անգամ զմտաւ ածեալ եմ, վասն այս յետին ժամանակիս գրել զդառնաշունչ կատարածն, զայս ստուկալի բարկութիւնս զոր կրեաց ազգս Հայոց 'ի գլխաւոր և 'ի սիրտ ազգէն Եղիմեացւոց, Թուրքաց, յեղջերաց խուժանց Հոռոմոց։ Եւ

վասն այսորիկ հարկ եղեւ և 'ի մտաց խորհրդոյս անդադար յուզմամբ իբրեւ զմեծ իմն համարելով՝ գտանել զայս գործս կատարածի. և վասն այսորիկ զօրաժողով արարի և գրեցի մինչեւ ցայս վայր զերեք ազգացս և զհայրապետացս և զայլ պէսպէս քննութեանց զազգայ և զԹագաւորաց՝ զորս յառաջ ասացաք, և զկնի թերեւս ասասցուք մկրզքն կատարածիս զոր ինչ եղեւ յաւուրս հարցն մերոց. որք էին բազում անգամ անտեսալ աչօք իւրեանց: Զոր և իմ իսկ խորհեալ խորհուրդս այս, և զութ ամ անհանգիստ քննութեամբ կացի, և զայս ամենայն յօժարեցի 'ի տեսութիւն և 'ի մատենագրութիւն ածել գրով, վասն զի մի 'ի չարաշուինչ դառնութեան ժամանակին կորիցէ այս ամենայն և մոռասցի: Ես վասն այսորիկ Մատթէոս Ուռհայեցի և վանական՝ զաշխատութեան զգործս իմ ոչինչ համարեցայ. այլ Թողի զայս 'ի յիշատակ սիրողաց ժամանակագրութեանց. զի յորժամ 'ի հանդէս քննութեան ելցեն յաղագս ժամանակաց անցելոցն, դիւրաւ օգտակարեսցեն գտանել զժամ և զժամանակս, և զկատարած բարկութեանն 'ի վերայ ժամանակացն գտանիցեն, և այնու զմտաւ ածեալ յիշեսցեն զաստուածատ

բարկութիւնն՝ զորս վասն մեղացն ընկալաք զհատուցումն յարդար դատաստանէն Աստուծոյ. եւ վասն այսորիկ կողմանց զկորուստ հաւատացելոց, և զխարատս զոր անօրէն ազգաւ խորտակեաց զմեզ տէր Աստուած մեր, և այժմ որ ոչ կամեցաք զպատուիրանսն եւ զխրատսն Աստուծոյ մոռացուցանել ՚ի մտաց մեր: Որդ արժան է միշտ և հանապազ յիշել զխրատսն Աստուծոյ մերոյ. և դարձեալ ՚ի նոյն պատուհաս մեղացն դեգերեալ չարչիմք, զորս ընկալաք ըստ արժանեաց մերոց զհատուցումն: Այս և այլ եւս ունիմք ասել ձեզ ամաց ութանից զաշխատութենէ Մատթէոսի Ուռհայեցւոյ և վանաց երկցու:

ՀԵ. Իսկ ՚ի լինել թուականութեանս Հայոց ՚ի յամին ՇԲ (1053—1054). եղեւ ահաւոր նշան և սոսկալի, և կատարած մեծ ՚ի բարկութենէ երեւեալ ՚ի մեծ քաղաքն Անտիոք, որ ՚ի ներքոյ արեգականն գործեցաւ այս սքանչելիս, որ էր անեղանց ահաւոր և հրաշալի: Եւ եղեւ այս նշանս ահ և դողումն ամենայն հաւատացելոց Քրիստոսի, զոր այժմ մեծաստաս սպառնալեօք յայտնեաց Աստուած զդատաստանն իւր զահաւորն Եւ եղեւ պատճառ բարկութեանն այսպէս:

Իսկ արդ վասն զի ազգն Ասորոց բազում էին ի քաղաքն Անտիոք ոսկւով և արծաթով, լցեալ հարստութեամբ և ամենայն փառաւորութեամբ, և մանկունք նոցա յորժամ երթային յեկեղեցին իւրեանց, տղայք հինգ հարիւր ի ջորւոց նստեալ գային, և ազգն Հոռոմոց ախտացեալ էին յոյժ մեծաչարութեամբ։ Իսկ մի ոմն իշխան յԱսորւոց ազգէն ունէր կապեալ բազում, և յաղագս այսր պատճառանաց լինէր մեծ դատաստան առաջի պատրիարգին Հոռոմոց, և սիրաբար վասն դատաստանին դարձուցին զնա ի հաւատոյ իւրոյ, և կնքեցին զնա Հոռոմ իւր կամաւորութեամբ, և իշխանն զհաւատոն եթող և եղեւ հակառակ մեծ՝ ազգին Ասորւոց. Իսկ յայնժամ մատնեցան Ասորիքն ի մեծ նեղութիւն, վասն զի սկսան հաւատոյ քննութիւն առնել հանապազօր. և յայնժամ լքեալ եղեն ազգն Հոռոմոց, որ և զգործելն ոչ գիտէին, վասն զի զքրիստոսական աւետարանն հրով այրել հրամայեաց պատրիարգն։ Իսկ եղեւ յորժամ ի հուրն դրին զաւետարանն Ասորւոց, ձայն ելանէր յաւետարանէն անտի՝ և ի կրակէն ի դուրս ելանէր. և նոքա երկրորդ անգամ ի կրակն դնէին զաւետարանն, և նա դար-

ձեալ ելանէր 'ի կրակէն ։ Իսկ Նորա կատա-
ղեալ լրութեամբ երրորդ անգամ 'ի կրակն
արկին զսուրբ աւետարանն, և Նա ելեալ
եղև անվնաս ։ Եւ իբրև կրկնեցին (95)
չորրորդ անգամ, յայնժամ ընկալաւ սուրբ
աւետարանն զայրեցողութիւն կրակին 'ի
մէջ հրոյն, և այրեցաւ սուրբ աւետարանն
Քրիստոսի Աստուծոյ մերոյ 'ի քաղաքն Ան-
տիոք 'ի յազգէն Հոռոմոց ։ Եւ եղև յոր-
ժամ դարձաւ պատրիարգն յեկեղեցին և
ամենայն ժողովուրդն 'ի յոյլմանէ անգղոյն,
լցեալ էին ուրախութեամբ՝ որպէս թէ
յաղթեցին չար թշնամեաց ։ Եւ իբրև մտան
յեկեղեցին սուրբ Պետրոսի, գոչեաց առ
հասարակ ամենայն եկեղեցին ահաւոր գո-
չմամբ, և եղև շարժ սաստիկ և դողացոյց
զամենայն քաղաքն Անտիոքացւոց ։ Եւ եղև
'ի միւսում աւուրն անկաւ հուր յեր-
կնից 'ի վերայ եկեղեցւոյն սուրբ Պետրոսի,
և որպէս զլամբար 'ի հիմանցն 'ի վերայ եկե-
ղեցւոյն առ հասարակ բոցբորբեալ լինէր հը-
րով, և որպէս զփայտակոյտ այրեցաւ քարն,
և բոցն բարձրացեալ ելանէր յերկինս. և
պատառեցաւ խորանն և զսեղանն խորհր-
դոյն տարաւ յանդունդս, և զնա սասոր ա-
կքն՝ զոր մեծն Կոստանդիանոս եդեալ էր

՚ի սուրբ Պետրոս ընդ քսան բիւր ոսկւոյ, որ կայր համապազ ՚ի վերայ սրբոյ սեղանոյն ՚ի լուսաւորութիւն գիշերոյն, կլաւ երկիր և այլ ոչ կարացին գտանել։ Եւ այլ քառասուն եկեղեցի ՚ի Հոռոմոցն այրեցան հրով երկնային ընդ սուրբ Պետրոսիւ, և Հոռոմոց կամ՝ Ասորւոց ոչ ինչ եղև վնաս։ Եւ յայժամ այս այսպէս գործեցաւ, անհաւատեալ եղև ամենայն քաղաքն Անտիոքացւոց. և կային ահիւ և դողութեամբ. յայնժամ սկսան առհասարակ ամենայն քաղաքն աղօթս առնել առ Աստուած լալով և բազում հառաչանօք աղաչել զԱստուած. և ելանէր պատրիարգն հանդերձ ամենայն քահանայիւք և սարկաւագօք և կղերիկոսօք և այլ բազում ժողովրդովք արանց և կանանց՝ ծերոց և տղայոց, և ժամօք շրջէին ՚ի քաղաքին զարդարանօք և ամենայն փառաւոր սպասիւք եկեղեցականօք։ Եւ եղև յայժամ հասանէին ՚ի Հոռոմ Ձեյրանն, ՚ի տեղին ուր փոքր կարմունջ կայ ընդ հեղեղադնացքս լերին, յանկարծակի գոչեաց ամենայն գետին. և եղև շարժ ՚ի միջօրէին ՚ի վեցերորդ ժամուն. և ՚ի նոյն ժամայն պատառեցաւ երկիրն, և բացեալ զբերան իւր և զպատրիարգն և զամենայն բազմութիւն քա-

Հանայից և ժողովրդոյն տարաւ յանդուն-
դըս աւելի քան զբիւր մի. և զաւուրս հըն-
գետասան գոյր ձայն աղաղակի նոցա 'ի խո-
րոց անդնդոց. և ապա անշնչացան՝ զի կըն-
քեցաւ երկիրն 'ի վերայ նոցա, որ կան մին-
չեւ ցայսօր, զորս 'ի ձեռն բազմադիմի յան-
ցանացն կրեցին բնակիչք քաղաքին Նախի-
ջացւոց 'ի յարդար դատաւորէն Աստուծոյ.
Վասն զի չէ իսկ արժանի յիշել զգործս ա-
նօրէնութեանն նոցա՝ զոր գործէին եկեղե-
ցականքն և ամենայն դասք հաւատացելոցն
Յունաց 'ի քաղաքն Նախիջ. զի առաւել
բարձրացաւ ծուխ անօրէն գործոցն նոցա
քան զՍոդոմայ և զԳոմորայ, վասն որոյ և
պատուհասն ցուցանէր զփոխարէն հատու-
ցումն նոցա ըստ գործոյն. զի ահա անդ
հուրն հատանէր 'ի սատակումն չարագործա-
ցացն, և աստ զնոյն չարագործան հրով եւ
պատառմամբ անդնդոց բնաջինջ սատա-
կեաց 'ի մեղսասէր քաղաքն Նախիջ., որ և
դեռ իսկ բորբոքեալ կան անպատկառելի
հաւատոք. զի ահա աստուածապաշտութեամբ
զանհաւատիցն և զանօրինացն գործէին ըզ-
գործսն, վասն զի բորբոքեցան 'ի գործս աղ-
տեղիս, զոր և լսողացն ծանր է առ 'ի լսել
և առողջացն կարի զզուելի. Նա զգործողացն

զի՞նչ ասացից, զի մինչ զկին հայելն մեզ ծանր գրեաց Փրկիչն. զարուամոլութիւնն զի՞նչ ասացից, զոր և ինքն տէր հատուցանէր զհատուցումն յԱնտիոք քաղաքին։

ՀԲ. Յամի և ՚ի թուականութեանն Հայոց ազգիս ՇԳ (1054–1055) զարթեաւ ե-զեւ օձ դառնաշունչ և մահաբեր ՚ի վերայ աշխարհին Հայոց, վասն զի շարժեաւ եղեւ յաթոռոյն իւրմէ սուլտանն Պարսից Տուղրիլ, և գայր ահագին բազմութեամբ որպէս զաւազ ծովու. և խաղացեալ անթիւ զօրօք հասանէր ՚ի Հայաստան աշխարհն, իջեալ ՚ի քաղաքն որ կոչի Բերկրի, և պատերազմաւ առեալ զքաղաքն, և երկաթի կապանօք զիշխանսն վարէր ՚ի գերութիւն առաջի իւր, և զայլ քաղաքս սրով մաշեալ դառն մահուամբ։ Նա յարուցեալ որպէս զսեաւ ամպս հրացայթս և գայր հասանէր հանդերձ մահաբեր կարկտիւն, և պատեալ զքաղաքն որ կոչի Արճէշ. և սաստիկ պատերազմ՝ յարուցանէր ՚ի վերայ քաղաքին զաւուրս ութ. և ՚ի բազմութենէ զօրացն ձանձրացեալ քաղաքացիքն ՚ի դառն պատերազմէն, և այնուհետեւ մեծաւ աղաչանօք կային ՚ի հնազանդութիւն ՚ի ձեռն բազում ընծայիւք ոսկւոյ և արծաթոյ՝ ձիոց և ջորւոց. և սիրոյ սկիզբն արարին մեծաւ պաղատա-

նօք և ասացին . «Ո՛վ աշխարհակալ սուլտան, երթ և առ զքաղաքն Մանծկերտ, և յայնժամ՝ մեք և ամենայն աշխարհն Հայոց քեզ լիցուք 'ի ծառայութիւն »: Եւ լուեալ զայս Տուղրիլ սուլտանայ, և հաճոյ թուեցաւ նմա ամենայն բանքս այս . և յարուցեալ բազմութեամբ զօրօք իւրովք հասանէր 'ի քաղաքն Մանծկերտ, և էր որպէս զօձ լցեալ ամենայն չարութեամբ : Յայնժամ բանակ հարկանէր և պատէր շուրջ զքաղաքաւն, և իջանէր 'ի տեղին որ Պարապլուխն կոչէին, և անդ օթեւանս արարեալ : Իսկ յորժամ բաժանէր առաւօտն, հրամայէր հարկանել պատերազմողական զփողն . և ահա անդ էր տեսանել զահաւոր օրն և զդառն 'ի վերայ քրիստոնէից, յորժամ պատեաց զքաղաքն Մանծկերտ . զի յորժամ՝ ձայնք և հնչիւնք պատերազմողականացն փողոց հարկանէր և առ հասարակ ձայնք գոչմանց զօրաց պատերազմողականացն զպարիսպն առ հասարակ դողացուցանէր : Իսկ այժմ՝ և վասն քրիստոնէից քաղաքին զի՞նչ ասացից . որք արիաբար նահատակեալք միաբան ամենայն բազմութեան քաղաքին, որք կային ընդդէմ անվճարելի պատերազմացն : Եւ էր զօրապետ քաղաքին իշխանն Հոռոմոց Վասիլ

որդի Եպուքապայ (96), այր բարի և աստուածապաշտ։ Սա զօրացուցանէր զամենայն քաղաքն մեծաւ զօրութեամբ, և առ հասարակ 'ի հոգս արկանէր զամենայն քաղաքս՝ զայրս և զկանայս զքաջասիրտս, և խոստանայր 'ի Թագաւորէն ամենեցուն փառս և իշխանութիւնս, և զտիւ և զգիշեր ոչ դադարէր 'ի քաջալերել և յորդորել զամենայն քաղաքն։ Իսկ զօրք այլազգեացն ոչ դադարէին 'ի պատերազմելոյ զքաղաքաւն աւուրս, և ապարին գետնափոր 'ի ներքոյ գետնոյ, վասն զի այնիւ առնուցեն զքաղաքն, և իմացեալ զօրք քաղաքին փորեցին հանդէպ նոցա և կալան զամենայն փորողքն, կալան և զանհերին սուլտանին որոյ անուն Ասկայծամ (Ասկէծամ) ասէին, և հանեալ 'ի վերայ պարսպին և սպանին զնոսա. և տեսեալ սուլտանն յոյժ վիրաւորեալ լինէր, և յայնժամ առաքեաց 'ի Բաղէշ և ետ բերել զբաբանն զոր Ասխլ Թագաւորն արարեալ էր յաղագս Հերոյ Հնդեստանան օղլու (97), ահաւոր և զարմանալի։ Եւ յորժամ կանգնեցաւ անօրէն բաբանն, սասկաց ամենայն քաղաքն, և զառաջինն որ եհար՝ երեք այր սպան. և զկրծապահն 'ի քաղաքն ձգեաց. և յայնժամ երեց մի յայտնեալ 'ի քաղաքին և 'ի շտապոյ դրեալ մեքենայ մի ընդդէմ

Նորա և յառաջին քարէն հարկանէր զբաբանն և բեկանէր խաղակն. և զօրացաւ քաղաքըն, վասն զի ահիւ պաշարեցան։ Եւ յետ աւուրց ամրացուցին ալեգլուխքն զբաբանն, և կազմեցին անմերձենալի յամենայն կողմանց, սկսան հարկանել զպարիսպ քաղաքին մեծամեծ քարամբք, և յայնժամ ահաբեկեալ դողայր երերալով ամենայն քաղաքն։ Յայնժամ Վասիլ ձայն տուեալ առ ամենայն քաղաքն և ասէր. «Ով դք կարացէ ելանել և հրով այրեսցէ զբաբանն, այն առցէ յինէն տուրս բազում ոսկւոյ և արծաթոյ, ձիս և ջորիս, և 'ի թագաւորէն փառս և իշխանութիւնս. և եթէ մեռցի յանօրինաց և լիցի նորա ազգական կամ որդի, նորա եղիցի այն ամենայն»։ Եւ յայնժամ յառաջ եկեալ Պռանգ մի և ասէր. «Ես ելից և այրեցից զբաբանն զայն, և ահա այսօր հեղից զարիւն իմ 'ի վերայ ամենայն քրիստոնէից, վասն զի ես միայն եմ և չունիմ կին կամ որդիք որ լան զիս»։ Եւ խնդրեաց զօրաւոր և քաջ ձի, և զգեցեալ զզրահս և եդեալ սաղաւարտ 'ի գլուխն, և առեալ թուղթ կապեալ 'ի ծայր ըռըմբին և երեք չիչ նաւթ դրեալ 'ի ծոցս իւր, և թղթաւորն պատճառանօք յառաջ ելեալ, և առեալ

աղօթս յամենայն հաւատացելոցն, և զԱստուած օգնական կալեալ գնայր դիմօք 'ի զօրըս այլազգեայն. և զօրք անօրինացն տեսանէին զԹուղԹն և համարեցան զնա ԹըղԹաւոր, և ոչ ինչ խօսեցան։ Եւ էր ժամ օր հասարակ և տօԹ կարի յոյժ, և այր իւրաքանչիւր նինջէր 'ի վրանս իւր, և եկեալ Փռանգն առաջի բաբանին՝ զտեղի առեալ ոչ գնայր, և կարծէին ընդ մեծուԹիւն բաբանին կալ և հիանալ, և 'ի նոյն ժամայն հանեալ զմէկ չիշն և հարկանէր զբաբանն. և որպէս զարծիւ շուռ առեալ զբաբանն, և նա հարկանէր զմիւս այլ չիշն. և դարձեալ շուրջ եկեալ և նա զերեքումն չիշն հարկանէր ըզբաբանն, և ահաւոր բորբոքեցաւ հրով. և Փռանգն դարձաւ 'ի փախուստ։ Եւ զոր ինչ արար՝ տեսին ամենայն բազմուԹիւն բանակին այլազգեացն և յարձակեցան ըզհետ Փռանգին, և նա անվնաս հասանէր 'ի քաղաքն. և բաբանն սաստկապէս այրեցեալ եղեւ, և էր ուրախուԹիւն մեծ ամենայն հաւատացելոցն, և Փռանգն փառաւորեցաւ տրօք ամենայն քաղաքացեացն։ Եւ լուաւ Թագաւորն Սոքման, տարաւ զնա առ իւր, և տայր նմա իշխանուԹիւնըս։ Իսկ սուլտանն հիացաւ յոյժ ընդ գործ

Պռանկին, և խնդրեաց 'ի Սալէն՝ զի տեսանիցէ զնա որ արար զայնպիսի քաջութիւնըն, զի տացէ նմա պարգեւս, զորս ոչ էառ յանձն գնալ Պռանկն։ Եւ սուլտանն զայրացեալ յոյժ և դարձեալ փորելոյ սկիզբն արար, վասն զի 'ի վայր կործանեսցէ զպարիսպն. և քաղաքացիքն քաջացան ընդդէմ՝ առ ոչինչ համարէին զամենայն մեքենայս նորա, արարեալ երկաթի ճանկ և զամենայն փորողսն առեալ հանեալ սատակէին։ Եւ տեսեալ սուլտանն՝ լռեալ դադարեաց, և կայր մեծաւ ամօթով։ Յայնժամ առեալ քաղաքացիքն խոզ մի և եդին 'ի բաբանն և ձգեցին զնա 'ի բանակն սուլտանին. և ձայնեալ ամենայն քաղաքն պհետո և ասէին՝ թէ «Ո՜վ սուլտան, զայդ քեզ կին արա, եւ մենք տամք զՄանձկերս քեզ պռոյգ»։ Եւ լուեալ սուլտանն՝ 'ի բարկութիւն շարժեալ և զքերողսն գլխատեաց, որ զինքն 'ի Մանձկերս բերին. և ինքն մեծաւ ամօթով դառնայր յաշխարհն Պարսից, և ողորմութեամբն Աստուծոյ փրկեցաւ քաղաքն Մանձկերտ յերեսաց ազգին Թուրքայ։

ՀԹ. Դարձեալ 'ի Թուականութեանս Հայոց ամի ՇԴ (1055–1056) մեռանէր Թագաւորն Հոռոմոց Մոնոմախ։ Սա կացեալ

յամս թագաւորութեանն Հոռոմոց զամս չորեքտասան, և թագաւորեաց փոխանակ նորա քենի նորա Կիւրա–Թօտոռն, այն որ անուանեցաւ Նշէխոու (98), և էր քոյր Կիւրա–Զօյի, որքաւէր և կոյս և յոյժ առաքինի. և հրամայեաց ամենայն արարածոց խաղաղութիւն առնել և այրեաց և գերեաց. և արար դարձ ամենայն զրկելոց եւ իրաւունս, և զամենայն բանդարգելսն հրամայեաց ազատել. և սա եհան 'ի բանդէն պ'իշխանսն Հայոց զորդիսն Հաբելի՝ զՀարպկան եղբարսն, եհան 'ի կղզւոյն և մեծափառաւորութեամբ արձակեաց զնոսա 'ի հայրենի աշխարհն իւրեանց 'ի բերդն Սըկնի. և պատուիրեաց այլ մի մեղանչել։ Եւ յայնմ' ամի փոխեն զՊետրոս կաթողիկոսն, և դայր փոխանակ նորա Դեքիսանոսն՝ այր բարի և անուանի, և էր ողորմած այրեաց եւ գերեաց, շինող աշխարհի և ամենայն փառաւորութեամբ զարդարեալ։ Եւ կացեալ յամս թագաւորութեանն Կիւրա–Թօտոռւըն ամս երկու և ամիսս երեք, և փոխեցաւ առ Քրիստոս բարի խոստովանութեամբ. և նստաւ յամս թագաւորութեանն Միխայէլ աղեւորն զամիսս եւթն։

Եւ յաւուրս յայսմիկ եղանէր իշխան ումն 'ի

տանէն Հոռոմոց և անուն նորա Կոմանոս. ոս յարուցեալ ահագին բազմութեամբ և գայր 'ի վերայ Կոստանդինուպօլսի, և բանակ հարկանէր յեզր ծովուն Ովկիանոսի յայսկոյս, և մեծաւ բռնութեամբ խնդրէր զաթոռ թագաւորութեանն Հոռոմոց: Այս եղև 'ի թուականութեանս Հայոց ՇԵ (1056–1057) ամին: Յայնժամ թագաւորն Միխայլ արար ժողով զամենայն աշխարհն արևմտից, և զամենայն բազմութիւնն զօրաց իւրոց անցուցանէր ընդ Ովկիանոս 'ի Խուօպօլիս (99), և գային 'ի վերայ Կոմանոսին. և յայնմ աւուր խմբեցաւ պատերազմ մեծ և ահաւոր 'ի վերայ քրիստոնէիցն. վասն զի բախէին զմիմեանս ուժգին կոտորածով և հեղոյր արիւն բազում հաւատացելոց 'ի վերայ երկրի: Եւ յայնժամ Կոմանոս որպէս զառիւծ գոչեաց մեծաւ զայրացմամբ, և հաւաքեալ բեկանէր զզօրսն թագաւորին Հոռոմոց. և առ հասարակ սրով 'ի փախուստ դարձուցանէր զնոսա. և անողորմ 'ի սուր սուսերի կոտորեաց զամենայն զօրս Հոռոմոց, և փակեցին զնոսա առ հասարակ յեզր Ովկիանոսի մեծի ծովուն. և որպէս զմարախ 'ի հողմոյ թմրեալ, այնպէս թմրեալ լինէին զօրքն Հոռոմոց 'ի սաստկին պատերազմէն, և 'ի յՈվկիանոս լցեալ

մեռանելին. և բազումք այն էին որ դառն սրով ընկալան զմահ: Եւ յաւուր յայնմիկ մե-ռան 'ի զօրացն Հոռոմոց արք պատերազ-մողք հարիւր և հնգետասան հազար. եւ զամենայն իշխանսն առհասարակ կալաւ 'ի գերութիւն (100): Յայնժամ իշխանքն որ 'ի պաղատն էին, իբրեւ տեսին զամենայն կատարածն բարկութեանս եւ անչափ ա-րեանց հեղմունս, խորհեցան տալ զաթոռ թագաւորութեանն Կոմանոսի, և վասն զի մեծ սուգ էած առ հասարակ ազգին Յու-նաց. և յայնժամ ելեալ պատրիարգն և ա-մենայն իշխանքն Կոստանդինուպօլսի առ Կոմանոսն, և արարին ընդ նմա բազում եր-դումն, և տարան նստուցին զնա յաթոռ թագաւորութեանն Հոռոմոց, և ապա եղեւ խաղաղութիւն աշխարհին Յունաց: Բայց աւերումն և յափշտակութիւն բազում ե-ղև յերկիր յայնմ ամին, զի Կոմանոսին դեհն և Մխտայլին զմիմեանս աւերէին, և այսպէս բազմացաւ ներգործեցաւ մինչեւ հաստա-տեցաւ յաթոռ թագաւորութեանն Կոմա-նոսն. և յայնժամ հանեալ հրովարտակ ընդ ամենայն երկիր, և արար խաղաղութիւն աշխարհի: Իսկ Կոմանոսն առաւել մեծա-րեաց զայնոսիկ, որք միամիտ կացին 'ի վերայ

Անիսայլէն, քան զայն որ յիւր վերայ նահատակեցան։ Նոյն եղեւ յառաջ քան զայս գային իշխանքն Հոռոմոց յօգնութիւն Անիսայլէն, Պիզձնիան և Իսպարիան. և յորժամ հասան 'ի Մերի (101), լուան եթէ Կոմնենոսն թագաւորեաց, և 'ի գիշերի փախեան առ հասարակ և անէին ցմիմեանս, եթէ Պիտլաս 'ի Մերձերոյ դառնայցէ։ Նոյն յետ աւուրց ինչ գնայրին առ թագաւորն, և տառապել մեծարեաց զնոսա։ Նոյն հրամայեաց թագաւորն Կոմնենոս դեկան զարկանել յիւր անուն, և գթուղթն հանել 'ի վերայ ուսոց իւրոց, եթէ՝ «Թրով խնով առի զաթոռ թագաւորութեանս դ». ընդ որում Աստուած ոչ հաճեցաւ ընդ բանս այս, նաեւ այլ եւս պէսպէս գործ նենգութեան գործեաց Կոմնենոսն ընդ քրիստոնեայս։ Նոյն յետ աւուրց զօրաժողով արարեալ ահագին բազմութբ և կամեցաւ յարուցանել պատերազմ ընդ ազգն Պանձինկացն. և երթեալ անցանէր ընդ մեծ գետն Տօնաւիս, և գնայր խաղայր առ ապականել զամենայն արեւմուտքն, և ուր հասանէր՝ որպէս զչար գազան մռմռայր 'ի չարութենէ իւրոյ, և ընդ որ անցանէր՝ բազում արիւն առայր հեղուլ. և եղեւ կոծ մեծ յամենայն արեւմուտս, եւս առաւել 'ի

յաշխարհն Բուլղարաց ։ Եւ էր յաւուրսն ամառնային և հասանէր աստուածասաստ բարկութիւնն 'ի վերայ զօրացն Կոմանոսին, զոր ոչ բաւէ բերան զմեծ կատարածն արկանել ընդ գրով, զոր ըստ արժանեացն ընկալաւ ։ Եւ զի ահա ելանէր ամպ յարեւմըտից և գայր 'ի վերայ բանակի Կոմանոսին. և էր ամպն սեաւ և ահաւոր տեսլեամբ, որ ոչ ոք համարձակէր հայել 'ի նա. և եղեւ ճայթմունս և որոտմունս, և հրացայթ փայլատակմունս յարուցանէր, և յայնժամ սկըսաւ 'ի կարկուտս մեծամեծս, և բախեալ հարկանէր զբանակն և սաստկապէս դիպէր ամենայն զօրացն. յայնժամ նոքա մի առ մի փախեան և ելս խրացն ոչ գտանէին ։ Եւտեսեալ Թագաւորն՝ լցաւ բարկութեամբ և յոչ կամաց դարձաւ որպէս փախստական, և ամենայն զօրքն առ հասարակ ցրուեալք լինէին ընդ լերինս և ընդ դաշտս. և անդ էր տեսանել զմեծ կոտորածն զոր կրեցին 'ի բազում հարուածոցն, և անթիւք կորեան, հայր յորդւոյ եւ որդի 'ի հօրէ, եղբայր յեղբօրէ, և Թագաւորն երեք արամբք կորուսեալ եղեւ մինչեւ 'ի Տօնաւիս գետն, ապա եղեւ գտեալ ։ Եւ յորժամ հանդէս արար զօրաց իւրոց, մեծ մասն զօրաց կո-

րեալ էին յերկնից բարկութենէն ։ Իսկ յաղագս ձիոց և ջորւոց, ոսկւոյ և արծաթոյ և այլ կարասեաց աւելորդ է ասել, և կամ զամենայն արք պատերազմի ։ Այլ այնուհետեւ դիտացեալ Կոմանոսն, եթէ այս ամենայն աստուածասաստ բարկութիւն վասն իմոյ յանցանացն եհաս 'ի վերայ քրիստոնէից, զի մեղօք իմովք բարկացուցի զԱստուած. և եկեալ 'ի Կոստանդնուպօլիս և անկեալ առաջի Աստուծոյ խնդրէր զթողութիւն մեղաց իւրոց զոր արար ։ և այնուհետեւ խնդրէր ելանել յաթոռոյ թագաւորութեն և մտանել 'ի կարգ ապաշխարութեան պահօք և արտասուօք ։

2. Այլ եղեւ 'ի թուականութեանս Հայոց ՇԷ (1058—1059) [103] ամին՝ թագաւորեցոյց Կոմանոսն զՏուկիծն, զի յաղագս այնըր գործոյն զոր յառաջն ճառեցաք, գիտացեալ թէ ոչ հաճեցաւ Աստուած ընդ թագաւորութիւնն նորա վասն անմեղ արեանցն զորս եհեղ յազգէ հաւատացելոցն. և եղեւ զի մէկ կողմն անձինն թուլացաւ, և յորժամ ետես զաստուածասաստ բարկութիւնն 'ի վերայ անձին իւրոյ, կամեցաւ զգենուլ զգեստ կրօնաւորութեան և միաւորել 'ի վանք կրօնաւորաց ։ Այլ յայնժամ առաքեաց

'ի կողմն Տաճկաց 'ի քաղաքն Ուռհայոյ, և
բերեալ զտուկ քաղաքին Ուռհայոյ որում
անուն էր Տուկիծ, վասն զի 'ի մեծամե-
ծաց ազգէ էր, և առեալ զԹագն դնէր 'ի
գլուխ Տուկծին և երկիրպագանէր նմա,
և նստոյց զնա յաԹոռ Թագաւորութեանն,
և ինքն գնացեալ յանապատ և եղև վանա-
կան: Եւ Տուկիծն բռնակալեալ 'ի վերայ
Թագաւորութեանն Յունաց և զամենայն
անհաւատս ածէր 'ի հաւանութիւն. և
եղև ուրախութիւն 'ի վերայ ամենայն աշ-
խարհին Յունաց վասն Տուկծին:

ՁԱ. Յայսմ ամի մեռաւ ամենագովելին
տէր Պետրոս կաԹողիկոսն Հայոց, որ գը-
լուխ էր մարմնոյ Հայաստանեայց և սպարիսպ
սրբոյ եկեղեցւոյ: Սա կացեալ յաԹոռ հայ-
րապետութեանն զամս քառասուն և երկու
և յուսով առ հայրս իւր. և ձեռնադրեաց
յաԹոռ հայրապետութեանն զեղբօրորդին իւր
տէր Խաչիկ, որ էր քուրորդի իւր և լցեալ
ամենայն սրբասնունդ առաքինութեամբ և
բարեհամբաւ անուամբ, զարդարեալ հոգե-
ւոք առաքելական և մարգարէական: Եւ
Թաղեցին զտէր Պետրոսն 'ի քաղաքն որ կո-
չի Սեբաստիա, 'ի վանքն սրբոյ Նշանին, հան-
դերձ բազմութեամբ:

Եւ ՚ի նոյն թուականութեանս Հայոց եր-
կրորդեալ յարձակեցան ազգն անօրինաց ՚ի
վերայ հաւատացելոց Քրիստոսի. եւ անհա
ելեալ գայր ՚ի Պարսից նահանգէն ամիրայ մի
մեծ եւ հզօր՝ Դինար անուն, եւ զօրօք բազ-
մօք գայր անկասկած դառնաշունչ բանու-
թեամբ եւ նենգաւոր սրտիւ ծածկեալ զչա-
րութիւն իւր։ Եւ անցանէր անխնայ ՚ի բա-
զում՝ աւերելով, եւ խաղայր գնայր եւ հաս-
նէր ՚ի հռչակաւոր քաղաքն որ անուանեալ
կոչի Սեբաստիա, վասն զի ՚ի բազում ժամա-
նակաց մնացեալ էր քաղաքն Պարսից՝ թէ ան-
չափ է հարստութիւն ոսկւոյ եւ արծաթոյ՝
ականց եւ մարգարտաց եւ դիպակաց։ Եւ էր
քաղաքն անպարիսպ, եւ յորժամ գայր յա-
ռաջ՝ զհարսն (103) էառ եւ կոտորեաց առ
հասարակ զնոսա սրով։ Եւ գայր անցանէր
՚ի Սեբաստիա. եւ եղեւ առաջնորդ զօրացն ա-
նօրինաց որդին Աբուսահլին միաբանեալ ընդ
նոսա. եւ էր յաւուրսն ձմերայնոյ, ՚ի մուտն
յիննակին յորժամ պատեաց զքաղաքն Սե-
բաստիա (104)։ Եւ վասն հռչակաւոր անուանն
որ ընդ ամենայն աշխարհն Պարսից տարա-
ծեցաւ անուն գեղեցկութեան նորա. յայն-
ժամ որպէս սեաւ ամպ շրջանակաւ պա-
տեաց զամենայն քաղաքն առհասարակ. եւ

տեսեալ քաղաքացեացն զահաւոր բարկութիւն, և միաբան 'ի փախուստ դարձան այր և կանայք, և ոչ գոյր տեղի փախստեան։ Յայնժամ հատաւ սէր բարեկամաց և յոյս կենաց յամենայն մտաց, և 'ի դառնաշունչ բարկութեանցն մոռանայր հայր զորդի՝ և որդին զհայր. մայր զդուստր՝ և դուստր զմայր իւր լայր, եղբայր առ եղբայր՝ և սիրելիք առ սիրելիս։ Իսկ յայնժամ լայնատարած դաշտք քաղաքին առ հասարակ 'ի փախուստ եկեալ, և բազմութիւնքն գնային ընդ մէջ Թշնամեացն. և տեսեալ զԹշնամին՝ սակաւ մի զտեղի առին և հիանային ընդ բազմամբոխութիւն քաղաքին, զի էին որպէս զաւազ ծովու անթիւ բազմութեամբ. և ոչ համարձակէին այլազգիքն մինչև փախեան քաղաքացիքն։ Յայնժամ յարձակեցան որսոլ 'ի վերայ քաղաքին, և ամենայն սուրք նոցա առ հասարակ 'ի գործ արեան սկսեալ մխեցան. և առ սակաւ ժամ մի լցեալ արեամբ քաղաքն ամենայն. և ծփայր ծայրէ 'ի ծայր արեամբ քաղաքն Մելտինի, և ոչ ոք էր որ ողորմէր ծերոց կամ տղայոց։ Իսկ անդ էր տեսանել մարմինք փառաւորք և պատուականք որք անկեալք և Թաւալեալք կային 'ի մէջ արեանցն, և տղայքն 'ի գիրկս մարցն մեան առ

մասն հարեալ լինէին, և արիւն և կաթն ընդ միմեանս միաւորեալ խառնեցան։ Եւ ո՞չ կարէ 'ի գիր արկանել զաստուածասաստ բարկութիւնն զոր յաւուր յայնմիկ կրեաց քաղաքն Մելտինի. վասն զի փոխանակ քաղցըր ցօղոյն՝ արիւն ծածկեալ ունէր զամենայն բոյսս դաշտաց անդաստանաց։ Եւ յետ այսչափ կատարածի արեանցն եւ գերութեանց զոր վարէր առաջի իւր 'ի գերութիւն՝ կանայս պատուականս և գեղեցիկս, և մանկունս և աղջկունս վայելուչս, և անհամար դանձս ոսկւոյ և արծաթոյ անթիւս. և յարուցեալ խաղայր ուրախութեամբ եւ դայր յաշխարհն Պարսից, և անցեալ ընդ Եփրատ գետն արար ձմերոց 'ի Հանձիթ։ Եւ յայնժամ զօրքն Հոռոմոց յարձակեցան զհետ Թուրքին. և 'ի հասանել նոցա ոչ համարձակեցան պատերազմիլ ընդ նոսա, այլ դարձան խաղաղութեամբ 'ի Հոռոմս։

Իսկ 'ի ժամանակս գարնանային հասեալ՝ գնաց զօրքն այլազգեաց 'ի գաւառն Տարօն, որ եւ բանակալեալ առ ստորոտ լերինն Տաւրոսի մերձ 'ի Սասուն։ Եւ լուեալ զայս իշխանին Հայոց՝ զօրաւոր և քաջ որդին Մուշեղայ Թոռնիկն, և ժողով արարեալ զամենայն Սասուն՝ և հասանէր 'ի վերայ զօ-

րացն այլազգեաց ։ Յայնժամ զօրք այլազգեացըն հնչեցուցին զփողս պատերազմին և միաբան ելին 'ի պատերազմ ։ Եւ եղեւ օրն այն մեծ և ահաւոր, վասն զի որպէս զջոկս առիւծոց զմիմեանս բախէին յերկոցունց կողմանցն . և յայնժամ գոչեաց քաջն Թոռնիկ, և ձայն տուեալ աջոյ թեւին իւրոյ՝ և հասանէր 'ի վերայ ձախոյ թեւին այլազգեացն և պատառէր զնոսա մեծաւ յաղթութեամբ, և դարձաւ հայեցաւ 'ի վանքն սրբոյ Կարապետին և ուժգին ձայն արձակեալ ասէր. « Գլակայ Վանք, սուրբ Կարապետ, հասիր մեզ յօգնութիւն, և տուր զօրս զայս երեւելի 'ի վերայ հաւատացելոցս ». և միաբան ձայն տուեալ միմեանց և յարձակեցան 'ի վերայ այլազգեացն, և առին զառն և զամենայն աւարն, և դարձուցին զամենայն գերութիւնն . և մնացեալքն այլազգեաց մազապուրծ զերծեալք ամօթով գնացին յաշխարհըն Պարսից ։ Եւ քաջն Թոռնիկ մեծաւ ուրախութեամբ դարձաւ 'ի Սասունք՝ գոհանալով զԱստուծոյ որ ազատեաց զանթիւ բազմութիւնն զՄելտինոյ քաղաքին 'ի ծառայութենէ անօրէն ազգին Պարսից ։ Այս նշանակս վասն Հայոց աշխարհաց էր ։

ՁԲ. Դարձեալ 'ի յայսմ ամի և 'ի նոյն

ձմերային եղեւ նշան ահաւոր և հրաշալի, սոսկալի և մեծ բարկութիւն 'ի վերայ քրիստոնէից. վասն զի յառաջագոյն երեւեալ գուշակ անցման հաւատացելոց Քրիստոսի, զի որպէս 'ի պիղծ գիշէն յառաջագոյն հոտ զազրութեան գայ, այսպիսի օրինակաւ յառաջ քան զկատարածն նշանքն չարաչար երեւէին 'ի վերայ աշխարհին՝ դառնաշունչ հողմն հարաւոյ։ Եւ արդ ահա յաւուր միում յորժամ լուսանայր առաւօտն, և ելանէր ամենայն մարդ 'ի տանէ իւրմէ, տեսանէին 'ի պարզոյ 'ի վերայ ցամաք գետնոյն կարմիր ձիւն եկեալ, և էր լցեալ զչորս կողմըն աշխարհիս 'ի յարեւելս և յարեւմուտ, 'ի հիւսիս և 'ի հարաւ. և սկիզբն արար գալոյ 'ի յաւուր երկու շաբաթին, և զաւուրս վաթսուն անդադար եկեալ, 'ի գիշերին գայր և 'ի ցերեկն հալէր ընդ երեսս երկրի, բայց կարմիր ձիւն մէկ օր եկեալ։ Եւ յայն ամին եղեւ անցումն ամենայն չորքոտանեաց՝ անասնոց եւ գազանաց և թռչնոց, և 'ի սաստիկ բարկութենէն ոչ գտանէին կերակուր իւրեանց, 'ի չէն առ հասարակ դէմ տարարեալ նոցա, և յիւրեանց թշնամիսն ապաւինէին։ Եւ յայնժամ անխնայ ամենայն ոք կոտորէր զնոսա անողորմաբար. զի անա-

տունքն ջոլիր ջոլիր լինէին, և թռչունքն ե-
րամ երամ ՚ի փողոցս և ՚ի տունս մտանէին.
և անդ էր տեսանել զահաւոր կատարածն
՚ի վերայ անասնոց և թռչնոց վասն մեղաց
որդւոց մարդկան։ Իսկ որ ողորմածքն էին՝
՚ի տունս իւրեանց կերակրէին զնոսա զա-
մենայն աւուրս ձմերանն և արձակէին ըզ-
նոսա խաղաղութեամբ. և առ հասարակ ա-
մենայն ոք ՚ի գութ ողորմութեան դառնա-
յին ՚ի վերայ անասնոցն։ Նա մեծ ամիրայն
Նսրտօլ որ նստէր ՚ի քաղաքն Մուֆարկին,
քառասուն քուռ ցորենոյ և գարւոյ, կորե-
կոյ և զայլ ամենայն ընդոց ցանել հրամա-
յեաց ընդ դաշտս և ընդ լերինս վասն թռչնո-
ցըն, և խոտ և յարդ անչափ յաղագս ա-
նասնոցն, և այսպիսի օրինակաւ բազում
անասունք և թռչունք ապրեցան ՚ի բար-
կութենէ անտի.

ՁԳ. Յայսմ ամի եղեւ սով սաստիկ ընդ
ամենայն երկիր, և բազումք մեռան չարա-
չար և դառն մահուամբ յերեսաց սովոյն,
վասն զի ՚ի սաստկութենէ ձեանն անձրեւ
ոչ եկն յերկիր, և վաստակ ոչ եղեւ, եւ
բազում պտղաբերք չորացան. և եղեւ ՚ի
փոխել միւս այլ տարւոյն՝ եղեւ լիութիւն և
առատութիւն ամենայն կերակրոց, վասն

զի մէկ մոլթն հարիւր վաստակեաց։

ԶԴ. Իսկ 'ի վերանալ Թուականութեանս Հայոց 'ի յամի ՇԸ (1059–1060), ժամանեալ հասանէր արհաւիրք և կատարածք մահաբերք 'ի վերայ հաւատացելոց Քրիստոսի, զորս ոչ կարեմք պատմել զոր ինչ գործ գործեցաւ յամիսս այսմիկ աղէտ ահաւոր դառնութեան. վասն զի շարժեցաւ ան հասարակ ամենայն տունն Պարսից, և յարուցեալ գայլին ահագին բազմութեամբ առանց համարոյ որպէս պաւաղ ծովու, եւ խաղայր գայր հասանէր 'ի վերայ հաւատացելոց տանն Հայոց, և բազում գաւառք մաշեալք լինէին սրով և գերութք յերից ամբարիշտ գազանացս այսոցիկ, որք ելան 'ի տիւանէն Տուղրիլ սուլտանէն ամիրայք երեք՝ Սամուխն և Ամուրքաֆրն և Գիձաձիձի, արք չարք և արեանարբուք առաւել քան զգազանս և սեւագունդ զօրօք և մահաբեր նշանօք հասանէին 'ի բազմամբոխ և նշանաւոր քաղաքն Սեբաստիոյ, և մեքենալով որստային, կամեցան զմեծաստաս բարկութիւն իւրեանց ածել 'ի վերայ հաւատացելոց Քրիստոսի, և մանաւանդ խորհեցան 'ի միտս իւրեանց ձերբակալ առնել զորդին Սենեքերիմայ զորդիք Թագաւորին

Հայոց՝ զԿ՚ոստմ և զԿ՚պուտահլ, զորս յառա-
ջադոյն նոցա լուեալ զգալ զօրացն այլազ-
գեաց՝ փախեան 'ի խուստանէքն ; և այլ
քաղաքն իշխանքն գնացին զհետ . և յօր բա-
րեկենդանի Աստուածածնին պատեալ զքա-
ղաքն բազմութիւն զօրացն . . . նոյց եւ
պաշարեաց առ հասարակ շուրջանակի զա-
մենայն քաղաքն, և սուր 'ի գործ մուեալ ա-
մենայն զօրացն, և անհամար մարմինք չա-
րաչար խողխողմամբ 'ի յերկիր թաւալէին, եւ
հոսեալ արեանցն յոյր զերկիր, որ և անտա-
ղացն սոսկալի երեւէին . վասն զի որպէս
մայր անտառի կուտեալ լինէին մարմինք
սպանուականք 'ի վերայ երկրի, և արեամբ
ծածկեալ եղեւ հող երկրին 'ի բազմութե-
նէ դիականցն, և զի անպարիսպ էր քաղա-
քն Սեբաստիա : Իսկ այլազգիքն զառաջինն
ոչ համարձակեցան մտանել 'ի քաղաքն, զի
տեսանէին զբազմութիւն եկեղեցեացն սպի-
տակս և գումպէթաձեւս, գիտացին եթէ
վրանք զօրացն իցեն, և իբրեւ գիտացին՝
յայնժամ զաստուածասաստ բարկութիւնն
ածին 'ի վերայ քրիստոնէիցն, անողորմ եւ
անխնայ կոտորեցին զայնչափ բազմութիւն
քաղաքին, և անթիւ և անհամար աւարաւ և
գերութեամբ արանց և կանանց, մանկու-

նոս և աղջկունս վարէին 'ի գերութիւն, և այնչափ զանձս ոսկւոյ և արծաթոյ՝ ականց և մարգարտաց և գիպակաց յափշտակեալ հանէին 'ի Սեբաստիոյ, և վասն զի տուն եղեւ-նս Հայոց Թագաւորացն: Այլ էր օրն այն դառնաշունչ և չար 'ի վերայ բնակչացն քաղաքին, վասն զի առ ստակաւ մի ժամ աւեր եղեւ քաղաքն, և դաշտն արեամբ լըցեալ. և գետն որ անցանէր ընդ մէջ քաղաքին՝ փոխանակ յստակ ջրոյն 'ի յարիւն դարձուցանէր զգոյնն: Այլ բազումք այն էին որ հրով այրեցան. և ահա անկեալ կային բազում իշխանք և մեծք և փառաւորք՝ մահաբեր բոցմամբ 'ի մէջ մաքուր և պատուական դիականցն արեամբ ծածկեալք լինէին, և 'ի սպիտակութենէ մարմնոցն որպէս զաստեղս փայլէին: Ո՛ինչ և վասն քահանայիցն և սարկաւագացն ասացից, և յաղագս վեց հարիւր եկեղեցեացն որ 'ի նմա կային, ամենայն հրով վճարեցան: Բազում կոյսք և հարսունք և փառաւոր տիկնայք վարեցան 'ի գերութիւն յաշխարհն Պարսից, և ստակաւ ժամ մի եղեւ Սեբաստիա իբրեւ զխուղ մի այրեցեալ հրով: Այլ կացեալ զօրք այլազգեացն 'ի Սեբաստիա աւուրս ութ, և խաղաց գնաց յաշխարհն Պարսից անթիւ և

անհամար գերութեամբ։

Եւ կարացէ մի ըստ միոջէ պատմել զկորուստ բարկութեանն եւ զլոց տարաշաւանաց տանս Հայոց, զորս յան . . . . . . . . . . . . . . . . . . . . զօրացն Թուրքաց կրեաց, յանօրէնութենէն, 'ի սուտ պահապանացն, 'ի տկար եւ 'ի թուլամորթ վատ ազգէն Յունաց. վասն զի՝ մի առ մի քակեալ հանին զզօրականսն 'ի տանէն Հայոց զորս հանին յարկաց եւ 'ի գաւառաց, եւ բարձեալ խափանեցին զաթոռ թագաւորութեանն Հայոց. քակեցին զզանկ պահպանութեան զօրացն եւ զօրավարաց. եւ ազգն Հոռոմոց իւրեանց անուն քաջութեան զանդարձ փախչելն տարարին պարծանք. նմանեցան վատ հովուացն, զի յորժամ՝ զգայլն տեսանէ՝ փախչի։ Սակայն Հոռոմք այն Ջանս Ջանացան (105), որ լաւ զպարիսպ ամրութեան տանս Հայոց քակեալ կործանեցին, եւ զՊարսիկս 'ի վերայ դարձեալ յարձակեցին սով, եւ զամենայն յաղթութիւնն՝ իւրեանց համարեցին. եւ ինքեանք անպատկառելի երեսօք կուրտ զօրավարօք եւ ներքինի զօրօք զՀայս պահել ջանային, մինչ եւ Պարսիկք անտէր տեսին զամենայն արեւելք, եւ յայնժամ մեծաւ զօրութեամբ զօրացան այլազգիքն,

որ ՚ի մէկ տարւոյ հասին մինչեւ ՚ի դուռն Կոստանդնուպօլսի, և առին զամենայն աշխարհն Հռոմոց, զքաղաքս ծովեզերեաց. և պղծեցին նոցա, և աւարեին զազգն Յունաց որպէս զգանտարկեալս ՚ի ներս ՚ի Կոստանդինուպօլիս։ Եւ յորժամ առաւ Հայք ՚ի Յունաց, արգելաւ ամենայն չարութիւնն Հռոմոց յազգէն Հայոց։ Եւ զկնի այսորիկ հնարեցան այլ կերպիւ պատերազմ յարուցանել ընդ ազգն Հայոց. եւ նստան ՚ի քըննութիւն Հայոց, և այսու առնել անարգեցին զհանդէս պատերազմի և զօր մարտի, և զկռիւս և զաղմուկս յեկեղեցի Աստուծոյ կարգեալ հաստատեցին։ Ի Պարսից պատերազմէն յօժարութեամբ փախչէին, և զամենայն ճշմարիտ հաւատացեալքս Քրիստոսի ՚ի հաւատոյն ջանան խափանել և խոտոտել։ Վասն զի յորժամ այր քաջ և զօրաւոր. գտանէին, զաչսն խաւարեցուցանէին և կամ ՚ի ծով ձգեալ խեղդամահ սատակէին. և այն էր փոյթ յօժարութեանց նոցա, որպէս զամենայն իշխանսն Հայոց և զքաջ զօրականսն հանէին յարեւելից և բերին բնակեցուցին ՚ի Յոյնս. և յայնժամ ինքեանք ըզմանկութիւնս արութեանն ՚ի կուրսս փոխարկեցին. և փոխանակ լեկուր զրէհացն

զոր քաջք զգենուին, նոքա ղծոց հանդերձիցն լայն և երկայն արարին. և փոխանակ պղղովատ սաղաւարտին պէլևտառ (106) եդին. և փոխանակ երկաթապատ թիկանցն՝ զխոդպատն 'ի վերայ ուսոցն լայն արարին. և որպէս զկանայս հեղ և ծածուկ խօսին. քաջ և մանուկ (107) համապազ կորուստ խորհին, որ և 'ի ձեռաց սոցա ամենայն հաւատացեալք մատնեցան 'ի գերութիւն յաշխարհն Պարսից։

ՁԵ. Յայսմ ժամանակիս Թագաւորն Տուկիծ խորհեցաւ խորհուրդ չար, և կամեցաւ բառնալ և խափանել զաթոռ հայրապետութեան սրբոյն Գրիգորի 'ի տանէն Հայոց. և որպէս ասացաքս, յարուցանէր հալածանս, և առնէր քննութիւն պէսպէս յաղագս հաւատոյ Հայաստանեայց ազգիս. մանաւանդ յորժամ մեռաւ տէր Պետրոս, յայնժամ յարեան Հոռոմք 'ի վերայ սուրբ Աթոռոյն, և կամեցան եղծանել զնա, և կամեցան առ հասարակ դարձուցանել ըզՀայս 'ի հաւատոն անօրէն Քաղկեդոնի։ Եւ յայսմ ժամու արարին Հոռոմք խնդիր բազմութեան գանձուցն ոսկւոյ և արծաթոյ տեառն Պետրոսի Հայոց կաթուղիկոսի, և զբազում 'ի խոշտանգանս մատնեցին 'ի Սեբաստիա, և զօծեալն 'ի յաթոռ հայրապետ-

տութեանն զտէր Խաչիկ հանդերձ եպիսկո-
պոսօք տարան 'ի Կոստանդինուպօլիս և զա-
մենագովելին զտէր Եղիսէ, և պահեցին ըն-
դոսա յաքսորս զամս երիս, և յաւուրսն
յայնոսիկ բազում վտանգք գործեցան 'ի
հաւատս Հայոց ։ Եւ յայնժամ Թագաւորք
և իշխանք Հայոց, Գագիկ անեցի և Ա-
տոմ և Աբուսահլ որդիք Սենեքերիմայ մե-
ծաւ աշխատութեամբ ջան յանձին կրեցին
և հազիւ կարացին հանել զնոսա ։ և զկնի
այսմ ամենայն եղելոց նստուցանեն զաթոռ
հայրապետութեանն 'ի Թաւբլուր ։ և կա-
ցեալ անդ զամս երիս, և ընդ ամենայն վեց
ամ կալեալ զաթոռ հայրապետութեանն
տէր Խաչիկ ։

ՂԶ. Իսկ 'ի գալ հասանել մերոյ Թուա-
կանութեանս 'ի յամն ՇԺԱ (1062—1063),
հարուածք չար եւ դժնդակ դառն օդով
ախտեաց տարածեցաւ հաւատացելոց Քրիս-
տոսի ։ Զի եղեւ յաւուրսն աշնանային և
յամսեանն արեգ՝ բարկութիւն շարժեցաւ
'ի դրանէն Պարսից, և գային արք երեք մեծք
և երևելիք 'ի տիւանէն անտի Տուղրիլ սուլ-
տանէն, որք են այսոքիկ, Սլար—Խորասան (108)
և Մ՚ձմՃ և Խուըլ ։ և սոքա բազում ա-
ռեալք հեծելովք գային 'ի վերայ ազգին

քրիստոնէից. և հասեալ նոցա բազում զօ-
րօք 'ի գաւառն որ կոչի Պաղին, և սրով
սրածութեամբ հեղաւ բազում արիւն 'ի
հաւատացելոցն, և գերեցաւ ամենայն գա-
ւառն Պաղնայ: Եւ անտի յարուցեալ գա-
յին որպէս զօձ թիւնաւոր, և հասանէր 'ի
վերայ գաւառին Թղխմոյ Արկնոյ, և առանց
պատրաստութեան գտանէր զամենայն գա-
ւառն: Եւ եղեւ յորժամ ետեսին զամենայն
երկիրն յաւերութիւն, եւ կայլին ամենայն
գաւառն 'ի մեծ ուրախութիւն: Իսկ
նոցա որպէս գազանաբարոյ գայլք, կամ
իբրեւ կատաղի շունք սրով անողորմ յար-
ձակեցան 'ի կոտորել զամենայն գաւառն
առ հասարակ: Եւ էր երկիրն ամենայն
բոլոր չէին՝ լցած մարդով և անասնով, և էր
բազում ամբոխ յամենայն գաւառէն, և յա-
րեգի չորս յաւուր չաբաթու յութերորդ
ժամու լցաւ լայնատարած դաշտն արեամբ
և գերութեամբ և անողորմ կատարածով՝
զորս ոչ կարեմք պատմել. բազում և անթիւ-
այն էին որ կրակով այրեցան, և յամենայն
գաւառն ոչ ոք էր որ կարաց զերծանել
յերեսաց սորին. և յաւուրն յայնմիկ բա-
զումք հասին 'ի մարտիրոսութիւն: Եւ ըղ-
կնի անհամար գերութեանն և անհամար

կատարածոյն , առաջից և զճշմարիտ քահա_ նայից Աստուծոյ՝ զՔրիստափոր և զորդիս նորա զԹորոս և զՍտեփաննոս , և նոքա հան_ դերձ ամենայն ժողովրդեամբն մարտիրոսա_ ցան ։ Նաև զի յորժամ տեսաւ զպաշտամունԹի զօրայն այլադգեաց , ժողովեաց զամենայն զխուզն յեկեղեցւոյն՝ զարս և զկանայս հան_ դերձ տղայօքն . և ինքն սկիզբն արար պա_ տարագին Աստուծոյ , եւ հաղորդեցոյց առ_ հասարակ զամենայն ժողովուրդն ։ Իսկ զօրքն անօրինացն պատեալ շուրջ զեկեղեցւովքն , և զայսք հաւատացելոցն որք հաղորդէին՝ եղանէին մի առ մի արեամբքն զաղան_ ացն , և նոքա արտախողխողէին զհաւատա_ ցեալսն Քրիստոսի . և յորժամ մնացեալ լի_ նէր ինքն և որդիքն իւր , ծունր կրկնեցին Աստուծոյ և գոհանալով համբուրեցին ըզ_ միմեանս , և եղեալ նոցա ընկալան զմարտի_ րոսական մահն քաջի խոստովանուԹեամբ 'ի Յիսուս Քրիստոս ։ Իսկ յորժամ լուաւ զչարուԹիւն կատարածիս ամիրայն որ նըս_ տէր 'ի քաղաքն ԱմիԹ , որդին Սորտօլայ , գրեաց առ Սլար-Խոսրովանն և հաստատեաց ընդ նմա ուխտ , և զամենայն գերուԹիւն հրա_ մայեաց 'ի գաւառն իւր ծախել , վասն զի էր քաջի և ողորմած 'ի վերայ քրիստոնէից ազ_

և ընդ հեթանոսս ցրուեցեր զմեզ »։ Իսկ յետ այսչափ բարկութեանս և կատարածիս որ եղեւ, խաղաղացուցին զբազմութիւն գերութեանն յաշխարհն Պարսից, և տանէին զնոսա երամ երամ որպէս զբազմութիւն թռչնոց։ Եւ տեսեալ զնոսա ազգն այլազգեաց՝ հիանային, և հարցուկ լինէին ընդ գերեալսն և ասէին, եթէ « Ո՞ խնդրոյ գերեցայք այդչափ անպատուութեամբ, և վասն էր յառաջագէս ոչ կարացիք լինել․ և եղեալ էիք փախստական կամ ըմբռնեալ եւ կամ նշանօք »։ Եւ նոքա ասացին՝ եթէ « Ա-նուա ամենեւին ոչ կարացաք խնամել »։ Եւ ասացին կանայք այլազգեացն, եթէ « Ահա այս էր նշանն կատարածին ձերոյ․ յորժամ յերկիրն ձեր հաւն խօսէր, և ձեր պախրէն և կամ ոչխարն 'ի նստուկ աղբէր, այն էր նշան բարկութեան »։ Եւ ասացին ազգ-գերեացն, եթէ « Այդ բազում անգամ լինէր յաշխարհն մեր, և ոչ կարացաք գիտել եթէ նշան բարկութեան է մեզ »։

Յետ այսր ամենայնի զոր ասացաք զկատարած բարկութեանս, հասաւ չար համբաւս այս առ Թագաւորն Տուկիծ․ և յայն ժամ՝ զօրաժողով արարեալ և կացուցանէր զօրավար զմեծ իշխանն որ կոչէր Տիւանդա

պօղ (109), և տուաքեալ զնա բազում զօրօք
՚ի գաւառն Թլխմոյ. եւ գային հասանէին ՚ի
Թլխում՝ մեծաւ զօրութեամբ։ Եւ արար
զօրաժողով Աբլհայոյ տունկն, որոյ անուն
տաճկին Դաւատանոս, այր քաջ և հզօր ՚ի պա-
տերազմի և անուանի ՚ի վերայ երկրի, որոյ
զօրաժողով արարեալ զԱբլհայ և զԼկար-
կառ և զՇասանմուր (110), և խաղայր զօրօք
՚ի վերայ Տաճկաց. և վրէժխնդիր լինէր ար-
եան քրիստոնէիցն զոր հեղին. և երթեալ
բազում զօրօք բանակ հարկանէր ՚ի դաշտն
Թլխմոյ. և տեսանէր ՚ի տեղիս զայնքան
բազմութիւն կոտորածին՝ լայն առ հասա-
րակ ամենայն զօրքն. Իսկ զօրքն Թուրքաց
լուեալ զգալ զօրացն Հոռոմոց, փախեան
յաշխարհն Պարսից. և յայնժամ Դաւատա-
նոսն գոչեաց որպէս զառիւծ ՚ի վերայ Տաճ-
կաց և յարձակեցաւ ՚ի պատերազմ ՚ի վերայ
քաղաքին Ամթայ։ Մանաւանդ զի յայն
աւուրսն զմեծ ամիրայն զամիր Այսիա զոր-
գին Նորբաօլայ դեղեալ էին քաղաքացիքն և
սպանեալ։ Իսկ յորժամ լուան քաղաքացիքն
զգալ զօրացն Հոռոմոց, յուղարկեցին գաղտ
առ Դուանգապօղն տասն հազար դահեկան,
և արար Դուանգապօղն պաղատուկ սէր ընդ
Տաճկացն. և գիտացեալ զայն Դաւատա-

նոսին՝ նախատեաց զԹուանդապօլն . և յոր-
ժամ հասան 'ի դուռն քաղաքին Ամիթայ . 'ի
տեղին ուր Հոռոմ Դուռն կոչեն , ելին ա-
մենայն զօրքն այլազգեաց 'ի պատերազմ .
Իսկ Թուանդապօլն զպատերազմն նենգաւո-
րութեամբ՝ Գուստանդնոսին տայ , և ինքն ա-
մենայն զօրօքն 'ի յետս կայր պահեալ 'ի պա-
տերազմէն , և հեծեալս վաթսուն հազար
ընդ նմա . և յորժամ խմբեցաւ պատերազ-
մըն , մի ոմն 'ի զօրաց այլազգեացն այր քաջ ,
որում անուն ասէին Հեծն-Պչարայ , մեծ ա-
ծիրս գործէր զօրացն Հոռոմոց , որպէս զա-
ռիւծ պատառէր զճակատ Գուստանդնոսին
զօրացն , և 'ի ներս դառնայր կրկնէր : Այս
տեսեալ զայն Գուստանդնոսն , ձայն առեալ
ձիոյ և ասէր՝ թէ « զկամամբն (111) մատուցէք
ինձ » : Այս իբրեւ ելեալ գայր Պչարայ ,
Գուստանդնոսն որպէս զառիւծ 'ի վերայ յար-
ձակեցաւ , և նիզակաւն հարեալ զախրան՝
տապաստեաց զերկաթն , և յայնկոյս հա-
նեալ զգեզարդն , և երկոքեանն 'ի ձիոյ ան-
կեալ լինէին : Այս բախեալ երկոցունց կող-
մանց 'ի վերայ՝ սպանաւ 'ի նոյն տեղին Գու-
ստանդնոսն , և Պչարայ սատակեալ կայր 'ի
մէջ նիզակին : Այս լուեալ քաղաքացիքն և-
թէ մեռաւ Գուստանդնոսն , և Պչարայ սա-

տանկեալ կայր 'ի մէջ Նիզակին, միաբան առ հասարակ 'ի դուրս բախեալ ելանէին ։ Եւ յայնժամ մի ոմն 'ի զօրաց Դուստանտնոսին գնացեալ առ Փռանգապօղն, և դատախազ վարէր ընդ նմա վասն մահուանն Դուստանոսի, որում անուն Տափառ (112) ասէին. և իմացեալ զայս Փռանգապօղն յարձակեցաւ 'ի վերայ այլազգեացն և արար սատակ կոտորած 'ի դուռն քաղաքին՝ հնգետասան հազար, և դարձաւ 'ի Հոռոմ աշխարհ ։

ՁԵ. Յայսմ ամի ժողով արարեալ ոմն Յեհնուկ անուն, հինգ հազար արամբք գնացեալ 'ի վերայ Քրիստոնէից 'ի գաւառն Եմթայ, 'ի տեղի ուր Ձեպու — Շահար կոչի. և առեալ բազում և անթիւ աւար՝ ոչխարս և պախրէս և ծառայս և այլ բազում աւարս, և դայր 'ի բերդն որ կոչի Սեւերակս. և հասանէր 'ի հետ որ աւագ էր Բրդացն՝ որում անուն Խալդ (Հալէտ) ասէին, ինքն և իւր երեք որդիքն. և տեսեալ Յեհնուկն և իւր զօրքն 'ի փախուստ դարձան ։ Եւ յայնժամ աստուածասաստ բարկութիւնն հեղաւ 'ի վերայ նոցա, վասն զի հանին Եմթայ զօրքն և. արարին բազում կոտորածս, և թափեցին զամենայն առն և զգերութիւնն ։

Յայսմ ամի գնաց Փռանգապօղն 'ի Նկար-

նայ քաղաք, և անդ հանդիպեցաւ Թուրքք զօրացն՝ որ կոտորեալ էր զգաւառն Թլխմայ, և հարան ընդ միմեանս 'ի պատերազմ և յաղթեաց նոցա Փռանգաայօլն, և զամենայն զօրս Թուրքաց կոտորեաց. և ստացեալ զամիրայն այլազգեացն՝ որում անուն Սուտուփ աւէլին, և արար անթիւ աւար և թափեաց անթիւ գերութիւն 'ի նոցանէ: Իսկ յորժամ լուաւ Թագաւորն Տուկիծ զմահ Դուաստանոսին, որ նենգութեամբ Փռանգաայօլին եղեւ, կոչեաց զնա 'ի Կոստանդինուպօլիս, և ծովահեղձ արար զնա, վէմ կապեաց 'ի պարանոցն և ընկէց յՈվկիանոս:

ՁԸ. Դարձեալ 'ի Թուականութեանս Հայոց յամի ՇԺԳ (1064–1065) զօրաժողով արար Թագաւորն Պարսից Ապասլան սուլտանն, եղբայր Տուղրիլ սուլտանայ, որ ըզկնի մահուան եղբօրն նստաւ յաթոռ թագաւորութեանն, զօրաժողով արարեալ ըզՊարսիկս և զազգս Թուրքաց և զամենայն խուժաստան աշխարհն մինչեւ 'ի Սագաստան. և շարժեալ մեծաւ ցասմամբ և ահագին բազմութեամբ՝ ծփայր չարեօք ալեօք. և խաղայր որպէս զգետս յարուցեալս մրրըկաբեր բարկութեամբ, և որպէս զգազան արիւնարբութեամբ զայրացեալ և գայր հա-

սանէր 'ի Հայաստան աշխարհս, և անհամար բազմութեամբ զօրօք մտանէր յաշխարհըն Աղուանից, և մատնեաց զնոսա 'ի սուր և 'ի գերութիւն: Եւ անթիւ և անհամար արար զանցումն քրիստոնէից, որ ոչ ոք կարէ պատմել զկատարած դառնաշունչ աղէտիցն հաւատացելոց Քրիստոսի. վասն զի դառն ճաշակմամբ ընկալան զմահն 'ի կատաղեալ չարաթոյն ազգէն Թուրքաց. և 'ի բազմութենէ զօրացն ծածկեալ եղեւ ամենայն երկիր դաշտացն, և փակեաց զամենայն տեղի փախստեան: Եւ ահա սաստ կատարեցան բանք Փրկչին որ ասաց, թէ “Վայ իցէ յղեաց և ստնտուաց յաւուրսն յայնոսիկ”. վասն զի բազում քահանայք և կրօնաւորք և հայրապետք և փառաւոր իշխանք ընկալան զմահ դառնաշունչ, և եղեն կերակուր գազանաց և թռչնոց: Եւ զկնի այսչափ բարկութեանս առաքեաց սուլտանն առ թագաւորն Աղուանից 'ի Կիւրիկէ, և խնդրեաց զդուստրն իւր 'ի կնութիւն, որ յաղագս ահին տուեալ եղեւ. և արար սուլտանն ընդ նմա սէր և խաղաղութիւն յաւիտեան. Եւ զթագաւորն Աղուանից զԿիւրիկէ զորդի Դաւթի Անհողինի յուղարկեաց մեծաւ պատուով 'ի քաղաքն իւր Լօռի բազում ընծայ.

իւք ։ Եւ անտի յարուցեալ տուրատն ա-
հագին բազմութեամբ իւրով մտաւ յաշ-
խարհն Վրաց, և մեծաւ սրամտութեամբ
մատնեաց զնոսա 'ի սուր և 'ի գերութի̃. և
իջեալ բանակեցաւ 'ի դաշտն որ կոչի Ջա-
ւախս (113), և պատերազմաւ մեծաւ պատեաց
զքաղաքն որ կոչի Ախալ, և ուժգին զօրու-
թեամբն առաւ զԱխալ քաղաքն, և առ հասա-
րակ զա̃մ քաղաքն որով կործանեաց՝ զայր և
զկին անողորմ, և զամենայն քահանայսն և
զկրօնաւորսն և զիշխանսն սրախողխող ա-
րարեալ, և լցաւ ամենայն քաղաքն արեամբ.
և անհամար մանկունս և աղջկունս տարան
'ի Պարսիկս 'ի գերութիւն, և զանձս ո-
կւոյ և արծաթոյ՝ ականց և մարգարտացն
որ ոչ գոյ թիւ ։

Յայսմ ամի յարուցեալ տուրատն մե-
ծաւ յաղթութեամբ և խաղաց չար վիշապն
Պարսից, և գայր մտանէր յաշխարհն Հայոց,
և զաստուածատեաց բարկութիւնն հեղոյր
'ի վերայ տանն արեւելից, և արբուցանէր
զմաղձ դառնութեան իւրոյ ամենայն ազգին
Հայոց, և սփռեցաւ բոց բորբոքեալ մահու-
ան հասարակ հաւատացելոց Քրիստոսի, և
լցաւ ամենայն տունն Հայոց արեամբ սրով
և գերութեամբ ։ Եւ յարուցեալ գայր որ-

պէս զամպս սեւացեալս և թխեալ ՚ի վերայ Թագաւորութեանն քաղաքին Անւոյ, և պատեաց առ հասարակ չութխանակաւ նման չար վէշապի ։ Եւ տեսեալ բազմութիւն քաղաքին դողաց առ հասարակ, և պատրաստեցան ընդդէմ Պարսից ուժգին զօրութեամբ ։ Իսկ զօրք անօրինացն յարձակեցան գազանաբար ՚ի պատերազմ մեծաւ սրտմտութեամբ, և ՚ի քաղաքն Անի արկանէին զզօրսն Հայոց, և գումարեցին զնոսա առ հասարակ ՚ի քաղաքն. և ահաւոր պատերազմաւ արկանէին զքաղաքն ՚ի մեծ վըտանգս ։ Եւ յայնժամ յահէ չար գազանին դողաց սասանելով ամենայն ազգք հաւատացելոց, սկսան լալ հայր ՚ի վերայ որդւոյ իւրոյ, և որդին ՚ի վերայ հօր իւրոյ. մայր ՚ի վերայ որդւոյ իւրոյ և դստերն, և դուստր ՚ի վերայ մօր իւրոյ, եղբայր՝ զեղբայր, սիրելին՝ առ սիրելին իւր ։ Եւ ահա ամենայն բազմութիւն քաղաքին Անւոյ կային ՚ի մեծ վտանգի, և պատերազմն եւս առաւել սաստկանայր յոյժ, որ և սասանէր ամենայն քաղաքն ։ Եւ ՚ի յերկարել պատերազմացն՝ աղօթից և պահոց սկիզբն արար ամենայն քաղաքն, լալով և հառաչանօք միաբան ձայն առ Աստուած արձակէին, զի փրկես-

ցէ զնոսա 'ի չար գազանէն ։ Վասն զի էր Անի բազմամբոխ, լցեալ քաղաքն բիւրք բիւրուց արանց և կանանց, ծերոց և տղայոց. որ և հիացումն արկանէր տեսողացն, զոր կարծեալ զօրացն բազմաց՝ եթէ մեծ մասն աշխարհիս Հայոց է, և յայնմ աւուր հազար և մէկ եկեղեցի 'ի պատարագի կայր 'ի յԱնի ։ Եւ էր քաղաքն շուրջանակի քարակտուր, և էր գետն Ախուրեան շրջապատ, բայց միայն 'ի մի կողմն կայր տեղի ինչ դուր՝ որպէս թէ նեղընկեց մի, զոր բարձով փլուցին այլազգիքն, և զբազում աւուրս պատերազմեալ ոչ կարացին մտանել 'ի քաղաքն, յայնժամ թուլացան 'ի պատերազմէն ։ Իսկ անօրէն իշխանքն Հոռոմոց՝ զորս կացուցեալ էր թագաւորն պահապանս տանն Հայոց, Բագրատ հայրն Սմբատայ, եւ Գրիգոր Բակուրանին որդին՝ Վրացի ազգաւ, սկսան նոքա ամրանալ 'ի վերին և 'ի ներքին բերդն ։ Եւ յայնմ աւուր սուլտանն և ամենայն զօրքն Պարսից բանակաւն խլեցան և կամեցան գնալ 'ի Պարսիկս. և յորժամ տեսին՝ քաղաքացիքն զաստուածուրաց պահապանացն ամրանալն, բեկան և այր իւրաքանչիւր 'ի փախուստ լինէր առանց պատճառի. և ամենայն քաղաքն առհասարակ 'ի

փոշի դարձաւ. և մեծամեծքն քաղաքին եր-թեալ լալով և անկանէին 'ի վերայ գերեզ-մանացն առաջին թագաւորացն Հայոց. և անդ կոծ առեալ սաստկապէս լալով և ա-սէին՝ եթէ «Արիք տեսէք զառուն հայրենեաց ձերոց»: Նա իբրեւ զայս տեսին զօրքն այ-լազգեացն՝ հասեալ պատմեցին սուլտանին, և նա ոչ հաւատայր: Իսկ զօրքն այլազգեացն յորժամ տեսին զպարիսպն անպահապան, առհասարակ 'ի քաղաքն մտին, առին տղայ մի 'ի մօրէն իւրմէ, հասուցին սուլտանին և ասեն. «Այս քեզ նշան 'ի քաղաքէն՝ զի ա-հա առաք զքաղաքս Անի»: Նա լուեալ զայս սուլտանն՝ հիացաւ յոյժ և այսպէս ասաց. եթէ «Աստուածն նոցա մատնեաց զնոսա այսօր զանառ քաղաքն 'ի ձեռս իմ»: Նա դարձաւ բազմութեամբ զօրօք և մտաւ 'ի քաղաքն Անի, և առհասարակ ամենայն զօր-քըն անօրինաց ունէին դանակ քաջասուր, զերկուսն ունելով յերկոսեան ձեռսն եւ զմէկն ունելով յատամունսն. և այսպիսի օ-րինակաւ սկսան զամենայն քաղաքն առհա-սարակ կոտորել անողորմաբար, և զայնքան բազմութիւն քաղաքին նման դալար խոտոյ հունձ առնին, եւ կամ որպէս զքարակոյտս 'ի միմեանց վերայ կոյտ արարին. և առ վայր

մի ծովացեալ ամենայն քաղաքն արեամբ. և
ամենայն մեծամեծ իշխանքն տանն Հայոց և
դասք աղաւտոցն երկաթի կապանօք կային
առաջի սուլտանին. եւ կանայք գեղեցիկք
և ահարկուք՝ 'ի փառաւոր տանէն, վարե-
ցան 'ի Պարսիկս 'ի գերութիւն. և անհա-
մար մանկունք լուսատեսիլս, վայելուչս աղ-
ջկունս տարան զհետ մարցն. և բազում
որբամնունդ քահանայք այրեցան հրով, նա
և զոմանս յոտից մինչեւ ցգլուխ քերթեալ
չարաչար խոցուածով, որ և տեսողացն սոս-
կալի էր: Եւ այլ ոմն 'ի չարագործ ազգէն՝
ելեալ 'ի վերայ բարձրութեան եկեղեցւոյն
սուրբ կաթուղիկէ և զծանրագին խաչն որ
կայր 'ի գումպէթն եկեղեցւոյն՝ ընկէց յեր-
կիր, և մտեալ 'ի դրանն որ կայր 'ի գում-
պէթն եկեղեցւոյն, և պլլօր (բիւրեղեայ)
կանթեղն ընկէց 'ի մէջ եկեղեցւոյն և մանր-
եաց, զոր Սմբատ տիեզերակալն էր բերել
տուեալ 'ի Հնդկաց ընդ բիւր մի գանձուց,
երկոտասան լիտր էր կշիռ նորա, և նոյն չա-
փովն երկոտասան լիտր տանէր. և յորժամ
ընկէց զխաչն 'ի գումպէթէն, նոյնժամայն
եղեւ սաստիկ որոտմունք եւ անձրեւ բա-
զում, և զամենայն զգէշն կոտորածոյն ելից
Ախուրեան գետն, և լուաց յարենէ զա-

մենայն քաղաքն ։ Իսկ յորժամ մանրեցաւ֊
ալըլօր կանթեղն, որ այլ չէր լեալ 'ի վերայ
արարածոց, լուեալ սուլտանն յոյժ վիրաւո֊
րեցաւ. և զխաչն զարծաթին զոր ընկեցին,
որ էր մարդաչափ մի, տարան եդին զնա 'ի
կոխ դրան՝ 'ի դուռն մզկթին Նախչուան
քաղաքին, որ կայ մինչեւ ցայսօր ։

Յայնմ ժամանակի էր Գագիկ 'ի Կարս
որդին Աբասայ Շահնշահին, և յղեաց
սուլտանն առ նա դեսպանս զի գայցէ նմա
յերկրպագութիւն ։ Եւ էր Գագիկ այր հան֊
ճարեղ և իմաստասէր, և խորհեցաւ հնարս
զերծանել խաղաղութեամբ 'ի սուլտանէն.
յայնժամ զգեցաւ սեաւ զգեստ սգաւորի և
նստաւ 'ի վերայ սեաւ բարձի. և յորժամ
տեսաւ զնա դեսպանն սուլտանին, հարցուկ
լինէր և կամեցաւ պատճառն ուսանել, եթէ
վասն է՞ր ես սեւօք, զի ահա այր դու թա֊
գաւոր ես ։ Եւ նա ասէր՝ թէ "Յորժամ
մեռաւ իմ բարեկամն Տուղրիլ սուլտանն՝
եղբայր Աբասլանայ, ես յայնմ աւուր զգե֊
ցայ զայս սեաւ զգեստս" ։ Եւ հիանայր այրն
այն և երթեալ պատմեաց սուլտանին, եւ
նա զարմանայր յոյժ, և յարուցեալ ամենայն
բանակօքն եկն առ Գագիկ 'ի Կարս, և ա֊
րար ընդ նմա սէր և ուրախութիւն մեծ.

և զգեցոյց նմա զգեստ թագաւորական. և արար Գագիկ ճաշ սուլտանին: Եւ զայս այսպէս լսեցաք, եթէ մէկ գաւլին վերայ զոր խորովեալ` ծախք եհան հազար դահեկան, և հարիւր հազար դահեկան սեղան տուեալ սուլտանին և ծմ՞ զօրացն նորա, և այսու զերծաւ խաղաղութեամբ: Եւ եղեւ զկնի աւուրցս այսոցիկ թողեալ Գագիկ զԿարս և գնաց ՚ի Հոռոմս, եւ թագաւորն Տուկիծ տայր նմա զԾամընդաւ (114), և անդ եղեալ Գագիկ ազատօք իւրովք և թողեալ զտունն հայրենեաց իւրոց: Արդ` այսպիսի նմանութեամբս գերեցաւ տունն Հայոց, և արեամբ լցաւ առ հասարակ աշխարհն ամենայն, որ և իբրեւ զծով ծփայր ծայրէ ՚ի ծայր, և քակեալ ապականեցաւ հայրենական տունն մեր լեալ, խախտեցաւ հիմն բնակութեան Հայաստան ազգացս, զի ոչ մնաց տեղի յուսոյ ապաւինի, և եղաք մատնեալ ՚ի ծառայութիւն ազգաց անօրինաց և օտար գազանաց. ահա եկեալ կատարեցաւ ՚ի վերայ մեր բան Դաւթի մարգարէին` որ ասէր. "Վաճառեցեր զժողովուրդս քո առանց գնոյ, և ոչ գոյ թիւ աղաղակի մերոյ: Արարեր զմեզ յառակս հեթանոսաց. ծաղր և այպն կատականաց որ շրջէին զմեօք: Եւ վասն այսորիկ

աղաղակեմք և ասեմք. դարձ առ մեզ Աստուած փրկիչ մեր, և դարձո զսրտմտութիւնս քո 'ի մէնջ»: Այս էր կատարած տանս Հայոց:

ՉԹ. Իսկ 'ի հասանել թուականութեանս Հայոց յամս ՇԺԴ (1065–1066), 'ի յաւուրս Տուկծին արքային Հոռոմոց շարժեցաւ պատերազմ մեծ 'ի յաշխարհս արեւմտից յազգէն Ուզաց: Եւ զօրաժողով արար թագաւորն Տուկիծ զամենայն ազգն Յունաց և զզօրս Հայոց աշխարհի, և կացոյց զօրագլուխ զմեծ իշխանն Հոռոմոց զԱլախիլ զորդին Սպուքապայ. և խաղացեալ բազում զօրօք և գնաց իջաւ 'ի վերայ մեծ գետոյն զոր Տօնաւիս կոչեն: Եւ եղեւ սաստիկ պատերազմ յերկոցունց կողմանց խառնելով ընդ իրեարս առափն գետոյն, և եղև կոտորածըս բազումս յերկոցունց կողմանցն: Եւ անդ էր տեսանել զմեծ բարկութիւն կատարածին, որ զմեծ ժամ աւուրն զմիմեանս կոփէին, և որպէս զհօտս ոչխարաց զմիմեանս բախէին յերկոցունց կողմանցն. և 'ի սաստկանալ պատերազմին եղեւ պարտեալ զօրքըն Հոռոմոց և եղեն փախստական, եւ զօրք Ուզացն սրով զհետ յարձակեցան մեծաւ կոտորածով, և կալան զԱլախիլ զօրա-

պետն Հոռոմոց, և տարան զնա 'ի գերու-
թիւն յաշխարհն իւրեանց, և առին առ հա-
սարակ զամենայն քանակն Հոռոմոց, ըզ-
բազմութիւն ոսկւոյ և արծաթոյ և այլ հան-
դերձ բազում աւարաւ, և զամենայն զմե-
ծամեծ իշխանսն Յունաց տարան 'ի գերու-
թիւն. և զբազում աւուրս կացեալ գերի
յաշխարհն Ալպաց, և գանձիւ ոչ կարացին
գնել զնա, վասն զի անհամար ուզէին ըզ-
գանձն: Յետոյ մի ոմն 'ի զօրաց այլազգեաց
խորհուրդ արար ընդ Սախին զի գողասցէ
զնա, և նա խոստացաւ բազում ինչս և 'ի
թագաւորէն տալ նմա իշխանութիւնս, եւ
յետ սակաւ աւուրց այլովք ընկերօք գողա-
ցաւ զնա և փաղփաղակի հասուցանէր առ
թագաւորն Տուկիծ. և եղեւ ուրախու-
թիւն մեծ ամենայն տանն Յունաց, եւ
բերողացն բազում պարգեւս տուեալ թա-
գաւորն: Եւ եկեալ Սախիլ առ Ապուքապ
հայր իւր 'ի Ուռհայ, և հայր իւր և ամե-
նայն ազգն իւր լցան ցնծութեամբ:

Յայնմ ամի մեռաւ ամենագովելին տէր
Խաչիկ կաթուղիկոսն Հայոց: Սա կացեալ
յաթոռ հայրապետութեան զամս վեց յօ-
տար աշխարհի, պանդխտեալ յիշխանութիւ-
նըն Յունաց և վիրաւոր քաղաքավարու-

թեամբ լցեալ զժամանակս կենաց իւրոց, և
բազում վիշտս կրեաց 'ի յամիրաւ և 'ի մոլի
ազգէն Հոռոմոց 'ի մէջ Կոստանդինուպօլսի,
որ և պէսպէս փորձութեանց ածէին զնա
վասն հաւատոց. զի այսպէս լսելով մեր՝ ե-
թէ հրով փորձեցին զնա, և նա անվնաս ան-
ցանէր ընդ մէջ հրոյն, զոր նոցա զայրացեալ՝
և հառաչանօք ասէին զայն: Եւ այսպիսի օրի-
նակաւ սուգ ունէր 'ի սրտի իւրում տէր
Խաչիկ. և յիշեալ զաւերումն հայրապետու-
կան աթոռոյն տանն Հայոց, նա և զխափա-
նել աթոռոյ թագաւորութեանն յազգէն
Բագրատունեաց, և զալ ծառայել չարամիտ
ազգաց Յունաց, և աղքատութեամբ տիրա-
պետել աթոռոյ սրբոյն Գրիգորի Հայոց լու-
սաւորչին. վասն զի յորժամ էր տէր Պետրոս
յաթոռ հայրապետութեանն և 'ի Հայաս-
տան աշխարհին, ունէր կազմութիւն հայրե-
նեաց՝ տուեալ 'ի թագաւորացն Հայոց
հինգ հարիւր գեղ անուանի և մեծանիք և
շահաւէտ ընտիր ընտիր, նոյնպէս և եպիս-
կոպոսք հինգ հարիւր փառաւորք, և գաւա-
ռատեսուչս 'ի վերայ հինգ հարիւր թեմի
հանապազ. երկոտասան եպիսկոպոսք և չորս
վարդապետք 'ի տան հայրապետին անպա-
կաս լինէր, և վաթսուն երէց 'ի կրօնաւո-

րաց՝ և յաշխարհակալաց հինգ հարիւր. և չէր նուաստ աթոռ հայրապետութեանն քան զԹագաւորութեանն Հայոց: Այս և զարգարանք եկեղեցեացն և տան հայրապետութեանն բազում և անհամար և հրաշալի մեծութեամբ լցեալ, զոր յառաջին թագաւորացն տուեալ հաստատութեամբ առաջին հայրապետացն, որ գայր հասանէր մինչև 'ի տէր Պետրոսն, և առ Նովաւ խափանեալ լուծաւ։ Արդ՝ զայն ամենայն ածէր զմտաւ տէր Խաչիկ և տեսանէր 'ի տառապանս զհայրապետական աթոռն Հայոց, և կայր յոյժ վիրաւորեալ: Իսկ յորժամ հրաժարեաց 'ի յաշխարհէս սուրբ հայրապետն տէր Խաչիկ, որք միացեալ էին 'ի Թագաւորացն և յիշխանացըն Հայոց, յայնժամ խնդիր արարին գտանել զմի ոք արժանաւոր՝ զի նստցի յաթոռ հայրապետութեանն սուրբ Լուսաւորչին Գրիգորի. և գտին մանուկ մի յազգէ Պալհաւունեաց Վահրամ անուն, զորդին Գրիգորի Մագիստրոսի մեծի իշխանին Հայոց: Սա լցեալ ամենայն առաքինութեամբ, որ և ըստ օրինի աշխարհիս կին առեալ էր և որբութեամբ և անարատութեամբ պահեալ էր զինքն, և յայսմ ժամանակիս հրաժարեալ էր 'ի կնոջէն իւրմէ, և մտեալ 'ի կարգ կրօնա-

ւորական ուսման և աստուածային շնորհացըն պարապեալ, և հասեալ եղեւ 'ի վերայ հին և նոր կտակարանացն Աստուծոյ յօժարամիտ և մեծաւ փափագանօք ։

Դ. Յայսմ Թուականութեանս նստաւ յաթոռ կաթուղիկոսութեան Հայաստան ազգին ամենագովելին տէր Գրիգորիս, որ հոմանուն Վահրամ, որդի Գրիգորի Մագիստրոսի, որդւոյ Վասակայ Սիւնեցին և ազգաւ Պալհաւունիք ։ Տէր Գրիգորիս նըստաւ յաթոռ հայրապետութեանն հրամանաւ Գագկայ շահի՝ որդւոյ Աբասայ կարսացւոյ, վասնզի զկնի մահուան տեառն Խաչկայ զսա տեսին արժանաւոր սուրբ Աթոռոյն, զի էր յոյժ առաւելեալ հռչակաւոր անուամբ, լցեալ սրբութեամբ եւ արդարութեամբ, և տիրեալ էր ամենայն պայծառ առաքինութեամբ, և հասեալ էր 'ի վերայ հռետորական իմաստութեանց, տեղեկացեալ ամենայն հին և նոր կտակարանացն Աստուծոյ, և յամենայն դիմաց կարող էր օգնել հօտին Քրիստոսի ։ Զսա յայտնեաց սուրբ Հոգին նստուցանել յաթոռ սուրբ Լուսաւորչին Գրիգորի նախնւոյն իւրոյ, վասն որոյ զսա տեսանէին հեզութեամբ և ամենայն արդարութեամբ զարդարեալ՝ երկրորդս Գրիգոր

անուանի երեւեալ։ Այրս Թողեալ զսէր աշխարհիս և բուռն հարեալ զյաւիտենական կենացն . սա լուսաւորեաց զՀայաստան աշխարհս բազում և ազգի ազգի մեկնուԹեամբ , որ և յամենայն ազգաց ԹարգմանուԹիւնս արարեալ , և լցեալ առհասարակ զեկեղեցի Աստուծոյ ամենայն աստուածային կտակարանացն . և սա պայծառացոյց զկարգ կրօնաւորուԹեանն յազգս Հայոց , և սովաւ նորոգեցաւ աԹոռ սուրբ Լուսաւորչին Գրիգորի 'ի Հայաստան աշխարհս . վասն զի փայլեաց սրբուԹեամբ և ամենայն պարկեշտուԹեամբ և պարապեալ կայր պահօք և աղօԹիւք ։

ԴԱ. Յայսմ ամի դարձեալ երկրորդ ժազով արարեալ իշխանն Պարսից անօրէն Ալլար-Խորասան , և գայր 'ի վերայ բերդին Թըլխմոյ , և մեծաւ պատերազմաւ 'ի նեղ արկեալ զբազում աւուրս՝ և ոչ կարաց առնուլ։ Նա յարուցեալ բազում զօրօք գայր յերկիրն Ուռհայոյ , և հաստատէր 'ի բերդն որ կոչէր Սեւերակս . և կայր անդ Ֆռանգ զօրք կողմնապահք երկերիւր ձիաւոր , գընաց 'ի պատերազմ ընդդէմ Թուրքին և զառաջին երեսն դարձուցին կոտորելով՝ 'ի փախուստ . և յորժամ բազմացան զօրք այլազ-

գեացն արարին փախստական զՖռանգն, և սպանին 'ի նոցանէ արս հնգետասան։ Եւ յայնժամ անօրէն զօրքն (115) յարձակեցան 'ի գաւառն Սեւաւերակայ և 'ի Նխսեպնայ. և էր ամենայն գաւառն բազմամբոխ լցեալ արանց և կանանց, և հօտք ոչխարացն 'ի բազմութենէն՝ որպէս ծով ծփայր առհասարակ ամենայն գաւառն. և սրով 'ի վերայ յարձակեցան գազանաբար, և անողորմ 'ի բերան սրոյ կոտորեցին և արեամբ լցին զերկիրն, և զկանայս նոցա և զորդիսն վարեցին 'ի գերութիւն անհամար աւարաւ։ Եւ յետ սակաւ աւուրց հասանէր 'ի գաւառն Սևահայոց և բանակ հարկանէր 'ի վերայ հոչակաւոր բերդին Թոռիճայ. և արար աւար զամենայն գաւառն, և կէս զօրացն իջաւ 'ի վերայ չափաւոր բերդին՝ որ կոչէր Նշենիկ, և սաստիկ պատերազմաւ 'ի յառ ածին զբերդըն։ Եւ մի ոմն 'ի Հայոց քաջ զօրականացն յայնժամ 'ի յԱռհայ հանդիպեցաւ՝ Պեխտ անուն (116), և էր տուն Նախիջայ քաղաքին. և սորա ձայն տուեալ զօրաց իւրոց՝ յարձակեալ գնաց 'ի վերայ Թուրքին. և քաղաքին տուկն որ կոչէր Պիղաւնիտ տայր զզօրս քաղաքին 'ի Պռօքսիմոսն իւր, և պատուէր տայր զնէի՝ վասն կորստեան Պեխտին, վասն զի մի

արասցէ քաջութիւն և ելցէ անուն զօրութեան նորա ։ Իսկ Պեխտն հասանէր 'ի Նշենիկն 'ի մթան ժամուն, և Թուրքն անհոգացեալ և առ հասարակ կրակ էին վառեալ, սկսան ապուր զուգել. և չարախորհուրդ այրն Գոզսիմոսն զերդ որ ունէր 'ի սրտին զնենգութիւն վասն կորստեանն Պեխտին, 'ի հեռաստանէ զփող պատերազմին հարկանէր, և ազդ արարեալ Թուրքին՝ և ինքն յայլ կողմն գնաց զօրօքն ։ Եւ յայնժամ իշխանն Հայոց գիտացեալ զնենգութիւն ազգին Հոռոմոց, ձայն տուեալ ազատաց իւրոց և յարձակեցաւ 'ի վերայ Թուրքին, և 'ի հասանելն արար բազում կոտորածս, եւ զայլն արար փախստական, և զերրորդն եհան այլ ամրութիւն (117). և 'ի բազմանալն անօրինաց 'ի վերայ՝ մտանէր անվնաս 'ի բերդն որ մերձ կայր 'ի Օուլման. և հարցանէ թէ՝ ո՞ւր է Գռանդ զօրքն քաղաքին. և ասեն՝ եթէ 'ի տէր Կուզման գնաց Գոզսիմոսն ամենայն զօրօքն ։ Եւ ասէ Պեխտն. « Մ՛վ աստուածուրաց Հոռոմք, և մեծ արարիք զձեր նենգութիւնդ »։ Դարձաւ 'ի Մլեւահայ, և յետ աւուրց գնաց 'ի քաղաքն Ճնտիռք. և զայս ամենայն գրեալ ծանուցանէր Թագաւորին՝ Տուկծին ։ Եւ տարեալ Թագա-

ւորն զՊռօքոփիմոն, և քերթեալ զմարմին նորա և ելից մորթին խոտով և առաքեաց յՈւռհայ, և զՊեխտոն ընկեց 'ի փառաց:

ՂԲ. Յայսմ ամի դարձեալ գայր անօրէն և արեանարբու գազանն Ալար—Խորասան 'ի գաւառն Ուռհայոյ և 'ի Չմլայն, և արար անգ սաստիկ կոտորածս 'ի բերան սրոյ 'ի բազում տեղիս և անցոյց զամենայն բնակիչսն. և բազում գերութեամբ իջաւ 'ի վերայ բերդին որ կոչի Տէպ, և առ հասարակ կոտորեաց զամենեսեան, և յարուցեալ գայր բանակէր 'ի տեղի որ կոչի Պռասւս: Իսկ զօրքն Հոռոմոց որ էին 'ի քաղաքն Ուռհայ, հետեւակ և ձիաւոր գնացին 'ի վերայ Թուրքին արք չորս հազար, և հասանէին 'ի Թըլլակն մերձ 'ի Պռասւս. և տեսեալ Ալար-Խոռասան՝ ձայն տուեալ զօրաց իւրոց յարձակեցաւ 'ի պատերազմ. և յառաջ քան զպատերազմն փախեան Հոռոմոց զօրքն, և 'ի Հայոց հետեւակաց երկու եղբայր կալան զկարմունջն, և զամենայն Թուրքն արգելական արարին առ վայր մի՝ մինչեւ ընկալան զմահ սաստիկ պատերազմաւ: Եւ գնայր Հոռոմոց զօրքն 'ի փախուստ, և Թուրքն սրով 'ի հետ. և յայնժամ Պռանգ մի գոչեաց որպէս զառիւծ և դարձաւ 'ի վերայ Թուրքին

և զգազգումն խոցեալ սատակեաց. և արգել զնոսա մինչև փախստականքն հեռացան. յայնժամ բազում խոց առեալ ձին, որ և զինքն 'ի տեղին կատարեցին քաջապէս մահուամբ. և մինչև 'ի խանդակ քաղաքին վարեցին սատրիկ կոտորածով, և լցաւ դաշտն արեամբ, և իշխանս բազումս սպանանեաց:

Յայսմ ամի դարձեալ գայր Սար-կարասանն 'ի գաւառն Ուռհայոյ, 'ի տեղին որ կոչի Կրուպին, և արար անդ ահաւոր կոտորած. և ընակեցաւ 'ի նմա զաւուրս բազումս և արար աւար և գերութիւն զամենայն գաւառն, և գնաց յաշխարհն Պարսից անհամար աւարաւ և բազում գերութեամբ, և անդ սատակեցաւ:

ՂԳ. Յայսմ ժամանակիս Տուկիծ Թագաւորն Հոռոմոց և պատրիարգն և ամենայն կղերիկոսքն և ամենայն դասք ներքինեացն լծակից լեալ չարաշունչ և պիղծ խորհրդոյ անօրէն Թագաւորին, եւ ամենայն մեծամեծ իշխանքն Հոռոմոց ձեռն տուեալ խաւարային խորհրդոցն. վասն զի կամէր Թագաւորն չար միաբանելովք իւրովք բառնալ զՀայոց հաւատոյ դաւանութիւն, և խորհէր եղծանել ապականութեամբ զհաւատս սուրբ Լուսաւորչին Գրիգորի. և կամեցաւ

զիւր դիւալըլուկ և զխառնամինդոր և զԹե-րակատար զհաւատս հաստատել 'ի Հայս . և (ընջել) զհաւատան որ 'ի վաղ ժամանակաց հետէ ամրացեալ էր 'ի Հայաստան աշխարհս , վասն զի հիմնարկեալ էր անդամանդ վիմօք՝ աշխատանօք և մահուամբ սրբոց առաքելոցն Թադէոսի և Բարդուղիմէոսի , և բազմադիմի և ազգի ազգի չարչարանօք Լուսաւորչին սրբոյն Գրիգորի , որ և կայ և մնայ անսասանելի մինչեւ յաւիտեան ։ Եւ արդ՝ սա հրապուրեալ եղեւ 'ի դիւաց , կամեցաւ նմանել այր Թշնամւոյն՝ որ ցանեաց զորոմն 'ի վերայ մաքուր ցորենոյն . և որպէս ասէ իսկ 'ի սուրբ Աւետարանին , այսպէս և սա կամեցաւ զլուսաւոր հաւատս խաւարեցուցանել և զճշմարտուԹիւնն ընդ ստուԹիւնն (118) փոխել , որպէս և սովորք են Յոյնքն . և զայսքան բարձրացեալ զաշտարակ հաւատոյս յօժարուԹեամբ կամեցաւ 'ի փուլ ածել , զորս ոչ կարաց կատարել զչար խորհուրդն իւր ։ Եւ արդ ահա առաքեաց Թագաւորն Տուկիծ 'ի Սեբաստիա քաղաքն , և կոչեաց զորդիսն Թագաւորաց Հայոց զԱտոմ և զԱպուսահլ գալ 'ի Կոստանդինուպօլիս ։ Եւ նոքա ծանեան առ սակաւ մի զչար խոր-

հարցն, և առեալ ընդ իւրեանս զՅակո-
բոս վարդապետն ըստ աւելի անուանն Բա-
ղինեցի, այր գիտնական գրոց բանից, և
գնացին 'ի կոստանդինուպօլիս: Եւ Թագա-
ւորն զառաջինն բարով ընկալաւ զորդիս
Թագաւորացն Հայոց . և զկնի սակաւ ա-
ւուրց սկսաւ յայտնել զչար խորհուրդ մը-
տաց իւրոց և ասէր, եթէ "Հրամանք է 'ի
Թագաւորութեանս մերում՝ զի դուք և ա-
մենայն իշխանք Հայոց աշխարհին առնուք
յանձինս ձեր զկնունք հաւատոյ ազգիս
Հոռոմոց ": Եւ յայնժամ նոքա 'ի մէջ Հո-
ռոմոց անկան 'ի մեծ տարակուսանս, և ա-
սացին ցԹագաւորն Ատոմ և Աբուսահլ.
"Մեք առանց Գագկայ Աշոտոյ որդւոյն ոչ
ինչ կարեմք առնել, զի նա այր քաջ է և
Թագաւոր և մեր փեսայ . առաքեա և կո-
չեա զնա այսր, զի եթէ մեք առանց նորա
իրք առնեմք, նա զմեզ հրով այրէ 'ի գա-
ւառն մեր ": Եւ լուեալ Թագաւորն և ոչ
կամեցաւ գալն Գագկայ, վասն զի այր հը-
զօր էր յիմաստասիրական Ջոկսն և անյաղթ
'ի պատերազմի, զի սա 'ի սուրբ Սոփի 'ի յամ-
բիոնն նստէր ընդ ամենայն վարդապետօքն
Հոռոմոց : Եւ յայնժամ Ատոմ և Աբու-
սահլ գաղտ խնդիր հանեին Գագկայ 'ի կա-

ընապեղաւն: Իսկ Թագաւորն Տուկիծ առաջի քննութիւն հաւատոյ իւր առաջի, և Յակոբոս վարդապետն որ ասի Սանահնեցի, արար դիմադրութիւն բազում յամենայն հարցմունսն ընդդէմ Հոռոմոց. բայց սակաւ մի յաղագս երկուԹեանն Քրիստոսի 'ի կողմն Հոռոմոց դարձաւ: Եւ յամենայն պատճառսն հաւատոց հաճեալ Թագաւորն, եւ հրամայեաց այնր վերայ գիր միաբանութեան գրել ընդ Հայք և ընդ Հոռոմք. և վարդապետն Հայոց Յակոբոս գրեաց գիր միաբանութեան Հայոց եւ Հոռոմոց: Եւ հաճեալ Թագաւորին 'ի գիր հաւատոյն, և հրամայեաց դնել զգիրսն 'ի սուրբ Սոֆի. զի ահա յայսմհետէ եղիցին 'ի միասին միաբանեալ Հայք և Հոռոմք: Եւ 'ի նոյն ժամայն իբրեւ զարծիւ Թռուցեալ հասանէր Գագիկ 'ի Կոստանդնուպօլիս, եւ լուեալ Թագաւորն ուրախ եղեւ յոյժ. և իբրեւ մտաւ առ Թագաւորն՝ հրամայեաց բերել զգիր միաբանութեանն, և առեալ ընթերցաւ Գագիկ, և իբրեւ ծանեաւ զգրեալսն Յակոբոսի, պատառեաց զնա առաջի Թագաւորին յերկուս ծուէնս, և ընկեց զնա յերկիր, և Թագաւորն տեսեալ՝ ամաչեաց յոյժ: Եւ ասէր Գագիկ Թագաւորն վասն

վարդապետին, եթէ «Ահա սա այր կրօնաւոր է, և այսպիսի բազումք կան յաշխարհն Հայոց որք ոչ ընդունին և ոչ ոք հնազանդի գրոյս այս, և մեք ընդ կատարեալ վարդապետսն Հայոց ոչ ունիմք զատ»։ Եւ յայնժամ առաջի Թագաւորին յանդիմանեաց զՅակոբոս և ասէր՝ թէ «Օ խարդ համարձակեցար զայդ գործել, մոռանել քեզ յաւելաքանութիւն, զի այր կրօնաւոր ես»։ Եւ ասաց Պապիկ ցԹագաւորն Տուկիծ. «Ահա ես այր Թագաւոր եմ, և որդի Թագաւորայն Հայոց, և ամենայն Հայք հնազանդին հրամանաց իմոց, և ամենայն Կտակարանացն Աստուծոյ հնոյն և նորոյն հմուտ եմ, և ամենայն Հայք վկայեն բանից իմոց, զի հաւատար վարդապետացն ընդունին զիս. և ահա ես խօսեցայց այսօր ընդ Հռոմոց վասն հաւատոյ ազգիս Հայոց»։ Եւ գրեաց Պապիկ գիր հաւատոյ ձեռամբ իւրով այսպէս, և տայր զնա ի Թագաւորն և ի պատրիարգն. և ունէր գիրն պատճէն այսպէս։

«Հարկ եղև մեզ և ի խնդիր որ յաղագըս հաւատոյ Հայաստանեայցս՝ որ եղեւ ի քէն խնդրելով, Տէր Արքայ. և այժմ զոր առեմ՝ միտ դիր ուղիղ հաւատով, և ի միտ առ, և ծանիր զՀայոց ազգիս զճշմարիտ

խոստովանութիւնս՝ որ է 'ի մի Աստուածութիւնն 'ի Հայր և յՈրդի և 'ի Հոգին սուրբ։ Եւ ահա նախ այս իմանալի է՝ զէութիւնն մարդոյն և զպատճառ լինելութեանն. եւ այս է չափ գիտելոյն զԱստուած, որ ստեղծ զմարդ էութք, և այսպէս խոստովանելի է. առաւելն կամ նուազն քան զայս՝ 'ի չարէն է. Նախ և առաջին գիտեմք զԱստուած անսկզբնամբ և անկատարածիւ, առեալ 'ի վեց թեւիցն, և թեւիցն բացանեն զոչ սկզբնամբն, և զոչ կատարած ցուցանեն չորիւք ծածկութեանն, և յայս եմք հաստատեալ և բաւականացեալ։

«Դարձեալ սաստացուք և՛ վասն արարչութեան մարդոյն։ Իսկ եթէ ընդէ՞ր արարածս առնէ և տուն կազմէ և կամ մարդ արարչագործէ վերջին իմն. զի ամբոյն (119) վարկաւ իւրոյ հարստութեան միայն վայելումն, վասն որոյ առատա պատուոյ հեղու զբարին, և ճանապարհորդէ 'ի հրեշտակաց և այլոց արարածոց լինելութեան ըստ մարգարէին ձայնի՝ որ ասէ. «Ողորմութեամբ Տեառն լի եղեւ երկիր, և բանիւ Տեառն երկինք հաստատեցան. հոգւով բերանոյ նորա ամենայն զօրութիւնք նոցա»։ Ով բարեյաղթ Թագաւոր, ահա ծանուցանեմ քեզ զխոս-

ստուգանութիւն մերոյ հաւատոյս քոյոյ թա-
գաւորութեանդ, և դարձեալ զայս զոր մե-
րըստոյն ճառեցաք : Իսկ սա մեզ պաշտելի է
և երկրպագելի, և այսպէս այսքան ըստ ա-
ռնելի 'ի Հոգւոյն հոգեկրաց : Աստուած ա-
նեմք զՀայր, Աստուած անեմք զՈրդի, Աստ-
ուած անեմք զՀոգին սուրբ. երիս անձնա-
ւորութիւն և կամք մի, կամ հաճութիւն,
կամ տէրութիւն. մի ուսանք 'ի նոսա երկ-
ցութիւնս կամ կրսերութիւնս մի իմացցէ;
և մի ոմն քան զոմն պատուելի կամ խոնար-
հեցուցանելի, որպէս զի միոյն հաճեսցի
և միւսն գործակից է, իսկ միւսն փչեսցէ.
և մանաւանդ եթէ միոյն 'ի միոջէ Աստուա-
ծութեանցն լինի պայծառութիւն միաւո-
րութեամբ բաժանեալ՝ և միաւորեալ բա-
ժանմամբ, որ և հրաշափառագոյնն :

«Յայսմ վայրի կամեցայ կարգել և զՀո-
գւոյն սրբոյ, վասն զի և այսքան յաղագս Հո-
գւոյն սրբոյ իմանալեաւ աւանդեցուք,
որպէս երկնային շնորհացն աւետողն ասէր
սուրբ Աւետարանիչն Յովհաննէս, եթէ
«Էր լոյսն ճշմարիտ՝ որ լուսաւոր առնէ զա-
մենայն մարդ որ գալոց է»: Բայց միթա-
րիչն էր և է և եղիցի. այլ մի է, լոյսն է,
լոյս և լոյս, այլ մի լոյս, մի Աստուած; այն զոր

Դաւիթ եւս յառաջագոյն. իսկ ըստ Աստուածաբանին Յովհաննու (120) որ ասէր. «Հոգին է Աստուած, զոր կրսէր համարելսցըղ 'ի մարդկանէ կարծեն, և ոչ Աստուած » ասելով որպէս զՀայր և զՈրդի »: Ու զայս խոստովանեսցուք զԵրրորդութիւնն և զՀոգին սուրբ: Աստուած եկեալ 'ի ծնունդն, ով բարի շառաւիղ, կամիմք յայտնել քո Ընծութեանդ յաղագս զառ 'ի Հօրէ ծննդեանըն, թէ որպէս համատացեալ հաւատացուք: Արդ՝ այսպէս իմանամք զէականին զոյգ ընդ Հայրութիւնն (121) և ծնելութիւնն. իսկ զերկրորդն վասն փրկութեան մերոյ ըստուգապէս և ոչ խաբանօք և կամ արուեստաբար, որպէս և ոչ հիւրութեան ճաշակելով զոյնթն 'ի տարանին առ կոչեցեալ հօրըն արդարութեանն. Խոստովանիմք և անսկզբամբք արարչութեան զոր 'ի Մովսէսէ գրեցան մինչեւ ցմարգարէսն, իսկ 'ի մարգարէիցն մինչեւ ցկատարումն ժամանակացն որ գալոցն էր, և եկն անդուստ կատարել զխնօրինականն՝ զոր վկայեաց Յիսուս սրբոց Առաքելոցն. և գրով տուաք զԱւետարանն. իսկ 'ի յԱւետարանէս մինչեւ ցերկրորդ (122) Աստուածատեսութիւնն և դատաւորութիւն հատուցմանն՝ բարւոյն առեալ և

չարին, իսկ զկանոնադրեալն Առաքելոցն՝ ընդ-նմին և սուրբ Հարցն:

«Արդ՝ լուր և զայս, ով Արքայ, թէ որ-պէս զհերձուածողն և զհակառակողն Նո-ղովեմք իսկ, որ զհերձուածութեան ախտ ախտացեալ ՚ի միասին. և զանեալ ՚ի գիրս: Այսպէս Նզովեմք զԱղենտրիանոս, որ եր-կուս որդիս ասէ, զմինն բնութեամբ եւ-զմիւսն շնորհօք. և զՏիրն Աստուածածինն ոչ ա-սաց բարի, իսկ զնորա ասաց բարի, վասն որոյ Նզովեմք, և եղիցի Նզովեալ: Մարկիոն զարարիչս բնութեամբ ասէ զոլ, և ՚ի Թը-ւոց դրացեալ զաշխարհն, և զՏեառն մար-մինն առ աչօք՝ և ոչ ճշմարիտ, զնա Նզո-վեմք: Մոնտանոս՝ որ ՚ի չար մոլելոյն, ա-սաց զանձն իւր՝ թէ ես եմ Հոգին սուրբ, և ինքն կանամբք վարէր պղծութեամբ, զսո-րա Հոգին սուրբ Նզովէ, և եղիցի Նզովեալ: Մանի երկու բնութիւն ասաց զոյգ նիւթ, լոյս և խաւար, որպէս թէ բարի կամ չար, Նզովեմք: Նովատոս զապաշխարութիւնն ոչ ընդունի, իբրև թէ մի անգամ սղալեա-լն ոչ բժշկի, զոր ընդ նոսին Նզովեմք, և եղիցի Նզովեալ: Սաբելիոս չարն զերիս դէ-մսս մի ասաց զոլ, և անուամբ միայն զանա-զանեաց, զոր և ընդ նոսին Նզովեմք, և

եղիցի նզովեալ ։ Արիոս երկս դէմս ասաց և մի բան միոջէ խոնարհագոյն, զորս և ընդ մեզ նզովէ կաթողիկէ սուրբ Եկեղեցի ։ Մակենոս 'ի Մակեդոնիայ ասէ առեալ սկիզբն Յիսուս, և ոչ յառաջ քան զյաւիտեանս 'ի Հօրէ, վասն որոյ նզովեմք, և զՆեստորիոս և զԵւտիքոս նզովեմք, և զայ անուն Սարգիս հանդերձ շանն և իշովն իւրով, և քահանակից նոցա երիցի յաւուրն յեանուծին, շանց և իշոց գրեմք, զորս նզովեսցէ կաթողիկէ առաքելական սուրբ Եկեղեցի, և եղիցին նզովեալ ։ Նզովեմք և զՊաւղոս Սամոսատացին, դարձեալ և զՊետրոս կնափեցին (123), նոյնպէս և զՆէոսկարան՝ եթէ խորհեցաւ ինչ այսպէս հերձուածս, և եղիցի նզովեալ ըստ ձեր ուղղափառութեան խօսիցդ ։

«Դարձեալ գրեմք և վասն խաչեալ խաչեցելոյն, կոչեմք և երկրպագեմք. և որք կարծեն՝ կամ կոչեն զԱստուածութիւնն 'ի խաչն խաչեալ կերպ ինչ Աստուածութեանն կրեալ, նզովեսցի յԱստուածութենէն, այնպէս և 'ի մերմէս. նոյնպէս և յեկեղեցւոյ Աստուծոյ ։ Ընկալ, ամենամեծ Տէր Արքայ, և յայլազգս միաւորութեանն Աստուծոյն եւ մարդոյն կալ առ միմեանս բնութեանցն ; և

կամ պատուեալ 'ի մէնջ։ Իսկ զմիութիւն
Աստուածութեանն և զմարդոյն կալ առ մի-
մեանս որք անգիտելիք են սրբոց (124), այդ-
քան համարեալ հաւանեցաք և հաստատե-
ցաք։ Քանզի ասէ իսկ Սքանչելագործն
Գրիգորիոս. « Զի թէպէտ 'ի զանազանիցն
» եկեալ առ միմեանս բնութիւնքն, այսու-
» հետեւ մի տէր, մի Յիսուս Քրիստոս, մի
» բնութիւն խոստովանելի է յետ միաւորու-
» թեան՝ կարողակից արարեալ զմարմինն հա-
» ղեղէն Աստուածութեանն, և 'ի մի զօրու-
» թիւնն միացոյց, 'ի մի Աստուածութիւնն
» բաւանդակեացն»։ Այլ թէ զիարդ և կամ
որպէս ունին առ միմեանս բնութիւնքն,
այլ ոչ յաւելի քննեցին՝ քան զոր Հոգին
սուրբ ետ բարբառել. զիարդ սքանչելա-
գործքն թոյլ ետուն գիտել Աստուածային
իւրագործութեանն, ծնունդ իբրեւ տիրա-
պէս Աստուծոյ թողին։ Դարձեալ և երա-
նելին Գրիգոր Նիւսացին ասէ, եղբայր
սրբոյ հայրապետին Բարսղի, 'ի գիրս իւր
որ յաղագս բնութեան մարդոյն, 'ի վեցե-
րորդ ճառին՝ որ վասն միաւորութեան հոգ-
ւոյ և մարմնոյ (125). « Այլ քանզի պատշաճիւր
» արդեօք 'ի մաքուր բանն այսպէս. և մանա-
» ւանդ առ մարդկութիւն միաւորութիւն

» Աստուածն բնակի, ընդ որում միաւորեալ
» միայց անշփոթ և անպարագրելի, և ոչ ըստ
» անձին յեղանակի. քան զի նա 'ի բազմա-
» ցեալցն գոլով՝ Թուի և ախտակից լինել փա-
» ռըն խուրութեան մարմնոյն, երբէք զի ըմ-
» բռնեալ: Իսկ Աստուածն Բան ոչինչ 'ի կցոր-
» դութին որ առ մարմինն, և անձն այլայլելի,
» և ոչ ընդունակ եղեալ նոցա տկարութեն,
» այլ հաղորդեցուցեալ զնոսա իւրոյ Աստուա-
» ծութեանն. և լինի նոքօք մի միացեալ, մի
» որ ինչ էրն և նախ քան զմիաւորիլն: Նոր
» իմն է յեղանակս այս խառնմանս և միա-
» ւորութեանս, և խառնէ և միայ յամենայնի
» ամենեւին անխառն և անշփոթ և անայլա-
» կան և անփոփոխելի. ոչ ախտակից եղեալ՝
» այլ գործակից միայն, ոչ ապականակից և
» այլայլակից՝ այլ 'ի միասին աճեալ նոցա. նա
» ոչ նուազեալ 'ի նոցանէ առ 'ի միոյ անփո-
» փոխելի, անշփոթելի. վասն զի և մաքրապէս
» ամենայն այլայլութեան անընդունակ է: Ըս-
» կայէ այսոցիկ մեծ իմաստասէրն Պորփիւ-
» ռոս յերկրորդ բանին շաղախառնիցն գրէ
» այսպէս. «Ոչ է ասել, եթէ անհնարին է է-
» ութե իրիք առեալ լինել լրումն այլ էու-
» թեան և լինել մասն էութեան, միայն
» ըստ իւրոյ բնութեանն մի լինելոյն, զմիւս

» էութեանն ընդ այլում լինելոյն, և զիւրն
» ամբողջ պահելով զմեծագոյութիւնն իւր ոչ
» փոփոխեալ, այլ փոխեալ զնոցա յուրս լինե-
» ցին իւր ներգործութեանն մերձաւորու-
» թեան »։ Իսկ ասել զայս յաղագս մերձաւո-
» րութեան անձին և մարմնոյն։ Իսկ եթէ ՚ի
» վերայ անձին ճշմարիտ է բանս յաղագս ան-
» մարմնութեան, որչափ ևս առաւել ՚ի վե-
» րայ Բանին Աստուծոյ յաւէտ անբաղդատա-
» բար և ըստ ճշմարտութեան մարմնոյն. որ
» հակառակ խցցէ զբերանն հերձուածողաց,
» բաժանել զԱստուծոյ Բանին միաւորու-
» թիւնն որ առ մարդկութիւն, քանզի այս հե-
ղթանոսացն է՝ որ զբաղադրածնծաղելիս առնենն։

«Եւ դարձեալ քրիստոնեայք և հաւատա-
ցեալք՝ (որք) յայլ միոյ ինչ (կամին) իմանալ և
խոստովանիլ, և կալմանք առ միմեանս՝ կամ
միաւորութեամբ, եղիցին նզովեալ։ Եւ եթէ
ոք զՄարիամ Աստուածածինն՝ զաւուրբ Կոյսն
հետոյ կարծեսցէ յաստուածութենէն, ե-
ղիցի նզովեալ։ Եւ եթէ ոք ասասցէ՝ թէ
իբրեւ ընդ խողովակ ընդ Կոյսն անցեալ,
այլ (և) ՚ի նմա ստեղծեալ ասելով՝ աստուա-
ծաբար միանգամ և մարդաբար, աստուա-
ծաբար՝ զի առանց առն, և մարդկօրէն՝ զի
օրինաց ծննդեանն, նմանապէս անստուած

է։ Եթէ որ ասասցէ յառաջ ստեղծեալ ըզմարդն, և ապա աստ մտեալ բնակիլ զԱստուած, դատապարտի (126), որ ոչ ծնունդ Աստուծոյ ասէ, այլ փախչի ՚ի ծնանելոյն։ Եթէ որ ՚ի ներքս ածիցէ երկուս որդիս, ըզմինն յԱստուծոյ ՚ի Հօրէ եւ զերկրորդն ՚ի մօրէ, այլ ոչ՝ զմինն և զնոյն, յորդեգրութենէն արտաքոյ անկանի, զոր խոստացաւ ուղիղ հաւատացելոցն։ Ընդունիմք երկուս, քանզի Աստուած և մարդ, հոգի և մարմին. բայց որդիք ոչ երկուք և Աստուած ոչ երկուք, այլ՝ մի. զի և ոչ աստ երկու մարդ. Թէպէտ և Պօղոս այսպէս ասաց, զերկու՝ զներքին մարդոյն և զարտաքինն անուանեաց։ Եթէ պարտ է համառօտագոյն ասել, այլ և այլ յորոց Փրկիչն, եթէ ոչ նոյն աներեւոյթն և երեւելին, անժամանակն և ժամանակաւորն, ոչ այլ որ, և այլ մի լիցի, վասն զի երկուք ՚ի տանն ՚ի մի խառնելով՝ Աստուծոյ մարդանալ և մարդն աստուածանալ. կամ որպէս արդեօք անուանիցէ։ Ասեմք՝ այլ և այլ դէմ նմին Երրորդութեանն ունի ։ քանզի և առ այլ ոմն, այլ՝ զի մի զդէմսն խառնակիցեմք, ոչ այլ և այլ. վասն զի մի (է) երկոքեանն, և նոյն՝ աստուածութեամբն։ Եթէ որ որպէս զմարդ արէ՝ ասէ շնորհիւ (127).

ծնեալ, այլ ոչ ըստ բնութեան միաւորեալ և ստեղծեալ, ընդ նոսին եղիցի 'ի լաւագոյն զօրութենէն նզովեալ: Մանաւանդ եթէ լինի հակառակ՝ եթէ ոչ ոք երկրպագանիցէ խաչեցելոյն, նզովեալ լիցի, և դատեսցի ընդ աստուածասպանսն: Եթէ ոք յետ մկրտութեանն՝ կամ յետ մեռելոց յարութեանն որդեգրութեան արժանաւոր լեալ ասիցէ (զՔրիստոս), նզովեալ եղիցի. քանզի սկսեալ, կամ յառաջադէմ, կամ կատարեալ՝ ոչ է Աստուած, թէպէտ և յաղագս առ փոքր փոփոխմանն այսպէս ասիցի: Եթէ ոք 'ի բաց եդեալ այժմ ըզմարմինն ասիցէ, և մերկ զԱստուածութիւնն 'ի մարմնոյն, այլ ոչ հանդերձ՝ զոր էառ, և այժմ և յորժամ եկեսցէ՝ մի տեսցէ նա զփառս գալստեանն նորա. քանզի ուր է մարմինն նորա այժմ, եթէ ոչ ընդ առղին. եթէ ոչ ըստ Մանիքեցոցն աղճատանաց որ ասեն 'ի յարեգակն եդեալ, զի պատուեսցի անպատուութիւնն (128). կամ յօդս ցնդեցաւ, և լուծաւ որպէս 'ի բնութեան, և հոգւոյ հեղումն եւ փայլատականց ընթացք, ոչ հասցեալ ուր և զշօշափեալն կամ զօրութեանն և տեսանելին երբեմն խաչողացն, զի Աստուածութիւնն ըստ ինքեանն անե-

բեւոյթ (է)։ Այլ եկեալ հանդերձ մարմնով որպէս 'ի միաբան, որպէս երեւեցաւ աշակերտացն 'ի լերինն Թաբօր. քան որում երեւեցաւ գերայայաղթելով զմարմինն Աստուածութեանն, որպէս զայս ասեմ՝ քեզ ծանուցանելով զմիտս. Եթէ ոք ասասցէ զմարմինն յերկնից իջեալ, նզովեալ եղիցի, վասն զի երկնաւոր մարդն յերկնէ, նոյնպէս և երկրաւորքս (յերկրէ). և ոչ ոք ել յերկինս, եթէ ոչ որ էջն յերկնից Որդին մարդոյ։ Եւ եթէ այլ ինչ նոյնպիսի՝ իմանալի է ասել յաղագս երկնաւոր միաւորութեան, որպէս և Քրիստոսի լեալ ամենայն, և բնակեալ Քրիստոս 'ի սիրտս մեր առ 'ի լուսաւորել զմեզ։

«Կամեցայք այսու ծանուցանել քո Բարեյաղթութեանդ յաղագս խաչելոյն և խաչելութեան, զոր և ասեմք՝ «Որ խաչեցար վասն մեր»։ դարձեալ 'ի ժամ աղօթիցն յորժամ երիցս ձայնեմք զերախտիսն Աստուծոյ յաղագս խաչելոյն, և սուրբ զնա կոչելով Աստուած՝ հզօր՝ անմահ, որ վասն մեր խաչեցար։ Եւ եթէ ոք Հօր և կամ Հոգւոյն սրբոյ համարեսցի, և կամ ասասցէ զոյդ երիցն կրել զանօրինականն և երիցն խաչեալ. դատապարտ գոյցի երից Աստուածութեանն. ապա եթէ զՈրդւոյ միայն հրապարակեմք

զչարերարութիւնն՝ փախչելով 'ի բանէն որ ասէ սուրբ Նեւտոսարանն. “Եթէ որ ամօթ համարեսցի զիս և զբանս իմ, զնա և Որդի մարդոյ ամօթ արասցէ յորժամ եկեսցէ ”։ Իսկ այս 'ի դէմս խոստովանողաց, սակայն ծածկելոցն զերախտիսն Աստուծոյ զխաչելութիւնն՝ իբրեւ թէ որ յամօթ համարեսցէ, ամաչեսցի յաւուրն յետնում։ Քանզի ուղղափառ արդեօք Գրիգորիոս Հայրն Աստուածաբանութեանցն ասէ՝ “Աստուած խաչեալ, արեգակն խաւարեալ ”, և համարձակի՞ որ թագուցանել զխաչելութիւնն. բայց եթէ որ զՀայր և զՀոգին սուրբ մերձ դնիցէ, նզովեալ է։

“Իսկ 'ի վերայ այսր բանիցս և վասն կատարման սուրբ Խորհրդոյն հացին և գինւոյն գրեմք։ Իսկ զխմորդ անապական առեալ զբաժակն հանդերձ անխմոր հացիւն, յաղագս աւանդելոյն մեզ՝ յայնպիսի գիշերոյն յորում մատնէր մարմին և արիւն իւր, կոչեաց 'ի յիշատակ իւր (և) կատարել ասաց։ Իսկ վկայեաց Յովհան երանելին Ոսկեբերան 'ի յաւետարանին մեկնութեանն 'ի Փարիսեցւոց գլխոյն ասելով, եթէ “Ոմիւս չար հերձուածն արտաքս խլեսցէ. վասն այսորիկ և ոչ յետ յարութեան բաժակ միայն էառ և ան-

» խմոր հաց։ Նմանիք և են սմանք, ասէ, որ 'ի
» սուրբ խորհուրդն ջուր 'ի կիր արկանեն, զի
» և որթն գինի միայն ծնանի՝ և ոչ ջուր »(129)։
վասն որոյ և մեք պահեմք զաւանդս զայս։
Բայց վասն 'ի կողէն հեղլյն երկուց վտակա-
ցըն՝ խառնեցին ջուր, զի ընդ արեանն ջուր
եղանէր, և զխմորն՝ զի Աստուածութիւ-
նըն ընդ մարմինն խառնիւր, ոչ ուղղապէս
մեկնեցին զայս. զի յաղագս ջրոյն և արեանն
երանելին Յովհան ասէ, իբրեւ թէ ջուրն
զկատարեալ մեռելութիւնն ցուցանէ, իսկ
արիւնն զկենդանութիւնն, որպէս էր իսկ
կենդանի, կատարեալ և մեռեալ. զի ոչ
մարդն բաժանեալ յԱստուածութենէն, այլ
զմի և զնոյն աւանդեմք՝ (որպէս) յառաջա-
գոյնն. ոչ մարդ, այլ Աստուած և մարդ միայն,
և յառաջ քան զյաւիտեանս անխառն մար-
մնոյն է, իսկ 'ի վախճանի զմարդն էառ յա-
ղագս մերոյ փրկութեան. չարչարեալ մար-
մնովն անչարչարելի Աստուածութիւնն, բա-
ւանդակելի մարմնովն, անբաւանդակելի
Աստուածութեամբն, զնոյն ինքն երկնաւոր
և երկրաւոր, տեսանելի և անտեսանելի,
տարեալ և անտարելի. զի բաւանդակելի
անբաւանդակելին՝ մարդ եղէ և Աստուած։
Իսկ մեք Աստուծոյ միայն երկրպագանեմք

և խոստովանութիւնք. և անբաժանելի խառնմամբ զաստուածութեանն և զմարմնոյն համանմանիւք զի մի և մարմնոյն երկրպագեսցուք՝ և չորրորդութիւն 'ի ներքս ածցուք փոխանակ Երրորդութեանն, և կամ մարդոյն միայն փրկեալ արեամբն՝ և ոչ աստուածայնոյն :

«Այլ արդ՝ լուարուք վասն տօնի ծննդեան Տեառն և պահոցն : Իսկ յաղագս տօնիցն զորս բաժինս առնէք 'ի մէնջ՝ զայս առնելով պատճառ : Նախ և առաջին զծնունդն Քրիստոսի. վասն զի ասէ Ղուկաս աւետարանիչ եւ առաքեալն՝ այսպէս. «Եւ էր Յիսուս իբրեւ ամաց երեսնից ․ և սկսեալ յայսնապէս ցուցանէ զի 'ի նոյն աւուր ծննդեանըն մկրտեալ, և առնուլ սկիզբն երեւմամբ կատարեալ համակի վարդապետութեանն. զի թէպէտ և պապանձմանն Զաքարիայի թուեն աւուրս հարիւր և ութսուն, որ դիպեցուցանէ զաւետաւորութիւնն 'ի քսան և հինգ մարտի, անտի թըուեն երկերիւր եօթանասուն և վեց զաւուրս յղութեան սրբոյ Կուսին ըստ տասնամսեան աւուրցն անդրանկածնութեանն, որ դիպեցուցանէ զծնունդն 'ի դեկտեմբերի քսան և հինգ : Արդ՝ քննեսցուք նախ զՂեւտականն և. ապա զԱւետարանն. քանզի Ղեւ-

տանկանն այսպէս ասէ (130). « Յորժամ իմ Նու-
„ իրեալ՝ սուրբ կոչեսցի ձեզ. երբեմ ժա-
„ մանակս տարւոյս տօնեսջիք, և ամենայն
„ արու ձեր յանդիման լինիցին ինձ. և տա-
„ րուսջիք պատարագս Տեառն »։ Եւ յառաջ
մատուցեալ ասէ. « Յամենայն եօթներորդի
„ որ օր մի է, սուրբ կոչեսցի ձեզ. և որ օր
„ առաջին և հինգ Նորին ամսոյ՝ է տօն տաղա-
„ ւարահարացն կոչեցեալ, սուրբ լիցի ձեզ.
„ զամենայն գործ աշխատաւորութեան մի գոր-
„ ծէք ՚ի նմա։ Իսկ օրն եօթներորդ սուրբ կո-
„ չեսցի ձեզ՝ շաբաթ հանգիստ, զամենայն
„ գործ աշխատաւորութեան մի գործէք ՚ի նմա »։
զայս բանս գիրն ասէ։ Արդ՝ պապանձումն
Զաքարիայ ՚ի թշրին ամսոյ էր, վասն զի նա
է ամիս եօթներորդ, այն է որ քառու-
թեանն յորում մտանէր քահանայապետն
՚ի սրբութիւն սրբոցն, և այն՝ մի անգամ
՚ի տարւոջն ըստ բանին Պաւղոսի. բայց ՚ի
նմին աւուր մերձենալ Զաքարիայի առ-
կինն անպատշաճ էր, վասն զի նա էր քա-
հանայապետ տարւոյն, և մեծ տօնն տա-
ղաւարահարաց առաջի կայր, եւ ամենայն
Իսրայէլ անդ էր ժողովեալ. և զի եւթն
օր տօնելոց էին զտաղաւարահարացն, և զի
անմարթ էր քահանայապետին թողուլ ըզ-

ժողովուրդն և երթալ 'ի տուն իւր, նա աւանիկ զի 'ի քացեալ էր բնակութիւնն նորա և ոչ յԵրուսաղէմ, վկայէ այսմիկ սուրբ աւետարանիչն Ղուկաս և ասէ. եթէ „Ժո„ղովուրդն ակն ունէր Զաքարիայի, և զար„մանային ընդ յամելն նորա 'ի տաճարին։ Եւ „եղեւ իբրեւ լցան աւուրք պաշտամանն նո„րա, գնաց 'ի տուն իւր։ Եւ դարձեալ ասէ. „Յետ աւուրցն այնոցիկ յղացաւ Եղիսաբէթ կինն նորա„։ Եւ ով որ ոչ գիտեն զայս՝ որ միտս ունին, թէ մինչ ժողովրդեանն հրամայէր սրբել և պաշտել ոչ միայն զտօնին՝ այլ և յաղագս տօնին զամսամուտն և զառաջիկայ աւուրն զերրորդ, ապա զիա՞րդ 'ի մէջ գլխաւոր տօնիցն քահանայապետն թողոյր զժողովուրդն և երթայր 'ի տուն եւ մերձենայր 'ի կին, նա աւանիկ յայտնապէս խօսի ասէ աւետարանիչն՝ թէ „Յարուցեալ „Մարիամ գնաց 'ի լեռնակողմն 'ի քաղաքն „Յուդայ, և եմուտ 'ի տուն Զաքարիայ„. և արդ 'ի նոյն աւուր. տօնին մերձենայր։ Արդ իմացուք, զի յայտ իսկ եղեւ 'ի տառքն(131) թշրին ամսոյ պապանձումն Զաքարիայի, որ է քսան և հինգ սեպտեմբերի, և քսան և երկու թշրին ամսոյ մերձաւորութիւն և յղութիւնն Եղիսաբեթի։ Եւ արդ՝

Թուեալ զաւուրս վեց ամսոյն՝ հարիւր եւ ութսուն, և ցուցանէ զվեշտասան ամացն, որ լինի 'ի վեց ապրիլի ըստ Հռոմայեցւոցն, որ եղեն աւետիք սրբոյ կուսին Մարիամու: Եւ թողեալ տասնամսեայ աւուրս որ անդրանկածնացն կատարի, երկերիւր ութսուն և վեց օր, քսան և մէկ սեպտեմբերի [132], որ է 'ի վեց յունվարի ըստ Հռոմայեցւոցն: Արդ՝ մեք 'ի յայս եմք հաստատեալք և անխախտելի կամք մինչեւ յաւիտեան աներկմիտ հաւատովք:

“Դարձեալ տասացուք ձեզ և յաղագս պահոցն յառաջաւորայն, վասն զի բազում հակառակութիւնք և հերձուածք և մաքառումն ունին Հռոմք ընդ ազգս մեր: Արդ՝ յաղագս պահոցն յառաջաւորաց ոչ ինչ մեղաց իցէ. քանզի ըստ տկարութեան ազգի բնութեան առաջնորդքն զատեցին 'ի քառանորդացն, վասն զի սրբութեամբ հրամայեցին պահել, և 'ի բերոյ որթոյ մինչև ցկընջիթն [133] որոշեցին, թող թէ 'ի գինւոյ կամ 'ի ձէթ. վասն զի ոչ զօրէին պահել՝ հրամայեցին հանգիստ տալ 'ի միջոցն: Եւ պատճառ պահոցն այսքան բաւական է, թէպէտ և ունի այլ միտս բազում՝ զոր 'ի հնումն, զի յաղագս հինգ զգայութեանցն յանցանելոյ

առաջին մարդոյն որ 'ի դրախտին՝ հինգա-րեայ սահմանեցաւ սկսեալ պահք, իբրև թէ դա է (134) սկիզբն պահոց քրիստոնէու-թեանս մերում և ստորիմն ելանել 'ի բար-ձրագոյնսն՝ որ 'ի քառասներորդն. այսպէս և Մովսէս յանապատին բարեկենդանացու-ցանէր զժողովուրդն առնուլ հրաման 'ի Տեառնէ. նոյնպէս և քաղաքն Նինուէացւոյն հնգօրեայ պահօքն եղին բժշկեալ, և լի-նէր դադարումն կործանմանն։ Այնպէս և Կիւրեղ որ եկաց հայրապետ Երուսաղէմ, հրամայեաց հնգօրեայ պահօքն զգաստանալ նախ քան զմկրտելն։ Այլ բազում պատճառս կայ զորս աւելորդ համարեցայ աստ գրով բա-նագործել (135) և տաղտկալից առնել մտաց։ Պահքն ոչինչ թիւրութիւն ունի առ հա-ւատան, այլ մանաւանդ առ 'ի լնումն է հա-ւատոյն. և ոչ նա մեղադրելի վասն հինգ-օրեայ պահոցն պանդխտութեան, պարտ էր թէ և զայն բնաւ ոչ ունէիք. բայց 'ի տօնի յորում (136) զատարատեղական զաւուրս Սարգսի յիշատակեմք, և ճշմարիտ մարտի-րոսն որ վկայեցաւ յորդւոյն Հագարու՝ յաշխարհն Նագրեւանդի, յորդւոյն Սան-հերիբ յաւուրս Թէոդոսի Թագաւորի. եւ ոչ առի սա իշխանն Սարգիս ստրտուած-

ւորացն, այն որ շահն տայր երկիրպագանել։ Իսկ մեք Քրիստոնեայքս զսուրբն Սարգիս զՃշմարիտ մարտիրոսն յիշատակեմք. այլ յայդ մասին մի լիցի ինչ հերձուած կամ գայթակղութիւն։ Եւ արդ՝ Ճշմարիտ խոստովանութեամբ և համառօտաբար այսքան իմացի և զորս վասն առաջնորդաց պահոցն՝ զորս 'ի վերոյ գրով աւանդեցաք, որ ունիմք և եմք և կամք հաստատուն մինչեւ ցայսօր և մինչեւ ց յաւիտեան, որ է 'ի ներկայումն և յապառնիսն. և տէր՝ տէր իմ Յիսուս եղիցի ընդ իւրում ծառայիցդ, և նմա փառք և երկրպագութիւն եկեղեցւոյ սրբոյ, որ է օրհնեալ յաւիտեան և յաւիտենս յաւիտենից. ամէն »։

Եւ այսպէս խօսեցաւ Գագիկ արքայ Հայոց դէմ յանդիման Թագաւորին Տուկծին, և 'ի մէջ ամենայն հաւատոր վարդապետաց տանն Յունաց 'ի քաղաքն Կոստանդինուպօլիս։ Եւ յոյժ հաճեալ Թագաւորին Տուկիծ, և ամենայն իմաստասէրքն որ նստէին 'ի Ճեմարանին, և հիանային ընդ կորովութիւն բանիցն և ընդ հաստատութիւն շնորհացն. և յանձնեամ արարին սէր և խաղաղութիւն ընդ որդւոց Թագաւորացն Հայոց, և Թողեալ զաւելախօսութիւն բա-

Մարկոս ուրախութիւն մեծ։ Բայց Գագիկ կայր յայն զայրացեալ անձնային զօրօքն. եւ խորհէր սպառ ուրախանալ ընդ գինեաւն, յայնժամ սկսաւ ասել Գագիկ ցկիւռ Մարկոսն, եթէ «Լուեալ եմ եթէ քո շուն զօրաւոր կայ. և կամիմք տեսանել զնա»։ Եւ գիտացեալ Մարկոսն թէ կամի ուզել զնա իւր, և զանց արար զբանիւն. և յորժամ կրկնեաց զբանն Գագիկ, կոչեցին զշունն և նա ոչ գայր, քանզի զանունն ոչ հանապազակեցան ձայնել զԱրմէնն, և ասէ Գագիկ. «Զիւր անունն ձայնեցէք որ գայցէ»։ Եւ յայնժամ Մարկոս յաղթահարեալ ի գինւոյն և ձայն տուեալ շանն ասէր «Արմէն Արմէն»։ Եւ եկեալ շունն նմանեալ առիւծու, եւ տեսեալ Գագիկ ասէ. «Արմէ՞ն կոչի շունս այս»։ Եւ ամաչեալ յայն Մարկոս ասէ. «Մանուկ է. փոխան այնր ասեմք իւր Արմէն»։ Եւ ասէր Գագիկ. «Այժմ տեսանեմք թէ ով է մանուկն. Արմէ՞ն թէ Ճանուկն»։ Եւ մեծ քուրձ մի պատրաստեալ կային ունէին, և անհարկեաց Գագիկ և յայնժամ հետեւակքն սպանեցին, և մեծաւ աղխատութեամբ արկանէին զնա ի քուրձն։ Եւ տեսեալ կիւռ Մարկոս և գիտացեալ եւ թէ զշունն կամին զհետ իւրեանց տանել.

կարգք ի վարդապետութեանցն էր սա յաղագս Հայոց։

ՂԵ. Իւր առէր՝ Ներսէս ՚ի Բագրեւանդ գաւառէ իշխան Հայոց, և սա էր այր կըրօնի և յոյժ հանճարեղ, բանիբուն և իմաստասէր, ուսեալ ՚ի մեծն Աթենս, համեալ ամենայն շնորհաց աստուածեղէն կատարութեանն, և կարող էր կալ ՚ի գլուխ ամենայն իմաստնոցն Հռոմայ հզօր գիտութեամբ և զարմանալի առաքինութեամբ, նմանեալ Գրիգորի և այլոց իմաստասիրացն Հայոց զոր գրեցաք ։

Սորա՝ յաւուրս Գրիգորի Շահնշահի որդւոյ Աշոտոյ Թագաւորին Հայոց եղև անւոր և զարմանալի նշան Աստուծոյ վասն սուրբ խորհրդոյն ՚ի վանքն որ կոչի Պիղու, զոր շինեաց Գրիգորիկ արքայ։ Սորա յաւուր Պենտեկոստէին մինչ սուրբ պատարագն մատուցանէին ՚ի սուրբ եկեղեցին Աստուծոյ, մարմն ՚ի միջի սուրբ խորհրդոյն ընկէց ժամարարն առաջի սրբոյ սեղանոյն. և յաւուրն երրորդի տեսանէին տեսիլ երկու արժանաւորք ՚ի Ճգնաւորացն, և եկեալ ՚ի տեղի աղօթիցն յառաջ քան զհարցն, և ասէր առաջինն՝ թէ «Տեսանէի ՚ի տեսլեան գիշերոյ, զի կանթեղն որ կայր ՚ի գմբէթ տաճարին՝ անկանէր առաջի սրբոյ սեղանոյն Աստուծոյ,

և լուան անշիջանելի ձայն 'ի նմանէ ։ Եւ զառա-ձեալ միւսն այսպէս ասէր. «Եւ ես խնկ ան-ուանէի, և ահա տեսի մի մեծ և զարմանալի 'ի բարձրութենէ երկնից անկեալ երկու ա-ռաջի սրբոյ սեղանոյն Աստուծոյ, և լուան ա-ռաւել եւս բարբառէր 'ի նմանէ. Եւ հրա-ցեալ ամենեցուն ընդ տեսիլն. և յայնժամ հայր վանացն գիտացեալ հոգւոյն՝ և ասէր. «Տեսէք՝ զի ահա անկեալ կայ մեռան 'ի սուրբ Խորհրդոյն». և նոյն ժամայն լուցեալ մանե-ղէնս, և հանդերձ խնկօք հասանէին 'ի տե-ղին, և ոչ (137) էին աւել անձեալ Եկեղեցւոյն զայնքան աւուրսն. իսկ յայնժամ երանեէին 'ի բեմին՝ գտանէին զմասն սուրբ Խորհրդոյն ա-նարատ առաջի սրբոյ սեղանոյն Աստուծոյ, և առեալ գոհացան զԱստուծոյ մերոյ ընդ Տեառնէ Յիսուսէ Քրիստոսէ. և բազումք հաստատեցան 'ի հաւատս ուղղափառու-թեան, և յայնմ օրէ ծանեան եթէ Խոր-հուրդս այս երկնային է և աստուածային, և ճշմարիտ սա է մարմին որդւոյն Աստուծոյ ։

ՂԶ. Իսկ 'ի փոխել թուականութեանս Հայոց յամին ՇԺԵ (1066—1067), երեւեցաւ աստղ մի գիսաւոր յարեւելից կողմանէ՝ և յարեւմուտս ընթացեալ, և կացեալ նորա ամիս մի՝ և եղեւ աններեւոյթ. Եւ յետ ա-

ւուրց երեւեցաւ յարեւմուտս կոյս 'ի յե-
րեկորէն, զոր բազմաց տեսեալ ասէին՝ եթէ
այս այն գիսաւոր աստղն էր որ երեւեցաւ
յարեւելս ։

Յայսմ ժամանակիս զօրաժողով արար ա-
միրայն Պարսից որ ասի Եւշէն, և յապական-
նութիւն դարձոյց զքաղաքս գաւառս, եւ
արեան ջախջախիս արարեալ զդաշտս հաւա-
տացելոց Քրիստոսի, և բազում սուգ եւ
խաւար տարածեցաւ 'ի վերայ երկրի 'ի ձե-
ռաց անօրինիս այսմիկ ։ Եւ գայր խաղայր
բազմութեամբ զօրօք, և արար ձմերոց 'ի
Սեաւ լեառն, և ահագին արեան հեղու-
թիւն և կոտորած լինէր յամենայն գաւա-
ռսն, և բազում անձինք 'ի սրբոց կրօնաւո-
րացն մատնեցան 'ի բերան սրոյ և յայրու-
մըն հրոյ, և եղեն կերակուր գազանաց և
թռչնոց, և ոչ ժամանեցին ծածկել հողով,
վասն զի մնացին անթաղք մինչեւ յաւի-
տեանս. և անթիւ վանորայք եւ գեղք
այրեցան հրով, որք երեւին մինչեւ ցայս
օր. և Սեաւ լեառն և ամենայն գաւառն
'ի ծայրէ 'ի ծայր լցաւ արեամբ կրօնաւո-
րացն և քահանայից և արանց և կանանց, և
ծերոց և տղայոց՝ ըստ բանի մարգարէին որ
ասէ, եթէ «Զերիտասարդս նոցա եկեր հուր,

և վասն կուտանացն ոչ ոք ազատայաւ. և քահանայք նոցա անկեալ 'ի սուր, և զայրիս նոցա ոչ ոք էր որ լայր ». և Թէ՝ « Հեղին զարիւնս նոցա շուրջ զԵրուսաղէմաւ, և ոչ ոք էր որ Թաղէր զնոսա »: Արդ՝ այսպիսի կատարած բարկութեան եկած 'ի վերայ հաւատացելոց անօրէնն և չար գազան Աւշէնն, որ և անպատմելի (է) պատմողաց գործ նորա

Յայսմ ժամանակիս եկանէր ամիրայ մի մեծ և հզօր 'ի դրանէն Աբասայն սուլտանայ, որ էր հեծալ նորա և անուն նորա Պըզմէշ Տիկին (138), և յարուցեալ զայր մեծաահարկութեամբ և ախոյեան զօրօք հասանէր 'ի վերայ քրիստոնէիցն, և վտակս արեան յարուցանէր 'ի յազգէ հաւատացելոց. Եւ բազում խոցուածով զայրացեալ 'ի վերայ գաւառին Թլխմոյ որպէս գազան, և արար սաստիկ կոտորածս զմնացեալսն յառաջինն բարկութենէն, և մեծաւ պատերազմաւ էառ զբերդն որ կոչի Թլէթուխ, և անողորմ զամենեսեան սրով կոտորեցին: Եւ անհամար գերութիւն հասանէր 'ի գաւառն Ուռհայոյ, և իջեալ 'ի վերայ բերդէն որ կոչի Նըսեմի, և աւուրս ինչ պատերազմեալ 'ի վերայ նորա և ոչ կարաց առնել ինչ. յայնժամ անցանէր ընդ հունն Եփրատ գետոյն. և սրով

յարձակեցաւ 'ի վերայ Հասասան-մարդոյ գաւառին, և աստուածասաստ բարկութեամբ 'ի բերան սրոյ մաշեաց զայն քաջ վայելուչ գաւառն, և զմնացն դառնութեան իւրոյ չարութեանն եհեղ 'ի վերայ ամենայն գաւառին, վասն զի որպէս զկարկուտ հրացայթ փայլատակմամբ հասանէր 'ի վերայ ամենայն բնակչաց երկրին սոսկալի կոտորածով, և հըրով այրէին, և զամենայն իշխանսն գաւառին Հասասան-մարդոյ սրով և մահու խոշտանմամբ սատակէին, և զփառաւոր կանանայսն և զվայելուչ որդիսն նոցա հանդերձ դստերօքն 'ի գերութիւն վարէին: Իսկ ահա անդ էր տեսանել զաստուածասաստ բարկութիւնն 'ի վերայ հաւատացելոց Խորասանի, վասն զի առ հասարակ մեծամեծք և աղքատք զմի ճաշակ դառնութեան ճաշակէին յանողորմ դազանէն և 'ի . . . . . . ազգէն Թուրքաց, և առ հասարակ 'ի սուր սուսերի մաշեալ լինէր վայելուչ գաւառն այն, և զաւուրս երկիս անդադար լինէր կոտորումն քրիստոնէից: Իսկ 'ի վերայ այսքան բարկութեանն և դառն կատարածին՝ իշխան մի որ էր 'ի բերդն Նսեպնայ, որ առ Միփար քաղաք, փութապէս առաքեաց 'ի քաղաքն Ուռհայ և ազդ արարեալ տուկին՝ որ կոչէր Դրուանդանոս, եւ

տաց թէ՝ « Ամիրայն զօրացն Պարսից հաս կայ յեզր գետոյս Եփրատայ հարիւր արամբք . եկ հասիր 'ի վերայ սորա, և սորա զինքն ձերբակալել »: Իսկ նորա յապաղմամբ և անշտապողական արութեամբ գայր 'ի վերայ ամիրային Պոմէշ—Տիկնոյ զօրօք բազմօք, զորս լուեալ ամիրային և առաքեաց 'ի Հասան—մնուր բերել զզօրս իւր : Իսկ Արուանդանոսն հասանէր զօրօքն իւրովք յանուանի բերդն որ ասի Օշին, հազար եւ հինգ հարիւր ձիաւորօք և քսան հազար հետեւակով, և հանդիպեալ միմեանց 'ի պատերազմ, և որպէս զառիւծ յարձակեցաւ Արուանդանոսն՝ հասանէր 'ի վերայ զօրացն Թուրքաց, վասն զի էր այր քաջ եւ պատերազմող, և էր տեղին դժար և կաւուտ : Եւ սկսաւ Թուրքն բազմանալ . և յայնժամ ասէր Արուանդանոսն ընդ զօրսն իւր թէ՝ « Սակաւ մի յետս դարձիք, որ Թուրքն ըզհետ մեր յարձակին . զի յորժամ 'ի վերայ յարձակիմք՝ չկարեն փախչել »: Եւ եղեւ յորժամ սակաւ մի դարձան, ետես զի ամենայն զօրքն Հոռոմոց 'ի փախուստ դարձան, և թողին զԱրուանդանոսն 'ի մէջ զօրացն այլազգեաց : Եւ եղեւ օրն այն մեծ և սասկալի, և ահաւոր կորուստ քրիստոնէիցն, որ

և լցաւ ամենայն դաշտն արեամբք և գե-
րութեամբ, և Ռուանդանոսն և ամենայն
իշխանօքն քրիստոնէից մատնեցան 'ի գերու-
թիւն, և մնացեալքն փախստական լեալք
մտանէին 'ի բերդն որ առ Օշին՝ և փրկե-
ցան։ Իսկ յաւուր յայնմիկ կոտորեցան արք
իբրև մետասան հազարք։ Իսկ եղեալ ամի-
րայն 'ի պարանոցն Ռուանդանոսին (լոյծ)
եզանց, և այնու վարէր զնա 'ի գերութիւն.
և եբեր 'ի դուռն քաղաքին Ուռհայոյ և ծա-
խեաց զնա քսան հազար դահեկան, և քա-
ռասուն հազար դահեկան եղեալ զորդին
գրաւական, որ մնաց 'ի Պարսիկս մինչև-
ցայսօր. և զայլ մի ըստ միոջէ գնեցին 'ի ձե-
ռըն ոսկւոյ և արծաթոյ։ Իսկ Գոմէշ—Տիկին
մեծաւ յաղթութեամբ և բազում գերու-
թեամբ և անհամար աւարաւ խաղաց և գը-
'նաց յաշխարհն Պարսից, և մատուցեալ ա-
ռաջի սուլտանին ծառայս գեղեցիկս ման-
կունս և աղջկունս իբրև երկու հազար։

ՂԻ. Դարձեալ 'ի թուականութեանս
Հայոց ՇԺԶ (1067–1068) մեռաւ թա-
գաւորն Տուկիծ և մնաց իւր տղայ որդի մի
Միխայլ անուն. և կացեալ աթոռ (139)
թագաւորութեանն անթագաւոր զամ մի,
թագուհին ունելով զաթոռ թագաւորու-

թեանն, որում անունն ասէին Կուտուկի (Կուդուղսիա)։

ԴԸ. Եւ եղեւ յորժամ փոխեցաւ ՚ի թուականութեանս Հայոց ՇԺԸ (1069–1070)։ բերեալ Կուտուկի գաղտաբար զիշխան ոմն՝ որում անունն էր Արամանոս, որ առի Տիօժէն, եւ ածեալ զնա ՚ի սենեակ իւր ամուսնացաւ ընդ նմա, եւ պահեաց զնա ՚ի սենեկին, եւ մինչեւ կոչեաց զԿեսարն զեղբայրն Տուկծին, եւ փորձելով ասէր ցնա՝ եթէ “Ո՜ ինչ արասցուք, զի ահա աթոռ թագաւորութեանն անտէր կայ, եւ Մ՚իխայլն տղայ է”. եւ պատրողական բանիւք կամէր կորուսանել զնա։ Եւ ասէր ցթագուհին Կեսարն. “Եւ ինձ զի՞նչ փոյթ է այդ, վասն զի ահա ես եւ որդիքն իմ ծառայ եմք քո. ո՛ւմ դու կամիս՝ տուր զաթոռ թագաւորութեանդ”։ Եւ հիացեալ թագուհին եւ հաճեալ ՚ի բանս նորա, եւ այրեցաւ ՚ի չարեաց։ Յայնժամ ասէ ցնա թագուհին. “Այրի մուտ ՚ի սենեակդ, եւ երկիր պագ թագաւորին”։ Եւ զարմացեալ Կեսարն եւ կայր հիացեալ, եւ գոհանայր զԱստուծոյ որ ոչ խօսեցաւ ինչ չար. եւ յայնժամ մտեալ երկիր եպագ թագաւորին ՚ի վերայ երեսաց իւրոց, եւ վաղիւն տարան զՏիօժէնն ՚ի սուրբ Սոփի,

և միաբան ամենայն քաղաքն Աղեքսանդրիուպօլիս ձայնեցին նմա գով, և եդին զԹագն ՚ի վերայ գլխոյ նորա ։

ԳԹ. Յայսմ ժամանակիս սուրբ հայրապետն Հայոց Տէր Վահրամ, որ կոչեցաւն Գրիգորէս, որդի Գրիգորոյ՝ որդւոյ Վահրամայ Պահլաւունւոյ, անկեալ ՚ի միտս նորա սէր միայնակեցութեան և լինել առանձնական յաղօթսն Աստուծոյ. և սա նմանեալ լինէր Եղիայի և Յովհաննու Մկրտչին, և առ ինքն բերեալ զգործ վարուցն սրբոյն Անտոնի և ցանկայր մեծաւ փափագանօք ՚ի գլուխ լերանց բնակել ։ Խորհեցաւ Թողուլ զգահընկալ և զմեծ պատիւ աթոռոյ հայրապետութեանն, ընդ որում միաբանեալ եղև նմա Գէորգ վարդապետն՝ որ էր դպրապետն, և երդմամբ կապեալ զքանն գնալ զհետ իւրերաց ՚ի միայնակեցութեան ճանապարհն ։ Եւ եկեալ եղև բանս այս յատենի, և իմացեալ զխորհուրդս նորա Թագաւորն և իշխանք Հայոց և արգելուին զնա մեծաւ իշխանութեամբ. և նա ևս առաւել պնդէր ՚ի գործս իւր, և այսպէս ասէր ցնոսա՝ եԹէ զայս ունիմ ՚ի միտս իմ գնալ ՚ի Հռոմ, և շրջել ընդ ամենայն անապատն Եգիպտացւոց. և նա-

քա ոչ կամէին թողուլ զնա։ Իսկ նա 'ի յօժարութենէ կամացն ասէր ցԹագաւորն Հայոց. «Դիք ձեռն կաթողիկոս զոր կամիք, և զիս մի արգելուք յարգարութեան ճանապարհէն»։ Եւ յորժամ (ըստ) յօժարութի կամաց նոցա ընտրեցին զԳէորգ վարդապետն՝ որ էր դպրապետ նորա, և 'ի ծածուկ 'ի նմանէ հաւանեցուցին զԳէորգ զի առցէ զաթոռ հայրապետութեանն Հայոց։ Եւ տէր Գրիգորէս զայս ամենայն ոչ գիտացեալ. և յայնժամ ածին զԳէորգ զի ձեռնադրեսցեն ըզնա կաթողիկոս, և տեսեալ տէր Գրիգորէս հիանայր յոյժ, և 'ի կամաց և յոչ կամաց ձեռնադրեաց զնա կաթողիկոս յաթոռ հայրապետութեանն Հայաստանեայց, բայց 'ի սրտէն ոխայր, և ընդ հակառակս համարեցաւ զնա, վասն զի մոռացաւ զուխտն միաբանութեան հոգեւոր ճանապարհին. եւ յօրէ յայսմանէ եմուտ հակառակութիւն 'ի մէջ երկուց հայրապետացն Գրիգորիսի եւ Գէորգայ։ Եւ գնաց տէր Գրիգորէս 'ի խորհուրդ հոգեւոր ճանապարհաց իւրոց առ 'ի բնակել 'ի լերինս ընդ միանձունսն ճգնաւորացն Քրիստոսի, եւ ստացաւ փառս խոստակրօն (140) և ամենայնի չորաճաշակս։

Ճ. Յայսմ ամի ժողով մեծ արար Թա

գաւորն Տիմէն զամենայն աշխարհն Յունաց մինչեւ ՚ի սահմանս Հոռոմոց եւ զամենայն կողմ արեւելից աշխարհին, եւ ահագին բազմութեամբ խաղացեալ գայր հասանէր ՚ի վերայ աշխարհին Տաճկաց. եւ իջեալ բանակ հարկանէր ՚ի վերայ անուանի քաղաքին որ կոչի Մ՚նպէճ, մերձ ՚ի Հալպայ քաղաք, որ էր հռչակաւոր քաղաք Տաճկաց. եւ սաստիկ պատերազմ եղեւ. եւ ՚ի վտանգ էառ զքաղաքն Մ՚նպէճ ՚ի ձեռն խուժադուժ ազգացն եւ անթիւ զօրացն: Եւ զկնի այսքան նեղութեանց հրամայեաց Թագաւորն կանգնել բաքանս եւ փիլիղանս ընդդէմ քաղաքին. վասն զի էր քաղաքն պարսպեալ ամենայն ամրութեամբ: Եւ եղեւ ՚ի հարկանել զպարիսպըն մեծամեծ քարամբք եւ խախտեալ մասն ինչ ելից ՚ի քաղաքն. եւ յայնժամ սարսափեցան (141) բազմութիւն ամենայն քաղաքին, եւ առհասարակ արարին խաչաձեւս ՚ի ձեռս իւրեանց եւ դիմեցին ՚ի դուրս առ Թագաւորն. եւ ամենայն մեծամեծքն անկանէին առ ոտս Թագաւորին մեծամեծ ընծայիւք, եւ եղեն հարկատուք եւ զերծ ՚ի մահուանէ: Եւ արար Թագաւորն ողորմութիւն ՚ի վերայ քաղաքին, եւ ընդ հարկաւ արարեալ գնաց: Եւ յայնժամ հասանէր Թուղթ ՚ի Թագաւ-

հւոյն առ Թագաւորն Տէոդէն՝ դառնալ փութայցէս 'ի Կոստանդնուպօլիս. և լուեալ զայս Թագաւորն գնաց փութանակի.

ԾԱ. Յայսմ ամի եկեալ Կորիւն անկրայն՝ որ էր յազգէ սուլտանին Ալբասլանայ, կամե-ցաւ գալով ասպատակել 'ի Պարսից և մտա-նել 'ի Կոստանդնուպօլիս, և անթիւ զօրօքն հասանէր 'ի յաշխարհն Հոռոմոց. վասն զի այսպիսի նշան ոչ երբէք տեսաք և ոչ լուաք, և այս էր զոր ասաց Փրկիչն, եթէ եղիցի նշան 'ի վերջին ժամանակին յարեգակն 'ի լու-սինն և յաստեղս, շարժմունք և արհաւիրք. որպէս ասէ խօսք սուրբ Աւետարանին: Այս-արդ այս եղեւ սկիզբն կատարածի և կրկին աւերման յամենայն աշխարհի յս . . . զօ-րացն Թուրքաց.

ԾԲ. Յայսմ ամի շարժեցաւ և որպէս զգեւս յարուցեալ Ալբասլան սուլտանն եղբայր Տուղ-րիլ սուլտանայ, և անթիւ բազմութեամբ խաղացայր և գայր հասանէր 'ի յաշխարհն Հոռո-մոց բազում կոտորածիւ և արեան հեղ-մամբ. և իջեալ 'ի վերայ Մանծկերտու. և առ 'ի չգոյէ պահապանի քաղաքին՝ յաւուր միում առաւ զքաղաքն Մանծկերտ, վասն զի փախեան Հոռոմոց պահապանքն. և ա-ռեալ զքաղաքն կոտորած վասն առաջին հայ-

հոյութեան եղբօր նորա Տուղրիլ սուլթանին, վասն զի զայս անդադար արարեալ էր նորա 'ի ժամ մահուանն։ Եւ յարուցեալ Աբասլան սուլթանն և խուժադուժ և անթիւ ազգաւ հասանէր 'ի քաղաքն որ կոչի Սամիթ. և սիրով բանակ հարկանէր 'ի դուռն քաղաքին. և 'ի նմին բանակին ծնանէր կինն նորա որդի, և կոչեաց զանուն նորա Դդուշ։ Եւ անտի յարուցեալ գայր 'ի գաւառն Թլխումոյ և պատեալ զնա մեծաւ նեղութեամբ և ամենայն հնարիւք պատերազմեալ 'ի վերայ նորա, և զաւուրս բազումս ոչ ինչ կարաց առնել բերդաքաղաքին Թլխումոյ։ Այլ եղեն սիրոյ արարքին, և հարկս ուղեալ և բնակչացըն թողացեալ և անհոգս լինէին, և թողին զպարիսպն անպահապանս։ Եւ տեսեալ զօրքն այլազգեացն զանպատրաստութիւն նոցա, և յոչ կամաց սուլտանին դիմեալ ամենայն բանակն 'ի վերայ նորա. և պատեալ սաստիկ պատերազմաւ՝ և առին զքաղաքն և կոտորածս բազումս արարին և անթիւ գերութիւնս։ Եւ լուեալ սուլտանն և զարմանայր և ապաշաւէր զկոտորած նոցա, վասն զի ունէր երդումն ընդ նոսա։ Եւ անտի յարուցեալ սուլտանն գայր խաղաղայք ահագին բազմութեամբն իւրով և հասանէր 'ի գաւառ-

ուրն Ուռհայոյ. և արար ասպատակ զամե- նայն աշխարհն մինչև ՚ի դուռն քաղաքին. եւ բանակ հարկանէր ՚ի վերայ անուանի բերդին որ կոչէր Թղլթովլրաւ, մերձ ՚ի Սեւ- աւերակքն, (առ) և զՍորբուծաթիլն և արար սաստիկ կոտորածս և ելից զամենայն սահ- մանս նորա արեամբ. և առեալ զբերդն Թղ- լթովլրաւ, և բազում աւարաւ և գերու- թեամբ գնայր խաղայր ՚ի վերայ քաղաքին Ուռհայոյ. և պատեալ շրջանակաւ զամե- նայն քաղաքն, և ելից բանակաւ ծայրէ ՚ի ծայր։ Եւ էր յաւուրս ձմերայնի ՚ի մարերի ամսոյ տասն, և էր տուկ ՚ի քաղաքն Ուռհայ Վասիլն՝ Ալուսիանին որդին Պուլղարաց թա- գաւորին. եւ տեսեալ քաղաքացեայն զան- թիւ բազմութիւն զօրացն այլազգեաց, ահա- բեկեալ սասանեցան ամենայն բազմութիւն հաւատացելոցն որք էին ՚ի քաղաքն Ուռհայ, վասն զի բազմութիւն սուլտանին զօրացն ելից զդաշտս և զգագաթունս լերանցն. և դո- ղաց երերալով քաղաքն ՚ի չարաչունչ վիշա- պէն և յայն դառն գազանէն, վասն զի էր այր արիւնարբու. և կացեալ զաւուրս ու- թըն և ոչ ետ պատերազմ, և քաղաքն կայր յիմարեալ և անպատրաստական։ Եւ ապա մի ոմն ՚ի զօրաց սուլտանին տեսեալ զանձն

տուԹիւն քաղաքաքեացն, և ձայն տուեալ գաղտաբար եԹէ՝ «Օ՜ն կայք յիմարեալք. ամրացուցէք զպարիսպդ, եւ Թամբեցէք զձեր ձիդ »: Եւ այս իմացեալ սկսան շուրջանակաւ զպարիսպն տապալափակ առնել, և կազմեցին զամենայն ամրուԹիւն. Եւ քաջացան այր իւրաքանչիւր 'ի պատերազմ: Եւ Վահին որ էր տուակ քաղաքին և այր քաջ եւ պատերազմող, սկսաւ զօրացուցանել զամենայն քաղաքն. և տեսեալ զայս սուլտանին զայրացաւ յոյժ, և հրամայեաց հարկանել փող պատերազմին և գազանաբար դիմեաց 'ի պատերազմ. և դղրդեալ ամենայն զօրք այլազգեացն և շուրջանակաւ պատեալ զամենայն քաղաքն Ուռհայ. և եղեւ օրն այն օր մեծ և ահաւոր պատերազմ սաստիկ, և լցաւ ամենայն քաղաքն նեղուԹեամբ, և առ հասարակ պարք հաւատացելոցն կային լալով և ողբալով յաղօԹս առ Աստուած՝ զերծանել 'ի չար գազանէն: Եւ զմեծ մասն աւուր պատերազմեալ ամենայն զօրքն տաճկին Պարսից 'ի վերայ Ուռհայոյ՝ և ոչինչ կարացին առնել, վասն զի Տէր յաղԹահարեաց զնոսա և յամօԹ արար: Եւ զկնի այսորիկ կանգնեաց բաբանս և փիլիքուանս ընդդէմ պարսպին, և կա-

տորեաց զամենայն զբախտս և զայգիս, եւ
այնու ելեալ զխանդակս քաղաքին. և կանգ-
նեաց փայտէ բերդս 'ի վերայ տասն սայլից՝
զի առցէ զքաղաքն Ուռհայ. և եղեւ յոր-
ժամ շարժեցին զայլն զի բերցեն մօտ 'ի պա-
րըսպն, յանկարծակի փլեալ կործանեցաւ փայ-
տէ բերդն. և 'ի քաղաքէն պատառեցին 'ի
ներքոյ գետնոյն և ելին 'ի խանդակն յարևե-
լից կողմանէն, և զամենայն փայտն արկ(ին 'ի)
քաղաքն, և զմնացեալսն հրով այրեցին. Իսկ
յայնժամ սկսան այլազգիքն և փորեցին եօ-
թըն ծակ 'ի խորոց խանդակն վասն զի զպա-
րիսպն կործանեսցեն. և յայնժամ քաղաքա-
ցիքն արարին ընդդէմ նոցա փորուածս, և
կալան յայլազգեացն և սատակեցին զնոսա։
Իսկ զաւուրս յիսուն կացեալ սուլտանն 'ի վե-
րայ Ուռհայոյ սաստիկ պատերազմաւ և ոչ
ինչ կարաց առնել. և խոստանայր սուլտանն
տալ գանձս և իշխանութիւնս՝ եթէ ոք հան-
ցէ քար 'ի պարսպէն վասն զի տարցէ 'ի
Պարսիկս 'ի յիշատակ իւր. և ասէ ցնա Ապու-
սուվար ամիրայն Դւինայ, եթէ ահա մօտ կայ
'ի միջին մերում խորանդ եկեղեցւոյ, և 'ի
վերայ ոչ ոք է որ պատերազմի. Իսկ ջանացին
և ոչ կարացին հանել քար 'ի խորանէն սըր-
բոյն Սարգսի 'ի յարեւելից դիհէն. և առե-

առեալ սուլտանն ամաչեալ յոյժ ։ Յայնժամ Խուրէշն աւագ ամիրայն Արապկաց առեալ զԱրսլան սուլտանն և զամենայն զօրացն բազմութիւն Պարսից, գնաց 'ի վերայ քաղաքին Հալպայ. և յայնմ աւուր եղեւ ուրախութիւն մեծ 'ի վերայ քաղաքին Ուռհայու, զի զերծան 'ի չար գազանէն ։

ՃԳ. Ընդ լսեալ Թագաւորն Յունաց Տիօժէն զհամբաւ բարկութեանս այսորիկ, և մռմռեալ որպէս զառիւծ և հրամայեաց ժողով լինել ամենայն քաղաքաց բազմութի զօրաց իւրոց. և ելեալ հրովարտակս և քարոզիչս ընդ ամենայն աշխարհն արեւմտից, և արար ժողով մեծ և ահագին բազմութիւն զամենայն աշխարհն Գնդաց և զհամօրէն ազգն Պուլղարաց, և զամենայն կղզիս հեռաւորս, զՊամիրք և զամենայն Բիւթանիա, զԿիւլիկիա և զԱնտիոք, զՏրապիզոն և զամենայն տունն Հայոց՝ որք մնացեալ էին 'ի քաջ զօրականացն, և բերեալ զօրս յայլազգեացն Խուժաստանեաց. և արար Տիօժէնն ժողով ահագին բազմութիւն որպէս զաւազ ծովու ։ Ընդ էր 'ի Թուականութեանս Հայոց ՇԻ (1071–1072). և գայր խաղայր ուրախալով իբրեւ զամպս կարկտաբերս և հասանէր 'ի Սեբաստիա քաղաք. և ելեալ

ընդ առաջ նորա որդիք Թագաւորացն Հայոց Աշոտ և Աբուսահլ մեծաւ հանդէսիւ։ Եւ յայնժամ միաբանեալ ազգն Հոռոմոց և չարախօսեցին զընծակչացն Սեբաստիոյ և զամենայն ազգն Հայոց, և ասեն՝ «Եթէ յաժամ եհար զմեզ Աղբիձ ամիրայդ, ազգն Հայոց առաւել կոտորեցին զմեզ քան զԹուրքըն»։ Եւ հաւատաց Թագաւորն Տիօժէնն ստուտ խօսիցն Հոռոմոց և սպառնացեալ սաստիկ երդմամբ եթէ 'ի դառնալ 'ի պատերազմէն Պարսից՝ բառնամ զհաւատն Հայոց։ Եւ նոյն ժամայն հրամայեաց ալափ տալ զՍեբաստիա քաղաքն ամենայն զօրացն Հոռոմոց, և յալափելն արարին ապականումն բազմաց վասն անիրաւ և ստուտ դատաստանացն զոր արար անօրէն Թագաւորն Տիօժէն, և ընկէց յերեսաց զորդիս Թագաւորացն Հայոց զԱշոտ և զԱբուսահլ, և արկ տուգ մեծ 'ի վերայ Սեբաստիոյ քաղաքին։ Եւ յայնժամ մեծամեծ իշխանքն Հոռոմոց և Գագիկ շահնն՝ որդին Աշոտոյ, և Աղբիձ ամիրայն որ կալաւ զկուրապաղատն, ասեն ցԹագաւորն թէ՝ «Մի՛ ըններ ստուտ խօսից ազգիդ քո, վասն զի ստուտ են յամենայն 'ի բանս իւրեանց, զի որք 'ի պատերազմին Թուրքին մնացին, սոքա եղեն օգնական։ Եւ լուեալ զայս Թագաւորն արար

խաղաղութիւն ։ Բայց ՚ի դառնալն սպառնայր բառնալ զհաւատն Հայոց. զոր լուեալ վանորայքն և անէծս ցաւագինս կարդացին ճանապարհին նորա՝ չդառնալ ՚ի ճանապարհէն յոր երթալոց էր, այլ զի կործանեսցէ զնա Տէր որպէս զանօրէնն Յուլիանոս որ անիծեցաւ ՚ի սրբոյն Բարսղէ ։ Եւ յարուցեալ Տիօժէնն ամենայն բազմութեամբ գնաց յարեւելս յաշխարհն Հայոց, եւ իջեալ ՚ի վերայ քաղաքին Մանձկերտու և էառ զնա. և զօրք սուլտանին որ կային ՚ի քաղաքն՝ փախեան, և զորս ըմբռնեաց՝ կոտորեաց. և յայնժամ հասաւ համբաւս այս առ սուլտանն Հալապ քաղաքի, և դարձաւ յետս յարեւելս, վասն զի ասացին եթէ թագաւորն Հոռոմոց ահագին բազմութեամբ դիմեալ երթայ յաշխարհն Պարսից ։ Իսկ ՚ի յայս ձմերանիս արար սուլտանն պատերազմ ՚ի վերայ Հալպայ, և ոչ կարաց առնուլ զնա ՚ի բազմութենէ զօրաց քաղաքին. և պատառեաց ծակոտէն զամենայն պարիսպն և ոչ ինչ կարաց առնել քաղաքին ։ Եւ յաւուրսն գարնանային լուաւ սուլտանն զելանելն թագաւորին Տիօժէնին, թողեալ զՀալապ եւ փութապէս հասանէր յՈւռհայ ։ Իսկ դուկն որ էր ՚ի քաղաքն՝ հանեալ նմա ձիս և ջորիս

և տայուր. և առեալ սուլտանն և անթիւ անցանէր 'ի սահմանայն, և գնաց յարևելս 'ի լեառն որ կոչի Լեռուն. և անթիւ ձիք և ջորիք և ուղտք սատակեցան 'ի փութանակի գնալոյն, զի որպէս զփախստական վարէր զզօրս իւր: Եւ կամէր գնալ 'ի Պարսիկըս, և նոյն ժամայն հասանէին թուղթք նենգաւորացն Հոռոմոց առ սուլտանն 'ի բանակէն Տիօժէնին, և ասացին ցսուլտանն՝ թէ մի փախչիր, զի մեծ մասն զօրացն ընդ քեզ են. և լուեալ զայս սուլտանն զտեղի առնոյր: Եւ յայնժամ գրեաց սուլտանն թուղթ հաւանութեան առ թագաւորն Տիօժէնն վասն սիրոյ և միաբանութեան և խաղաղութեամբ մնալ առ միմեանս, յաւիտեանս ոչ մեղանչել միմեանց, այլ սիրով կալ ընդ ազգս քրիստոնէից և յաւիտեան սէր միաբանութիւն (առնել) ընդ Պարսիկք և ընդ Հոռոմք: Եւ յայնժամ Տիօժէնն հպարտացեալ և ոչ առեալ յանձն զբան սուլտանին, այլ եւս առաւել բորբոքեալ 'ի պատերազմ. և յարուցեալ չար նենգաւորքն առ. Տիօժէնն և ասեն. "Ով թագաւոր, ոչ ոք է որ կարասցէ ընդդէմ կալ բազմութեան զօրաց քոց. և ահա ելին 'ի յապրոյ, արդ արձակեա զնոսա բանակս, զի մի սովեսցին մինչև ցօր պատերազ-

մին ։ Եւ յայնժամ զԽորիմ ամիրայն դարձոյց 'ի Կոստանդինուպօլիս, և զՏարխանիատն (142) երեսուն հազարաւ դարձոյց 'ի վերայ Խղաթայ, և երկոտասան հազար առաքեաց յԱպխազք, և այսպիսի օրինակաւ զամենայն զօրսն ցրըուեալ հանին յերեսաց Թագաւորին. և այս ամենայն գործք նենգութեան ազգ լինէր ուրացանին ։ Յորժամ ետես սուլտանն անխոնարհելի զմիտս Տիոժէնին, յարձակեցաւ 'ի պատերազմ 'ի վերայ զօրացն Հոռոմոց, և որպէս կորիւն առիւծուց այնպէս վարեաց զամենայն զօրսն Խորասանայ ։ Եւ լուեալ Տիոժէն զգալ զօրացն Պարսից 'ի վերայ նորա, և հրամայեաց հնչեցուցանել զփող պատերազմին, և կարգեաց դասս զամենայն զօրսն Հոռոմոց, և կացոյց զօրագլուխ զօրաց իւրոց զԽաստապ և զՎասիլակ իշխանք Հայեցիք՝ արք քաջք և պատերազմողք, և զմեծ մասն աւուրն լինէր պատերազմ սաստիկ. և եղեւ պարտեալ զօրքն Հոռոմոց, և սպանաւ Խաստապ և Վասիլակ, և արտաքին փախըստական զամենայն զօրսն Հոռոմոց մինչեւ 'ի բանակ Թագաւորին ։ Եւ տեսեալ Տիոժէնն հրամայեաց ժողով լինել ամենայն զօրացն իւրոց, և ոչ ոք էր որ գայր 'ի գոչ նորա, վասն զի Տարխանիատն և այլ իշխանք Հո-

ռոմոց գնացին զօրօքն 'ի Կոստանդնուպօլիս: Եւ լուեալ զայս Թագաւորն՝ ծանեաւ զնենգաւորութիւն ազգին իւրոյ Հոռոմոց. և ահա առ վաղիւ եղեւ պատերազմ. և ընդ առաւօտն հնչեցուցեալ զփող պատերազմին, և ելեալ քարոզիչքն քարոզէին զհրաման Թագաւորին Տիոժէնին, և խոստանայր փառս և իշխանութիւն՝ քաղաքս եւ գաւառս, վասն զի քաջապէս պատերազմեսցեն ընդդէմ զօրացն Պարսից: Եւ ահա գայր սուլտանն ահագին պատրաստութեամբ 'ի պատերազմ· 'ի վերայ Հոռոմոց զօրացն, յայնժամ Թագաւորն Տիոժէնն եկեալ հասանէր 'ի տեղի պատերազմին՝ մերձ 'ի Մանծկերտ, 'ի տեղին որ կոչի Տողյատափ, և զՈւզն և զՊածունակն կացուցանէր ընդ աջմէ իւրմէ և ընդ ձախմէ, և զայլ զօրսն յառաջոյ և 'ի Թիկանց[143]. և 'ի սաստկանալ պատերազմին՝ Ուզն և Պածինակն 'ի սուլտանին կողմն անցեալ, և յայնժամ եղեն պարտեալ ամենայն զօրքն Հոռոմոց, և առհասարակ 'ի փախուստ դարձան: Եւ եղեւ կոտորումն զօրաց Հոռոմոց անթիւ, և անհամար գերութիւնք, և արարին ձերբակալ զԹագաւորն Տիոժէնն և տարան զնա առաջի սուլտանին, և զայլ բազում իշխանս

Հռոմոց կապանօք կացուցանէին առաջի սուլտանին, և անթիւ և անհամար գերութիւն: Իսկ յետ աւուրց ինչ արար սուլտանն սէր և միաբանութիւն ընդ Թագաւորին Հռոմոց. և արար զՏիօժէնն սուլտանն իւր եղբայր արեամբ, վասն զի զայն ուխտ եդեալ էր ընդ Աստուծոյ, և հաստատեաց ահագին ուխտ սիրոյ և միաբանութեան ընդ Պարսիկս և ընդ Հռոմս յաւիտեան: Եւ յայնժամ մեծաւ փառաւորութեամբ յուղարկեաց զԹագաւորն յաթոռ իւր 'ի Կոստանդնուպօլիս. և հասանէր մինչև 'ի Սեբաստիա: Յայնժամ համբաւ հասանէր առ Տիօժէնն՝ եթէ Թագաւորեաց Միխայլ որդին Տուկծին, և թողեալ զնա ամենայն զօրքն իւր փախեան. և Տիօժէնն գնաց փախստական 'ի քաղաքն որ կոչի Ատանա, և ժողովեցան 'ի վերայ նորա զօրք Թագաւորին Միխայլին. իսկ Տիօժէնն առ վտանգի իւր զգեցաւ զգեստ աբեղայի և ելեալ առ զօրագլուխն Հռոմոց որ էր եղբայր Տուկծին, և ասացեալ. «Ահա չունիմ յինէն այսուհետեւ հոգս, վասն զի ես յայսմ հետէ 'ի վանս կրօնաւորաց կամիմ բնակել. Ձեզ Թագաւոր եղիցի Միխայլն, և Աստուած եղիցի ընդ նմա»: Իսկ յայնմ աւուր

ամենայն ազգն Հոռոմոց կրկին զԱստուած
'ի խաչ հանին որպէս զհրէական ազգն,
վասն զի հանեալ խաւարեցուցին զաչսն
Տիօժէնին՝ զառն Թագաւորին, որ և 'ի
սաստկութենէ ցաւոյն մեռաւ. իսկ և լը-
ւեալ զայս սուլտանն լայր և ապաշաւէր ըզ-
կորուստ Տիօժէնին. և ասացեալ սուլտանն
եթէ՝ «Զունին Աստուած ազգն Հոռոմոց,
և ահա այսօր պատառեցաւ սէր և երդումն
միաբանութեան որ ընդ Պարսիկք և ընդ
Հոռոմք եղան. և յայսմհետէ 'ի սուր սու-
սերաց մաշեսցին ամենայն ազգք խաչապաշ-
տից, և գերեսցին ամենայն աշխարհքն քրիս-
տոնէից»: Իսկ յիշեալ զՏիօժէնն և սաստ-
կապէս յոգւոց հանեալ ապաշաւէր սուլ-
տանն, նոյնպէս և ամենայն ազգն Պարսից.
և ասէ սուլտանն ընդ ամենայն ազգն Խո-
րասանաց, եթէ «Ահա յայսմհետէ եղերուք
ամենեքեան կորիւնք առիւծոյ, և եղերուք
որպէս ձագս արծուոյ արագագնացս ընդ
ամենայն երկիր. զտիւ և զգիշեր սրախող-
խող արարէք զազգն քրիստոնէից, անողորմ
լերուք 'ի վերայ ազգին Հոռոմոց»: Իսկ ինքն
սուլտանն դարձաւ մեծաւ յաղթութեամբ
'ի յաշխարհն Պարսից:

ԾԴ. Յայսմ ժամանակիս ժողով արարեալ

Աբասլան սուլտանն զամենայն զօրքն Պար-
սից և անցանէր ընդ մեծ գետն Ջահունից
որ կոչի Գեհոն. և բազմութեամբ զօրօք
մտաւ յաշխարհն Սմրխնդայ, կազմեցաւ տի-
րանալ այնմ աշխարհին, և մեծաւ զօրու-
թեամբ իջեալ բանակաւ 'ի վերայ ամուր
և անուանի բերդին Համայ. և էր բերդա-
տէրն այր քաջ և գազան և յոյժ չարասիրտ, և
զբազում աւուրս նեղեալ սուլտանն զբերդն
մեծաւ պատերազմաւ, կոչէր զբերդատէրն
գալ իւր 'ի հնազանդութիւն և տիրանալ
հայրենեաց իւրոց յաւիտեան։ Իսկ զկնի բա-
զում նեղութեանցն խորհեցաւ բերդատէ-
րըն ելանել առ սուլտանն յերկրպագու-
թիւն. և խորհեցաւ խորհուրդ սոսկալի և
ահաւոր չարութիւնս, և արար զօրն ամենայն
սէր և ուրախութիւն կնոջ իւրում և որ-
դւոց, և զուսանօք և թմբկօք և երգօք
արուեստիւք կերաւ ընդ նոսա, և էարբ մե-
ծաւ ուրախութեամբ. և 'ի մէջ գիշերին
զկին իւր և զերեք որդին ձեռօք իւրովք զե-
նեաց գազանաբար, վասն զի մի անկանիցին
'ի ձեռս սուլտանին և լիցին նոցա ծառայք։
Իսկ ինքն վաղիւն ելեալ գնայր առ սուլտանն,
և 'ի ծածուկ ունելով ընդ իւր երկուս դա-
նակս քաջասուրս, որով զորդիսն իւր զե-

նեաց․ և յորժամ գնայր, տեսեալ սուլտա֊
նին՝ հրամայեաց բերել առաջի իւր։ Եւ նա
գնաց և երկրպագեաց․ իսկ յորժամ մօտե֊
ցաւ՝ յարձակեցաւ 'ի վերայ սուլտանին և
հանեալ զերկու դանակն 'ի կօշկացն, և որ
տանէին զնա՝ փախեան․ և նա պաղանաբար
հասեալ 'ի վերայ սուլտանին հարկանէր ըդ֊
նա երկու դանակով, և նոյնժամայն սատա֊
կեցին զնա պաշտօնեայք նորա․ և տեսին
խոցեալ զսուլտանն՝ հարեալ երեք տեղի։ Եւ
կայր սուլտանն 'ի մեծ վտանգի, և կսկիծ
խոցերուն նեղէին զնա․ և հրամայեաց զօ֊
րացն գնալ 'ի սահմանայն, վասն զի մի գի֊
տասցեն յաշխարհն․ և զկնի հինգ աւուրցն
նեղեցաւ 'ի ցաւոցն և հրամայեաց կոչել
զամենայն մեծամեծ իշխանսն Պարսից և ըդ֊
խոճայ (144) զօրն իւր․ և կացուցեալ զտղայ
որդին իւր զՄելէք շահն առաջի նոցա՝ ասէ․
«Ահա ես մեռանիմ 'ի խոցոյ աստի, և եղի֊
ցի ձեզ Թագաւոր որդիս իմ․ և սա նստցի
յաթոռ Թագաւորութեանս իմոյ»․ և հա֊
նեալ զԹագաւորական հանդերձն իւր ա֊
գուցանէր որդւոյ իւրոյ Մելէք շահին, եւ
խոնարհեալ երկիր եպագ նմա, եւ լալով
յանձն արարեալ զնա Աստուծոյ և ամենայն
ամիրացն Պարսից։ Եւ յայնմ աւուր մեռաւ

Աբասլան սուլտանն 'ի ձեռաց առն անխա-
ռատարի և քրդու ։ Իսկ Թագաւորեաց Սէ-
լեք շահն 'ի վերայ տանն Պարսից , և եղեւ
այր բարի և ողորմած եւ յոյժ քաղցր 'ի
վերայ հաւատացելոցն Քրիստոսի . և հա-
սեալ գնաց յաԹոռ հայրենեաց իւրոց , եւ
տարաւ զհայր իւր զԱբասլանն և Թաղեաց
զնա 'ի գերեզման հարց իւրոց 'ի Մարանդ
քաղաքի . և աջողեցաւ Թագաւորութիւն
նորա յԱստուծոյ , և ա տիրեալ տիրեաց ա-
մենայն երկրի , և արար խաղաղութիւն ա-
մենայն աշխարհին Հայոց ։

ՃԵ . Իսկ 'ի Թուականութեանն Հայոց
ՇԻԱ (1072–1073) . եղեւ հակառակու-
Թիւն 'ի մէջ տէր Գրիգորիսի և տէր Գէ-
որգայ . և առաքեաց տէր Գրիգորէս և ըն-
կեց զտէր Գէորգ յաԹոռոյ հայրապետու-
Թեանն և առեալ (143) զքօղն 'ի գլխոյ նորա .
և Գէորգ գնաց վիրաւորեալ 'ի Տարսոն քա-
ղաք և անդ մեռաւ . և տէր Գրիգորէս ե-
կեալ բնակեցաւ 'ի Մուտառասուն առ Պա-
գիկ որդի Գուրգենեայ ։

ՃԶ . Յայսմ ժամանակիս բնակեցաւ
անօրէն և ամենաչար իշխանն որ ասի Փի-
լառտոս , որ էր իսկ անդրանիկ որդի սատա-
նայի . 'ի յանկանել Տիօժէնին բնակալե-

ցաւ 'ի վերայ երկրի. այր չարաշունչ, որ էր խակ սա կարապետ պղծոյն, նեռն դիւաբնակ և այլանդակ չարաչար վարուք: Սա սկսեալ տալ պատերազմ ընդ հաւատացելոց Քրիստոսի, վասն զի էր սա անհաւատ քրիստոնեայ, ոչ հայ գիտելով զնա և ոչ հոռոմ, վարք և կրօնք հոռոմոց (ուն)էր, և հայրենեօք և մայրենեօք հայ էր, և 'ի տղայութեանն կացեալ առ հօրեղբայր իւր 'ի վանք որ կոչի Զօրվրի — Կոզեռն՝ 'ի Հարսն — Սարոյ գաւառին: Սա ելեալ յանապատէ՝ և եղեւ պիղծ յանապատի. սա տիրեալ բազում աշխարհաց և քաղաքաց, և բազում մեծամեծ իշխանս կորոյս անողորմաբար. և եկեալ բնակեցաւ 'ի Մարաշն, և յուղարկեաց և կոչեաց զքաջն Թոռնիկ զտէրն Սասնոյ, գալ նմա 'ի հնազանդութիւն: Իսկ լուեալ զայս Թոռնիկ Մուշեղայ որդին, ծիծաղեալ զանմտութիւն նորա, և ասացեալ թէ՝ «Ահա որ բնաւ ես ոչ տեսանեմ զերեսս նորա»: Իսկ ասեն ցԹոռնիկ կոչնականքն Փիլառտոսին թէ՝ «Ահա գայ բազում զօրօք 'ի վերայ քո. եւ տապալեալ աւերեսցէ զամենայն գաւառս քո»: Ասէ Թոռնիկ. «Իսկ քանի՞ են զօրք Փիլառտոսին». ասեն որքն՝ «իբրեւ քսան հազար»: Ասէ Թոռնիկ. «Այն իմ հազար ձիաւոր, որ

հանապազ հաղորդելն 'ի մարմնոյ և յարենէ Աստուծոյ. բայց զայս այսպէս գիտեմ՝ զի Փիլաւտոսն և ամենայն զօրքն իւր Թափուր և ունայն են 'ի հաւատոցն, և կան լցեալ ամենայն չարաչար յանցանօքն: Եւ գնացին զայս ամենայն պատմեցին Փիլաւտոսին. և յայնժամ կոչեաց Փիլաւտոս զտէր Գրիգորէս, և ասէ ցնա՝ եթէ «փեսայ է Թոռնիկ, գնա և կոչէ զնա ինձ 'ի հնազանդութիւն»: Իսկ տէր Վահրամ վասն չար բարուցն Փիլաւտոսին յոչ կամեցաւ գնալ առ Թոռնիկ, և այլ ոչ տեսանէ զերեսն Փիլաւտոսին: Եւ պատմեաց զպատճառն գնալոյն Թոռնկայ, և հիացեալ Թոռնիկն և ասէր՝ եթէ զկնորդ ոչ պատուեցաւ երբեք անօրինին 'ի սաստիկ լրբութեանցն իւրոց, յաւղարկել զքեզ առ իս իբրեւ զդեսպան հանդերձ սուտ երդմամբ: Եւ գիտացեալ Փիլաւտոսին եթէ ոչ կամի գալ Թոռնիկ 'ի կոչ նորա, զօրաժողով արարեալ գնաց 'ի վերայ Թոռնկայ. և Թոռնիկ ոչ գիտացեալ զգալ նորա 'ի վերայ նորա, և իբրեւ լուաւ զգալն Փիլաւտոսին, ձայն տուեալ զօրաց իւրոց, և արար ժողով զամենայն Սասունն յիսուն հազար հետեւակաց և վեց հազար ձիաւորաց, և գայր 'ի Ծառդ-ջուր. և ոչ հաւատայր գալոյ Փիլաւ-

տոսխն, դարձոյց զամենայն հետեւակազօրսն, և ինքն հազար ձիաւորովն 'ի Մ'չմուշատ քաղաքն Հայոց (չոգաւ), և Մ'լեւլուա դաշտին հանդիպեցան զօրքն Փիլառտոսին ութ հարիւր արամբք։ Եւ տրամեցաւ Թոռնիկ որ դարձոյց զհետեւակ զօրսն իւր, և յայնժամ կարգեաց Թոռնիկ զճակատ պատերազմին իւրոյ դասս առ դասս յայսկոյս և յայնկոյս և յառաջոյ, և Թիկնապահ իւր եդեալ զԿլապոսն՝ զայր քաջ՝ երեք հարիւր արամբք, բայց ակն ածէր 'ի Գռանկէնքան յայլ զօրացն, և ասէր. «Տեսէք զի գունդս երթիցէ ընդդէմ Գռանկինս»։ Եւ ահա գայր Սելմքաղտ(146) և զօրք իւր, և 'ի դիմի հարաւ Թոռնկայ գնդին և պատառեաց զզօրսն և էանց ընդ մէջն։ Եւ յայնժամ՝ ձայն տուեալ Թոռնիկ զօրաց իւրոց, և միաբան 'ի մէջ իւրեանց փակեցին զնոսա, և զամենայն իշխանս ձերբակալս արարին, կալան և զկոմսն նոցա, և զՓիլառտոսն և զամենայն զօրս իւր փախստական արարին, և զիշխանս նորա արարին ձերբակալ՝ արս հազար և հինգ հարիւր։ Եւ յաւուր յայնմիկ եղեւ բազում կոտորածս Գռանգաց և այլոց քրիստոնէից։ Եւ դարձաւ Թոռնիկ և ամենայն զօրք Հայոց գնային 'ի Սասուն բազում՝ աւարաւ. և Փիլառտոսն գնաց փա-

խոստական, և լի ամօթով մտանէր 'ի Խար-
բերդ: Այս եղև 'ի Հանձիթ գաւառին 'ի
Մելըտա դաշտին:

ՃԵ. Յայսմ աւուրս գայ Թոռնիկ սա-
կաւ արամբք և մտանէր 'ի բերդն իւր Մձ-
մուշատ քաղաք (որ) 'ի Մրծնոյ վերայ. և յան-
կարծալի գայր ամիրայ ամն բազում զօրօք,
որում անուն էր Ամր—Բափր: Եւ լուեալ է-
թէ Թոռնիկ առանց զօրաց է, յայնժամ հրա-
մանաւ Փիլառտոսին գայր 'ի վերայ Թոռ-
նկայ, և խաբանօք և սուտ երդմամբ ըս-
կսաւ սէր միաբանութիւն կարգել ընդ նմա,
մինչեւ 'ի ձեռն բազում տրոց և ընծայից հա-
ւանեցուցանէր զծառայսն Թոռնկայ. և այսու
պատրեալ զնա հանէր (147) 'ի սուտ սէր՝ միա-
բանութե իւրեանց երեք արամբ: Եւ մինչ
դեռ կային 'ի գինարբուսն, փաղեաց ամիրայն
գաղանաբար 'ի վերայ Թոռնկայ, և կամէր
սպանանել զնա, և ոչ ունելով Թոռնիկ առ
իւր, բայց փոքրիկ դանակով հարեալ զամի-
րայն՝ 'ի վայր հեղոյր զփոր նորա, և զայլոց
ամիրային բռնեաց զգլուխսն՝ ընդ իրար ծե-
ծեալ սատակեաց. և ինքն ելեալ անվնաս գը-
նայր 'ի բերդն, վասն զի մօտ էր բերդն, և
ամենայն Թուրքն փախստական լինէին առաջի
նորա: Եւ յորժամ գնաց մօտ 'ի բերդն, մի ամն

'ի յայլազգեաց 'ի Թագաւորեան կայր, հարեալ զԹոռնիկ ամբոխն 'ի սկրան գաղտաբար. և անդէն մեռանէր քաջն Թոռնիկ, և տարան զգլուխ նորա առ Փիլառտոսն: Եւ անօրէն Փիլառտոսն հանեալ զմկաւառակ գլխոյն և արար գաւաթ, և նովաւ ըմպէր գինի. եւ զմնացեալսն գլխոյն առաքէր ամիրային Մուֆարկնայ, և զամենայն մարմինն այրեցին հրով, զոր յետոյ ժողովեցին զայրեցած զոսկերս նորա զառն քաջի և աստուածապաշտի, և տարան թաղեցին 'ի դուռն սրբոյ Կարապետին: Եւ մնաց իւր երկու որդի, Զորտուանէլն և Վասակ 'ի տղայական հասակի:

Յայսմ՝ ժամանակիս անօրէն Փիլառտոսն յուզարկեաց և կոչեաց զտէր Գրիգորէս 'ի յաթոռ հայրապետութենէն իւրոյ, և նա ոչ եկն 'ի կոչ նորա, վասն զի զարհուրեալ էր 'ի չարաշունչ գազանէն: Դարձեալ գրեաց Փիլառտոսն առ սուրբ հայրապետն, և ասէր. «Չէ օրէն յաթոռս հայրապետութեան առանց հայրապետի կեալ»: Եւ նա ոչ համարձակեցաւ գնալ, այլ գրեաց տէր Գրիգորէս առ Փիլառտոսն և ասէր, եթէ «Իբր իմ հրամանաւն յաթոռ հայրապետութեանդ զտէր Սարգիս զքուրորդին տէր Պետրոսի»: Եւ յայնժամ տէր

Գրիգորէս յուղարկեաց զքօղն և զգաւազանն
և զսուրբ նշանն տէր Պետրոսի առ տէր Սար-
գիս: Եւ տեսեալ Փիլառտոս զայս ամենայն՝
ծանեաւ եթէ տէր Գրիգորէս այլ ոչ է դառ-
նալոց յաթոռ հայրապետութեանն իւրոյ.
եւ յայնժամ հրամայեաց Փիլառտոս լինել
ժողով եպիսկոպոսաց և հարանց վանականաց
և կրօնաւորաց, և ձեռնադրեցին զտէր Սար-
գիս յաթոռ կաթողիկոսութեանն Հայոց
՚ի քաղաքն որ կոչի Հոնի, ՚ի Ջահան գաւա-
ռի. վասն զի էր այր սուրբ և հրաշափառ տես-
լեամբ և հռչակաւոր առաքինի և յամենայն
կողմանց զարդարեալ ամենայն աստուածպաշ-
տութեամբ և ճշմարիտ խոստովանութեամբ
որ ՚ի Քրիստոս Յիսուս, և էր կատարեալ օգ-
նական հօտին Քրիստոսի: Եւ յայնժամ տէր
Գրիգորէս գնացեալ ՚ի մայրաքաղաքն Հայոց
որ կոչի Անի, և անդ ձեռնադրեաց եպիս-
կոպոս զԲարսեղն զքեռորդին իւր՝ զորդի Վա-
սակայ որդւոյ Ապիրատին՝ որդւոյ Հասանայ,
որ յետ ժամանակաց էառ զաթոռ հայրա-
պետական տանն Հայոց:

ՃԸ. Եւ էր ՚ի թուականութեանս Հայոց
ՇԻԳ (1074—1075), և այս զկնի այսորիկ
գնաց Գրիգորէս ՚ի Կոստանդնուպօլիս, և
անդուստ ՚ի Հռոմ. և եկեալ յԵգիպտոս՝

շրջեալ ընդ ամենայն անապատսն առաջին սրբոց հարցն, և կատարեաց զամենայն փափագումն սրտին իւրոյ. և հաստատեաց անդէն զաթոռ իւր հայրապետութեանն, եւ կանգնեալ նորոգեաց անդէն զամենայն կարգ սուրբ եկեղեցւոյ. և բազում փառք և մեծութիւն ընկալաւ տէր Գրիգորէս 'ի Թագաւորէն Եգիպտացւոց առաւել քան 'ի Թագաւորէն Հոռոմոց։ Եւ բազումք ժողովեցան Հայոց յԵգիպտոս իբրեւ երեսուն հազարաց. և տէր Գրիգորէս զկնի ժամանակաց ձեռնադրեաց կաթուղիկոս զտէր Գրիգոր զքուրորդին իւր, և ինքն ելեալ գայր յաշխարհն Հայոց, վասն զի դեռ եւս կենդանի կայր մայրն նորա։

ՃԹ. Եւ եղեւ յորժամ Թագաւորեաց Հոռոմոց որդի Տուկծին Միխայլն, և կացեալ նորա յաթոռ Թագաւորութեանն զամիս չորս. և էր այր բարի և աստուածասէր, զարդարեալ ամենայն առաքինութեամբ և լուսաւոր սրբութեամբ, և յամենայն կողմանց նմանեալ էր առաջին սրբոց Թագաւորացն, և փայլեալ ուղղափառ հաւատով որ 'ի Քրիստոս Յիսուս, և եղեւ հայր որբոց և դատաւոր այրեաց։ Եւ հրամանաւ սորա զարկաւ դահեկան անչափ և անհամար իբրեւ զհող.

և կամ զաւազ ծովու, որ եղեւ Միացական և յագուրդ աշխարհի, վասն զի Աստուածով զարկաւ, և յԱստուծոյ շնորհք էջ 'ի վերայ նորա մինչեւ յաւիտեան, և լցաւ ամենայն աշխարհն գանձով նորա։ Իսկ սորա սկիզբն արարեալ պահոց և աղօթից և ամենայն պայծառ սրբութեամբ վարեաց զկեանս իւր։ Նա օխացեալ ընդ նմա թագուհին իւր վասն վարուց սրբութեան, զի ոչ խառնակէր ընդ նմա ամուսնութեամբ. և տռփացաւ թագուհին յոյժ իշխան Հոռոմոց, եւ 'ի ձեռն այնր պիղծ գործոյ իւրոյ յարուցանէր զնա 'ի վերայ Միխայլին, որոյ անուն Վոռոնիատ (148) ասէին։ Նա շարժեաց զամենայն Կոստանդինուպօլիս 'ի վերայ Միխայլին, և բռնութեամբ խնդրէր զաթոռ թագաւորութեանն 'ի նմանէ։ Նա տեսեալ զայս ամենայն թագաւորին Միխայլին, ոչինչ հակառակեցաւ ընդդէմ նոցա. այլ յայտնապէս անիծեաց զամենապիղծ թագուհին, և թողեալ զաթոռ թագաւորութեանն գնաց 'ի վանք կրօնաւորաց և եղեւ կրօնաւոր, և ըզգեցաւ այծէս և արար սկիզբն վարուց կրօնաւորութեան, վասն զի զայն ունէր ցանկութի̃ 'ի վաղուց ժամանակաց հետէ, և թողեալ զաթոռ և զթագ թագաւորութեան իւրոյ։

ԾԺ. Իսկ 'ի թուականութեանս Հայոց ՇԻԵ (1076—1077), Թագաւորեաց 'ի վերայ Հոռոմոց Վոտանիատն, և առեալ իւր կին զկինն Միխայլին, զդուստր Գուրգէն Վրաց թագաւորին [149], որ յաղագս աղտեղի պոռնկութեանն առին զմիմեանս:

ԾԺԱ. Յայսմ ժամանակիս սպանաւ Վասակ իշխանն Հայոց որդի Գրիգորի Մագիստրոսին և եղբայր տէր Գրիգորիսի: Սա էր դուքս Անտիոքայ քաղաքի. սա սպանաւ 'ի շուկայ փողոցին Անտիոքայ 'ի ձեռն նենգաւոր ազգին Հոռոմոց. զի յորժամ անցանէր ընդ փողոցն, գային երկու Հոռոմք [150] յերկրպագութիւն Վասակայ, և թուղթ ինչ ատութեանց 'ի վեր կալեալ առաջի Վասակայ, և նա խոնարհեալ զի առցէ զթուղթն 'ի նոցանէ, և 'ի նոյն ժամայն հարեալ զնա ուրագովն 'ի յաջամէջսն, և մեռաւ մեծըն Վասակ յանարժան և 'ի պիղծ արանցն: Եւ ամենայն զօրք նորա ժողովեցան 'ի կլայն Անտիոքայ. և յայնժամ ազատագունդն Վասակայ կոչեցին զՓիլառտոսն և տան զԱնտիոք 'ի ձեռս նորա: Իսկ Փիլառտոսն զհետ աւուրց ինչ ժողով արարեալ զամենայն ազգն Հոռոմոց զնենգաւոր, և զՀոռոմքն՝ արս եւթն հարիւր, և պատճառէր ուրեք եր-

թալ 'ի պատերազմ. և տարեալ զնոսա 'ի գեղ մի որ կոչի Աշիշուն, և յայնմ տեղւոջ եղեալ սուր 'ի վերայ՝ կոտորեաց զամենայն Հոռոմոսն առհասարակ. և յայնժամ բըռնակալեցաւ Փիլառտոսն 'ի վերայ Անտիոքայ, և առեալ վրէժ արեանն մեծին Վասակայ Պահլաւունւոյ։

ՃԺԲ. Յայսմ ժամանակիս Ապլիխա (151), իշխանն Հայոց, այր քաջ և հզօր պատերազմող, 'ի տանէն Շիրակայ, զոր վասն քաջութեանն իւրոյ Թագաւորն Յունաց բռնադատեաց զնա, և հարկեալ կնքեաց զնա 'ի Հոռոմ հաւատն, բայց նա 'ի ծածուկ հայրենի հաւատոն պաշտէր զորբոյն Գրիգորի։ Նորա հիւանդացեալ 'ի բերդն իւր որ կոչէր Անդրիուն, և էր նորա տուեալ 'ի Թագաւորէն Հոռոմ արեղայ մի առաջնորդ սնոտի հաւատոյն նորա, և էր կարգեալ զնա հայր խոստովանութեան։ Իսկ անօրէն և պիղծ առաջնորդն յաւուր միում մտեալ առ Պիխտըն և տեսեալ զնա զի ննջեալ կայ քաղցրիկ 'ի մահիճս իւր, յարձակեցաւ գազանաբար 'ի վերայ նորա, և առեալ զբարձն դնէր 'ի բերան նորա, և ուժգին անկեալ 'ի վերայ նորա, և չարաչար սպանանէր զայր հզօր և քաջ՝ չարագործն և պիղծ կրօնաւորն Հոռոմոց։ Իւ



զխտացեալ յանժամ զօրացն Նորա զնենգաւոր մահն քաջին և մեծաւ բարկութեամբ չարչարեալ զանօրէն հերետիկոսն, եւ զկնի չարչարանացն ձգեցին զպիղծ աբեղայն ընդ բարձր քարծայր բերդին, և անդէն սատակեցաւ չարն չար մահուամբ ։

ՃԺԳ. Իսկ Թագաւորն Վոտօնիատն զմիամ կալեալ զաթոռ թագաւորութեանն և այլ ոչ կամեցաւ ունել զաթոռն այն, վասն զի հակառակութեամբ և պոռնկութեամբ համարեցաւ զնա և ոչ հրամանաւն Աստուծոյ, զի շնութեամբ էառ զկինն Միխայլին և ոչ հրամանաւն Աստուծոյ. և թագաւորեաց անխրատաբար, և յոյժ նեղէր զնա խիղճ մտաց իւրոց, և ընդ միտս իւր ասացեալ եթէ՝ «Այն որ թագաւոր էր և տէր աթոռոյս, եթող և եղեւ աբեղայ, ես զի՞արդ ընդդիմանամ չարութեամբս իմով, և ահա զկնի դոյ և հասանէ մահն»։ Եւ յանժամ՝ ի բաց թողեալ զաթոռ թագաւորութեանն, վասն զի մեծաւ յանցանօք նենգաւորեաց սուրբ թագաւորին Միխայլին. եւ զկնի այսորիկ եղեւ Վոտօնիատն աբեղայ ։

ՃԺԴ. Յայսմ ժամանակիս նստուցանեն յաթոռ թագաւորութեանն Հոռոմոց զԱե-լեսիանոսն (152) և էր 'ի թուականութեանս

Հայոց ՇԻԶ (1077–1078)։

ՃԺԵ. Դարձեալ 'ի թուականութեանս Հայոց ՇԻԶ (1077–1078), մեռանէր ամենազովելին տէր Սարգիս հայրապետն Հայոց, որ էր քուրորդի տեառն Պետրոսի Հայոց կաթուղիկոսի. և հրամանաւ նորա նստուցանեն յաթոռ կաթուղիկոսութեան Հայոց զտէր Թէոդորոս՝ զդրան եպիսկոպոսն տեառն Սարգսի Հայոց կաթուղիկոսի, զմեծ երաժիշտն ձայնաւորաց՝ որ մականուն ասի Ալախօսիկ, նստուցանեն զնա յաթոռն կաթուղիկոսութեան Հայոց 'ի քաղաքն որ կոչի Հոնի, 'ի Ջահան գաւառի։

ՃԺԶ. Յայսմ ժամանակիս Վասիլն Ապուքապայ որդին, այն որ յառաջն վրանապահ էր լեալ Դաւիթ կուրապաղատին Վրաց իշխանին. սորա հրամանաւ Փիլառտոսն արարեալ ժողովս հեծելոց և գայր 'ի վերայ քաղաքին Ուռհայու, բազում պատերազմաւ նեղէր զքաղաքն զամիսս վեց։ Եւ յայսմ ամի շինեաց Վասիլն զպարիսպն բերդաքաղաքին որ կոչի Անապօլիս, (Հռոմանոպօլիս) զի շինեաց Ռոմանոս թագաւորն Հոռոմոց. և յետ այսորիկ նեղեաց Վասիլն զքաղաքն Ուռհայ. յայնժամ քաղաքացիքն արարին խուխայ 'ի վերայ տուկին իւրեանց որ անէ-

ին Լեւոն՝ եղբայր Դաւատանոսին, և եղև փախստական Լեւոն, և անկանէր 'ի վերին կլայն, և Պռօքսիմոսն նորա 'ի մէջ եկեղեցւոյն անկանէր, որ ասի սուրբ Աստուածածին, եւ մտեալ բուռն հարեալ զեղջերաց (153) սրբոյ սեղանոյն, և մտեալ քաղաքացիքն յեկեղեցին, և գազանաբար սպանանէին զնա առաջի սրբոյ սեղանոյն Աստուծոյ: Եւ յայնմ աւուր ետուն զՈւռհայ 'ի ձեռս Վասիլն՝ Ապուքապայ որդւոյն, այր բարի և աստուածասէր, ողորմած 'ի վերայ որբոց և այրեաց, եւ խաղաղարար և շինող աշխարհի, որ և յառաջն հայր նորա Ապուքապս կացեալ էր 'ի քաղաքն Ուռհայ, եւ նորա շինեալ էր և սին առեալ զամենայն գաւառն. այս եղեւ 'ի Թուականութեանս Հայոց ՇԻԶ (1077–1078):

ՃԺԵ. Յայսմ ժամանակիս կացեալ Թագաւորն Մելեսիանոսն 'ի Կոստանդինուպօլիս զամիսս չորս. և յայնժամ ամենայն բազմութիւն քաղաքին միահամուռ յարեան 'ի վերայ Մելեսիանոսին, և շարժեցին պատերազմ 'ի վերայ նորա և յափշտակեցին 'ի նմանէ զԹագն և զաթոռ Թագաւորութեանն, եւ դնեն զԹագն 'ի գլուխ իշխանի մի՝ որում անուն ասէին Ալէքս, որ էր եղբօրորդ

դի Կոմանոս Թագաւորին, այր բարի եւ աստուածասէր և քաջ ընդդէմ պատերազմաց. եւ յայնժամ լինէր խաղաղութիւն տանն Յունաց։

ՃԺԸ. Իսկ յորժամ բարձրացաւ Թուականութիւնս Հայոց 'ի յամն ՇԻԸ (1079–1080), եղեւ սով սաստիկ ընդ ամենայն աշխարհս խաչապաշտից յայնկոյս ծովուն Ովկիանոսի. վասն զի . . . . . . . . .
ազգն Թուրքաց տարածեցաւ ընդ ամենայն երկիր, որ ոչ մնաց գաւառ 'ի խաղաղութեան, այլ կայր մատնեալ ամենայն տունն քրիստոնէից 'ի սուր և 'ի գերութիւն. և արգելաւ վաստակ հողագործութեան յերկրէ, և հատաւ կերակուր հացի, և սով և գերութեամբ հատան մշակք և վաստակաւորք, և տարածեցաւ սով առ հասարակ ընդ ամենայն աշխարհ։ Եւ անմարդ եղեն բազում գաւառք, և քակեցաւ տունն արեւելեայց, և եղեւ աւերակ աշխարհն Հոռոմոց, և ոչ ուրեք գտանէին կերակուր հացի, և կամ դադար հանգստեան մարդոյ, բայց 'ի յՈւռհայ և յամենայն սահմանս նորա։ Եւ Անտիոք և ամենայն աշխարհն Կիւլիկեայ և մինչեւ 'ի Տարսոն և ամենայն աշխարհն Մարաշայ, 'ի Տլուք և յամենայն սահմանս

աշխարհաց այսոցիկ ոչ գտանէին հանգիստ դադարման մարդոյ, և փախեալ եղանէին միահամուռ ամենայն արարածք և գային յաշխարհս այսորիկ անթիւ բազմութեամբ, հազարս առ հազարս և բիւրս առ բիւրս, ծըփոյր մարդ 'ի վերայ երկրի. Եւ ծածկեցաւ աշխարհս այս, և որպէս զմարախ 'ի բազմութենէ նոցա ծածկէր երկիր, առաւել ունիմ ասել քան զեւթնապատիկ զժողովուրդն զոր Մովսէս ընդ ծովն անցուցանէր, նա և քան զլորամարդն յանապատին Սինայ։ Եւ այսպիսի ահագին բազմութեամբ լցաւ երկիր, և արք մեծամեծք և փառաւորք, ազատք և իշխանք և կանայք մեծաշուք շրջեալ մուրանային. և զայս ամենայն աչք մեր տեսանէին, և յերեսաց սովոյն և 'ի պանդխտութենէ կենացն մահ անկանէր 'ի նոսա ընդ ամենայն երկիր, և յագեցան առ 'ի թաղել զնոսա. լցաւ երկիր 'ի դիականց նոցա, գազանք և թռչունք յուտելոյն ձանձրացան. անթիւք անթաղք մնացեալ յանհամար բազմութեանց՝ հոտեցաւ երկիր 'ի մեռելոտի մարմնոյ նոցա. փառաւոր քահանայք և կրօնաւորք եղեն օտարամահք և պանդուխտք, և կերակուր լինէին գազանաց և թռչնոց։ Այս եղեւ սկիզբն աւերման եւ

քակտելոյ տանն արեւելեայց եւ Յունաց, զոր յաղագս մեղաց մերոց ընկալաք զհատուցումն յարդար դատաւորէն Աստուծոյ, ըստ այնմ զոր ասաց Փրկիչն եթէ, «Ամենայն ծառ որ ոչ բերէ պտուղ բարի, հատանի եւ 'ի հուր արկանի»:

ՇԺԹ. Յայսմ Թուականութեան սպանաւ (154) Գագիկ շահն որդի Աշոտոյ՝ որդւոյ Գագկայ՝ որդւոյ Աբասայ՝ որդւոյ Աշոտ Երկաթայ, Բագրատունի ազգաւ: (Քանզի) յայսմ ժամանակիս (այս) Գագիկ արքայ Հայոց վտարեալ զգունդն զօրաց իւրոց եւ գնաց էջ 'ի Տարսոն քաղաք առ Ապլխարիպ իշխանն Հայոց՝ որդւոյ Հասանայ՝ որդւոյ Խաչկայ Խլին՝ առն քաջի, 'ի Վասպուրական գաւառէ: Նա գնացեալ առ Ապլխարիպն սիրոյ աղագաւ, զոր վասն խնամութեան կոչեալ էր զԳագիկ Ապլխարիպայ, եւ յաղագս պատճառի ինչ ոչ եղեւ գործ խնամութեանն. դարձաւ Գագիկ մռնչելով որպէս պառիւծ, վասն զի էր մեծ եւ հզօր եւ այր քաջ, եւ կալեալ զամենայն իշխանս գաւառին՝ վարէր զնոսա երկաթի կապանօք առաջի իւր. եւ եկեալ հազար արամբ 'ի դաշտն Աժիասայ 'ի բերդն որ ասի Կիզիստռայ. եւ էին բերդատէրքն երեք եղբարք իշխանք Հոռոմոց՝ որդիք Մանտա-

լէր. և Գագկայ թողեալ զօրսն իւր 'ի յայս կողմն ճանապարհին, և ինքն երեք արամբ երթայր դիմօք առ նոսա։ Իսկ նոքա յառաջ պատրաստ լեալ և արս յխառն ('ի) քմին եդին Գագկայ. և յորժամ մերձ եղև 'ի բերդն Գագկին՝ գային երեք եղբարքն յերկրպագութիւն և 'ի վերայ երեսաց խոնարհեալ երկրպագանէին նմա։ Եւ յորժամ տեսաւ զնոսա Գագիկ, կոչեաց զնոսա 'ի համբոյր. և յորժամ մօտ եկին, միաբան գրկեալ երեք եղբարք զպարանոցն Գագկայ՝ և ընկեցին 'ի ձիոյն, և արքն որ զինի էին՝ փախեան. և եկեալ (որ 'ի) քմին՝ կալան զնա, և լուեալ զօրացն ցրուեցան, և ածին զԳագիկ 'ի բերդն։ Եւ յաւուրն ութերորդի ժողովեցան 'ի վերայ բերդին ամենայն տունն Հայոց, Գագիկ Աբասայ որդին և ամենայն ցեղն Սենեքերիմայ՝ Ատոմ և Աբուսահլ և այլ ամենայն իշխանքն Հայոց, և զաւուրս ինչ պատերազմեալ 'ի վերայ բերդին՝ ոչինչ կարացին առնել. վասն զի ամուր էր յոյժ, և որք բռնեալ էին զԳագիկ՝ ոչ համարձակէին թողուլ 'ի յահէ Գագկայ. և յայնժամ յուղարկեալ առ նոսա անօրէն Փիլառտոսն և ասէր, եթէ « Ո իժոց համարձակեցայք զայդ գործել ընդ առն թագաւորի.

եթէ թողայք՝ և եթէ ոչ , ձեզ կորուստ գործեսջիք պայդ ։ Իսկ յայնժամ աստուածային ազգն Հոռոմոց լարով խեղդեցին զթագաւորն Հայոց և կախեցին զնա 'ի պարիսպն զօր մի . և յայնժամ հանեալ թաղեցին զնա արտաքոյ բերդին , զոր յետ վեց ամսոյ եկեալ այր մի 'ի քաղաքէ նորա՝ Բանիկ անուն և գողացաւ զմարմին նորա , և հանեալ 'ի գերեզմանէն 'ի գիշերին զթագաւորն Գագիկ , և տարաւ զնա 'ի քաղաքն իւր . և ազգն իւր արարին կոծ մեծ 'ի վերայ նորա և ամենայն ազգն Հայոց , եւ թաղեցին զնա 'ի վանքն իւր Պիզու , և մենայ իւր աւագ որդին Յովհաննէս ։ Իսկ աստանօր դադարեալ եղև թագաւորութիւնն 'ի տանէն Հայոց և յազգէն Բագրատունեաց ։ Յայսմ վայրի լցեալ կատարեցաւ մարգարէութիւնն սրբոյն Ներսէսի Հայոց կաթուղիկոսի՝ որ ասաց . « Ջնջելով ջնջեսցի թագաւորութիւնն 'ի տանէն Հայոց »։

ԾԻ . Դարձեալ եղեւ 'ի թուականութեանն Հայոց 'ի յամի ՇԼ (1081–1082), արքեպիսկոպոսն Շիրակայ որ էր 'ի քաղաքն Անի , որոյ անուն առէքին տէր Բարսեղ , յարուցեալ գնաց յաշխարհն Հայոց 'ի Ճո-ւան գաւառի՝ 'ի Լոռէ քաղաքի առ Թա-

գաւորն Հայոց Կիւրիկէ՝ որդի Անհողինին Դաւթի, որդւոյ Գագկայ (155). և խնդրէր Բարսեղ առնել ձեռնադրութիւն կաթողիկոսութեան Հայոց։ Որ ժողովեաց թագաւորն Կիւրիկէ զեպիսկոպոսունս Աղուանից աշխարհին, և բերեալ զտէր Ստեփաննոս կաթուղիկոս Աղուանից ՚ի վանքն որ կոչի Հաղբաթ, ձեռնադրեցին զտէր Բարսեղ կաթուղիկոս յաթոռ սրբոյն Գրիգորի՝ ՚ի վերայ ամենայն աշխարհին Հայոց. հրամանաւ Կիւրիկէ թագաւորին և տեառն Ստեփաննոսի՝ որ ունէր զաթոռ սրբոյ առաքելոյն Թադէոսի։ Յայսմ ժամանակիս նորոգեալ եղեւ (156) աթոռ սրբոյն Գրիգորի. ՚ի քաղաքն Անի, որ ՚ի վաղուց հետէ ժամանակաց խափանեալ էր մախանօք և նենգութեամբ չար և դառնացեալ ազգին Հոռոմոց։ Եւ եկեալ գայր Բարսեղ կաթողիկոսն Հայոց ՚ի թագաւորաքնակ քաղաքն Անի, և ելեալ ամենայն տունն Շիրակայ գնալ ընդ առաջ նորա, և ահա գայր Վասակ հայր տէր Բարսղի և եղբարքն նորա Հասան և Գրիգոր և Ապլղահապ, արք քաջք և հզօրք՝ հանդերձ եպիսկոպոսօք, և նըստուցին զտէր Բարսեղ յաթոռ տեառն Պետրոսի։ Եւ եղեւ օրն այն օր մեծ և ուրա-

խութիւն ամենայն տանն Հայոց, վասն զի տեսին նորոգեալ զաթոռ հայրապետութեանն ՚ի քաղաքն Սիս։

ՃԻԱ. Յայսմ ժամանակիս ամիրայ մի Խօսրով գայր բազում զօրօք ՚ի Պարսից աշխարհէն, և հասանէր ՚ի գաւառն Ուռհայոյ, և արարեալ աւերս ՚ի տեղիս տեղիս։ Եւ յայսմ աւուրքս եղեւ պատերազմ ՚ի վերայ Եփրատ գետոյ ՚ի տեղին որ ասի Անկնիկ՝ մերձ ՚ի բերդն որ կոչի Լտար, վասն զի ժողովեցան բերդացիք գաւառին ընդ առաջ նորա ՚ի պատերազմ, և յայնմ աւուր յաղթեաց Թուրքն և արար բազում կոտորածս քրիստոնէից։ Եւ յետ աւուրց ինչ յարուցեալ ամիրայն Խօսրով, և արար ասպատակ զերկիրն Տաճկաց ՚ի Խառանայ մինչեւ ՚ի Սուտէ-ուէրն, և զաւուրս երկու կացին ՚ի վերայ ձիոյ, և բազում աւարաւ գայր ՚ի դուռն քաղաքին Խառանայ։ Եւ էր ՚ի քաղաքին ամիրայ Արապկաց որ ասի Շուրէհ-Հէճմ՝ Կուրբէշայ որդին, որ կոչի Շէրէփն-Տօլ (157)։ Եւ յայսմ աւուրս էր ամիրայն Շուրէհ ՚ի Խառայն զօրօք Արապկաց, եւ երկու հազար ձիաւորով ելեալ ՚ի պատերազմ ՚ի վերայ Պարսից զօրացն. և էր Թուրքն արս տասն հազար, և ՚ի հանդիպել միմեանց

տարարին զԹուրքն փախստական, և սաստիկ կոտորածով վարեցան զհետ զօրացն Պարսից. եւ Թափեցին զամենայն առն և զգերութիւնն, և լցաւ ամենայն գաւառն Ուռհայոյ ծառայք 'ի Թուրքէն, եւ յամենայն Թուփ և 'ի քարատակ գտանէին անկեալ զօրք Թուրքաց, և ուր ուրեք զերծան։

ԾԼԲ. Իսկ 'ի Թուականութեանս Հայոց ՇԼԲ (1083–1084) մեռաւ Վասիլն Ապուքապայ որդին՝ տէրն Ուռհայոյ, և Թաղեցին զնա 'ի Գոստեւոր սուրբ Գէորգ։ Եւ էր այր բարի և աստուածասէր. քաղցր 'ի վերայ ամենայն աշխարհի, ողորմած որբոց և այրեաց, շինող և խաղաղարար աշխարհի, և եղև սուգ մեծ 'ի վերայ աշխարհին Ուռհայոյ, և (մանաւանդ) այսմ գաւառի նորա, զի եղեն զրկեալք յայն քաղցր և բարի աւագէն, վասըն զի որպէս զհայր և ծնող էր 'ի վերայ մեծի և փոքու. և եղեալ բարի յիշատակա յաշխարհէս գնաց առ Քրիստոս։ Եւ առաջին ժողով ամենայն քաղաքն 'ի սուրբ Սոփի, և տան զքաղաքն Ուռհայ 'ի ձեռն Սմբատայ առն քաջի և արիական 'ի պատերազմն ընդդէմ Պարսից։ Եւ կացեալ Սմբատայ 'ի յաԹոռ տուկութեանն Ուռհայոյ վեց ամիս. և անն 'ի մեծամեծաց քաղաքին Հանայր

առնուլ տուկութեանն զաթոռ 'ի յազգէ Հայոց, որոյ անունն ասէին Իշխան, 'ի ցեղէն՝ որ ասէին Ռուզբթոնք: Սա ապստամբեցաւ և գնաց առ Փիլառտոսն, վասն զի ունէր բազում ցեղս և ազգս մեծամեծս 'ի քաղաքն Ուռհայ. և շարժեալ Իշխանին ըզՓիլառտոսն՝ և բերէր 'ի յՈւռհայ, և ետուն զքաղաքն 'ի ձեռն Փիլառտոսին: Եւ զկնի սակաւ աւուրց Փիլառտոսն ձերբակալ արարեալ զԻշխանն և զամենայն ազգն նորա և զՍմբատ, և արար հիմն 'ի վեր զամենայն բնակութիւնս նոցա, և հատոյց զամենայն իշխանութիւնս Հայոց որք էին 'ի քաղաքն Ուռհայ, և զՌուզուկ իշխանն եսպան չարչարանօք, և զայլսն տարաւ 'ի Մարաշ քաղաք. և եհան զաչսն Սմբատայ զառն քաջի, և զաչս Իշխանին և զեղբօրն իւրոյ զԹոտոռկայ, եւ զայլ իշխանսն պահէր 'ի շղթայս 'ի Մարաշ քաղաքին վասն չար բարուց իւրոց:

ՃԻԳ. Դարձեալ 'ի թուականութեանս Հայոց ՇԼԳ (1084—1085), առաւ Անտիոք քաղաք 'ի քրիստոնէից. վասն զի Սուլիման ոմն ամիրայ որդի Ղթլըմշոյ, որ բնակեալ էր 'ի քաղաքն Նիկիա՝ յաշխարհն Բիւթանացւոց, որ էր սահմանակից Ովկիանոս ծովուն:

Սորա յարուցեալ գայր գաղտաբար ընդ հեռաձիգ ճանապարհ, և հասանէր ծածկաբար մինչև 'ի քաղաքն Նիկիոյ. և գտեալ զքաղաքն անպատրաստ և անպահապանս, և 'ի Հայոց դիհէն 'ի գիշերի գողացաւ զքաղաքն Նիկիոյ. և Փիլառտոսն էր 'ի քաղաքն Ուռհայ, և յայնմ ժամու զօրք հեծելոց ոչ գոյր 'ի քաղաքն։ Եւ Սուլիմանն երեք հարիւր այրամբ մտաւ 'ի քաղաքն Նիկիոյ. և 'ի վաղիւն տեսեալ քաղաքացեացն՝ ահաբեկեալ եղեն, վասն զի ոչ ունէին արք պատերազմողք, այլ էին որպէս կանայք տկարք և վատ 'ի պատերազմ. և առ հասարակ ժողովեցաւ քաղաքն 'ի կլայն, և օր քան զօր բազմանայր զօրք Թուրքացն, և էառ զքաղաքն եւ մարդոյ չարւար մինաս, և նեղեաց զկլայն զբազում աւուրս սովով և ծարաւով։ Եւ յետ այսր ամենայնի խնդրեցին երդումն 'ի յամիրայէն, և տայր Սուլիմանն զամենայն և եղեւ խաղաղութիւն, և դարձաւ ամենայն մարդ անմինաս 'ի տուն իւր։ Եւ լըւեալ զայս ամենայն Փիլառտոսն՝ ոչ ինչ կարաց առնել, լուռ 'ի հոգւոց հանեալ եւ դառնապէս ապաշաւէր։ Եւ Սուլիմանն տիրեաց Նիկիոքայ և ամենայն աշխարհին Կիլիկեցւոց։ Արդ այսպիսի օրինակաւ առաւ

բազմամբոխ քաղաքն Անտիոք 'ի վաս և 'ի թուլամորթ և 'ի պիղծ ազգէն որ կոչին Պելետիկք (158), որ հաւատովն Հոռոմք ասեն իւրեանց, այլ գործովք և լեզուով սոսկ Տաճիկք, եւ հայհոյիչք ուղղափառ հաւատոց, եւ ատեցողք վարուց սրբութեանց, թշնամիք պահոց և կատարիչք չարեաց, հալածիչք հաւատոյ Հայաստանեայց, և ինքեանք նմանեալ հիւանդ և տկար կանանց որք նստին 'ի փողոցի և բաղբանջեն լեզուաւ իւրեանց:

Եւ այլ ինչ զարմանալի ասացից ձեզ՝ զոր ինչ եղեւ յԱնտիոք յառաջ քան զքսան ամ, զոր և մեք իսկ լուաք զայս 'ի քաղաքացեացն, եթէ այնչափ չար և ատեցողք էին Հայոց ազգին Անտիոքացիքն, զի յորժամ 'ի քաղաքն օտարական բռնէին, զմօրուքն կարէին եւ հանէին ընդ դուռն քաղաքին: Եւ յաւուր միում բռնեցին զոմն Անեցի՝ այր փառաւոր և կտրեցին զմօրուքն նորա, և առին զամենայն ինչս նորա, և հանին զնա 'ի քաղաքէն. և նա վիրաւորեալ գնաց, և առեալ զօրս Թուրքաց հինգ հարիւր այր, և եկեալ գերեաց զամենայն գաւառն Անտիոքայ, և ըղտուկին երկոտասան դեղն այրեաց հրով. և բերեալ 'ի դուռն քաղաքին բազում գերու-

թիւն, կոտորեաց և ելից զնոսա ’ի գետն, և ձայն տուեալ ’ի քաղաքն և ասէր. «Այս եմ Գորգ Շիրակացին, որ զմօրուքն կտրեցիք. թ’ապա աժէ՞ այս մօրուք՝ թէ ոչ»։ և գնաց անհամար աւարաւն։ Նոյնպէս յաւուրսն բարեկենդանին ’ի նոյն ամին եկեալ կարաւան ’ի յարեւելից ’ի քաղաքն Անտիոքայ, բարձեալ բերէին տարեխ ձուկն, և կային ’ի մէջ շուկային ’ի գինարբութեան. և ’ի լսել քաղաքացեացն զձայն պարուցն նոցա, ամենայն արք քաղաքին հասանէին ’ի վերայ նոցա և ծեծելով գանալից արարին զնոսա, սկսան հանել զնոսա ’ի քաղաքէն։ Այն արքն իբրեւ ութսուն՝ բրէզանծք և ընտրեալք քաջութեամբ։ Եւ յայնժամ ձայն տուեալ մանկտաւագքն նոցա, և նոցա միաբան գինեխմեալ էին՝ յարձակեցան ’ի վերայ քաղաքացեացն, և ’ի Սեւոտոյն դրանէն մինչեւ ’ի տէր Պետրոս զամենայն արք քաղաքին փախըստական արարին, և կռուամնաբեկ ոտնակոխս արարին առ բազումս. և ապա խաչով և աւետարանով երդուեալ նոցա բնաւ այլ ոչ մեղանչել նոցա։ Եւ յայնժամ արարին խաղաղութի, և դարձան ’ի տեղիս իւրեանց։

ԾԻԴ. Դարձեալ ’ի թուականութեանս Հայոց յամի ՇԼԴ (1065—1086). մեռաւ

Հայոց վարդապետն Յակոբոս Ղարափնեցին, որ յորջորջեալ կոչէր Սանահնեցի (159), այր հզօր կորովի։ Սորա հասեալ 'ի վերայ հին և նոր կտակարանացն Աստուծոյ, ուսեալ եւ հասեալ սորա 'ի վերայ հռետորական իմաստութեանց, և տեղեկացեալ ամենայն փիլիսոփայական խորին գիտութեանց. սա էր յաշակերտաց մեծին Դէոսկորոսի հօրն Սանահնեին. և այս Յակոբոս էր որ խօսեցաւ 'ի Կոստանդնուպօլիս ընդ իմաստասէրսն Հոռոմոց յաւուրս Թագաւորին Տուկծին, յորժամ գնաց զհետ Սենեքերիմայ որդւոյն. սորա խօսեալ վասն հաւատոցն Հայաստանեայցս. և հաճեալ 'ի բանս նորա ամենայն տունն Յունաց։ Նա յայսմ ժամանակիս էր 'ի քաղաքն Ուռհայ, և ծերութեամբ քաղաքավարեալ զկեանս իւր. և դաւով նենգութեամբ լուծեալ եղեւ 'ի կենաց, վասն զի գտանէին զնա մեռեալ 'ի մահիճս իւր առանց հեծութեան և ցաւոց։ Լացին զնա ամենայն սիրելի մերձաւորք իւր, և արարին ժողով զամենայն քաղաքն Ուռհայ 'ի վերայ նորա, և մեծաւ հանդիսիւ Թաղեցին զնա 'ի դուռն սուրբ Եկեղեցւոյ իւրոյ՝ 'ի հիւսիսեան կողմն քաղաքին, իբրեւ նետընկէց մի հեռի 'ի պարսպէն։

ՃԻԵ. Յայսմ ամի Թագաւորն Արապկաց Կուրիշայ որդին, որ ասի Շէրէփին—տօլ, այր բարի և քաղցր հաւատացելոց Քրիստոսի, որ ոչ ընդ գրով փակի գործ բարութեն նորա 'ի վերայ խաչապաշտ ազգաց. և կամ քանի խրատս և չարչարանս, և կամ քանի սպանումն անցուցանէր ընդ ազգն իւր վասն հաւատացելոց Քրիստոսի: Սորա արարեալ ժողով Արապ զօրաց իբրեւ տասն բիւրս, և գնաց էառ զՀալապ քաղաք. և արար կին զդուստրն տեառն քաղաքին (160). և արձակեցաւ պատերազմ 'ի վերայ Անտիոքայ քաղաքին մեծաւ սրտմտութբ. և յայնժամ Սուլէման ամիրայն Անտիոքայ գայր ընդդէմ նորա բազում զօրօք 'ի տեղին որ կոչի Պղահ, եւ յայնմ տեղւոջ արարին սաստիկ պատերազմ յերկոցունց կողմանցն: Իսկ Արապիկ զօրքն սկսան նենգաւորել Թագաւորին իւրեանց. և առ հասարակ 'ի փախուստ դարձան. եւ յորժամ՝ երթային՝ սպանաւ Թագաւորն Արապկաց 'ի յիւր զօրացն. և այսպէս մեռանէր բարի Թագաւորն Կուբիշայ որդի՝ Շէրէփին—տօլ. և զկնի երից աւուրց գտանէին զնա սպանեալ, և 'ի վերայ ճանապարհին թաղեցին զնա: Իսկ Սուլիման մեծաւ յաղթութեամբ դարձաւ յԱնտիոք. և յայնմ ժամու

ծնաւ իւր որդի . և կոչեաց զանունն որդւոյ իւրոյ Իղիճ–Նլան :

Յայսմ ամի ամիրայ ոմն Պուլատճի անուանաքա առեալ զԴ բրհան գաւառ ՚ի Փիլառտոսէն, և կաթողիկոսն տէր Թէոդորոս եղև ընդ իշխանութեամբ նորա. յայնժամ կոչեաց Փիլառտոսն զնա առ ինքն ՚ի Մարաշ քաղաք , և նա ոչ կարաց գնալ. վասն զի Թուրքքն էր իշխանութիւնն : Եւ եղև սպանեալ Փիլառտոսն ընդ տէր Թէոդորոսի . և խորհեցաւ այլ կաթողիկոս դնել յաղագս անիրաւ և չար բարուց իւրոց . և յայնժամ մեծապէս կոչեաց ընդ տէր Յովհաննէս արքեպիսկոպոսն որդւոյ Աստուածածնին պատկերին . և նա ոչ էառ յանձն , վասն զի էր ահարկու և փառաւոր և ընտիր առաքինի : Դարձեալ Փիլառտոսն կոչեաց զտէր Պօղոս վհայր որդւոյ Նշանին Վարագայ , և սուրբ ժողովք եպիսկոպոսաց և հայրանց , և ետուն ձեռնադրութիւն կաթուղիկոսութեան Պօղոսի ՚ի Մարաշ քաղաքի . հրամանաւ և կամօք Փիլառտոսի և ոչ Աստուծոյ : Եւ այս ամենայն ոչ լինէր ընդունելի Աստուծոյ , և ոչ առ հաւատացեալսն Քրիստոսի . զորս տեսեալ Պօղոսի՝ զկնի սակաւ ինչ աւուրց ՚ի բաց թողեալ զաթոռն , վասն զի էր այր սուրբ և առաքինի , և գնաց_

ցեալ զի ընդ հակառակս էր և ոչ ուղղապէս։

ՃԻԶ. Յայսմ ժամանակիս էր աղմուկ և խռովութիւն մեծ ՚ի վերայ աթոռոյն սուրբ Լուսաւորչին Գրիգորի. վասն զի յաւուրս այսոսիկ ոչ հրամանաւն Աստուծոյ և կամ արժանաւորութեամբ, կամ ընտրութեամբ էր կարգադրութիւն սրբոյ Աթոռոյն, այլ զօրութեամբ և կալողութեամբ և բարձրագահ իշխանութեամբ. և այս ոչ լինէր յայտնութեամբ Հոգւոյն սրբոյ, այլ լինէր ՚ի ձեռն պատուհասից և յաջողութեանց և տրօք ոսկւոյ և արծաթոյ։ Եւ ահա յայսմ աւուրքս ամաչելով յետս դարձան դասք սրբոցն և առաքինեացն, և յառաջ մատեան դասք անկելոցն յերեսաց տեառն Աստուծոյ Յիսուսի Քրիստոսի՝ որդւոյն Աստուծոյ. Աստանօր սկիզբն եղեւ կատարելոյ տեսլեանն սրբոյն Սահակայ Պարթեւի, յորս ասաց՝ ջնջել ոսկեդիր կարգայն, և գծագրել սեւադեղ թանաքովն. վասն զի ահա ՚ի ժամանակիս յայսմիկ ՚ի չորս բաժանեցաւ աթոռ սրբոյն Գրիգորի. զի ահա տէր Վահրամ յԵգիպտոս, և տէր Թէոդորոս ՚ի Հոնին, եւ տէր Բարսեղ ՚ի թագաւորաբնակ քաղաքն Հայոց Անի. և տէր Պօղոս ՚ի Մարաշ քաղաքն. եւ սոքա իւրաքանչիւր ոք առնէին

ձեռնադրութիւնս, և օծանէլին եպիսկոպոսունս եւ տային օրհնութիւնս սուրբ ձիթոյն, և 'ի նոյանէ օրհնէլին քահանայք, և լինէր պատարագս և մկրտութիւնս և պսակն կուսանաց։ Եւ էր այս ամենայն սուգ մեծ 'ի վերայ եկեղեցւոյն Աստուծոյ. վասն զի մարախն ոչխարաց ընդ չորս հայրապետութիւնքս բաժանեցաւ, և գոյլք եղեն պահապանք հօտին Քրիստոսի։ Եւ ահա այսմ ժամանակիս բանաւոր ոչխարքն զգեցան զբնութիւն շանց, և առին զխիրս գազանաց, և համարձակեցան հաչել յերեսս հովուացն և հայրապետացն. Հորք ատեցին զծնունդս իւրեանց, որդիք հայհոյիչք և չարչարիչք ծնողաց իւրեանց։ Եւ արդ ահա այս ամենայն կարապետքն են Նեռին, և սկիզբն կատարածի աշխարհի, և առ 'ի բառնալոյ հաւատոց և աստուածպաշտութեանց և 'ի կատարելոյ գրելեայն 'ի գիրս սուրբս, զոր ասաց սուրբն Ներսէս և Նորին որդին սուրբն Սահակ, և զոր խօսեցաւ 'ի մերում ժամանակիս սուրբ վարդապետն Հայոց Յովհաննէս՝ որ ասի Կոզեռն։ Սա (161) խօսեցաւ բազում բանս որպէս զմարգարէութիւնս 'ի վերայ այսմ ժամանակիս և խափանելոյ աստուածպաշտութեանս յամենայն ծագս. և

Թուլմնալ(162) հաւատոց. և զայս տամ 'ի նոյն գիրքս յառաջ ժամանակաց: Արդ այս ամենայն խռովութեանցս եւ անդէս բարկութեանս ոչ կարաց մտանել յաշխարհն Աղուանից, որ ասի՝ խորին աշխարհն Հայոց, որ է աթոռ սրբոյ առաքելոյն Թադէոսի: Արդ այս ամենայն յայնմ աշխարհի ոչ եղեւ բաժանումն սրբոյ աթոռոյն, այլ մնաց անշարժ հաստատութեամբ, հայրապետութեամբ և թագաւորութեամբ մինչեւ ցայսօր ժամանակի, որք նստէին առաքելական աթոռոյն 'ի քաղաքն Հայոց 'ի Պարտաւ, որ ասի Փայտակարան, սահմանակից համատարած ծովուն: Նա եղեւ 'ի զօրանալն Պարսից փոխեցաւ աթոռ հայրապետութեանն 'ի Գանձակ. որք հանդիպեցան այսմ մատենագրութեանս մերում՝ կաթուղիկոսք Աղուանից՝ տէր Յովհաննէս և տէր Գէորգ, տէր Յովսէփ, տէր Մարկոս. տէր Ստեփաննոս. եւ Թագաւորք Աղուանից՝ Գագիկ և Դաւիթ և Կիւրիկէ, որք նստէին այժմուս 'ի Լօռէ քաղաք Հայոց: Նոյն և այլ Թագաւորք Հայոց 'ի Դարբանդ աշխարհին, որ ասի(163) Կապանք, սահմանակից Աւզաց և Աղուանից. որք էին Թագաւորք անպարտք և սրբակրօնք. որ յիշատակին 'ի սուրբ պատարագն ընդ այլ

աստուածասէր սուրբ Թագաւորացն, որոց էին անուանք այսոքիկ. Վաչական, և Գուշակտակ (164), Նորին որդի. Փիլիպէ որդի Գուշակտակին. Սեւադա որդի Փիլիպէի. Սենեքերիմ որդի Սեւադայի. Գրիգոր որդի Սենեքերիմայ, որ դեռ ևս կենդանի էր մինչև գրէաք զայս մատենագրութիւնս մեր։ Յայսմ ժամանակիս եղև ազգիս Հայոց վեց կաթողիկոս, երկու յԵգիպտոս, և չորս յամենայն աշխարհին Հայոց, որպէս յառաջ ասացաք (165)։ Եւ նստաւ տէր Պօղոս կաթողիկոսն ի Մարաշ հրամանաւ Փիլառտոսին և ոչ հրամանաւն Աստուծոյ։

Եւ արդ մեք դարձցուք ի Թուականն որ Թողաք, զի զայս ասացաք վասն խառնակութեան որ եղև ի վերայ աշխարհիս Հայաստանեայց։

ԾԻԷ. Իսկ յորժամ եղև Թուականութիւն Հայոց ՇԼԴ. (1085—1086) գայր բազում զօրօք սուլտանն Դամասկոսի՝ որ ասի Դդուշ. և յարուցանէր պատերազմ ընդ ամիրային Անտիոքայ ընդ Սուլիմանն։ Արդ յայսմ ժամանակիս եղև պատերազմ սաստիկ յերկոցունց կողմանցն, և բախէին զմիմեանս զարմանալի պատերազմաւ ընդ մէջ Հալպայ և ընդ մէջ Անտիոքայ. և էր երկուերեաք պատերազմացն Թուրքք, և յայնմ ան-

զուօք անխնայ զմկնեանս սատակէին. և 'ի բազմանալ պատերազմացն՝ յաղթեաց զօրք սուլտանին զօրացն Սուլիմանայ և արարին զնա փախստական, և սպանաւ ամիրայն Անտիոքայ Սուլիման 'ի զօրաց սուլտանին Դդուշին, և Թաղեցաւ Սուլիման մօտ 'ի գերեզմանն Շէրէֆն-տօլայ՝ Կուրիշայ որդւոյն։ Եւ յայսմ ամի առաւ Անտիոք և ամենայն աշխարհն նորա, և եղև Դդուշին։ Այս Դդուշս էր որդի Ալփասլան սուլտանին և եղբայր Մելէք-շահ սուլտանին։ Եւ սորա վեց ամօք յառաջ եկեալ բազում զօրօք և էառ զԴաղաքն Դմիշկ, և եսպան զմեծ ամիրայն զԱխսիսն (166) զիշխանն Պարսից, որ տիրեալ էր Դմշկայ և ամենայն ծովեզերք աշխարհացն։ Այս Ախսիս Թուրք էր, և էր այր քաջ և պատերազմող. սա յաղթեաց Մսրայ, և ծեծեալ զԹագաւորն Եգիպտոսի զԱզիզն (167), և եհան զնա յայնմ գաւառէն, և սա էառ 'ի Մսրայ զսուրբ քաղաքն Երուսաղէմ, և ըզԴմիշկ և զամենայն ծովեզերեայ քաղաքանին։ Եւ սա զարհուրեցոյց զամենայն տունն Մսրայ, մինչեւ յարեաւ ընդդէմ նորա ծառայն Ազիզին՝ Թագաւորին Մսրայ, զորս բերին նմա զնա ծառայ 'ի Հայոց ազգէն. եւ նա անուանեաց զնա Ամիր-Ջօշ (168). Սորա

վառեալ գունդ զօրաց ընդդէմ Ալխասին 'ի Հայոց զօրականացն, և եկաց պատերազմաւ ընդդէմ նորա, և ապա եղեւ խաղաղութիւն տանն Արայ։

ՃԺԲ. Իսկ 'ի Թուականութեանս Հայոց յամի ՇԼԵ (1086–1087), յարուցեալ անօրէն Փիլառտոսն և գնաց յերկրպագութի Մելիք-շահին՝ տիեզերակալ սուլտանին վասն խնդրելոյ 'ի նմանէ զքաղցրութի և զխաղաղութիւն ամենայն հաւատացելոց Քրիստոսի. և Թողեալ 'ի քաղաք իւր փոխան զմեծ իշխան Հոռոմոց՝ որում անուն Պաւլակամանոս կոչէին, մարմնով ներքինի, որ էր այր քաջ և աստուածասէր. և տուեալ եղեւ Ուռհայ 'ի ձեռս նորա։ Եւ առեալ Փիլառտոսն բազում գանձս ոսկւոյ և արծաթոյ, և ազնիւ ձիս և ջորիս, և հանդերձս երեւելիս և պայծառս, և գնացեալ առ սուլտանն 'ի յաշխարհն Պարսից։ Եւ յայնժամ մի ոմն յիշխանացն Փիլառտոսին Պարսամ անուն նորա, արար իւր չար խորհրդակիցս զայլ իշխանսն քաղաքին, և նոքօք կատարեաց զգործն Կայենի և ըզՅուդայի զաստուածասպանին. և չար խորհրդակցօքն իւրովք եկեալ Պարսամայ 'ի յառաւօտ կիւրակէի 'ի յաւագ կլայն, և մտաւ առ Պաւլակամանոսն։ Եւ էր ժամ աղօթից

ՃԻԵ. Յայսմ ամի թագաւորն Արապկաց Կուրիճայ որդին, որ ասի Ռէբէվին—աօլ, այր բարի և քաջայր հաւատացելոց Քրիստոսի, որ ոչ ընդ գրով փակի գործ բարութե̃ նորա ՚ի վերայ խաչապաշտ ազգաց. և կամ քանի խրատս և չարչարանս, և կամ քանի սպանումըն անցուցանէր ընդ ազգն իւր վասն հաւատացելոց Քրիստոսի։ Սորա արարեալ ժողովս Արապ զօրաց իբրև տասն բիւրս, և գնաց էառ զՃալապ քաղաք. և արար կին զդուստրն տեառն քաղաքին (160). և արձակեցաւ պատերազմ ՚ի վերայ Անտիոքայ քաղաքին մեծաւ սրտմտութբ. և յայնժամ Սուլէման ամիրայն Անտիոքայ գայր ընդդէմ նորա բազում զօրօք ՚ի տեղին որ կոչի Պղահ, եւ յայնմ տեղւոջ արարին սաստիկ պատերազմ յերկոցունց կողմանցն։ Իսկ Արապիկ զօրքն սկսան նենգաւորել թագաւորին իւրեանց. և առ հասարակ ՚ի փախուստ դարձան. եւ յորժամ ՚երթային՝ սպանաւ թագաւորն Արապկաց ՚ի յիւր զօրացն. և այսպէս մեռանէր բարի թագաւորն Կուրիճայ որդի՝ Ռէբէփին—աօլ. և զկնի երից աւուրց գտանէին զնա սպանեալ, և ՚ի վերայ ճանապարհին թաղեցին զնա։ Եւ Սուլիման մեծաւ յաղթութեամբ դարձաւ յԱնտիոք. և յայսմ ժամա

ծնաւ իւր որդի. և կոչեաց զանուն որդւոյ իւրոյ Աղիճ–Նշան:

Յայսմ ամի ամիրայ ոմն Պուլատճի անուանեալ առեալ զՃահան գաւառ ի Փիլառտոսէն, և կաթողիկոսն տէր Թէոդորոս եղև ընդ իշխանութեամբ նորա. յայնժամ կոչեաց Փիլառտոսն զնա առ ինքն ի Մարաշ քաղաք, և նա ոչ կարաց գնալ. վասն զի Թուրքի էր իշխանութիւնն: Այլ եղև ոխացեալ Փիլառտոսն ընդ տէր Թէոդորոսի. և խորհեցաւ այլ կաթողիկոս դնել յաղագս անիրաւ և չար բարուց իւրոց. և յայնժամ մեծարեալ կոչեաց ընդ տէր Յովհաննէս արքեպիսկոպոսն սրբոյ Աստուածածնին պատկերին. և նա ոչ էառ յանձն, վասն զի էր ահարկու և փառաւոր և ընտիր առաքինի: Դարձեալ Փիլառտոսն կոչեաց զտէր Պօղոս զհայր սրբոյ Նշանին Վարագայ, և արար ժողով եպիսկոպոսաց և հարանց, և ետուն ձեռնադրութիւն կաթողիկոսութեան Պօղոսի ի Մարաշ քաղաքի, հրամանաւ և կամօք Փիլառտոսի և ոչ Աստուծոյ: Այլ այս ամենայն ոչ էին ընդունելի Աստուծոյ, և ոչ առ հաւատացելոցն Քրիստոսի. զոր տեսեալ Պօղոսի՝ զկնի սակաւ ինչ աւուրց ի բաց թողեալ զաթոռն, վասն զի էր այր սուրբ և առաքինի, և գնաց-

չեալ զի ընդ հակառակս էր և ոչ ուղղապէս։

ՃԻՁ. Յայսմ ժամանակիս էր աղմուկ և խռովութիւն մեծ 'ի վերայ աթոռոյն սուրբ Լուսաւորչին Գրիգորի. վասն զի յաւուրս այսոսիկ ոչ հրամանաւն Աստուծոյ և կամ արժանաւորութեամբ, կամ ընտրութեամբ էր կարգադրութիւն սրբոյ Աթոռոյն, այլ զօրութեամբ և կարողութեամբ և բարձրագահ իշխանութեամբ. և այս ոչ լինէր յայտնութեամբ Հոգւոյն սրբոյ, այլ լինէր 'ի ձեռն պատահմանց և յաջողութեանց և տրոց ոսկւոյ և արծաթոյ։ Եւ ահա յայսմ աւուրքս անմիաբանելով յետս դարձան դասք սրբոցն և առաքինեացն, և յառաջ մատեան դասք անկելոյն յերեւաց տեառն Աստուծոյ Յիսուսի Քրիստոսի՝ որդւոյն Աստուծոյ. Աստանօր սկիզբն եղեւ կատարելոյ տեառնն սրբոյն Սահակայ Պարթեւի, յորս ասաց՝ ջնջել ոսկեգիր կարգայն, և գծագրել սեւադեղ թանաքովն. վասն զի ահա 'ի ժամանակիս յայսմիկ 'ի չորս բաժանեցաւ աթոռ սրբոյն Գրիգորի. զի ահա տէր Վահրամ յԵգիպտոս, և տէր Թէոդորոս 'ի Հոնին, եւ տէր Բարսեղ 'ի թագաւորաբնակ քաղաքն Հայոց Անի, և տէր Պօղոս 'ի Մարաշ քաղաքն. եւ սոքա իւրաքանչիւր ոք առնէին

ձեռնադրութիւնս, և օծանելին եպիսկոպոսունս՝ եւ տայցին օրհնութիւնս սուրբ ձիթոյն, և ՚ի նոյանէ օրհնէին քահանայք, և լինէր պատարագս և մկրտութիւնս և պսակն կուսանաց։ Եւ էր այս ամենայն սուգ մեծ ՚ի վերայ եկեղեցւոյն Աստուծոյ. վասն զի փարախն ոչխարաց ընդ չորս հայրապետութիւնըս բաժանեցաւ, և գայլք եղեն պահապանք հօտին Քրիստոսի։ Եւ ահա այսմ ժամանակիս բանաւոր ոչխարքն զգեցան զբնութիւն շանց, և առին զկիրս գազանաց, և համարձակեցան հաջել յերես հովուացն և հայրապետացն. հարք ատեցին զծնունդս իւրեանց, որդիք հայհոյիչք և չարչարիչք ծընողաց իւրեանց։ Եւ արդ ահա այս ամենայն կարապետքն են Նեռին, և սկիզբն կատարածի աշխարհի, և առ ՚ի բառնալոյ հաւատոց և աստուածպաշտութեանց և ՚ի կատարելոյ գրելեայն ՚ի գիրս սուրբս, զոր ասաց սուրբն Ներսէս և նորին որդին սուրբն Սահակ, և զոր խօսեցաւ ՚ի մերում ժամանակիս սուրբ վարդապետն Հայոց Յովհաննէս՝ որ ասի Կոզեռն։ Սա (161) խօսեցաւ բազում բանս որպէս զմարգարէութիւնս ՚ի վերայ այսմ ժամանակիս և խափանելոյ աստուածպաշտութեանս յամենայն մտաց. և

Թուլմանայ[162] հաւատոց. և զայս ասաց 'ի նոյն գիրքս յառաջ ժամանակաց։ Արդ այս ամենայն խռովութեանցս եւ անդէս բարկութեանս ոչ կարաց մոռանել յաշխարհն Աղուանից, որ ասի՝ խորին աշխարհն Հայոց, որ է աթոռ սրբոյ առաքելոյն Թադէոսի։ Արդ այս ամենայն յայնմ աշխարհի ոչ եղեւ բաժանումն սրբոյ աթոռոյն, այլ միայն անշարժ հաստատութեամբ, հայրապետութեամբ և թագաւորութեամբ մինչեւ ցայսօր ժամանակի, որք նստէին առաքելական աթոռոյն 'ի քաղաքն Հայոց 'ի Պարտաւ, որ ասի Փայտակարան, սահմանակից համատարած ծովուն։ Նա եղեւ 'ի զօրանալն Պարսից փոխեցաւ աթոռ հայրապետութեանն 'ի Գանձակ. որք հանդիպեցան այսմ մատենագրութեանս մերում՝ կաթուղիկոսք Աղուանից՝ տէր Յովհաննէս և տէր Գէորգ, տէր Յովսէփ, տէր Մարկոս. տէր Ստեփաննոս. եւ թագաւորք Աղուանից՝ Գագիկ և Դաւիթ և Կորիկէ, որք նստէին այժմուս 'ի Լօռէ քաղաք Հայոց։ Նին և այլ թագաւորք Հայոց 'ի Դարբանդ աշխարհին, որ ասի[163] Կապանք, սահմանակից Աւզաց և Աղուանից. որք էին թագաւորք անպարտք և սրբակրօնք. որ յիշատակին 'ի սուրբ պատարագն ընդ այլ

աստուածասէր տուրք Թագաւորացն, որոց էին անուանք այսոքիկ, Վաչական, և Գուշակատակ (164), Նորին որդի. Փիլիպէ որդի Գուշակատակին. Սեւադա որդի Փիլիպէի. Սենեքերիմ որդի Սեւադայի. Գրիգոր որդի Սենեքերիմայ, որ դեռ ևս կենդանի էր մինչև գրեաք զայս մատենագրութիւնս մեր։ Յայսմ ժամանակիս եղեւ ազգիս Հայոց վեց կաթողիկոս, երկու յԵգիպտոս, և չորս յամենայն աշխարհին Հայոց, որպէս յառաջ ասացաք (165). Եւ նստաւ տէր Պօղոս կաթողիկոսն. ՚ի Մարաշ՝ հրամանաւ Փիլառտոսին և ոչ հրամանաւն Աստուծոյ.

Եւ արդ մեք դարձցուք ՚ի Թուականն որ Թողաք, զի զայս ասացաք վասն խառնակութեան որ եղև ՚ի վերայ աշխարհիս Հայաստանեայց։

ԾԻԷ. Իսկ յորժամ եղեւ Թուականութիւնս Հայոց ՇԼԴ. (1085—1086) գայր բազում զօրօք սուլտանն Դամասկոսի՝ որ ասի Դդուշ. և յարուցանէր պատերազմ ընդ ամիրային Անտիոքայ ընդ Սուլիմանն։ Արդ յայսմ ժամանակիս եղեւ պատերազմ սաստիկ յերկոցունց կողմանցն, և թախէին զմիմեանս զարմանալի պատերազմաւ ընդ մէջ Հալպայ և ընդ մէջ Անտիոքայ. և էր երկուերեաք պատերազմացն Թուրքք, և յայնժամ տե-

ղուոջ անխնայ զմկրտեանս սատակէին. և ՚ի բազմանալ պատերազմացն՝ յաղթեաց զօրք սուլտանին զօրացն Սուլիմանայ և արարին զնա փախստական, և սպանաւ ամիրայն Անտիոքայ Սուլիման ՚ի զօրաց սուլտանին Դդուշին, և թաղեցաւ Սուլիման մօտ ՚ի գերեզմանն Շէրէփն-տօլայ՝ Կուրիշայ որդւոյն։ Եւ յայսմ ամի առաւ Անտիոք և ամենայն աշխարհն նորա, և եղև Դդուշին։ Այս Դդուշս էր որդի Ալփասլան սուլտանին և եղբայր Մէլէք-շահ սուլտանին։ Եւ սորա վեց ամօք յառաջ եկեալ բազում զօրօք և էառ զքաղաքն Դմիշկ, և եսպան զմեծ ամիրայն զԱխսիսն (166) զիշխանն Պարսից, որ տիրեալ էր Դմշկայ և ամենայն ծովեզերք աշխարհացն։ Այս Ախսիս թուրք էր, և էր այր քաջ և պատերազմող. սա յաղթեաց Մսրայ, և ծեծեալ զԹագաւորն Եգիպտոսի զԱզիզն (167), և եհան զնա յայնմ պատուէն, և սա էառ ՚ի Մսրայ զսուրբ քաղաքն Երուսաղէմ, և զԴմիշկ և զամենայն ծովեզերեաց քաղաքանին։ Եւ սա զարհուրեցոյց զամենայն տունն Մսրայ, մինչև յարեաւ ընդդէմ նորա ծառայն Ազիզին՝ թագաւորին Մսրայ, զորս բերին նմա զնա ծառայ ՚ի Հայոց ազգէն. և ենա անուանեաց զնա Ամիր-Ճօշ (168). Սորա

վառեալ գունդ զօրաց ընդդէմ Ալխսիսին 'ի Հայոց զօրականացն, և եկաց պատերազմաւ ընդդէմ նորա, և ապա եղեւ խաղաղութի՛ւն տանն Ասորայ:

ՃԻԲ. Իսկ 'ի Թուականութեանս Հայոց յամի ՇԼԵ (1086—1087), յարուցեալ անօրէն Փիլառտոսն և գնաց յերկրպագութի Մելիք-շահին՝ տիեզերակալ սուլտանին վասն խնդրելոյ 'ի նմանէ զքաղցրութի և զխաղաղութիւն ամենայն հաւատացելոց Քրիստոսի. և թողեալ 'ի քաղաք իւր փոխան զմեծ իշխան Հոռոմոց՝ որում անուն Պառակամանոս կոչէին, մարմնով ներքինի, որ էր այր բարի և աստուածասէր. և տուեալ եղեւ Ուռհայ 'ի ձեռս նորա: Եւ առեալ Փիլառտոսն բազում գանձս ոսկւոյ և արծաթոյ, և ազնիւ ձիս և ջորիս, և հանդերձս երեւելիս և պայծառս, և գնացեալ առ սուլտանն 'ի յաշխարհն Պարսից: Եւ յայնժամ մի ոմն յիշխանացն Փիլառտոսին Պարսամա անուն նորա, արար իւր չար խորհրդակիցս զայլ իշխանսն քաղաքին, և նոքօք կատարեաց զգործն Կայենի և ըզՅուդայի զաստուածապանին. և չար խորհրդակցօքն իւրովք եկեալ Պարսամայ 'ի յաւուր կիւրակէի 'ի յաւագ կէսոյն, և մտաւ առ Պառակամանոսն: Եւ էր ժամ աղօթից

խուրոց, և կայր յաղօթս յեկեղեցին մեծ վկա-
յարանին սուրբ Թորոսի. և յայնժամ Նոքա
տըպէս գազանք յարձակեցան ՚ի վերայ Նորա
և սպանին զՊառակսմանոսն մինչ կայր յա-
ղօթսն ՚ի մէջ եկեղեցւոյն, զայր բարի և ո-
ղորմած սպանին չարաչար. և դրին քաղա-
քացիքն յաթոռ տուկութեանն Ուռհայոյ
սպանող Նորա զՊարսամա: Եւ լուեալ զայս
ամենայն սուլտանին Մելէք-շահն ՚ի Պարսիկ-
կըս, և զՓիլառտոսն ընկէց յերեսաց և ՚ի փա-
ռաց խուրոց: Եւ յայնժամ Փիլառտոսն յամե-
Նայն դիմաց յուսահատեալ եղեւ, և ՚ի Նոյն
ժամայն յարուցեալ ՚ի պատերազմ ՚ի վերայ
քրիստոնական հաւատոց խուրոց, և եղեւ
ուրացող հաւատոցն Քրիստոսի զոր ունէր
աղտեղութեամբ, և կարծէր այնիւ փառա-
ւորիլ ՚ի Պարսից, զոր ոչ փառաւորեցաւ.
զաւր(169), այն ինչ եղեւ Նորա օգուտ՝ որ ըզ-
Քրիստոս ուրացաւ, և եղեւ Նախատինք և
պատէլի Աստուծոյ և մարդկան:

ԾԻԹ. Յայսմ ամի շարժեցաւ ահագին բազ-
մութեամբ տիեզերակալ Մէլէք-շահ սուլ-
տանն Պարսից՝ ասքանազանց ազգաւ և ան-
թիւ զօրականօք խաղացոյց գայր, և շըջեալ եկ-
մուտ յարեւմուտս ՚ի յաշխարհն Հոռոմոց
աւ ՚ի տիրանալ այնմ աշխարհին, և քաղըրա-

թեանք. և հեզութեամբ և ողորմութեամբ լցեալ էր սիրտ նորա 'ի վերայ քրիստոնէից ազգաց, և հայրախնամ գութ ցուցանէր ամենայն աշխարհի, և առանց պատերազմաց տիրեալ լինէր բազում քաղաքաց և գաւառաց։ Նա յայսմ ամի տիրեաց սուլտանն ամենայն աշխարհին Հայոց և Հոռոմոց, եւ գայր հասանէր 'ի մեծ քաղաքն Անտիոք, տիրանայր այն աշխարհին և Հալպայ, և տիրելով տիրեաց 'ի Հայաստանէն (170) մինչեւ 'ի յՈվկիանոս. և հաւանեցոյց առ հասարակ զամենայն թագաւորութիւնս իւրոյ աթոռոյն՝ որք յայսկոյս Ովկիանոսի, և ոչ մնաց աշխարհ՝ որ ոչ հնազանդեցաւ նորա թագաւորութեանն. և եղեն հարկատուք եւ հնազանդեցան նմա երկոտասան ազգք թագաւորաց։ Նա եղեւ յետ տիրանալոյ Անտիոքայ, իջեալ յեզր Ովկիանոս ծովուն՝ 'ի տեղի որ կոչի Սեւոտի (171), և տեսեալ սուլտանին զծովն մեծ՝ գոհանայր և օրհնէր զԱստուած որ մեծացոյց զթագաւորութիւնն առաւել քան զհօր իւրոյ Աբաղանիայ։ Նա ձիով իւրով մտեալ կոխէր զՈվկիանոս. և եհան ընդ թուրն իւր, և երեք հաղ մխեաց 'ի յՈվկիանոսն զթուրն իւր և ասաց, եթէ «Ահա տիրել ինձ երետ Աստուած 'ի ծովէն Պար-

սից մինչեւ 'ի ծովս այս ”. Եւ հանեալ զհան-դերձս տարածեաց 'ի վերայ գետնոյն, եւ եկաց յաղօթս առ տէր Աստուած, եւ օրհնեաց զբարերար ողորմութիւնն Աստուծոյ. եւ հրամայեաց ծառայիցն իւր աւազս բառնալ 'ի ծովէն, եւ տարաւ զայն 'ի Պարսիկս, եւ եարկ 'ի վերայ գերեզմանի հօրն իւրոյ Աբասլանայ՝ եւ ասէր. « Հայր իմ Աբասլան. ահա աւետիք քեզ, փասն զի տղայ որդին քո զոր թողեր, տիրելով տիրեաց մինչեւ 'ի ծագս աշխարհի ”: Եւ դնէր սուլտանն յԱնտիոք զամիրայն որ ասի Աղսիան, այր չար եւ շուն եւ խռովարար եւ գազանաց միտ դընէր, եւ 'ի Հալապ քաղաք զԱղ–Սընգուր (172), որ էր այր բարի եւ խաղաղարար եւ քաղցր 'ի վերայ ամենայն ուրուք եւ շինող աշխարհի։

ՇԼ. Յայսմ ամի ամիրայ մի՛ն Պուզան անուն, հրամանաւ Մելիք–շահ տիեզերակալ սուլտանին գայր բազում զօրօք 'ի վերայ քաղաքին Ուռհայոյ, եւ իջեալ բանակ հարկանէր 'ի դուռն քաղաքին, եւ զամիս երիս պատերազմեալ 'ի վերայ քաղաքին։ Եւ եղեւ յաւուր միում գայր եւ ինքն սուլտանն սակաւ զօրօք եւ անցանէր շուրջ զքաղաքաւն, եւ գնաց անվնաս, փասն զի իջեալ էր անթիւ զօրօք 'ի դաշտին Խառնայ, եւ անդուստ գը-

նաց խաղաղութեամբ 'ի Պարսիկս ։

Իսկ Պուզան կայր մեծաւ պատերազմաւ 'ի վերայ Ուռհայ քաղաքին, և ուժով նեղէր զքաղաքն զբազում աւուրս . և 'ի վերայ այնքան բարկութեանն ոչ գոյր օգնական որ փրկէր զնա . անճարեալ լինէին յամենայն կողմանց։ Եւ յայնժամ քաղաքն ամենայն արարին խուխայ 'ի վերայ տաճկին իւրեանց Պարսամայ . և շարժեալ ամենայն բազմութիւն քաղաքին 'ի վերայ նորա , և նա առ վտանգին անճարեալ դէմս արար 'ի Պուզանն , և ընկէց զինքն 'ի պարսպէն 'ի վայր , և բեկաւ ոտն նորա , և եկեալ տարան զնա առ Պուզանն , և նա զկնի աւուրց ինչ մեռանէր ։ Եւ եկեալ իշխանքն քաղաքացեաց առ Պուզանն , և ետուն զՈւռհայ 'ի ձեռս նորա . և էր օրն առաջին որ նաւասարդի , և թուականն Հայոց փոխեցաւ 'ի ՇԼԶ (1087–1088), և եղև խաղաղութիւն մեծ 'ի յՈւռհայու և ամենայն սահմանաց նորա , և լցաւ ամենայն քաղաքն Ուռհայ ուրախութեամբ . և եդիր Պուզանն 'ի վերայ տեսուչ և պահապան քաղաքին Ուռհայոյ զոլար ոմն՝ որ ասէին Խուլուխ ։ Եւ յայնժամ մատեան արք չարախօսեցին զՀայոց իշխանսն որ կային 'ի քաղաքն, և չարաչար մատնութեամբ մատնեցին զնո-

սա Նաքար անուանն և այլք ոմանք. և եստուն-արով կորուսանել զիշխանսն Հայոց՝ այլք փառաւորք երկոտասան՝ մեծք և երեւելիք։ Բայց Գուրգէնն ապաշաւէր զմահն նորա, վասն զի երդուեալ էր յառաջագոյն, սակայն յաղագս չարաչար մատնութեանս կորուս զնոսա. և ինքն Գուրգէնն գնաց զօրօքն իւրովք 'ի Պարսից աշխարհն։

ՃԼԱ. Յայսմ ամի գնաց սուլտանն բազմութեամբ զօրօք և բանակեցաւ 'ի վերայ քաղաքին՝ որ կոչի Գանձակ. 'ի յաշխարհին Հայոց. և արար սաստիկ պատերազմ 'ի վերայ Գանձակայ քաղաքին. և ժողովեաց զամենայն Պարսիկ 'ի վերայ նորա, և սաստիկ պատերազմաւ փորեալ ընկեցին բուրգն մի, և այնպիսի պատերազմաւ առին զքաղաքն Գանձակ, և արարին կոտորած զփոքր մասն քաղաքին. և հրամայեաց Գուրգէնն և վերացոյց զօրն և արար խաղաղութիւն։ Իսկ տէր Ստեփաննոս կաթուղիկոսն Աղուանից էր յայնժամ 'ի քաղաքն, և զերծաւ խաղաղութեամբ օգնականութեամբն Աստուծոյ, վասն զի պահեալ եղեւ 'ի Հայոց զօրացն որք էին զհետ Գուրգէնին։

ՃԼԲ. Արդ 'ի յամս թագաւորութեանն Աշոտի Յունաց արքային եղեւ խռովու-

*Թիւն յաշխարհն արեւմտից յայնկոյս մեծ գետոյն՝ որ ասի Պառաստանեայխս. (173) Եղեւ պատերազմ սաստիկ յազգէն Պածինկաց ընդ Թագաւորին Հոռոմոց Աղեքսին. Եւ յայնժամ՝ Թագաւորն Պածինկաց յաղթեաց զօրացն Հոռոմոց. և սաստիկ կոտորածով վարէր զզօրսն Հոռոմոց, և անխնայ կոտորէին զնոսա։ Իսկ Թագաւորն Աղէքս սակաւ արամբք անկանէր 'ի Կոստանդինուպօլիս. եւ զկնի սակաւ աւուրց բանայր զգանձատունն իւր, և հանեալ հրավարտակս ընդ ամենայն երկիր Թագաւորութեան իւրոյ. և արար ժողով մեծ և անհամարս առաւել քան զառաջինն. և Թագաւորն Պածինկաց գայր ամենայն զօրօք իւրովք և աղխաւ իւրով 'ի վերայ Կոստանդինուպօլսի. վասն զի առցէ իւր զԹագաւորութիւնն Յունաց. և գայր ընդդէմ նմա վառեալ զօրաց վեց Հարիւր հազարաց և միահամուռն ազգաւ և որդւովք։ Եւ լուեալ զայս Աղէքսան, կացին յաղօթս առ Աստուած զաւուրս ութ ամենայն դասիւք հաւատացելովք, և էր 'ի Թուականութեանս Հայոց* ՇԼԸ (1089—1090). *և յաւուրս այսոսիկ յարձակեցաւ Թագաւորըն Աղէքսան զօրօք բազմօք 'ի վերայ զօրացըն Պածինկաց. երեք Հարիւր հազարօք*

Հոռոմոց և Հոռոմայեցւոց, Հայոց եւ Պուլղարաց զօրօքն. և հանդիպեալ երկուց թագաւորութեանցն միմեանց, և յայնմ աւուր արարին ահաւոր և սաստիկ պատերազմ ընդ միմեանս։ Իսկ Պածինակքն առհասարակ աղեղնաւոր էին, և 'ի վերայ սայլից պատերազմէին ահագին և զարմանալի կորովութեամբ. յայնժամ ձայն տուեալ թագաւորն Աղէքսան, և կրակով վառեցին ըզսայլսն և արարին հրաքորբուք զնոսա. և այսու հնարաւորութեամբ յաղթեաց թագաւորն Աղէքսան զօրացն Պածինկաց, և արարին զամենայն զօրսն փախստական և սրով և սաստիկ կոտորածով. և եսպան զթագաւորն Պածինկաց, և ջնջեաց զամենայն զօրսն նոցա, և զորդիս նոցա և զկանայս նոցա կոտորեաց սրով, և բազում աւարաւ և գերութեամբ դարձաւ 'ի Կոստանդինուպօլիս։

ՃԼԳ. Յայսմ ժամանակիս երեւեցաւ անձն չար և պիղծ հերետիկոս 'ի Կոստանդինուպօլիս. աբեղայ մի 'ի Հոռոմոց ազգէ, որ զսատանայ իւր աստուած պաշտէր, և սեւ շուն շրջեցուցանէր զհետ իւր, և նորա մատուցանէր զաղօթս. և այսպիսի պիղծ աղանդով ապականեալ էր զբազում արս և զկանայս, և աստուածապաշտ քաղաքէն 'ի

Կոստանդինուպօլսէ ապականեալ ՚ի հաւատացելոցն իբրեւ զփոքր մասն քաղաքին, և գլխաւորին իսկ զմայր Թագաւորին Եղեքսին։ Եւ այնչափ յանդգնեալ մայրն Թագաւորին, որ չար մոլորութեամբ իւրով առեալ մասն ՚ի սրբոյ Նշանէն Քրիստոսի՝ և դնէ զայն ՚ի կօշիկ Թագաւորին ծածկաբար ՚ի ներքոյ գարշապարացն, զի լիցին այն կոխան Թագաւորին. զոր յայտնեալ Աստուած զպիղծ աղանդաւորն ՚ի յիւրոց հաւատակցացն, և աքսորեալ զայն Թագաւորին։ Զորս իմացեալ աստուածասէր Թագաւորն Եղեքսն, և զաղանդագլուխն հրով այրեաց, և զայլ բազումս արար խեղդամահ ՚ի ծովն Եվկինոս իբրեւ բիւր մի, և զիւր մայրն ընկէց ՚ի պատուոյն և եհան յերեսաց, և եղեւ խաղաղութիւն։

ՃԼԴ. Դարձեալ ՚ի Թուականութեանս Հայոց ՚ի յամս ՇԼԹ (1090—1091), յարուցեալ հայրապետն Հայոց տէր Բարսեղ և գնացեալ առ տիեզերակալ սուլտանն Մելէք—շահն, զի տեսանէր որ նեղէին զհաւատացեալսն Քրիստոսի ՚ի տեղիս տեղիս, եւ հարկս պահանջէին յեկեղեցեացն Աստուծոյ և յամենայն ժառանգաւորաց նորա, և զվանորայսն և զեպիսկոպոսունսն հարկիւ

չարչարէին. և յայնժամ կաթուղիկոսն տէր Բարսեղ տեսեալ զայս ամենայն նեղութիւնս, և խորհեցաւ գնալ առ բարի և քաղցր թագաւորին Պարսից և ամենայն հաւատացելոց Քրիստոսի, առ 'ի ծանուցանել նմա զայս ամենայն. և առեալ ընդ իւր նուէրս սուլտանին իբրեւ բիւրս ոսկւոյ և արծաթոյ եւ դիպակաց, և հանդերձ ազատօք և եպիսկոպոսօք և քահանայիւք՝ առեալ վարդապետս զհետ իւր, և գնաց 'ի Պարսիկս առ աստուածատէր սուլտանն: Եւ տեսեալ սուլտանին զտէր Բարսեղ՝ յոյժ մեծարեաց զնա, և կատարեաց զամենայն խնդրուածս նորա. եւ արարեալ զամենայն կամս տէր Բարսղի, և ազատեաց զամենայն եկեղեցիս և զվանորայս և զքահանայս. եւ առեալ գիր ազատութեան, և հրովարտակօք եւ մեծարանօք արձակեաց զհայրապետն Հայոց: Եւ ահա եկեալ գայր աշխարհն հրամանօք տէր Բարսեղ մեծաւ ուրախութեամբ, և այլք փառաւորք 'ի սուլտանէն զհետ իւր. և եկեալ հասանէր 'ի Ջահան գաւառին, յարեաւ 'ի վերայ տեառն Թէոդորոսի, որ հրամանաւ Փիլառտոսին նըստեալ էր կաթուղիկոս 'ի Հռոմին. և տէր Բարսեղ ընկեցոյց յաթոռոյն զտէր Թէոդո-

րաս, և առեալ 'ի նմանէ զքօղն և զգաւազանն, և զսուրբ Նշանն տեառն Պետրոսի. եւ արար միահեծան զհայրապետութիւնն իւր, և անտի եկն 'ի քաղաքն Ուռհայ: Նուարդ այս ոչ է մեղադրելի գնալ հայրապետի առ այլազգ Թագաւորի, և առնել խաղաղութիւն սրբոյ եկեղեցւոյ. զի յաղագս խաղաղութեան սրբոյ եկեղեցւոյ գնաց սուրբն Բարսեղ առ անօրէն Յուլիանոս Թագաւորն, և սուրբն Ներսէս առ ուրացողն Վաղէս Թագաւորն Յունաց. և սուրբն Սարութա առ Յազկերտ Պարսից արքայն, և վարդապետն Նան առ Թագաւորն Քաղդէացւոց, և Քրիստոս եկեալ առ Հրէական ազգն: Իսկ յորժամ եկն տէր Բարսեղ յՈւռհայ, փոխեալ էր Թուականութիւնն Հայոց ՇԽ (1091—1092), և գնացեալ տէր Բարսեղ հասանէր մինչև 'ի մեծն Կեսարիա Գամրաց, և դառնայր յԱնտիոք, և լինէր ուրախութիւն մեծ ամենայն աշխարհի՝ որք տեսանէին զնա. և դարձեալ գայր յՈւռհայ:

ՃԼԵ. Յայսմ ամի շարժեալ եղեւ ընդ ամենայն երկիր յամսեանն սեպտեմբերի, և սաստկապէս երերալով դողայր ամենայն արարածք հանդերձ ամենայն արարածօքս որ 'ի ներքոյ երկնից. և լինէր կործանումն մեծ

'ի քաղաքին Անտիոքայ, և բազում աշտարակք հիմն 'ի վեր տապալեցան, և անկաւ մեծ մասն պարսպին Անտիոքայ, և բազում արք և կանայք մեռան 'ի ներքոյ բնակութեան իւրեանց։

ՃԼԶ. Դարձեալ 'ի թուականութեանս Հայոց ՇԽԱ (1092—1093), անկաւ մահ սաստիկ ընդ ամենայն տարածս, որ և 'ի բազմութենէ մեռելոցն ոչ կարէին ժամանել քահանայք թաղել զմեռեալսն. և առ հասարակ յամենայն տունս ձայն լալոյ և ողբումն արտասուաց ելանէր. և այնչափ սաստկացաւ մահն, որ բազումք 'ի յահէ մահուան երերալով դողային առաւել քան զմեռեալսն, և անթիւ կոտորածս եղեւ աշխարհի անձանցն։

ՃԼԷ. Յայսմ ամի Վարագայ սուրբ Նշանին և պատկեր սրբոյ Աստուածածնին բերաւ 'ի քաղաքն Ուռհայ, և եղեւ ուրախութիւն մեծ տանն Աբգարու. և դղրդեալ ամենայն քաղաքն միահամուռ և ելեալք մեծաւ ուրախութեամբ ընդ առաջ նորա, և ածին զնա 'ի քաղաքն մեծաւ հանդիսիւ։ Յայնժամ իշխան աշխարհին Ուռհայոյ արար պատեհութիւն՝ որք եկին զհետ սրբոյ եպիսկոպոսին տէր Պօղոսին և այլոց հարանցն. և-

եդեալ զսուրբ Նշանն յեկեղեցին հանդերձ փառաւորանութեամբ. և զկնի ամաց ինչ յափշտակեաց և խլեաց ՚ի Նոյանէ զսուրբսն անիրաւաբար:

ճԼԸ. Յայսմ ամի զօրաժողով արար Պուզանն զամենայն զօրսն Պարսից, եւ առեալ զհետ իւր զմեծ ամիրայքն և զաէրն Սմախոքայն զՃալպայ զՆշխանն և զՆշ-Արնգայրն, և անթիւ զօրականօք խաղայր գնայր յաշխարհն Հոռոմոց. և իջեալ ՚ի վերայ հռչակաւոր քաղաքին որ կոչի Նիկիա, և որնոտի խորհրդօք խելագարեալ խորհէր անցանել առնուլ զքաղաքն Կոստանդինուպօլիս, զայն որ վերին պահպանութեամբն ամրացեալ կայ, և մոլորական բնութեամբ միտ եդեալ առնուլ զանըմբռնելի քաղաքն. և կացեալ անդ զաւուրս ինչ, և ոչ կարէր կարողութիւն առնել ինչ:

ճԼԹ. Ի սոյն յայսմ ամի մեռանէր մեծն և աշխարհակալ սուլտանն Մելէք-շահն, որ էր հայր և ծնող ամենայն տիեզերաց, այր բարի և ողորմած և քաղցր ՚ի վերայ ամենայն աշխարհի: Սա մեռանէր ՚ի Պաղտատ քաղաքի դաւով նենգութեամբ ՚ի կնոջէ իւրմէ՝ որ էր դուստր սուլտանին Սըմըխնդոյ, սա (174) դեղ մահու արբուցանէր բարի անձին

նըն և լուծանէր զամենամեծ թագաւորն 'ի կենաց. և եղև սուգ մեծ և սաստիկ 'ի վերայ ամենայն տիեզերաց։ Եւ լուեալ Պուզանն զմահ սուլտանին՝ դարձաւ 'ի քաղաքն Ուռհայ, և Աղրիանն գնաց յԱնտիոք, և Աղ-Սընգուրն գնաց 'ի Հալապ քաղաք։ Եւ ամէր Նարսեղ որ էր 'ի քաղաքն Ուռհայ, իբրև փախստական անկանէր 'ի քաղաքն Անի, և նստաւ 'ի յաթոռ իւր։

Եւ յայսմ աւուրքս եղև սաստիկ կոտորած և արիւնհեղութիւն 'ի տանն Հայոց, քանզի յարձակումն արարին զօրքն Թուրքաց և բազմաց խաւար ածին. մեռաւ սուլտանն, և ազգն Թուրքը զքաղուածս գերեցին, և տարան զսուլտանն թաղեցին 'ի Սպահան քաղաքի, մօտ 'ի գերեզման հօրն իւրոյ Աբասլանայ. և մնաց իւր երկու որդի, աւագ որդին կոչեցաւ Պարկիարուխ, որ էր ծնեալ 'ի դստերէն Արկուին մեծ ամիրային՝ որ էր ազգական Աբասլանայ։ Իսկ միւս որդին (175) կոչէին Մափար, որ էր 'ի դստերէն Սլմիխնդդի սուլտանին, որ նստէր յԱւգկան քաղաքի և 'ի Խուզնէ։ Եւ դնեն զաւագ որդին զՊարկիարուխն յաթոռ հօր իւրոյ Մելէք-շահին, և կացուցանէին զնա սուլտան ամենայն Պարսից, և զամիր Իսմայէլն զորդին Արկուին (176) զքեռին

իւր դնէին իւր երեսաց փոխան 'ի վերայ ամենայն աշխարհին Պարսից, զի էր այր բարի և յոյժ ողորմած և շինող աշխարհի։ Նա իւմայէր տիրել էր իբրև զԹագաւոր 'ի վերայ ամենայն աշխարհին Հայոց, և սա արար սկիզբըն շինման ամ աշխարհին Հայոց. և զամենայն վանօրայսն ազատ պահէ 'ի չարեացն Պարսից։

ՃԽ. Դարձեալ 'ի Թուականութեանն Հայոց ՇԽԲ (1093—1094) մեռաւ տէր Գրգոր, այն որ Փիլաւտոսն նստոյց յաթոռ կաթուղիկոսութեան Հայոց 'ի Մարաշ քաղաքի։ Սա եկեալ զկնի որդւոյ Նշանին Թրխատուրի, և մեռանէր յայսմ ամի յՈւռհայ քաղաքի, եւ Թաղեցաւ մեծաւ հանդիսիւ 'ի դուռն եկեղեցւոյն սրբոյ՝ մերձ 'ի գերեզման վարդապետին։

ՃԽԱ. Դարձեալ յայսմ ամի մեռանէր վարդապետն Հայոց Գէորգ՝ որ կոչեցաւ Մեռաճեցի, որ էր լուսաւորիչ տանն Հայոց և աղբիւր մշտնջենաւոր ուղխ վտակաց և լեզու հրեղէն հոգւոյն Ներսիսեայ։ Սա ուսմամբ աստուածայինն վարդապետութեամբն զարդարեաց զարեւելից աշխարհն, զի լցեալ էր աստուածային շնորհօք, և էր հաւասարեալ գիտութեամբն իւրով առաջին աստուածախօս սուրբ վարդապետացն, ամեն

Գրիգորի Աստուածաբանի և Յովհաննու Ոս-
կեբերանի, Բարսղի և այլոց նմանեաց սոցա:
Սա սքանչելի վարուք կատարեաց զընթացս
իւր, և էր ամաց հարիւրից, և թաղեցաւ 'ի
մեծ յանապատն 'ի Կարմիրջաձոր, մօտ 'ի գե-
րեզմանն Սամուէլի վարդապետին և Խաչկայ՝
որ էր երաժիշտ 'ի վերայ ձայնաւոր եղանա-
կաց. և եղեւ սուգ ամենայն երկիւղածաց
Աստուծոյ, զի զրկեալ եղեն յայնպիսի լու-
սաւոր վարդապետէն:

ՃԽԲ. Յայսմ ամի զօրաժողով արար սուլ-
տանն Դմշկայ՝ որ ասի Դգուշ՝ որդի Ա-
պասլանայ և եղբայր Մելէք-շահին. և սա
բազում զօրօք կամեցաւ ելանել յաշխարհն
Պարսից 'ի յառնուլ զաթոռ թագաւորու-
թեանն եղբօր իւրոյ Մելէք-շահին. և ե-
կեալ յԱնտիոք քաղաք; և ելեալ ամիրայն
յերկրպագութիւն սուլտանին, և անտի գայր
անցանէր 'ի Հալապ, և ամիրայն Աղ-Սընգուր
ելանէր յերկրպագութիւն նմա, և անթիւ
զօրօք խաղայր և երթայր յաշխարհն Պարսից:

ՃԽԳ. Յայսմ ամի եղեւ ժողով ահագին
բազմութեամբ տանն Արապկաց անթիւ զօ-
րաց իբրեւ չորս հարիւր հազարաց, և ամե-
նայն Արաբելոն գային 'ի Մօսլ (Մուսուլ) գա-
ւառն. և էր թագաւորն զօրաց Արապկաց Ար-

բէհիմէ՝ (177) որդին Կուրիշայ և եղբայրն Հէ-
բէփն-տօլայ։ Յայնժամ՝ սուլտանն Դդուշ
հասանէր 'ի քաղաքն որ կոչի Նսեպին, և ա-
րար աւար զամենայն քաղաքն։ Իսկ զօրքն
Հայոց որ էին ընդ սուլտանին, արարին
կոտորածս զՏաճիկն իբրև բիւր մի։ Եւ
բանակն Արապկաց դարձ խաղայր հասանէր
'ի սահմանն Մծբնայ, և իջեալ 'ի տեղին որ
կոչի Հերմէզ, և յայնժամ առաքեաց սուլ-
տանն յՈւռհայ և մեծաւ երդմամբ բերեալ
առ ինքն զամիրայն զՊուզանն բազում զօրօք,
և յարուցեալ գնաց 'ի պատերազմ՝ 'ի վերայ
Թագաւորին Տաճկաց։ Եւ հանդիպեալ մի-
մեանց երկուց Թագաւորացն 'ի դաշտին
Մծբնայ, արարին բազում կոտորածս. եւ
սաստիկ պատերազմաւ դարձոյց սուլտանն
զզօրսն Արապկաց. և արար փախստականս,
և սրով յարձակեցաւ զհետ նոցա, և կալաւ
զԻբրէհիմն զԹագաւորն Արապկաց, եւ
նետով հարեալ էին զնա 'ի գլուխն, պատա-
ռեալ էին զպողովատ սաղաւարտն նորա, և
անցեալ էր 'նեափն զԹափ, որ և մեռաւ իսկ.
և արարին աւար զկանայս և զորդիս նոցա
և զհօտսն և զամենայն բազմութիւն երի-
վարաց նոցա։ Եւ մեծաւ յաղթութեամբ
գնայր խաղալով սուլտանն Դդուշն յաշխար-

հըն Պարսից. և Թանձրացաւ բազմութիւն բանակի նոցա, և ելից զդաշտս և զբլուրս արեւելից: Իբրեւ լուեալ զայս ամենայն սուլտանն Պարսկաց Պարկիարուխն եղբօրորդին Դդուշին, յարուցեալ բազում զօրօք գայր 'ի պատերազմ ընդդէմ հօրեղբօր իւրոյ անթիւ բազմութեամբ: Իբրեւ լուեալ Դդուշն զգալն Պարկիարուխին՝ պատրաստեցաւ գնալ ընդդէմ նորա. յայնժամ Պուզանն և Աղ—Սնգուրն իւրեանց զօրօքն 'ի գիշերի ապստամբեցին 'ի Դդուշէն, և գնացին առ Պարկիարուխն: Իբրեւ լուեալ Դդուշն զնենգաւորութիւն նոցա, ոչ համարձակեցաւ ելանել 'ի պատերազմ, այլ դարձաւ և գնաց յաշխարհն իւր, և մտաւ 'ի քաղաքն իւր Դմիշկ. և գնաց 'ի Տրապօլիս. և հաւանեցոյց զնա և զամենայն քաղաքն ծովեզերեայ, և կացեալ յայնմ աշխարհին զամիսս վեց:

ՃԽԴ. Իսկ 'ի թուականութեանն Հայոց ՇԽԳ (1094—1095). յաջողեալ լինէր թագաւորութիւն Պարկիարուխին. և կացուցանէր 'ի վերայ զօրացն Պարսից սպարապետ զմեծագահ և զփառաւոր ամիրայն զԻսմայէլ զորդի Արկուլին՝ զեղբայր մօր իւրոյ, վասն զի սա տիրեալ էր ամենայն աշխարհին Հայոց:

Զի էր սա յամենայն կողմանց քաղցր և ողորմած և շինող ամենայն աշխարհին Հայոց . զարդարիչ վանորայց և մխիթարիչ կրօնաւորաց , և ազատ պահէր զհաւատացեալսն յամենայն չարեացն Պարսից . և ամենայն ոք սիրեալ էր հայրենեաց իւրոց յաւուրս նորա , և 'ի ժամանակս սորա կայր ուրախութեամբ լցեալ ամենայն Հայք : Արդ զա կացուցանէր Պարկխարուխն տէր գրուց աշխարհին , և ինքն նստէր յաթոռ թագաւորութեանն իւրոյ խաղաղութեամբ : Այս ահա գայր մեծ ամիրայն Իսմայէլի , և բազում զօրօք շրջէր ընդ ամենայն աշխարհն Պարսից . և եղեւ Պուզանն և Աշ—Մրնգայրն զհետ նորա , և եկեալ 'ի տեղին որ կոչի Ջաղջաձոր 'ի յաշխարհն Պարսից՝, Պուզանն և Աշ-Մրնգայրն սկսան գործել նենգութիւն մեծ ամիրային Իսմայէլին : Այս յաւուր միում ելեալ 'ի բանակէն երեք արամբք , և տարեալ զնա 'ի զատ զօրացն վասն զբուցա պատճառանաց և յարձակեցան 'ի վերայ Իսմայէլին , և ընկեցին զնա 'ի ձիոյն , և ձգեալ լար 'ի պարանոցն նորա և խեղդեցին զբարի թագաւորն , և ինքեանք փախստական լինէին 'ի սուլտանէն 'ի Պարկխարուխէն և գնացին իւրաքանչիւր 'ի քաղաք , Պուզանն 'ի Մու-

հայ և Աղ-Սընղուրն 'ի Հալապ ։ Իսկ լու-
ւեալ սուլտանն զմեծին Իսմայէլի զմահն՝ և
աստուածպէս ապաշաւէր ։

ՇԽԵ. Դարձեալ յայսմ ամի գայր խա-
ղայր բազում զօրօք սուլտանն Դդուշ, և
անթիւ բազմութեամբ գայր 'ի վերայ Հալ-
պայ. և Աղ-Սընղուրն և Պուզանն արարին
ժողովս, և գնացին ընդդէմ սուլտանին 'ի
պատերազմ, և 'ի հանդիպել միմեանց եղե-
ւ սաստիկ պատերազմ, և յաղթեաց սուլտանն
զօրացն Աղ-Սընղուրին և Պուզանին, և ա-
րար զնոսա փախստականս ։ Իսկ յայնմ աւուր
սպանաւ Աղ-Սընղուրն և Պուզանն, և ա-
ռաւ Հալապ, եւ զգլուխն մեծ ամիրային
Պուզանին 'ի ձող ցցեալ բերէին 'ի Ուռ-
հայ. (178) և կացուցանէր քաղաքապետ զիշ-
խանն Հոռոմոց զԹորոս որ ասէին Հեթմայ
որդի ։ Իսկ ինքն սուլտանն գնաց 'ի Պարսիկս
առ 'ի պատերազմել ընդ Պարկիարուխին ։ Իսկ
զօրապետ զօրացն Դդուշին, որ ասի Աղու-
սիան՝ տէրն Անտիոքայ, բազում զօրօք իջա-
'ի վերայ անուանի բերդին որ կոչի Օօրի-
նակ, 'ի յաշխարհին Հայոց, և մեծաւ պա-
տերազմաւ էառ զնա, և արար անթիւ կո-
տորածս քրիստոնէից ։ Իսկ յայսմ ժամու հա-
սանէր Թուղթ առ սուլտանն 'ի կնոջէ եղ-

բօր իւրոյ, զի գնասցէ շուտով, զի արասցէ զնա իւր այր. և 'ի լսել զայս սուլտանին՝ հասանէր 'ի Պարսիկս եւ իջեալ 'ի դաշտն Սպահանայ, և Պարկխարուխն աղաչանս առաքէր առ Դդուշն. « Տուր ինձ միայն ըզքաղաքն Սպահան, եւ ամենայն արարածք քեզ եղիցի »: Եւ նա ոչ լսէր աղաչանաց նորա. յայնժամ յարձակեցան երկոքեանն ընդ միմեանս 'ի պատերազմ անթիւ և անհամար բազմութեամբ յերկոցունց կողմանցըն. և եղեւ յորժամ հանին յերեւան ըզնշանակն Մելէք—շահին և տեսին (զայն) զօրքն Պարսից, յայնժամ մեծ մասն զօրացն անցանէին 'ի Պարկխարուխին դէհն, և եղեւ սաստիկ կատարած: Իսկ անօրէն Սղուսիանն բազում զօրօք 'ի քմին կայր, և առանց պատերազմի փախեաւ. և տեսեալ զայս ամենայն զօրքն Դդուշին՝ փախեան առ հասարակ: Եւ էր օրն այն օր մեծ 'ի վերայ զօրացն Պարսից, վասն զի բիւրք և հազարք 'ի փախուստ լինէին ընդ ամենայն երեսս երկրի. և յայնժամ 'ի մէջ առեալ զԴդուշն խոցեցին ըզձին նորա, և ընկեցին զնա յերկիր, և կայր նստեալ 'ի մէջ զօրացն և ոչ ոք իշխէր մերձենալ 'ի նա, վասն զի այր թագաւոր էր և էր եղբայր Մելէք—շահին: Յայնժամ

ամիրայ ումն ՚ի զօրաց Պարսկիստանին եկեալ և արով հասանէր զգլուխ նորա. և տարան Թաղեցին զնա առ գերեզմանն հօր իւրոյ։ Յայնժամ Սուլտանն որդի Դդուշին և Ըդուաքանն և այլ ամենայն փախստականքն գային ՚ի քաղաքն Ուռհայ։ Իսկ Թորոս Կուրապաղատն որ էր յՈւռհայ, էր այր ճարտարարան և հնարաւոր յոյժ, արար ընդունելութիւն նոցա, և կամէր ձերբակալս առնել զնոսա, զի առցէ զկլայն քաղաքին Ուռհայոյ, և ոչ համարեցան այլ իշխանքն պատեհ, գնացին խաղաղութեամբ ՚ի քաղաքն իւրեանց։ Յայնժամ Թորոս Կուրապաղատն բազում հնարիւք ջանայր տիրանալ քաղաքին և փրկել զհաւատացեալսն յայլազգեաց. և ընդ կլայէն սկիզբն արար շինել պարիսպս, և զմէկ մասն քաղաքին ամրացոյց պարսպով, մասն զի կլայն Պարսից էր, և կային ՚ի նմա Թուրքք պահապանք, և կային ՚ի նմա գունդ մի Հայոց զօրացն զորս կարգեալ էր զնոսա Դդուշն։ Յայնժամ տեսեալ սպասալարն որ կայր ՚ի Սանիկայ կլայն, եթէ Կուրապաղատն ամրացոյց զքաղաքն և կորեաց զկլայն ՚ի զատ քաղաքէն, գրեաց Թուղթ և ազդ արար ամենայն մեծաւոր ամիրայեացն զոր արար Թորոս Կու-

րապաղատն, և տայց մէջ՝ 'ի ծովուն դրանէն մինչեւ 'ի սուրբ Թորոս (եկեղեցին) պարապեալ զքաղաքն, կանգնեաց բուրգն քան և հինգ, և էառ զներքին կլայն, և տիրեաց ամենայն քաղաքին Ուռհայոյ.

ՃԽԶ. Իսկ եղև 'ի Թուականութեան Հայոց 'ի յամի ՇԽԴ (1095—1096), արար ժողով հեծելոց Սուգման որդի Արդուխին(179), և ամիրայն Սամուսատայ Պալտուխն որդի Ամիր-խազի, և յաւուրս հնձոյն գան 'ի վերայ Ուռհայոյ: Եւ Թորոս Կուրապաղատն տէր Ուռհայոյ եղև լցեալ ամենայն իմաստութեամբ, և յամենայն կողմանց սկսաւ ամրացուցանել զքաղաքն և կանգնեաց բաբանս և փիլքոպանս, և անխնայ ծեծէին ըզպարիսպ կլային, և Թուրքն կացեալ յաւուրս բազում անդադար պատերազմաւ՝ և ոչինչ կարացին առնել քաղաքին. և կացեալ զաւուրս վաթսուն և հինգ, և պատառեցին զպարիսպ քաղաքին յերկուս տեղիս, և մտեալ 'ի քաղաքն պատերազմէին. և այնու ոչ կարացին յաղթել քաղաքին: Եւ 'ի նոյն աւուրս գայր սուլտանն Հալպայ, որ ասի Ռատուան որդի Դդուշին, և Աղուսիանն տէրն Անտիոքայ քառասուն հազարով(180), և իջանէր 'ի վերայ Ուռհայոյ: Յայն՝

ժամ Սուգման և Պալտուխն մախեան 'ի սուլտանէն, և քաղաքացեացն տեսեալ ըզզօրս սուլտանին՝ զարհուրեցան յոյժ։ Իսկ Կուրապաղատն Թորոս առիւծաբար քաջալերէր զամենայն քաղաքն Ուռհայոյ, և անթիւ գանձս տայր 'ի պէտս քաղաքին, և զաւուրս բազում արարին սաստիկ պատերազմ՝ ի վերայ քաղաքին, և օգնութեամբն Աստուծոյ ոչինչ կարացին առնել քանզի ամենեքեան քաղաքացիքն սիրտս առիւծոյ առին և կացին ընդդէմ այլազգեաց, և 'ի վերայ սաստիկ պատերազմացն անձանձրակեալ զօրք այլազգեացն գնային ամօթով։ Եւ յայնժամ ոմն 'ի զօրացն սուլտանին, որում անուն ասէին Մխիթար, և էր այր քրիստոնեայ, խորհուրդ արար ընդ արսն իւր զի տացէ ըզկլայն 'ի Թորոս Կուրապաղատն։ Եւ յայնժամ Մխիթար պատրիկն երեսուն արամբ իւրով 'ի գիշերի արար հնարս, և տայր զաւագ կլայն Մանիակայ 'ի ձեռս Թորոսի Կուրապաղատին, և եղեւ խաղաղութիւն քաղաքին Ուռհայ։ Յայնժամ զօրս առաքեաց Թորոս 'ի բերդն Ուռհայոյ՝ որ կոչի Թրաբձ, զի արասցէ զերկիրն իւր հնազանդ, և հասեալ Պալտուխ ամիրայն Սամոսատոյ, և ամենայն զօրք գաւառին ընդ նմա, և արարին

պատերազմ 'ի սահմանս բերդին Թրախճայ , և եղեն փախստական զօրքն Ուռհայոյ . և հասեալ նոցա 'ի գիւղն որ կոչի Նդռանուսի , և կոտորեցին անդ արս հարիւր և յիսուն , և զայլսն արարին ձերբակալս ։

ՃԽԷ. Յայսմ ամի բերաւ Ալփիլակ (181) սուլտանն յՈւռհայ հրամանաւ Թորոսի , որ էր յազգէ Գուգլմշոյ , և տայր Թորոս զՈւռհայ 'ի ձեռս նորա , վասն զի առցէ վրէժս 'ի թշնամեաց իւրոց ։ Իսկ Ալփիլակ խորհեցաւ սպանանել զնա և առնել ալափ զամենայն քաղաքն . և գիտացեալ Կուրապաղատին Թորոս զայս ամենայն նենգութիւնս , արբուցանէր նմա դեղ մահու , և շուտով առաքեաց զնա 'ի բաղանիսն , և նոյն ժամայն սատակեալ եղեւ . Եւ լուեալ զայս ամենայն զօրքն նորա՝ փախեան ։ Եւ դարձեալ Կուրապաղատն Թորոս տիրանայր Ուռհայոյ։ Եւ եղեւ իշխանութիւն Ալփիլակայ զոր եկաց 'ի յՈւռհայ՝ աւուրս երեսուն և երեք ։

ՃԽԸ. Յայսմ ամի մեռաւ մեծ երաժիշտըն և սուրբ եկեղեցւոյ տէր Թորոս կաթուղիկոսն Հայոց , և թաղեցաւ 'ի Հռնին մօտ 'ի տէր Սարգիս ։

ՃԽԹ. Դարձեալ 'ի թուականութեանն Հայոց ՇԽԵ (1096—1097), զօրաժողով ա-

բար սուլտանն արեւմտից որ ասի Խլիճ-Ասլան, որդի Սուլէյմանայ՝ որդւոյ Ղթլմըշի, եւ գայր անթիւ բազմութեամբ 'ի վերայ Մելտենոյ քաղաքին, եւ եկեալ զօրօք ամահասարակ զամենայն գաւառն, եւ յարուցանէր սաստիկ պատերազմ 'ի վերայ քաղաքին Մելտենոյ. եւ եղեալ բազմաւ նեղէր զքաղաքն։ Իսկ իշխան քաղաքին որ ասէին Խաւրիլ[182], որ էր անուն Թորոսին՝ կիւրապաղատին Հայոց։ Եւ ամենայն քաջութեամբ կացեալ ընդդէմ սուլտանին, եւ յամենայն կազմանց ամրացուցանէր զքաղաքն։ Եւ կացեալ սուլտանին զաւուրս բազումս եւ ոչինչ կարաց առնել, դարձաւ ամօթով եւ գնաց յաշխարհն իւր։

ԾԺ. Յայսմ ժամանակիս կատարեցաւ մարգարէութիւն սրբոյն Ներսեսի Հայոց հայրապետի, զոր վասն Հոռոմայեցւոց եղեցըն խօսեցաւ ընդ Նախարարսն եւ ընդ իշխանսն Հայոց աշխարհին. եւ զոր նա յառաջ խօսեցաւ, աստ յայսմ ժամանակիս ետեսաք աչօք մերովք, զայն որ 'ի ժամ մահուանն մարգարէացաւ սուրբ եւ սքանչելագործ այրըն Աստուծոյ մեծն Ներսէս։ Եւ այս էր մարգարէութիւն սրբոյն Ներսիսի՝ զոր անւանէր 'ի Հոռոմն զկերպարանաւն գայլա-

կերպ գաւազանին, և յայտնապէս տեսեալ և ցուցանէր ատերըմ զուարթեին և զհնարորեն և զաւուրս հարկանելեան զմնացեալսն ։

Իսկ 'ի ժամանակս եղեւ եւն Հռոմայեցւոց, և բազաւ դուռն Յատինացւոց ագէին, փառն զի ադոք կամեցաւ Տէր զպատերազմել ընդ տանն Պարսից ։ Եւ դարձեալ եղեւ Տէր 'ի բարկութենէն իւրմէ ըստ բանի Դաւթի մարգարէին, ըստ այնմ՝ զոր ասաց՝ եթէ «Զարթիր, ընդէ՞ր ննջես, Տէր. արի և մի մերժեր զմեզ իսպառ »։ և թէ՝ «Զարթեաւ որպէս 'ի քնոյ Տէր, որպէս հզօր որ թափեալ է զգինի իւր. և եհար յետս զթշնամիս իւր. նախատինս յաւիտենից արար զնոսա »։ Եւ ահա յայնմ ամի շարժեալ եղեւ ամենայն Իտալիա և Սպանիա մինչև Ափրիկէս և խորին ազգն Փռանկաց, և գոռհեալ անթիւ և անհամար և ահագին բազմութեամբ և անհամար դասապետութեամբ որպէս զմարախ որ ոչ թուի, և կամ որպէս զաւազ ծովու որ ոչ քննի մտաց, և ահաւոր մեծութեամբ եւ բարձրագահ իշխանութեամբ ելեալ գային իշխանքն աշխարհին Փռանկաց, և իւրաքանչիւր զօրօք գային յօգնութիւն քրիստոնէից և առ 'ի փրկել յայլազգեաց ըղ-

սուրբ քաղաքն Երուսաղէմ, և ազատել 'ի Տաճկաց զսուրբ գերեզմանն Աստուածըն-կալ, որք փառաւորք և Թագաւորազունք. Հաւատով և ամենայն աստուածպաշտու-Թեամբ զարդարեալք, և էին մնեալք 'ի գործս բարութեան. որոց էին անուանքս այսոքիկ. Կոնդոփրէ, այր հզօր, որ էր յազ-գէ Թագաւորացն Հռոմայեցւոց, և նորին եղբայրն Պաղտին։ Այս Կոնդոփրէ էր որ ունէր զհետ իւր զԹագն և զԹուրն Վես-պիանի Թագաւորին, որ կոտորեաց նովաւ զԵրուսաղէմ։ Էր և մեծ կոմսն որ ասէին Պեմունդ, և Տանգրին քեռորդին նորա, և կոմսն որ ասի Զնճիլ(183), այր ահարկու և փառաւոր, և Իսուպերթ Նորմնդաց կոմսն, և միւս այլ Պաղտինն գայր, և յետոյ կոմսն որ ասի Ճօսլին, այր քաջ հզօր։ Արդ այս-քան արք հզօրք և պատերազմողք գային ուրս ահագին բազմուԹեամբ որպէս զաս-տեղս երկնից. գային և զհետ նոցա բա-զում եպիսկոպոսունք, քահանայք և սար-կաւագունք, և մեծաւ աշխատուԹեամբ ճանապարհորդեալ ընդ հեռաձիգ աշխար-հըն Հռոմայեցւոց և չարաչար նեղու-Թեամբ անցանէին ընդ աշխարհն Ունգռաց ընդ նեղ և դժար կապանուն լերանց նոցա,

և ժամանեալ հասանէին ընդ աշխարհին սահմանս Բուլղարաց, որ էր ընդ իշխանութեամբ Աղէքսիսին Յունաց թագաւորին. և այսպիսի ճանապարհորդութեամբ հասանէին ի մեծն Կոստանդնուպօլիս:

Եւ լուեալ զգալն նոցա թագաւորն Աղէքսն՝ առաքէր զօրս ընդդէմ նոցա ի պատերազմ. և եղեւ ահագին կոտորածս յերկոցունց կողմանց, եւ արար Փռանկն փախստական զզօրսն Յունաց, եւ յայնմ աւուր եղեւ բազում արեանց հեղումն: Եւ այսպիսի օրինակաւ ընդ որ անցանէին՝ զայն ամենայն աշխարհք ի վերայ նոցա ի պատերազմ, և նեղէին զնոսա բազում չարչարանօք: Եւ լուեալ զայս ամենայն թագաւորն Աղէքսն, և վերայոյց զսուրն և ոչ եա այլ պատերազմ ընդ նոսա: Եւ ամենայն բանակն առհասարակ եկեալ իջաւ ի դուռն Կոստանդնուպօլսի, և խնդրէին ընդ ծովն Ովկիանոս անցանել. և թագաւորն Աղէքսին արար սէր և միաբանութիւն ընդ ամենայն իշխանսն Փռանկաց, եւ տարաւ զնոսա ի սուրբ Սոֆի, և ետ նոցա բազում ասուրս ոսկւոյ և արծաթոյ. և նոքա երդուան նըմա զի զամենայն գաւառսն որ յառաջ լեալ էր Հոռոմոց՝ թափեն ի Պարսից և յԱրաբա-

կաց, եղեցին ազգքն Հոռոմոց. և այսպիսի դաւաճանութեամբս խաչով և աւետարանով կապեցին զերդումն անլուծանելի կապանօք։ Եւ առեալ զօրս և իշխանս 'ի Թագաւորէն և Նաւէրին ընդ մեծն Ոլիփանոս, և հասեալ բազմութեամբ բանակաւն 'ի քաղաքն որ կոչի Ակիխա, մօտ 'ի Ալլիփանէ ծովն։

Եւ ամենայն զօրքն Պորոսից ժողովեցան 'ի վերայ Փռանկաց որ բանակեալ էին 'ի սահմանսն յայն, եւ արարին պատերազմ ընդ զօրսն Փռանկաց. եւ յայնժամ զօրքն Փռանկաց յաղթեցին զօրացն Պալոսից և արարին ըզնոսա փախստական, և յարձակեցան զհետ նոցա սրով, և արկեալք լցին զերկիրն։ և պատերազմեալ 'ի վերայ քաղաքին Ակիխոյ՝ և սըրով առին զքաղաքն, և կոտորեցին զամենայն անհաւատսն. Եւ յայնժամ գնայրին Ճիշկան առ սուլտանն Խլիճ-Արսլան յորժամ պատերազմէր 'ի վերայ քաղաքին Մելիտենոյ, և զայս ամենայն ազդ արարին նմա։ Եւ նորա արարեալ ժողով անթիւ բազմութեամբ, և գայր 'ի վերայ Փռանկ զօրացն 'ի գաւառին Ակիխոյ. և արարին սաստիկ կոտորածս յերկոցունց կողմանցն, և անխնայ քաջապէս յարձակեցան 'ի վերայ միմեանց, և գազանաբար բախէին զձիակառ

պատերազմացն, և 'ի մայրաստանեկանէ սա-
ւառացն և 'ի շաչել զմեհեանսն և 'ի ձայթ-
մանէ աղեղանցն եղեն գումարեալք անե-
նայն զօրացն այլազգեաց, մինչ զի 'ի սաստ-
կութենէ ձայնիցն դողայր երկիրն, և 'ի շա-
չել նետիցն երփվառքն սարսէին։ Իսկ որ ա-
րիականքն ընտիրքն էին, քաջքն ընդ քաջս
երամէին, և որպէս զկորիւնս առիւծուց ան-
խնայ կոփէին զմիմեանս։ Եւ էր օրն այն օր
մեծ և ահագին առաւօտին պատերազմին, մինչ
զի վախճանն բիւրով պատերազմէր սուլթա-
նըն ընդ ազգն Յունականաց. և 'ի վերայ այս-
քան պատերազմաց յաղթեաց զօրքն Յունա-
կաց զօրացն Պարսից, և արարին զնոսա փա-
խստականս ահաւոր և սաստիկ կոտորածով,
որ և ծածկեալ եղեւ դաշտն դիականամբ մե-
ռելոց. և առին բիւրս բիւրուց աւար և գե-
րութիւն, և թիւ ոչ գոյր ոսկւոյ և արծա-
թոյ զոր առին 'ի Պարսից։ Եւ զկնի երից ա-
ւուրց դարձեալ սուլթանն, և արար եր-
կրորդ ժողով եւ ահագին բազմութեամբ
դայր 'ի վերայ Յունականին զօրացն, և արա-
րին պատերազմ ահաւոր եւ սաստիկ քան
զառաջինն. և զօրքն Յունակաց զնոյն քա-
ջութիւն արկանէին 'ի վերայ զօրացն Պար-
սից, և սաստիկ կոտորածով և գերութեամբ

եհան զնոսա յայնմ աշխարհէն . և եռուն
զօրքն Ֆռանկաց զԱնտիոք ՚ի ձեռս Հոռո_
մոց թագաւորին Աղէքսին ։

ՃԽԶ. Դարձեալ ՚ի թուականութեանս
Հայոց յամի ՇԽԶ (1097–1098), և յա_
ւուրս հայրապետութեան Հայոց տէր Վահրա_
մայ եւ տէր Բարսղի, և ՚ի թագաւորու_
թեանն Յունաց Աղէքսին Հոռոմոց արքայ_
ին, շարժեալ բանակն Հռոմայեցւոց և ան_
համար բազմութեամբ իբրեւ զբիւրս յիսուն։
Զայս թղթով ազգ արարեալ իշխանին Ուռ_
հայոյ Թորոսի և մեծ իշխանին Հայոց Կոս_
տանդնի որդի Ռուբենայ, որ ունէր զՏօ_
րոս լեառն ՚ի յաշխարհին Կոպիտառայի ՚ի
Մարաշայ, որ և բազում գաւառաց տէ_
րեալ էր, և ՚ի զօրացն Պագկայ էր ։ Եւ
զօրքն Ֆռանկաց էին հարիւր հազար հե_
ծեալ և հարիւր հազար ձիաւոր անձն
հեծելն (184). և բազմութեամբ ճանապարհ
արարեալ ընդ աշխարհն Բիւթանացւոց, եւ
ընդարձակ բանակաւ անցանէին ընդ սահ_
մանս Պաղոնց, և հասանէին ՚ի դժուար
վայրս լերանց Տօրոսի. և խաղացեալ էանց
բազմութիւն բանակին և ընդ նեղ կապանս
նորա գնացեալ ընդ Կիլիկիա. և էանց ընդ Տե_
րօվաղա (185), որ է Մուարդայ, և հասանէր

՚ի քաղաքն Անտիոք. Եւ ահագին զօրութեամբ բանակեալ ՚ի վերայ նորա, և լցեալ զլայնատարած դաշտ նորա, եւ արգելեալ ՚ի քաղաքն զզօրապետսն Պարսից հանդերձ զօրօքն իւրովք զԱղուսիանն, եւ սաստիկ պատերազմաւ պաշարեալ զքաղաքն զամիսս տասն։ Եւ լուեալ զայս ամենայն շուրջակայ իշխանքըն Պարսից, և մեծաւ հանդիսիւք գային պատերազմաւ ՚ի վերայ զօրացն Ֆռանկաց. իսկ նոքա զամենայն թշնամիսն իւրեանց ամօթով դարձուցանէին։ Եւ յայսմ աւուրս եղև ժողով այլազգեացն. Մինչև և ամենայն Աֆրիկացիքն հանդերձ ամենայն ծովեզերօք, Երուսաղէմ և ամենայն սահմանակիցք Ասուրայ, Հալապ և Հէմս, մինչև ՚ի մեծ գետըն Եփրատ, և խաղացին անթիւ և անհամար բազմութեամբ ՚ի վերայ զօրացն Ֆռանկին։ Եւ յորժամ լուան զգալն այլազգեացն, վարեցին զզօրսն իւրեանց և ելան ընդդէմ նոցա։ Եւ Պեմունդն էր այր քաջ և պատերազմող և Օնծիլն, և իբրեւ զառիւծ յարձակեցան տասն հազարով ՚ի վերայ տասըն բիւրուց ՚ի սահմանս Անտիոքայ, և ահագին յաղթութեամբ դարձուցին ՚ի փախուստ և արարին սաստիկ կոտորած զզօրսըն Պարսից։

Դարձեալ ամիրայն Սուգման որդի Արդու- խին, այր քաջ և պատերազմող, և տէր Դը- մշկայ(186), որք էին ամիրայք մեծամեծք և փա- ռաւորք, արարին ժողով Թուրք զօրաց ՚ի Սօ- ալը և յամենայն աշխարհէն Պաքելացւոց լը- րիւ բիւրս երիս, և գային ՚ի վերայ Փռանկ բանակին։ Յայնժամ մեծ ատուկն կոնդոմրէ- ւթն հազարով գնացին ընդդէմ այլազգեա- ցըն ՚ի սահմանս Հալպայ, և արարին սաս- տիկ պատերազմ։ Իսկ որ ասի Տուղտիկին ամիրայն Դմշկայ, ՚ի դիմի հարաւ կոնդո- մրէ առն քաջի, և թռոյց զնա ՚ի ձիոյն, բայց զզգեստն երկաթեղէն ոչ կարաց պատառել, և գնաց անվնաս։ Եւ յայնժամ զզօրսն այ- լազգեաց դարձուցին ՚ի փախուստ, և ըզ- հետ մտեալ զօրացն Փռանկաց, և սուր ՚ի գործ արկեալ արարին զայլազգիսն փախըս- տականս, և դարձան մեծաւ յաղթութեամբ ՚ի բանակն իւրեանց։ Իսկ ՚ի բազմութենէ զօրացն վտանգ հասանէր զօրացն(187) Փռան- կաց և նեղէին ՚ի կերակրոց, և յայնժամ իշխանքն որ կային բնակեալ ՚ի Տօրոս լեռ- ան, Կոստանդին որդին Ռուբինեայ և եր- կրորդ իշխանն Պաղդունի, և երրորդ իշխանն Օշինն(188), որքա զամենայն կարիս կերակ- րոյ առաքէին առ զօրսն Փռանկաց, նոյնպէս

և վանորայքն Սեաւ լերինն կերակրօք օգնէին նոցա, և ամենայն ազգք հաւատացելոց բարեկամութիւն ցուցանէին նոցա։ Եւ յայն-ժամ առ 'ի չգոյէ կերակրոյ՝ մահ և ցաւ անկաւ 'ի բանակն Փռանկաց. որ 'ի հինգ մասէն մի մասն պակասեալ լինէր, և այլք ամենայն կային մեծաւ պանդխտութեամբ. բայց ողորմութիւնն Աստուծոյ ոչ 'ի բացեայ թողոյր զնոսա, այլ հոլովէր հայրախնամ սիրով որպէս զբանակ որդւոցն Իսրայէլի յանապատին։

ԾԾԲ. Յայսմ ամի եղանէր աստղ մի գիսաւոր յարեւմուտս կոյս 'ի յարեգ ամիս, և ագի նորա նուազ ցուցանէր գլխոյն իւր. և կացեալ նորա զաւուրս տասն և հինգ՝ և լինէր աներեւոյթ աստեղացն.

ԾԾԳ. Յայսմ ամի լինէր նշան ահաւոր և զարմանալի յերկինս 'ի կողմն հիւսիսոյ, որ ոչ ոք երբէք ետես այնպիսի սքանչելի նշան։ Ի յամենայն մասերն բորբոքեցաւ երեսք երկնից 'ի բոց հրոյ, և կարմրացաւ սաստկապէս 'ի պայրդ. և բլուր բլուր կապեցաւ երկինքն, և բորբոքեալ լինէր 'ի գոյնըս գոյնս, և սահեալ եղանէր գիմօք յարեւելս, և գիլացաւ եղեւ մասն և ծածկեաց զմեծ մասն երկնից. և գունովն յայժ կարմիր

և. զարմանալի, և հասանէր 'ի կամարն երկնից։ Այս ծանուցեալ զայս իմաստնոց եւ հանճարեղաց, և ասէին թէ՝ այս նշան է արեան հեղութեան. որ և եղեւ այնպիսի չար կատարածք և արհաւիրք, զոր զակաւն գրեցաք յայս մատենագրութեանս։

ԾԽԴ. Այս եղեւ 'ի թուականութեանն Հայոց ՇԽԷ (1098–1099), եկեալ կոմս մի անուն Պաղտին, և հարիւր ձիաւորով էառ զքաղաքն որ կոչի Թլպաշար։ Այս լուեալ զայս իշխանն Հոռոմոց Թորոս, որ էր 'ի քաղաքն Ուռհայ, և լցեալ եղեւ մեծաւ ուրախութեամբ, և առաքեաց առ կոմսն Ֆր-ռանկաց 'ի Թլպաշար և կոչէր զնա առ ինքն յօգնութիւն իւր ընդդէմ թշնամեաց իւրոց՝ վասն նեղութեանցն որ ունէր 'ի մօտաւորս ամիրայեացն։ Այս եկեալ կոմսն Պաղտին 'ի յՈւռհայ վաթսուն ձիաւորով, և ելան բազմութիւն քաղաքին ընդդէմ նորա. և մեծաւ ուրախութեամբ արկանէին զնա 'ի քաղաքն, և եղեւ ուրախութիւն ամենայն հաւատացելոց. և արար Կուրապաղատըն Թորոս բազում սէր և տուրս կոմսին, և հաստատեաց միաբանութիւն ընդ նմա։ Այս եկեալ իշխանն Հայոց 'ի Կառկռայ, որ տէր Կոստանդին. և զկնի սակաւ աւուրց

հանէ զնոսա Կուրապաղատն 'ի պատերազմ 'ի վերայ Սամուսատայ ընդ Պալտուխ ամիրային, և զօրք քաղաքին զհետ Յունանկին. և ամենայն հետեւակ զօրք գաւառին փնացին 'ի Սամուսատ բազում զօրօք, և արարին այրափ զդրուց չէ՛ին, և Թուրքն ոչ համարձակեցաւ ելանել 'ի պատերազմ: Յայնժամ միաբան յալափ մտեալ ամենայն զօրքն քրիստոնէից. և տեսեալ զօրացն Թուրքաց՝ ելեալ երեք հարիւր ձիաւոր 'ի վերայ նոցա և յաղթեցին ամենայն զօրացն, և արարին զՅունանկն փախստական և զամենայն գաւառացիքն. և ի Սամուսատայ մինչեւ 'ի Թիլն եղեւ սաստիկ կոտորածս՝ իբրեւ առ երս հազար: Եւ Կոստանդին և կոմսն հասան 'ի քաղաքն Ուռհայ առ Թորոս Կուրապաղատն, և այս եղեւ յերկրորդ շաբաթին աղուհացիցն: Իսկ յորժամ եկն կոմս Պաղտինն 'ի յՈւռհայ, յայնժամ յարեան այլք նենգաւորք և չարախորհուրդք, և արարին միաբանութիւն ընդ կոմսն, վասն զի սպանցեն զԹորոս Կուրապաղատն, որ ոչ վայելէր գործոց երախտեաց նորա, վասն զի 'ի ձեռըն հանճարեղ իմաստութեան նորա, և արւեստաւոր հնարաւորութեան նորա և բուռըն զօրութեամբ և եղեւ ազատեալ Ուռ-

հայս 'ի համբերութենէ և 'ի ծառայութե-
նէ . . . . . . դառնացեալ ազգին Տաճկաց :

Իսկ յայսմ ամ ուրբաթ քառասունքն եղեն մարտնչեալք 'ի խորհուրդն Յուզայի. և 'ի դիշերի գնացին առ կոմս Պաղտինն այն. որ էր եղբայր Կոնդոսպրէի կոմսին, և միաբանեալքն զնա 'ի չար խորհուրդս իւրեանց, և խոստացան տալ նմա զՈւռհայ 'ի ձեռս: Իսկ նա հաւանեցաւ չար խորհրդոց նոցա, և միաբանեցուցին զիշխանն Հայոց զԿոստանդին. և 'ի հինգերորդումն շաբաթու աղուհացիցն շարժեցին զամենայն բազմութիւն քաղաքին 'ի վերայ Կուրապաղատին Թորոսի 'ի յաւուր կիւրակէի, և արարին աւար զամենայն տունն իշխանաց նորա, և առին զբերդին կղզին: Իսկ յաւուր երկուշաբթուն արարին ժողով 'ի ներքին կղզին վերայ ուր Թորոսն էր. և սաստկապէս պատերազմէին 'ի վերայ նորա. և նորա անձկացեալ խնդրեաց երդումն 'ի նոցանէ զի մի մեռցին նոքա, և նա տացէ զկղզին և զքաղաքն 'ի նոսա, եւ ինքն և կին իւր գնասցեն 'ի քաղաքն Մելտինի. Իսկ հաւանեալ առ նոսա զԵ տարագոյ աւուրբ Իշխանն և զՄաքենեացն և նոքօք երդուան կոմսն 'ի մէջ որբոց եկեղեցւոյ սուրբոց Մաքենեացն՝ ոչ մեղանչել նմա. երդուան

եկեալ բանակեցաւ ՚ի դուռն Ուռհայոյ. և կացեալ բազում զօրօք մինչեւ ՚ի յաւուրս հնձոցն, և կերեալ զամենայն արտորայսն. և պատերազմ յարուցանէր ՚ի վերայ քաղաքին, և եղեւ ժողով բազմութեան զօրաց առ նա։ Եւ զկնի քառասուն աւուր գայր առ Կերպօղա որդին Աղուսիանին Անտիոքայ ամիրային, և անկեալ ՚ի յոտսն Կերպօղայի. և աղաչէր գալ օգնել նոցա. և պատմեաց նմա վասն Փռանկ բանակին, եթէ սակաւ է և սովաբեկ։

Եւ ահա յայնմ ամի շարժեալ եղեւ ամենայն Խորասան յարեւելից մինչեւ ՚ի մուտս արեւու, ՚ի Մսրայ (180) մինչև ՚ի Բաբելոն, և Յունաց և արեւելից կողմն աշխարհին. Դմիշկք և ամենայն ծովեզերայքն և Երուսաղէմայ մինչեւ յանապատն ժողովեալ ժողովեցան բիւրս ութսուն. և հեծեալ զօրս բիւրս երեսուն. և գնայր խաղայր խրոխտալով, և լցեալ զդաշտս և լեռբարձունս, և ահաւոր հպարտութեամբ հասանէր ՚ի վերայ Փռանկ զօրացն ՚ի դուռըն Անտիոքայ։ Եւ Աստուած ոչ կամեցաւ կորուսանել զաւագ զօրսն քրիստոնէից, այլ հովուեալ պահէր զնոսա որպէս զբանակ որդւոցն Իսրայէլի։ Արդ մինչդեռ ՚ի բացեայ

էին զօրք այլազգեաց, մի ոմն յիշխանաց քա-
ղաքին հանեալ 'ի գիշերի մարդ առ Պեմուն-
դըն և առ այլ իշխանսն Ֆռանկին, և խըն-
դրեաց իւր հայրենիք. և առեալ 'ի նոցանէ
երդումն, և գաղտաբար 'ի գիշերի տայր
զԱնտիոք քաղաքն 'ի ձեռն Պեմնդին. և բա-
ցեալ 'ի պարիսպն զկլայեան (191) դուռն, և ա-
մենայն բանակն Ֆռանկաց մտանէր 'ի քաղա-
քըն Անտիոք. և ընդ առաւօտն միաբան
հնչեցուցին զփող եղջերացն ամենայն զօրքն:
Եւ լուեալ զայս այլազգիքն ամենայն՝ եղեն
զարմացեալք, և ոչ գիտէին փախչել 'ի յա-
հէն. և սուր 'ի գործ արկեալ զօրքն Ֆռան-
կաց արարին սաստիկ կոտորածս զնոսա. և
ամիրայն Աղիւսիան փախեաւ 'ի քաղաքէն և
սպանաւ 'ի գեղջացեացն՝ մանկաղաւ հա-
տեալ զգլուխ նորա: Եւ արդ այսպիսի օրի-
նակաւ առաւ քաղաքն Անտիոք, զորս 'ի
Հայոց ազգէն առեալ եղեւ (192): Իսկ մնա-
ցեալ այլազգիքն ժողովեցան 'ի կլայն, և տա-
յին պատերազմ ընդ զօրսն Ֆռանկաց: Եւ
զկնի երեք աւուր հասանէր բանակն զօրաց
Պարսից, և ելից զբանակն Ֆռանկին եւթ-
նապատիկ, և արարեալ սաստիկ խաւար 'ի վե-
րայ Ֆռանկին, և նեղէին զնոսա. և բազում
վտանգ հասանէր նոցա 'ի սովոյն, վասն զի

յաւաջագոյն հատեալ էր հացն 'ի քաղաքէն. և անձարեալ առաւել քան զառաւել, և խորհեցան տանել երդումն 'ի Սկերպօղոյէն և տալ զքաղաքն 'ի ձեռս նորա, և ինքեանք գնասցեն յաշխարհն Փռանկաց: Եւ տեսեալ Աստուծոյ զմեծ վտանգն որ կայր առ նոսա, գթացաւ 'ի նոսա և այցելեցաւ նոցա. և երեւեցաւ 'ի գիշերին սուրբ առաքեալն Պետրոս Փռանկի միոջ աստուածապաշտի, և ասէր եթէ «Ի ձախակողմ եկեղեցւոյդ կայ 'ի պահեստի զէնն որով Քրիստոս 'ի Հրէից էառ զխոցումն 'ի յանարատ կողն իւր՝ 'ի յանաստուած ազգէն Հրէից. ահա կայ առաջի խորանին. հանէք անտի զնա, և նովաւ ելէք 'ի պատերազմ, և նովաւ յաղթէք թշնամեաց ձերոց, որպէս և Քրիստոս սատանային»: Եւ այսպիսի օրինակաւ երկրորդ և երրորդ (անգամ) երեւեալ նշանն, և պատմեցին Կոնդոփրէին և Պէմնդին և ամենայն իշխանացն. և սկիզբն արարին աղօթից, և 'ի նշանեցեալ տեղին բացեալ գտանէին զզէնն Քրիստոսի յեկեղեցին որ կոչի սուրբ Պետրոս:

Եւ յայսմ ժամու գայր պատգամաւոր 'ի բանակէն այլազգեաց և խնդրէին պատերազմ, և զօրքն Փռանկաց կային 'ի մեծ աւրա-

խուվթեան։ Յայնժամ պատասխանեաց (193)
Պետմունդն և այլ իշխանքն Կերպողայ, և ասեն՝ եթէ ահա առ վաղիւն ելցուք 'ի պատերազմ ընդ ձեզ։ Այլ զօրք Փռանկաց տակաւացեալ էր. և կազմեաց Պետմունդն զճակատ պատերազմին իւրեանց հնգետասան հազար, և զհետեւակ զօրսն հնգետասան բիւրս. և ոտքօք ելեալ 'ի պատերազմ՝ ունելով զգէնն Քրիստոսի առաջի իւրեանց (զոր) բարձեալ տանէին. Իսկ զօրք այլազգեացն առ հասարակ լցին զլայնատարած դաշտն հնգետասան կորդւով մի առ միով։ Այլ եկեալ Օ.ընձիլն և կանգնեաց զգէնն Քրիստոսի ընդդէմ նշանակացն Կերպողայ. և Կերպողա կայր ընդդէմ նոցա դիզացեալ որպէս զլեառն անհամար զօրօք. և զձախաթեւն առեալ ունէր առիւծադէմն Տանգրի, և զաջոյ թեւն առեալ ունէր Նորմնդաց կոմսն Ռուպերթն, և Կոնդոփրէ և Պետմունդն կային ընդդէմ անհամար զօրացն Թուրքաց բանակին։ Այլ յայնժամ զԱստուած օգնական կարդային անձանց իւրեանց, և միաբան որպէս հուր որ ցոլանայ յերկնից և այրէ զլերինս, այսպիսի օրինակաւ զօրքն քրիստոնէականաց հեղան 'ի վերայ այլազգեացն, և առ հասարակ զամե-

նայն բանակն 'ի փախուստ դարձուցին ։ Եւ մեծաւ սրտմտութեամբ և սաստիկ կռուով վարեցան զհետ այլազգեացն զմեծ մասն աւուրն, և արբեցին սուրք նոցա յարենէ այլազգեաց, և լցաւ ամենայն դաշտն դիակամբք ։ Իսկ զաստուածատուր բարկութիւնն արկին 'ի վերայ հետեւակ զօրացն, վասն զի հրով այրեցին զնոսա երեսուն բիւրըս, որ և հոտեցաւ ամենայն երկիրն ։ Եւ բազում աւարաւ և գերութեամբ և մեծաւ ուրախութեամբ դարձաւ զօրքն Փռանկաց 'ի քաղաքն Անտիոք ։ Եւ էր օրն այն օր մեծ ուրախութեան հաւատացելոց Քրիստոսի ։

ՃԾԶ. Յայսմ ամի դարձեալ երկրորդ նշան եղեւ յերկինս 'ի կողմն հիւսիսոյ, և զչորրորդ ժամ գիշերոյն հրով բորբոքեալ լինէր երկինքն առաւել քան զառաջինն. և եղեւ 'ի գոյն սաստիկ կարմրութեան յերեկորէն սկիզբն արարեալ մինչեւ ցչորրորդ ժամն գիշերոյն, որ ոչ ոք երբէք ետես այնպիսի նշան ահաւոր. և ծառացեալ բարձրանալով և երակ երակ ելից զերեսս հիւսիսոյ մինչև 'ի գագաթն երկնից, և ամենայն աստեղքն եղեն 'ի գոյն հրոյ ։ Եւ ահա նշանս այս նշան էր բարկութեան և կատարածի ։

ՃԾԷ. Դարձեալ 'ի Թուականութեանն Հայոց ՇԽԸ (1099–1100), եղեւ խաւարումն լուսնին ըստ գնացից սովորութեանն իւրոյ, և լինէր 'ի գոյն արեան սաստիկ գունով յառաջին պահէն մինչեւ չորրորդ ժամն, և դարձեալ լինէր 'ի գոյն սեւութեան, և երեւեալ լինէր տեսողացն թէ 'ի գոյնս արեան իցէ. և 'ի սաստկութենէ սեւութեանն մթանայր ամենայն արարածք. և զայս տեսցին հանճարեղքն՝ եթէ լինելոց է արեանհեղութիւն 'ի յազգէն Պարսից ըստ ցուցման լուսնին 'ի վերայ նոցա՝ ըստ գրոյ ազգին իւրեանց։

Յայսմ ամի խաղայր գնայր բանակն Փռանկաց 'ի վերայ սուրբ քաղաքին Երուսաղէմի, վասն զի կատարեսցի մարգարէութիւն Ներսեսի Հայոց հայրապետի որ ասաց՝ եթէ «Ի յազգէն Փռանկաց լիցի փըրկութիւնն Երուսաղէմի, և դարձեալ վասն մեղաց անկցի 'ի ձեռս այլազգեացն»։ Եւ եղեւ յորժամ՝ ելան նոքա 'ի Ճանապարհ, գտային զօրքն այլազգեաց 'ի վերայ նոցա 'ի պատերազմ, որպէս գայր Ամաղէկ ընդ առաջ որդւոցն Իսրայէլի։ Եւ յորժամ հասան 'ի քաղաքն որ կոչի Արկա, եղեւ անդ սաստիկ պատերազմ այլազգեացն, և յաղթեաց

զօրքն Փռանկաց նոցա մեծաւ յաղթութեամբ ։ Եւ գնաց խաղաղութեամբ բանակն Փռանկաց և հասաւ 'ի դուռն Երուսաղէմի, և արար բազում կոտորածս ։ Եւ էր յայնժամ յԵրուսաղէմ հայրապետն Հայոց տէր Վահրամ, և զօրքն այլազգեաց կամեցան սպանանել զնա, և Տէր փրկեաց զնա 'ի ձեռաց նոցա ։ Իսկ յետ բազում պատերազմաց կանգնեցին փայտէ բերդս, և տարան մօտ 'ի պարիսպ քաղաքին և ուժգին բռնութեամբ և սրով և զօրութեամբ առին զսուրբ քաղաքն Երուսաղէմ ։ Եւ յայնժամ Գոնդոֆրէ զԹուրքն Վեսպիանոսի կայսերն առեալ՝ յարձակեցաւ ամենայն զօրութեամբ 'ի վերայ այլազգեաց, և կոտորեաց 'ի տաճարին արս վաթսուն և հինգ հազար, և 'ի քաղաքն զայլ բնակիչսն ։ Եւ այսպիսի օրինակաւ առաւ սուրբ քաղաքն Երուսաղէմ, և ազատեցաւ գերեզմանն Քրիստոսի Աստուծոյ մերոյ 'ի հարկատրութենէն Տաճկաց ։

Եւ արդ ահա Վեսպիանոսի Թուրքն այս երեք հետ (անգամ) եղեւ որ կոտորեաց զԵրուսաղէմ զհետ խաչելութեան Տեառն ։

ԾԾԸ. Յայսմ՝ ամի եղեւ սաստիկ ժաղով յԵգիպտոսի մինչեւ 'ի Սկիւթ և 'ի Նուպիք

և մինչեւ 'ի սահմանս Հնդկաց (194), մինչեւ երեսուն բիւրս, և գան ամենայն պատրաստութեամբ 'ի վերայ Երուսաղէմի։ Եւ լուեալ զօրք Փռանկաց՝ սաստանելով դողացան, և ոչ համարձակէին կալ 'ի քաղաքն, այլ յարուցեալ գնային ընդդէմ նոցա 'ի պատերազմ. և զայս ունէին 'ի մտի, եթէ ոչ կարասցեն պատերազմել, դարձցին 'ի յաշխարհն իւրեանց. և մերձ 'ի համատարածծով հանդիպեցան միմեանց։ Եւ թագաւորն Եգիպտոսի տեսեալ զգալ զօրացն Փռանկաց, և ձայն տուեալ զօրաց իւրոց յարձակեցաւ 'ի պատերազմ։ Իսկ զօրքն Փռանկաց դիմեցին առ հասարակ 'ի պատերազմ և կանգնեցին զճակատ պատերազմին. և յարձակեցան զօրացն Փռանկաց 'ի վերայ զօրաց Եգիպտացւոցն, եւ առ հասարակ 'ի փախուստ դարձան. և ոչ եթէ նոքա էին որ պատերազմէին, այլ Աստուած էր որ փոխանակ նոցա պատերազմէր ընդ Եգիպտացին, որպէս առ Փարաւոն առ Կարմիր ծովուն արար որդւոցն Իսրայէլի։ Իսկ 'ի սաստկանալ պատերազմին իբրեւ արս հարիւր հազարս արկին 'ի ծովն, և անդ սատակեցան, և զայլսն կոտորելով արարին մախաստականս. և դարձան զօրքն Փռանկաց մեծաւ յաղթու-

Թեւամք եւ բազում աւարաւ 'ի քաղաքն Երուսաղէմ։

ԾԾԹ. Յայսմ ամի զօրաժողով արար Գրիգոր Կուրապաղատն յարեւելս, եղբայր տեառն Բարսղի Հայոց կաթուղիկոսի։ Սորա գնացեալ 'ի վերայ Թուրք բանակին 'ի գաւառն Շորնէք, վասն զի էր այր քաջ եւ հզօր եւ պատերազմող, գնացեալ զօրօքն իւրովք 'ի գեղն որ ասի Կաղըզուան, եւ հասեալ 'ի վերայ Թուրքին, եւ պատերազմաւ հարեալ զնոսա եւ արար հալածականս, եւ բզ-բազումս 'ի նոցանէ սրով սատակեաց. եւ դարձաւ գնալով 'ի քաղաքն Անի։ Յայնժամ մի ոմն 'ի դարանի կայր 'ի Թուրք զօրացն ընդ ծառով միով, եւ գաղտ նետիւ հարեալ զնա 'ի բերանն. եւ 'ի սաստիկ խոցոյն յերկիր անկեալ եւ աւանդեաց զհոգին, եւ եղեւ սուգ մեծ Շիրակայ (195) եւ ամենայն տանն Հայոց։ Արդ այսպիսի օրինակաւ մեռաւ քաջ զօրականն եւ մեծ հաւատացեալն Աստուծոյ Գրիգոր որդի Վասակայ՝ որդւոյ Ապիրատին՝ որդւոյ Հասանայ, 'ի յազգէ քաջաց եւ 'ի պատերազմող զօրականաց, յազգէ Պահլաւունեաց։

ԾԿ. Յայսմ ամի դարձաւ Օլինձիլ կոմսն եւ գնաց 'ի Փռանկ, եւ տարաւ զզէնն Քրիս-

տօսի զոր գտին յԱնտիոք, և ետ Սմբատին Հոռոմոց Թագաւորին, և ինքն գնաց 'ի Ֆռանկ։

ՃԿԱ. Յայսմ ամի մեռաւ մեծ իշխանն Հայոց Կոստանդին որդին Սուբենայ, և մնաց իւր երկու որդի՝ Թորոս և Լեւոն։ Սորա առեալ էր բազում քաղաքաց և գաւառաց, և ըմբռնեալ ունէր զմեծ մասն Տորոս լերինն, զոր քաջութեամբ իւրով առեալ էր 'ի զօրացն Պարսից։ Սա էր 'ի զօրացն Գագկայ Բագրատունւոյ որդւոյ Աշոտոյ։ Սա մեռանէր յայսմ ժամանակիս. և եղեւ այս ինչ նշան 'ի տան նորա՝ մահու նորա։ Յաւուր միում մինչ կենդանի էր, լինէր ցոլումն հրոյ կայծականց. և 'ի բերդն որ առէ Վահկայ (196), հարեալ կայծակն 'ի սպասաւորաց տանն, զորկեալ զարծաթի սկուտեղն և զմի կուզ՝ տարաւ 'ի ներքոյ եւթն սկուտեղան. և ամենայն իմաստունքն ասացին եթէ այս է վերջին աւուրն Կոստանդեի. և 'ի նմին ամին մեռանէր, և թաղեցաւ 'ի վանքն որ կոչի Կաստաղօն (197)։

ՃԿԲ. Յայսմ ամի դարձեալ եղեւ երրորդ նշան հրակերպ 'ի յերկինս 'ի գոյն ստատիկ կարմրութեան. և կացեալ զհինգ ժամ գիշերոյն 'ի հիւսիսային կողմանէն, պնա-

լով գնայր յարեւելս, և դարձաւ 'ի սեւու-
թիւն. և ասացին գնչանս զայս՝ նշան է արեան-
հեղութեան քրիստոնէից, որ և եղեւ իսկ։
Նորա ահա յօրէ յորմէ եղան ազգն Փռանկաց,
ոչ երբէք երեւեցաւ նշան բարւոք և կամ՝ ու-
րախութեան, այլ բարկութեան և կատա-
րածի և աւերման և քակտելոյ աշխարհին,
մահու և կոտորածի, սովոյ և սատակութեան։

ՇԿԳ. Յայսմ՝ ամի եղեւ սով սաստիկ ընդ
ամենայն աշխարհն Միջագետաց. և 'ի քաղաքն
Ուռհայ եղեւ մեծ նեղութիւն, վասն զի
սարքն ողջոյն ոչ եկն անձրեւ 'ի վերայ անդաս-
տանայն, և արգելաւ ցօղ յերկնից, և ցա-
մաքեցաւ երկիր 'ի ջրոյ, չորացան ծառք և այ-
գիք, խցան աղբեւրք ջրոց, և յերեւաց սո-
վոյն մեռան բազումք 'ի քաղաքն Ուռհայ. և
զոր լուաք 'ի Սամարիա յաւուրս մարգարէին
Եղիսէի, այնպէս եղեւ 'ի քաղաքն Ուռհայ։
Զի կին (198) ամն 'ի հաւատացելոյն Հռոմոց
զորդայն իւր եփեալ և կերաւ. Նոյնպէս և
այլազգի Տաճիկ ամն առ վտանգի սովոյն ե-
կեր զկին իւր, վասն զի զզօրութիւն հացին
բեկեալ էր Աստուած, ուտէին և ոչ յագե-
նային. և բազումք ասացին եթէ այս Աս-
տուծոյ է դատաստանս վասն անիրաւ մա-
հուն Թորոս Կուրապաղատին, որք խաչով

և Աւետարանով երդուան նմա, և դարձեալ ուրացեալք լինէին, և սպանին զնա չարաչար, և զգլուխն 'ի ձող ցցեալ բազում հայհոյութեամբ, և ձգեալ զնա առաջի եկեղեցւոյն որ առ'ի Փրկիչ, զոր շինեաց սուրբ առաքեալն Թադէոս, և վասն այսորիկ էած տէր Աստուած զնեղութիւնս զայս 'ի վերայ տանն Աբգարու. և ամ յամէ ոչ դադարեցաւ բարկութիւնն Աստուծոյ 'ի քաղաքէն Ուռհայոյ:

ԾԿԴ. Իսկ 'ի բարձրանալ Թուականութեանս Հայոց յամս ՇԽԹ (1100—1101) եղեւ լռութիւն հացի ընդ ամենայն արարածս, և 'ի յՈւռհա անչափ սաստութիւն ցորենոյ և գարւոյ, որ մոռացան զառաջին նեղութիւնն, վասն զի մի մոթն հարիւր մոթ արար և լցան, և ամենայն (ծառք եղեն) պտղաբերք, և աղբիւրք փոխեցին զջուրս իւրեանց. և յագեցան մարդ և անասուն: Յայսմ ամի մեռաւ Կոստանդին որդի Ռուբենայ (199):

ԾԿԵ. Յայսմ ամի Կոնդոսփրէ տուկն Ֆռանկաց գնացեալ զօրօքն 'ի քաղաքն որ ասի Կեսարիա Փիլիպպեայ, որ է 'ի վերայ ծովուն Ովկիանոսի, և ելին առ նա իշխանքն Տաճկաց սիրոյ աղագաւ, և բերին կերակուրս և արկին սեղանս առաջի նորա. և նա էառ

եկեր անպատրաստութեամբ, և կերակուրըն դեղած էր մահաբեր դեղօք. և զկնի սակաւ աւուրց մեռաւ տուկն Կոնդոփրէ և քառասուն այր ընդ նմա, և թաղեցին զնա 'ի քաղաքն Երուսաղէմ առաջի սրբոյ Գողգոթային, վասն զի յայսմ աւուրքս անդ էր: Եւ յայնժամ յուղարկեցին խընդրակ եղբօրն իւրոյ Պաղտինին՝ որ էր 'ի քաղաքն Ուռհայ, և բերեալ զնա՝ տան ընդ սուրբ քաղաքն Երուսաղէմ Պաղտոնոյն: Եւ Տանգրի յարուցեալ գնաց 'ի քաղաքն Անտիոք առ կոմսն Փռանկաց Պեմունդն, վասն զի քեռի էր նմա:

ճԿԶ. Յայսմ ժամանակիս էր զօրապետն Հոռոմոց իշխանաց իշխանն 'ի քաղաքն Մարաշ, ընդ ձեռամբ Յունաց թագաւորին Ալէքսին, զոր ետուն յառաջին ամն իշխանքն Փռանկաց 'ի յԱլէքսն, և ուրացեալ եղեն, և զոր խոստացան՝ ոչ արարին: Եւ յարուցեալ մեծ կոմսն Փռանկաց Պեմունդն և Ռիչարդն քուրորդին նորա արար ժողովլ զզօրսն Փռանկաց և գային 'ի վերայ քաղաքին Մարաշայ, և պատերազմեալ 'ի վերայ իշխանաց իշխանին, որ ասէին նմա Թաթուլ. և խնդրէր 'ի նմանէ զքաղաքն Մարաշ, և բանակեալ բազում պատերազմաւ

'ի վերայ նորա։ Իսկ իշխանաց իշխանն առաջինն. համարելով զամենայն պատերազմն նորա, զի էր այր քաջ և պատերազմող, և էր բազում ազատօքն 'ի քաղաքն Մարաշ, եւ Պեմունդն կայր բանակեալ 'ի դաշտն Մարաշայ և հաւանեցայց զգաւառն իւր։

ՃԿԷ. Յայսմ ամի գայր բազում զօրօք ամիրայն Պարսից որ ասէին Դանիշման (200), որ էր տէր Սեւաստու և ամենայն Հոռոմոց աշխարհին. և խաղացեալ բազմութեամբ զօրօք և եկեալ 'ի վերայ Մելտենոյ քաղաքին, և տայր սաստիկ պատերազմ 'ի վերայ նորա։ Եւ իշխան քաղաքին որ ասէին Խաւրիլ, յուղարկեալ առ Պեմունդն, և կոչեաց զնա յօգնութիւն քաղաքին իւրոյ, և խոստացաւ տալ զՄելտենն 'ի ձեռն Պեմունդին։ Եւ յայնժամ Պեմունդն և Ռիճարդն յարուցեալ զօրօք գան 'ի վերայ Դանիշմանին. և լուաւ զայս Դանիշմանն, և առաքեաց զօրս ընդդէմ Ֆռանկ զօրացն 'ի դաշտն Մելտենոյ. և կացուցանէր քմինս 'ի բազում տեղիս, և ինքն առեալ զօրս բազումս գնաց ընդ առաջ նոցա։ Եւ ահա գայր Պեմունդն և Ռիճարդն անմտաբար, և ամենայն անպատրաստութեամբ լցեալք էին, և զօրք իւրեանց դատարկ թափուրք 'ի սարուց պատերազմէ, և գային

պաճուճեալք՝ որպէս և կանայք զհետ մե-
ռելոյ. վասն զի զայրք պատերազմին պաշ-
տօնեայք ՚նոցա ունէին, և պատերազմողք
ունայնացեալք կային որպէս զգերեալս. Եւ
յանկարծակի հեղձան զօրք Դանիշմանին ՚ի
վերայ Փռանկ զօրացն, և եղեւ պատերազմ
սաստիկ յայնմ աւուր, և եղեւ կոտորումն
ամենայն զօրացն Փռանկաց և Հայոց. և
կալան զՊեմունդն և զՌիշարդն ծառայ. և
սպանան յայսմ պատերազմիս երկու եպիսկո-
պոսք ՚ի Հայոց, Կիւրիանոս Անտիոքայ ե-
պիսկոպոսն և Գրիգորէս Մարաշայ եպիս-
կոպոսն որք էին զհետ Պեմնդին, զի յոյժ
մեծարէր զնոսա. և լուեալ զհամբաւս այս՝
դողաց սասանելով ամենայն տունն քրիստո-
նէից, և ուրախացեալ ամենայն ազգն Պար-
սից, վասն զի զնա գիտէին յանուանէ թա-
գաւոր Փռանկաց, և յանուանէ նորա դո-
ղայր ամենայն տունն Խորասանայ։ Իսկ լու-
եալ զայս Պաղտնոյն կոմսն Ուռհայոյ և ամե-
նայն ազգն Փռանկաց որք յԱնտիոք, վարեցան
զհետ Դանիշմանին. և Դանիշմանն առեալ
զՊեմունդն և զՌիշարդն և երկաթի կա-
պանօք տարաւ ՚ի Նիկսարն։ Իսկ լուեալ զայս
Պաղտնոյն՝ դարձաւ յՈւռհայ, և տայր զՈւռ-
հայ միւս Պաղտնոյն որ ասի Տպօրկ (Տիւ—

Պուրկ)․ որ էր յառաջագոյն ճորտ Պեմբրոքեա Նա ինքն չարչարեալ զԽուհայ, և առեալ բազում գանձս ոսկւոյ և արծաթոյ, և գնաց Աերուսաղէմ յաթոռ եղբօր իւրոյ Կոնդոմիրէի, և թագաւորեաց ՚ի վերայ Երուսաղէմի. և Տանգրի եկեալ Անտիոք որպէս ասացաք։ Արդ այս այսպէս գործեցաւ ընդ զօրսն Փռանկաց վասն գործոց մեղաց, զի թողին զուղղորդ ճանապարհն Աստուծոյ, և սկսան գնալ ընդ ճանապարհն մեղաց զորս ոչ հրամայեաց նոցա Աստուած, և ամենայն անիրաւութեամբ և անառակ գնացին մառայան պղծութեանս Տեառն, և զոր ոչ կամէր Աստուած՝ զայն կամեցան նոքա։ Իսկ Աստուած ղառաջին օգնականութիւն և զյաղթութիւնն եբարձ ՚ի նոցանէ, որպէս եբարձ ՚ի բանակէն որդւոցն Իսրայէլի։ Եւ ահա այս առաջին կոտորումն զօրացն Փռանկաց՝ որ եղեւ աստ։ Յառաջ միտ դիք և մի՛ ձանձրանայք։

ՃԿԸ․ Յայսմ ամի զօրաժողով արար ամիրայն Պարսից Աւգման որդի Արդուխին, որ էր այր քաջ և արիւնարբու, և գայր բազում զօրօք ՚ի քաղաքն որ ասի Արուճ, և արար ապստամբ զամենայն երկիրն։ Եւ լուեալ զայս կոմսն Պաղտնոյն Տոլօրկ և

կոմսն Արճոյ որ ասի Փուչէր (Փուլչէր), գնացին 'ի վերայ Թուրքին, և 'ի ձեռն անպատրաստութեան (201) իւրեանց եղեն պարտեալք, և սաստիկ պատերազմաւ յաղթեաց Թուրքն Փռանկին, և արարին սաստիկ կոտորած զզօրսն Փռանկաց և Հայոց որք էին զհետ նոցա. և սպանաւ կոմսն Արճոյ Փուչէրն՝ այր քաջ և հզօր և սուրբ՝ 'ի մեղաց մարմնոյ, և կոմսն Պաղտին երեք առամբք անկանէր 'ի կլայն Սևռհայոյ, և կայր յուղագին մարմնով. Եւ եկեալ իշխանք քաղաքին իջուցին զնա 'ի քաղաքն, և տարան զնա յաթոռ իւր: Եւ զկնի երեք աւուրց յարուցեալ գնաց յԱնտիոք 'ի խնդիր զօրաց, և բանակն այլազգեաց պատերազմէր 'ի վերայ կլային Արճոյ, վասն զի ամենայն քրիստոնեայքն որ անդ էին՝ 'ի կլայն ժողովեցան: Էր անդ և Պայլիոսն (202) Սևռհայոյ. և քաղաքն Արուճ եղեւ ընդ Թուրքն միաբան: Եւ զկնի քսան և հինգ աւուր գայր Պաղտին և վեց հարիւր ձիաւոր ընդ նմա և հետեւակս եւթն հարիւր, և արարին հալածականս զանօրէն բանակն Պարսից, և քաղաքն Արուճ ոչ եկն 'ի հաւանութիւն: Յայնժամ դարձաւ Փռանկն 'ի վերայ քաղաքին Արճոյ, և զամենայն բազմութիւն քա-

զաքին կատարեաց սրով. և արարին աւար զամենայն քաղաքն առ հասարակ, մանկունս և աղջկունս և զկանայս անհամար եարկ 'ի քաղաքն Ուռհայ, և լցաւ գերութեամբ Անտիոք և ամենայն տունն Փռանկաց, եւ լցաւ արեամբ ամենայն քաղաքն։

ՃԿԹ. Յայսմ ամի եղեւ չորրորդ նշան կարմրութեան 'ի հիւսիսային կողմանէ ահաւոր և հրաշալի առաւել քան զառաջինսն, 'ի գոյն արեան երեւեալ լինէր. եւ դարձեալ սեւացաւ։ Եւ այս չորրորդ նշանացն լուսին փուլ հանդիպէր հանապազ. և այս նշանս նշան էր բարկութեան 'ի վերայ քրիստոնէից ըստ մարգարէին Երեմիայի որ ասէր՝ եթէ «Յերեսաց հիւսիսոյ բորբոքեսցի բարկութիւնն». որ եղեւ իսկ անհաս բարկութիւնն։

ՃՀ. Դարձեալ 'ի թուականութեանն Հայոց յամի ՇԾ (1101—1102). եղեւ ահաւոր և հրաշալի նշան 'ի սուրբ քաղաքն Երուսաղէմ. վասն զի սովորական էր վառման լուսոյ սուրբ գերեզմանին Քրիստոսի Աստուծոյ մերոյ, արգելեալ եղեւ, ոչ վառեցաւ յաւուր շաբաթու, այլ միայն կանթեղք առանց վառման. և կացեալ մինչեւ 'ի միաշաբաթին կիւրակէին, և ապա վառեալ

լով զնայր յարեւելս, և դարձաւ 'ի սեւու-թիւն. և ասացին զնշանս զայս՝ նշան է արեան-հեղութեան քրիստոնէից, որ և եղեւ իսկ։ Արդ ահա յօրէ յորմէ ելան ազգն Փռանկաց, ոչ երբէք երեւեցաւ նշան բարւոք և կամ՝ ու-րախութեան, այլ բարկութեան և կոտո-րածի և աւերման և քակտելոյ աշխարհին, մահու և կոտորածի, սովոյ և սատակութեան։

ՃԿԳ. Յայսմ՝ ամի եղեւ սով սաստիկ ընդ-ամենայն աշխարհն Միջագետաց. և 'ի քաղաքն Ուռհայ եղեւ մեծ նեղութիւն, վասն զի տարին ողջոյն ոչ եկն անձրեւ 'ի վերայ անդաս-տանայն, և արգելաւ ցօղ յերկնից, և ցա-մաքեցաւ երկիր 'ի ջրոյ, չորացան ծառք և այ-գիք, խցան աղբեւրք ջրոց, և յերեսաց սո-վոյն մեռան բազումք 'ի քաղաքն Ուռհայ. և զոր լուաք 'ի Սամիրիա յաւուրս մարգարէին Եղիայեայ, այնպէս եղեւ 'ի քաղաքն Ուռհայ։ Զի կին (198) ումն 'ի հաւատացելոցն Հոռոմոց զորդայն իւր եփեալ և կերաւ. նոյնպէս և այլազգի Տաճիկ ումն առ վտանգի սովոյն ե-կեր զկին իւր, վասն զի զզօրութիւն հացին բեկեալ էր Աստուած, ուտէին և ոչ յագե-նային. և բազումք ասացին եթէ այս Աս-տուծոյ է դատաստանս վասն անիրաւ մա-հուն Թորոս Կուրապաղատին, որք խաչով

և Աւետարանով երդուան նմա, և դարձեալ ուրացեալք լինէին, և սպանին զնա չարաչար, և զգլուխն 'ի ձող ցցեալ բազում հայհոյութեամբ, և ձգեալ զնա առաջի եկեղեցւոյն որ առ Փրկիչ, զոր շինեաց սուրբ Առաքելայն Թադէոս, և վասն այսորիկ էած տէր Աստուած զնեղութիւնս զայս 'ի վերայ տանն Աբգարու. և ամ յամէ ոչ դադարեցաւ բարկութիւնն Աստուծոյ 'ի քաղաքէն Ուռհայոյ:

ՃԿԴ. Իսկ 'ի բարձրանալ Թուականութեանս Հայոց յամն ՇԽԹ (1100–1101) եղեւ լիութիւն հացի ընդ ամենայն արարածըս, և 'ի յՈւռհայ անչափ առատութիւն ցորենոյ և գարւոյ, որ մոռացան զառաջին նեղութիւնն, վասն զի մի մոլթն հարիւր մոլթ արար և լցան, և ամենայն (ծառք եղեն) պտղաբերք, և աղբիւրք փորեցին զջուրս իւրեանց, և յագեցան մարդ և անասուն: Յայսմ ամի մեռաւ Կոստանդին որդի Ռուբենայ (199):

ՃԿԵ. Յայսմ ամի Կոնդոփրէ տուկն Փռռանկաց գնացեալ զօրօքն 'ի քաղաքն որ ասի Կեսարիա Փիլիպպեայ, որ է 'ի վերայ ծովուն Ովկիանոսի, և եկին առ նա իշխանքն Տաճկաց սիրոյ աղագաւ, և բերին կերակուրս և արկին սեղանս առաջի նորա. և նա էառ-

եկեր անպատրաստութեամբ, և կերակուրքն դեղած էր մահաբեր դեղօք. և զկնի սակաւ աւուրց մեռաւ տուկն Կոնդոփրէ և քառասուն այր ընդ նմա, և թաղեցին զնա 'ի քաղաքն Երուսաղէմ առաջի սրբոյ Գողգոթային, վասն զի յայսմ աւուրքս անդ էր: Եւ յայնժամ յուղարկեցին խնդրակ եղբօրն իւրոյ Պաղտնին՝ որ էր 'ի քաղաքն Ուռհայ, և բերեալ զնա՝ տան ըզսուրբ քաղաքն Երուսաղէմ Պաղտնոյն: Եւ Տանկրի յարուցեալ գնաց 'ի քաղաքն Անտիոք առ կոմսն Ֆռանկաց Պեմունդն, վասն զի քեռի էր նմա:

ՃԿԶ. Յայսմ ժամանակիս էր զօրավարն Հոռոմոց իշխանաց իշխանն 'ի քաղաքն Մարաշ, ընդ ձեռամբ Յունաց թագաւորին Ալէքսին, զոր եառուն յառաջին ամն իշխանքն Ֆռանկաց 'ի յԱլէքսն, և ուրացեալ եղեն, և զոր խոստացան՝ ոչ արարին: Եւ յարուցեալ մեծ կոմսն Ֆռանկաց Պեմունդն և Ռիչարդն քուրորդին նորա արար ժողով զզօրսն Ֆռանկաց և գային 'ի վերայ քաղաքին Մարաշայ, և պատերազմեալ 'ի վերայ իշխանաց իշխանին, որ ասէին նմա Թաթուլ. և խնդրէր 'ի նմանէ զքաղաքն Մարաշ, և բանակեալ բազում պատերազմաւ

'ի վերայ նորա։ Իսկ իշխանաց իշխանն առ ոչինչ համարելով զամենայն պատերազմն նորա, զի էր այր քաջ և պատերազմող, և էր բազում ազատօքն 'ի քաղաքն Մարաշ, եւ Պեմունդն կայր բանակեալ 'ի դաշտն Մարաշայ և հաւանեցոյց զզաւառն իւր։

ՃԿԵ. Յայսմ ամի գայր բազում զօրօք ամիրայն Պարսից որ ասէին Դանիշման (200), որ էր տէր Սեւաստու և ամենայն Հոռոմոց աշխարհին. և խաղացեալ բազմութեամբ զօրօք և եկեալ 'ի վերայ Մելտենոյ քաղաքին, և տայր սաստիկ պատերազմ 'ի վերայ նորա։ Եւ իշխան քաղաքին որ ասէին Խաւրիլ, յուղարկեալ առ Պեմունդն, և կոչեաց զնա յօգնութիւն քաղաքին իւրոյ, և խոստացաւ տալ զՄելտեն 'ի ձեռն Պեմնդին։ Եւ յայնժամ Պեմունդն և Ռիջարդն յարուցեալ զօրօք գան 'ի վերայ Դանիշմանին. և լուաւ զայս Դանիշմանն, և առաքեաց զօրս ընդդէմ Ֆռանկ զօրայն 'ի դաշտն Մելտենոյ, և կացուցանէր քմինս 'ի բազում տեղիս, և ինքն առեալ զօրս բազումս գնաց ընդ առաջ նոցա։ Եւ ահա գայր Պեմունդն և Ռիջարդն անմտաբար, և ամենայն անպատրաստութեամբ լցեալք էին, և զօրք իւրեանց դատարկ թափուրք 'ի սարուց պատերազմէ, և գային

պաճուճեալք՝ որպէս և կանայք զհետ մե-ռելոյ. վասն զի զայրք պատերազմին պաշ-տօնեայք՝ նոցա ունէին, և պատերազմողք ունայնացեալք կային որպէս զգերեալս. եւ յանկարծակի հեղան զօրք Դանիշմանին ՚ի վերայ Փռանկ զօրացն, և եղեւ պատերազմ սաստիկ յայնմ աւուր, և եղեւ կոտորումն ամենայն զօրացն Փռանկաց և Հայոց. և կալան զՊեմունդն և զՌիչարդն ծառայ. և սպանան յայսմ պատերազմիս երկու եպիսկո-պոսք ՚ի Հայոց, Կիւրիանոս Անտիոքայ ե-պիսկոպոսն և Գրիգորէս Մարաշայ եպիս-կոպոսն որք էին զհետ Պեմնդին, զի յոյժ մեծարէր զնոսա. և լուեալ զհամբաւս այս՝ դողաց սասանելով ամենայն տունն քրիստո-նէից, և ուրախացեալ ամենայն ազգն Պար-սից, վասն զի զնա գիտէին յանուանէ թա-գաւոր Փռանկաց, և յանուանէ նորա դո-ղայր ամենայն տունն Խորասանայ։ Եւ լու-եալ զայս Պաղտնոյն կոմսն Ուռհայոյ և ամե-նայն ազգն Փռանկաց որք յԱնտիոք, վարեցան զհետ Դանիշմանին. և Դանիշմանն առեալ զՊեմունդն և զՌիչարդն և երկաթի կա-պանօք տարաւ ՚ի Նիկիսարն։ Եւ լուեալ զայս Պաղտնոյն՝ դարձաւ յՈւռհայ, և տայր զՈւռ-հայ միւս Պաղտնոյն որ ասի Տպօրկ (Տու—

Պուրկ)․ որ էր յառաջագոյն ճորտ Պեմողինս Եւ ինքն չարչարեալ զԼեւոնայ, և առեալ բազում գանձս ոսկւոյ և արծաթոյ, և գնաց Երուսաղէմ յաթոռ եղբօր իւրոյ Կոնդոմբրէի, և թագաւորեաց 'ի վերայ Երուսաղէմի․ և Տանգրի եկեալ Անտիոք որպէս տասյոյք ։ Որդ այս այսպէս գործեցաւ․ ընդ զօրսն Փռանկաց վասն գործոց մեղաց, զի թողին զուղղորդ ճանապարհն Աստուծոյ, և սկսան գնալ ընդ ճանապարհն մեղաց զորս ոչ հրամայեաց նոցա Աստուած, և ամենայն անիրաւութեամբ և անառակ գնացիւք մոռացան զպատուիրանս Տեառն, և զոր ոչ կամէր Աստուած՝ զայն կամեցան նոքա ։ Իսկ Աստուած զառաջին օգնականութիւն և զյաղթութիւնն եբարձ 'ի նոցանէ, որպէս եբարձ 'ի բանակէն որդւոցն Իսրայէլի ։ Եւ ահա այս առաջին կոտորումն զօրացն Փռանկաց՝ որ եղեւ աստ ։ Յառաջ միոյ դէք և մի՛ ձանձրանայք ։

ՃԿԸ․ Յայսմ ամի զօրաժողով արար ամիրայն Պարսից Սուգման որդի Արդուխին, որ էր այր քաջ և արիւնարբու, և գայր բազում զօրօք 'ի քաղաքն որ ասի Սրուճ, և արար ասպատակ զամենայն երկիրն ։ Եւ լուեալ զայս կոմսն Պաղտինոյն Տպօրկ և

կոմսն Սրճոյ որ ասի Փուչէր (Ֆուլչէր), գնացին ՚ի վերայ Թուրքին, և ՚ի ձեռն անպատրաստութեան (201) իւրեանց եղեն պարտեալք, և սաստիկ պատերազմաւ յաղթեաց Թուրքն Ֆռանկին, և առարին սաստիկ կոտորածս զզօրսն Ֆռանկաց և Հայոց որք էին զհետ նոցա. և սպանաւ կոմսն Սրճոյ Փուչէրն՝ այր քաջ և հզօր և սուրբ՝ ՚ի մեղաց մարմնոյ, և կոմսն Պաղտին երեք արամբք անկանէր ՚ի կլայն Ուռհայոյ, և կայր լալագին մարմնով։ Եւ եկեալ իշխանք քաղաքին իջուցին զնա ՚ի քաղաքն, և տարան զնա յաթոռ իւր։ Եւ զկնի երեք աւուրց յարուցեալ գնաց յԱնտիոք ՚ի խնդիր զօրաց, և բանակն այլազգեաց պատերազմէր ՚ի վերայ կլային Սրճոյ, վասն զի ամենայն քրիստոնեայքն որ անդ էին՝ ՚ի կլայն ժողովեցան։ Էր անդ և Պապիոսն (202) Ուռհայոյ. և քաղաքն Սրուճ եղեւ ընդ Թուրքն միաբան։ Եւ զկնի քսան և հինգ աւուր գայր Պաղտին և վեց հարիւր ձիաւոր ընդ նմա և հետեւակս եւթն հարիւր, և առարին հալածականս զանօրէն բանակն Պարսից, և քաղաքն Սրուճ ոչ եկն ՚ի հաւանութիւն։ Յայնժամ դարձաւ Ֆռանկն ՚ի վերայ քաղաքին Սրճոյ, և զամենայն բազմութիւն քա-

զաքին կոտորեաց սրով. և աւարին ալափ զամենայն քաղաքն առ հասարակ, մանկունս և աղջկունս և զկանայս անհամար եարկ 'ի քաղաքն Ուռհայ, և լցաւ գերութեամբ Անտիոք և ամենայն տունն Փռանկաց, եւ լցաւ արեամբ ամենայն քաղաքն։

ՃԿԹ. Յայսմ ամի եղեւ չորրորդ նշան կարմրութեան 'ի հիւսիսային կողմանէ ահաւոր և հրաշալի առաւել քան զառաջինսըն, 'ի գոյն արեան երեւեալ լինէր. եւ դարձեալ սեւացաւ։ Եւ այս չորրորդ նշանացն լուսնին փուլ հանդիպէր հանապազ. և այս նշանս նշան էր բարկութեան 'ի վերայ քրիստոնէից ըստ մարգարէին Երեմիայի որ ասէր՝ եթէ «Յերեսաց հիւսիսոյ բորբոքեսցի բարկութիւնն». որ եղեւ իսկ անհաս բարկութիւնն։

ՃՀ. Դարձեալ 'ի թուականութեանն Հայոց յամի ՇԾ (1101—1102). եղեւ ահաւոր և հրաշալի նշան 'ի սուրբ քաղաքն Երուսաղէմ. վասն զի սովորական էր վառման լուսոյ սուրբ գերեզմանին Քրիստոսի Աստուծոյ մերոյ, արգելեալ եղեւ, ոչ վառեցաւ յաւուր շաբաթու, այլ մնացին կանթեղք առանց վառման. և կացեալ մինչեւ 'ի միաշաբաթին կիւրակէին, և ապա վառեալ

լինէր յիններորդ ժամուն, և եղեւ հիա-ցումն ամենայն հաւատացելոց Քրիստոսի։ Եւ այս եղեւ զի ազգն Փռանկաց խոտորե-ցան 'ի Ճանապարհս ձախակողմեանս, եւ թողին զբուն ուղղութիւն առ յաջակողմեան Ճանապարհին՝ զմեղացն Ճաշակելով զՃաշա-կըն բաժակին որ լցեալ իսկ էր մրրով դառ-նութեան, նա եւս պաշտօնեայք սրբոյ Ե-կեղեցւոյ 'ի տիղմն թաւալելով առանց յագ-ման։ Եւ այսպիսի փորուքս ոչ գարշէին յա-մենայն մեղաց. և 'ի վերայ այսր ամենայնի զկանայս կացուցանէին սպասաւոր սրբոյ գե-րեզմանին Աստուծոյ; և ամենայն ուխտի-ցըն (սուրբ տեղեաց) որ էին յԵրուսաղէմ. և էին այն ամենայն մեղք մեծամեծք առա-ջի Աստուծոյ. զՀայ և զՀոռոմ, զԱսորի և զՎրացի մերժեցին յամենայն ուխտիցն (203)։ Եւ յորժամ տեսին զայս ահաւոր նը-շանս յանդիմանութեան ազգն Փռանկաց, 'ի բաց մերժեցին զկանայս 'ի սպասաւորու-թենէ սուրբ ուխտիցն որ յԵրուսաղէմ, և զամենայն ազգ կացուցանէին յիւր ու-խտին։ Եւ սկսան յաղօթս կալ հինգ ազգ հա-ւատացելոցն, և լուաւ Աստուած աղօթից նոցա, և փառաւոր լինէր կանթեղն սուրբ գերեզմանին Աստուծոյ 'ի յօրն կիւրակէին,

*որ ոչ երբէք լեալ էր այնպէս , այլ սկիզբն վառման լուսոյ սուրբ Գերեզմանին միշտ և հանապազօր 'ի յաւուր շաբաթու լինէր 'ի մետասան ժամին* (204) ։



# ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

ՃՀԱ. Ի յամի հինգ հարիւրերորդի և յիսներորդի (205) ՚ի գիրս աստ ժողովեցաք ըզ- գործ ժամանակաց հարիւր և յիսնից ամաց. Եւ յայսմ՝ տեղւոջ լռեալ դադարեցաք ՚ի յա- րուեստաւոր (206) քննութենէս մերմէ, վասն զի այլոց ոմանց Թողուք զայս մարտ մտաց և պայքարումն խորհրդոց, և յետ մեր ելա- նելոյ տեղի տալով հանճարեղացն և իմաս- տուն արուեստաւոր քննողաց, ըստ բանի սրբոյն Առաքելոյն Պօղոսի որ ասէ. «Եթէ ոք յատենի ելցէ, առաջինն լռեսցէ»: Եւ այս եղեւ ՚ի հայրապետութեանն Հայոց տանն տէր Գրիգորիսի և տեառն Բարսղի, յորժամ եղեւ առաջին սկիզբն երկրպա- գութեանս (207): Եւ ՚ի հայրապետութեանն Հռոմոց ՚ի Կոստանդինուպօլիս՝ Նիկոլայ.

և 'ի յՆորոգչաց հայրապետութեանն՝ Յով-
հաննու, և յԵրուսաղէմայ հայրապետու-
թեանն Սիմէոնի, և 'ի յԱղէքսանդրիոյ հայ-
րապետութեանն Յովհաննու, և 'ի յԱսո-
րոց տանն հայրապետութեանն՝ Աթանասի։
Եւ 'ի յԱդամայ էին ամք վեց հազար և վեց
հարիւր և տասն։ Եւ արդ. զամս տասն ոչ
ինչ արարաք հոգս վասն այս ժամանակա-
գրութեանս, և թողեալ էաք 'ի բացեայ զա-
րուեստ գրչութեանցս. և տեսանելով մեր
հանապազօր զաստուածասաստ բարկու-
թիւնս հեղեալ 'ի վերայ քրիստոնէից, և
ամ յամէ անկեալ գլորեալ լինէր զօրու-
թիւն ղօրաց և հաւատացելոց, և տեսաք
զի ոչ ոք ունէր 'ի միտ զայս խնդրել, կամ
'ի գիրս հաւաքել, զի ապագայիցն յիշատակ
լիցի այս կատարածս և նեղութիւնս առ-
քարի ժամանակն, յորժամ տայէ Տէր Աս-
տուած զխոստացեալսն յետին ժամանակին,
յորժամ տացէ Աստուած հաւատացելոց
զժամանակն՝ որ լի իսկ իցէ ամենայն ու-
րախութեամբ։ Եւ ապա մեր յառաջ եկեալ
յայնժամ բազում ուրախութեամբ որպէս
թէ յԱստուծոյ հրամայեցաւ (208) ինձ զայս
այսպէս 'ի գիր հաւաքեալ և ապագայիցն
թողուլ զայս յիշատակս։ Եւ թէպէտ ոչ է

սա հոգևոր հմտութեամբ զարդարեալ, կամ արուեստ հոգեւոր, կամ՝ շառաւեղս առաքինութեն ինչ, այլ խրատ Տեառն զոր վասն մեղաց ազգի յանցանօք 'ի բարկութիւն շարժեցաք զՏէր Աստուած 'ի վերայ մեր, և 'ի նմանէ առաք զխրատս զայս գաւազանաւն նորա։

Նա արդ պարտ և արժան է ոչ մոռանալ զսա որք կենդանիքս եմք 'ի ժամանակիս, այլ գրել յիշատակել զսա ծնանելոցն, եթէ այս է մեղաց պտուղն զոր ցանեցին հարքն մեր և եւթնապատիկ ժողովեցին։ Նա վասն այսորիկ ես Մատթէոս՝ որ անարժան եմ, ողորմութեամբն Աստուծոյ զամս բազումս քաջաջան քննութեամբ կացի և արիաբար մտօք 'ի քաղաքս Միջագետաց Ուռհայ, ժողովեալ գրեցաք մինչեւ ցայս վայր, և զամօք երեմնից դեռեւս առաջի կայ 'ի գրի հաւաքել։ Նա արդ անհաս այս վարդապետացս կորովի և գիտնականաց էր գործ, և ոչ մերում տկարութեանցս և կամ՝ սակաւ գիտութեանցս։ Բայց այս սովորութիւն է Աստուծոյ, զի 'ի տկարաց և 'ի նուաղից գործ ինչ պիտանացու պահանջէ. որպէս տեսանեմք զերամն մեղուացըն և զարմանամք ընդ դաստապետութիւնսըն նոցա, եթէ որպէս յոչինչ և 'ի թեթեւ-

մարմնոյն ամենայն մարդիկ յագենան քաղցրութեամբ նորա, և ՚ի պէտս որբոց մատչին գործք նորա, և առաջի թագաւորաց փառաւոր։ Ո՞ւ կամ մեռեալ որդւն որ գայ և կենդանանայ, և փառաւորովք իւրովք ՚ի գոյնս գոյնս զարդարէ զթագաւորս և զիշխանս, և ամենայն եկեղեցիք նովաւ հարըստանան պէսպէս զարդարանօք։ Նոյնպէս և տկարութիւնս մեր համարձակութիւն էառ, և առաջի հռետորաց և իմաստնոց հզօրաց և խորին հանճարեղաց և քաղաքիրթ քննողաց խօսեցաք զայս, և յանձին արարաք զմատենագրութիւնս մեր նոցա, վասն զի արկցեն ՚ի բովս և ՚ի քննութեան. և մեք ոչ ընդդիմանամք, վասն զի մերս ընդդէմ գիտնականաց ոչ ունի դիմադրութիւնըս։ Նոյնպէս և այն Թեթեւ Թռչունն, թէպէտ և ձայնովն ընդդիմանայ բազմաց, այլ մարմնովն տկարանայ, այն որ կոչի ծիծառն. սակայն նա ունի զմեր նմանութիւնըս առ զարմանալի գործ բնակութեան իւրոյ, թէ զիա՞րդ յոչինչոյ բնակութիւն կազմէ և ՚ի բարձունս առանց հիման կառուցանէ, շաղախաբեր և շիղաբեր վաստակս հնարով հնարէ, և ամրութիւնս անդադարըս հաստատէ, զի որդւոց իւրոց զնա տա-

ցէ ժառանգութիւնս, զոր և այլ յաղթանդամ թռչնոց անհնար է զայն գործել, արծուոյ սանձ և նմանեաց նորա. վասն զի այլ քաջութիւնս մեծաւ կարողութեամբ ունեն հաւքն քաջաթռիչք, բայց զայն զոր գործեաց թեթև թռչունն՝ զայն ոչ կարեն առնել (209)։ Արդ այսպիսի օրինակաւ ըս հանճարեղք և գիտնականք զամենայն քննութիւնս հին և նոր կտակարանացն Աստուծոյ կարող են առնել և ի յայտ բերել ահաւոր և լուսաւոր քննութեամբ, բայց զայս հաւաստապէս ասացից և առանց երկբայութեան (210), վասն այսորիկ ի մէնջ քըննեալ գծագրեցաք, անհնար է եթէ այլ ոք կարող լինի զայս գտանել և կամ հաւաքումըն առնել միահամուռ ազգաց և թագաւորաց, հայրապետաց և իշխանաց զամենայն ժամանակս թուականութեամբ ի գիրըս հաւաքել, վասն զի փճարեալ հատան առաջինքն, որք ականատեսք էին ամենայն ժամանակացն։ Արդ զայս ոչ ոք է կարող առնել զոր ինչ մեք արարաք, զի զոր ինչ գրեցաք՝ գրեցաւ, զի զամս հնգետասան ունէաք զայս գործ քննութեանս. զոր ի մատենագրութիւնս ընթերցեալ գտանէաք զթուականութիւնս ժամանակացն ի յիշա-

տակարանս գրոյն, և ընդ ծերոն 'ի քննութիւն մտեալ դեգերեալ անդադար քննութեամբ և հաւաքեալ գրեցաք 'ի գիրս զայս ինչ:

Եւ արդ ես Մատթէոս այսու եղէ ցանկալէր, և կամեցայ դառնալ ընդ նոյն բնաբան պոլոտայն, զոր օրինակ ոք 'ի բազում ժամանակաց շրջեալ 'ի վերայ համատարած մեծի ծովուն Ովկիանոսի. և ցնորեալ բազում նեղութեամբ, և զկնի ալեկոծութեանցն ելթիցէ 'ի տուննս լուր խաղաղութեամբ և զմտաւ ածեալ յիշեսցէ զոր բազում չահիցն, յայնժամ ոչինչ 'ի յանցեալ նեղութիւնցն մտաբերէ, և առ ոչինչ համարելով զամենայն ինչսն զոր 'ի ծովուն նաւակոծեցաւ, այլ փութով մեծաւ փափագանօք դառնալ 'ի նոյն ծովագնացութիւնս: Այսպիսի օրինակաւս և մեք դարձցուք 'ի մեր թողեալ կէս գրոյն, և գտաք զընաբան զառաջինն զոր թողեալ էաք, յորժամ էր 'ի յամն ՇԾ. (1101—1102): Եւ արդ սկսաք ասել այլ ևս ամաց քսան և եօթանց(211). և երեսուն՝ յեցի վճարումն գրոցս, վասն զի անձեայց թուականութիւնս Հայոց բազումնեղութեամբ. և 'ի նոյն հայրապետութեան տեառն Գրիգորիսի և 'ի թագաւորութեանս Յունաց Ա-

լէքսին դարձաք յաժարական մտօք, և սկսա-նիմք առ ՚ի պատմել զկատարածս և զնեղու-թիւնս չար ժամանակիս այսորիկ: Եւ ոչ արա-րաք զայս ՚ի պէտս մնափառութեանց՝ որպէս կարծել ումանց, այլ ՚ի յիշատակս և ՚ի սաս-տումն առ յապա ժամանակին. և ոչ ինչ ըղ-մտաւ ածի զտկարութիւն մտաց և զան-կարողութիւն ՚ի գիտութենէ հմտութեանց. այլ որք կատարեալք են գիտութեամբ հին և նոր կտակարանացն Աստուծոյ, նոքա են կարողք քերականական արուեստիւք ըղ-քանան սրբել, և զամենայն սխալանս իմոց բանիցս պայծառացուցանել ըստ աստուա-ծատուր շնորհացն որ տուաւ նոցա: Իսկ մեք ըստ ախմար մերոյ գիտութեանս զայս քըն-նեալ մաքրութեամբ գրեցաք ՚ի բազում մա-տենագրութեանց (212) զորս գտաք վասն նե-ղութեանց ժամանակացս այսոցիկ, զոր ՚ի տե-ղիս տեղիս գրեալ և թողեալ էին զայն յի-րեանց յիշատակ. զոր և մեք ժողովեալ զայն ամենայն բազում հոգեբարձութեամբ. և լը-ւեցաք յայլոց ոմանց պատմականաց որք հա-սու էին ժամանակաց և նեղութեանց, և ական-ջալ հասեալ էին ՚ի վերայ ժամանակացն. և ըն-ծերս ունէաք խօսակարդութիւնս և քըն-նութիւնս որք անցեալ էին անցեալ ամացն.

ըստ բանի մարգարէին որ ասէ. «Հարցջիր դու ընդ հարսն՝ և ասասցեն քեզ, ընդ ծերսն՝ և պատմեսցեն քեզ»։ Արդ այսպիսի օրինակաւս անհանգիստ եղեալ մեր և զամենայն հոգս զբաղանաց թողեալ էաք, և զամենայն ցանկութիւնս արհամարհեալ էաք, և միշտ և հանապազ զայս ունէաք պայքարումն մտաց, զոր դարձեալ սկսաք երկրպագութեանց՝ ըստ երանելի վարդապետին Գրիգորի Նիւսացւոյ, որ ասէր. «Դարձեալ ես ծերունիս յասպարիսի»։ Ուրեմն և մեր մնացեալ այլոց ոմանց զայս քննել, և ահա տեսանէաք զամենեսեան հրաժարեալ ՚ի պատմագրութենէ ասորի. և տեսանէաք մեք զի ժամանակս գնալով գնայր. և հոսմունս և ծորմունս և զպակասութիւն մեզ ցուցանէին եւ ոչ կալ դադարման մարդկութեանս ՚ի վերայ երկրի, այլ զփոփոխմունս աստեացս ՚ի հանդերձեալն ՚ի յայտ բերէին. վասն զի անցաւոր են ամենայն և ժամանակ, այսպէս անցաւորք են ծնունդք նորա. և զոր օրինակ մշտնջենաւորք են հանդերձեալքն, այսպէս և անկատարածք են ծնունդք նորա. և երանի որք հանդիպեսցին այնմ ուրախութեանց. և երանի որք կերիցեն ճաշ յարքայութեանն Աստուծոյ։

ՃՀԲ. Յայսմ ամի յորժամ էր Թուականն Հայոց ՇԾ. (1101–1102) դարձաւ կոմսն Ֆռանկաց որ ասի Սէնճիլ, վասն զի յորժամ առին զսուրբ քաղաքն Երուսաղէմ, առեալ զգէնըն Քրիստոսի գնաց յաշխարհն Ֆռանկաց. և յորժամ լուան վասն նորա թէ զէնն Քրիստոսի ընդ նմա էր, դրդեալ եղեն ամենայն արարածք ընդ նմա։ Եւ յայսմ ամի դարձեալ և գայր 'ի վերայ Տրապօլսոյ քաղաքին, և զօրք պատերազմողք ընդ նմա տասն բիւր. և եկեալ 'ի Կոստանդինուպօլիս, և Թագաւորն Աղէքսն բազում ընծայս պարգևէր նմա, և անցուցանէր զնոսա ընդ Ովկիանոս։ Բայց գործ Յուդայի գործեաց ընդ նոսա, զի զամենայն երկիրն առաջի նոցա այրել հրով հրամայեաց՝ ընդ որ անցանէին զօրքն Ֆռանկաց, և ընդ անմարդաբնակ վայրս տանէին զնոսա. և որդեգրեաց զհացն 'ի նոցանէ, և արար սովալլուկ զնոսա, որ անձարեալ զերիվարսն ուտէին։ Եւ առաքեաց 'ի զօրսն Թուրքաց, և արար ահագին ժողովս 'ի վերայ նոցա. և եկեալ սուլտանն Խլիճ Ասլան և տուաւ պատերազմ յարոյց 'ի վերայ նոցա 'ի սահմանս քաղաքին Նիկիայու. և արար անթիւ կոտորածս զնոսա աւր իբրև հարիւր հազար. և Սէնճիլն երեք հարիւր

արամբք եղեւ փախստական. և անկանէր յԱնտիոք քաղաք. և այլ ամենայն բազմութիւնք զօրացն Փռանկաց սրով անցան, եւ կանայք և որդիք նոցա գնացին 'ի Պարսիկս 'ի գերութիւն: Այսպէս գործեցաւ վասն մեղաց, զի առ հասարակ սիրեցին զմեղաց ճանապարհն, և զԱստուծոյ ոչ ընկալան: Իսկ յայնժամ Տանգրի կոմսն Անտիոքայ բռնեաց զկոմսն Փռանկաց Ջոսլինն, և երկաթի կապանօք յուղարկեաց զնա 'ի քաղաքն որ ասի Մարուանդաւի (213). և զկնի աւուրց Փռանկաց պատրիարքն որ յԱնտիոք՝ և այլ քահանայք բարեխօսեցին առ Տանգրի, և արձակեաց զնա: Իսկ գնաց Ջոսլինն և արար ժողով 'ի վերայ Տռապօլոյ քաղաքին, և մեծաւ խստարով նստաւ 'ի վերայ նորա, և շինեաց քաղաք 'ի վերայ նորա:

Ի նոյն ժամանակին գայր բազում զօրօք մեծ կոմսն Փռանկաց որ ասի Պետեւլին (214), և խաղայր գայր ընդ աշխարհն Հոռոմայեցւոց և Յունաց երեսուն բիւր հեծելոց ընդ նմա, և հասանէր մեծաւ զօրութեամբ (215). և հպարտութեամբ խօսէր ընդ Թագաւորին Յունաց, և Եպարքոս կոչէր զնա, և ոչ անուն Թագաւորի տայր նմա, մանուկ գոլով իբրեւ ամաց քանից: Իսկ Թագաւորն

Ալէքսն և ամենայն տունն Յունաց ահաբեկ լինէին 'ի նմանէ: Եւ յայնժամ Թագաւորն Ալէքսն հանեալ առ կոմսն Պետրոսին զամենայն իշխանսն Յունաց, և մեծամեծ աղաչանօք էած զնա 'ի Կոստանդինուպօլիս, և արար Թագաւորն նմա մեծ ընդունելութիւն, և տուրս անչափ գանձուց պարգեւէր նմա և պատուովն [216] մեծածախիւք արար առաջի նորա, և բազում ծախիւք անցուցանէր զնա ընդ մեծն Ովկիանոս յաշխարհն Գամրոց, և տայր 'ի զօրայն Յունաց զկնի նորա: Եւ յայնմ վայրի սկիզբն արար նենգութեան Թագաւորն Յունաց, և հրամայեաց զօրապետաց իւրոց զի ընդ անմարդաբնակ տեղիս տարցեն զզօրսն Փռանկաց. յանջրդի վայրս կացուցանէին զնոսա աւուրս հնգետասան, և ոչինչ տեսանէին՝ բայց միայն անապատ չոր և դժար վայրս լերանց. և ջուր տեղեացն սպիտակ որպէս կրաջուր, և էր աղի: Եւ հրամայեաց Թագաւորն Ալէքսն կիր խառնել 'ի հացն, և զայն տայր ուտել նոցա, և լինէր այն մեղք մեծամեծք առաջի Աստուծոյ. և այնպէս սովեալ և նեղեալ լինէին աւուրս բազումս, և անկանէր հիւանդութիւն 'ի զօրսն Փռանկաց: Զայս այսպէս գործէր Թագաւորն Յունաց,

զի ոխացեալ էր ընդ Նոսա վասն առաջքին երդմանն ուրացութեան Նոցա, զոր երդուան Նմա և ոչ արարին։ Եւ այս յԱստուծոյ եղեւ, վասն զի 'ի զրկանս և յանիրաւութիւնս և յաւերս անողորմապէս վարեցան (Յոյնք) 'ի վերայ քրիստոնէից, վասն այսորիկ Թոյլ ետ Աստուած ազգաց անօրինացն գալ 'ի վերայ Նոցա, և առնել պատուհասակոծ վասն մեղաց։

ԾՀԳ. Յայնժամ Սուլտանն արեւմտից Խլիճ-Ասլանն լուեալ զգալ զօրացն Փռանկաց, գրեաց 'ի Սլիկիտարն (217) յամիրայն Դանիշմանին և յայլ ամիրայսն, և ահագին բազմութեամբ գայր 'ի վերայ Փռանկաց զօրացըն և հանդիպեցան միմեանց 'ի դաշտն որ ասի Օլօսի (218), և արարին պատերազմ ահագին զմեծ ժամ աւուրն, և լցաւ արեամբ դաշտն առհասարակ։ Եւ անձարեալ զօրքն Փռանկաց 'ի յօտար աշխարհին, և ոչ գըտանէին ելս իրացն, և գումարեալ դեգերէին որպէս զանասունք։ Եւ էր օրն այն օր մեծ և սոսկալի 'ի վերայ քրիստոնէից։ Եւ յայնժամ փախեաւ զօրավարն Յունաց։ Եւ տեսեալ Գետեւլինն զբեկումն զօրաց իւրոց՝ ելեալ 'ի լեառն մի, և այլազգին պատեալ լինէր զստորոտ լերինն։ Եւ

ահա անդ էր տեսանել զճայթիւնս աղեղանց, և ետես Պետեւրինն, և զթնդիւնս երիվարայն և զդողումն լերանցն, և այնու-կոտորումն էր զօրաց իւրոց. լայր դառնապէս. և 'ի սաստկանալ պատերազմին անձարեալ յամենայն կողմանց՝ փախեալ լինէր չորս հարիւր ձիաւորօք, և զայլ զօրսն առհասարակ կոտորեցին բիւրս երեսուն։ Եւ հասանէր կոմսն Ֆռանկաց Պետեւրինն 'ի քաղաքն Անտիոք, անկանէր առ Տանգրի, և անտի յարուցեալ գնաց 'ի սուրբ քաղաքն Երուսաղէմ։ Եւ զկնի աւուրց ինչ դարձաւ 'ի յաշխարհն Ֆռանկաց ուստի եկն, և երդուեալ սաստկապէս զի դարձցի 'ի վերայ Պարսից և առասցէ նոցա վրէժ-խնդրութիւնս, և թագաւորին Յունաց, վասն զի լցաւ ամենայն Պարսիկք 'ի գերութենէ զօրացն Պետեւրինին։

ԾՀԴ. Յայսմ ամի շարժեալ եղեւ ամենայն Եգիպտոս, և զօրաժողով լեալ ահագին բազմութեամբ և գան 'ի վերայ սուրբ քաղաքին Երուսաղէմ։ Յայնժամ թագաւորն Երուսաղէմայ Պաղտինն ելեալ սակաւ զօրօք 'ի պատերազմ ընդդէմ նոցա, և արարին փախստական զզօրսն Ֆռանկաց. փախեաւ Պաղտինն և անկանէր Երուսաղէմ։

Նա յայնմ աւուր սպանաւ կոմսն Տըլքոյ Կու-լեյմն Սանձաւէլ[219]. և Թագաւորն Պաղտին անկանէր 'ի Պալպաք քաղաք, և անտի գը-նաց Երուսաղէմ. Նա այլազգիքն մեծու-յաղթութեամբ դարձան 'ի քաղաքն իւ-րեանց Ասկաղոն.

ճհե. Դարձեալ 'ի թուականութեանն Հայոց ՇԾԱ (1102–1103). եղեւ շփոթումն մեծ և ահաւոր խառնակութեան հաւատոյ. Վա-սըն զի 'ի սուրբ Զատկէն եղեն մոլորեալք տասն ազգ հաւատացելոց, և Հայք և Սա-րիք միայն մնացին հաստատեալք. իսկ Հո-ռոմք և Փռանկք եղեն հետեւողք չար սեր-մանցն զոր սերմանեաց պիղծ հերետիկոսն Իռիոն որ արկանէր զտօմարն (զզատիկն) 'ի յապրիլի հինգ, և զլրումն լուսնին հանդիպե-ցուցանէր 'ի տօնն Ղազարու և յաւուր շա-բաթու, զոր Հայք և Սարիք և Եբրայեցիք արկանէին 'ի յապրիլի վեց, հանդիպեցու-ցանէին տօնի Ծաղկազարդին. Արդ. զայս տօմար պատճենիս կորեալ խափանեալ էր փիլիսոփայն Իռիոն, որ էր այր Հռոմայեցի. վասն զի յորժամ շարագրեցին զտօմար պատ-ճենիցն իւն և տասնեկի բոլորին, զնա 'ի մոռ ոչ կոչեցին այլ դասք իմաստասիրացն. և յա-ղագս այսորիկ մախացեալ նորա յայժ ընդ

նոսա , և եկեալ պաղտ առեալ զգրեանքն՝ և զվեցն հինգ արար , և զվերջինսն առաջինըս , որ համապատաղ ածէ ՚ի մոլորութիւն զառակաց յամենայն ինունն և հինգ ամ։ Եւ արդ այսպիսի պատճառանօք Յոյնք և Հռոմայեցիք լինին մոլորեալք յամենայն ինուն և հինգ ամ։ Զայս այսպէս կարգադրեաց Իրոն ՚ի յաւուրն Հռոմայեցւոց. վասն այսր պատճառի մեծ միաբանութիւն եղեւ ընդ Յոյնս և ընդ Հայս. սակայն ազգն Փռանկաց ոչ ինչ ունէին հոգս չխոլթանալ ընդ Հայս, բայց միայն Յոյնք ունէին մեծ վէճ և միաբանութիւն ընդ Հայս վասն սուրբ Զատկին։ Եւ Եգիպտոսք և ամենայն Կիւլիկէ և Սեւահայ ունէին սաստիկ պատերազմ ընդ Յոյնս վասն հաւատոյ , զի ջանային դարձուցանել յիւրեանց անհաստատ ասմանըն զՀայս , և այսպիսի ջանիւք և աշխատութեամբ (վիշտս) հաստուցանէին ազգին Հայոց , և ոչ կարացին շարժել զնոսա։ Սակայն Նորիկք որք Սեւահայ էին, ահաբէկ լինէին . դարձան ՚ի կողմն Յունաց և ուրացան զդաշինսն զոր ունէին ընդ Հայս ։

Եւ արդ յառաջագոյն եղեւ այսպիսի մոլորութիւն Յունաց ՚ի սուրբ Զատիկն Երուսաղէմ , ոչ լինէր փառաւորութիւն կանթեղաց . և յայնժամ այլազգին զամենայն հաւատա-

ցեալս աղօթականացն որով կոտորեաց 'ի յաւուրս Վասլին. և յամի ՆԾԵ (1006—1007) թուականին։ Այլ ահա յայսմ մատենագրութեանս եղեւ երկրորդ մոլորումն Յունաց։ Յայնժամ դասք քահանայից որք էին 'ի քաղաքն Ուռհայ, ազդ արարին թղթով տեառն Գրիգորիսի Հայոց կաթուղիկոսի որ բնակեալ էր 'ի Սեւ լեառն, 'ի յանուանի անապատն որ կոչի Արիգի. և նա գրով ձեռին իւրոյ հաստատեաց զնոսա անշարժ կալ 'ի հաւատս ուղղափառութեանն։ Այս էր պատճէն թղթոյն այսպէս՝ զոր գրեաց 'ի յՈւռհայ։

«Գրիգորիոսի ճշմարիտ սիրողացդ և դաւանողացդ ուղիղ Երրորդութեան, քահանայիցդ և իշխանացդ և այլ ամենայն հաւատացեալ ժողովրդոցդ՝ ողջոյն։ Այլ ամենայն արժանաւոր սիրոյ օրհնութիւն եկեսցէ ձեզ 'ի Լուսաւորչի սուրբ Աթոռոյս։

«Այլ արդ զաստուածասիրութեան զգիրս ձեր ընթերցաք, և զխնդրեալսդ ձեր լուաք և զբաւանդակն հասկացաք զոր ինչ խորհուրդ կայր 'ի գրեալսն, զոր մեծապէս գոհութիւնըս մատուցաք Աստուծոյ առաքելական բանիւքն որ առ աշակերտեալսն, եթէ «Յորժամ լսեմք զբարեպաշտութեանն

«Հաւատս ձեր որ 'ի Տէր, խնդամք գոհութեամբ 'ի վերայ ամենայնի»: Որ և ինքն բանն Աստուած, որ եկն 'ի հօրէ և հրաւիրեաց զմարդիկ 'ի փառս իւրոյ բարձրութեանըն և աստուածութեան, որ և զմեզ զորկացեալքս ընկալաւ գթութեամբն իւրով և զօրութիւն շնորհեաց, որոց անզօր էին մարդիկ ընդդիմանալ աներևոյթ արկածից փորձութեանցն: Նա և ինքն Տէր Յիսուս Քրիստոս օգնութիւնս և զօրութիւնս տացէ ձեզ ամենայնի, և իմաստութիւն պարգևեսցէ կալ առաջի իմաստնոց և հզօրաց տալ զպատասխանիսն ըստ անսուտ իւրոյ հրամանին, եթէ «Մի՛ հոգայք թէ որպէ՛ս «կամ զի՛նչ խօսիցիք, զի տացէ ձեզ 'ի ժամուն «յայնմիկ զինչ խօսեսջիք»: Գիտէ ինքն ամենագէտն ողորմութեամբն իւրով և ամենաքննին զօրութեամբն իւրով, որ թէպէտ և սա 'նա՝ որ 'ի գոյութիւն էած յանգոյութենէ զմեզ, և ամենայն երախտեօք պատուեաց և բարձրացոյց որպէս 'ի հնումն զիսրայէլ, և արդ ահա առ նա մեք հանապազ մեղանչեմք ազգօք և ժողովրդականօք, խորհրդովք և բանիւք, գիտութեամբ և անգիտութեամբ 'ի ժամանակեայ կենցաղումս մեր: Եւ արդ ահա հաւատովքս ես, և

հաւատքս իմ՝ ամենեքեան ոչ թագաւորին եմք մեղուցեալ և ոչ իշխանի, ոչ զօրաց և ոչ զօրապետաց, ոչ առաջնորդաց և ոչ հօտից իւրեանց. այլ ամենեցուն հնազանդեալ եմք և զանձինս ՚ի ծառայութեան կացուցեալ, և ըստ առաքելական հրամանին իւրաքանչիւրոցն հատուցեալ որում զմաքս՝ զմաքսն, որում զերկիւղ՝ զերկիւղն, և որում զպատիւ՝ զպատիւն. և զկայսերն կայսեր՝ և զԱստուծոյն Աստուծոյ շնորհեալ, և ոչ ումեք պարտականք մնացեալք և ոչ չարի չար հատուցեալ: Իսկ արդ ահա եթէ այսու արդարութեամբս ընդ անիրաւութեան դատիք յումեքէ իբրեւ զնուազունք և զփոքունք, և ՚ի վերայ Ճշմարիտ օրինացն փոխանակ երախտեացն սպատժոց արժանանամք, եւ արդ մի երկնչիք և մի զանգիտեք, վասն զի ահա ժամանակս մերձեցեալ է փրկութեան, և գալուստ Տեառն մերձ է: Իսկ արդ բազում բանք մխիթարութեան ունիմք մարգարէիւք վասն հանդերձելոցն և զՏեառնէ Աստուծոյ մերոյ և զօրքոց Նորա, և արդ ահա այսմ ամենայնի պարտ է համբերել և լինել, վասն զի երեւեցին Ճշմարտեալքն: Իսկ արդ թէպէտ և ես խրախոյս տամ ձեզ և քաջալերեմ համբերել

ամենայն իմաստութեամբ, և ոչ իբրեւ վա-
տաարտեալ հովիւ արտաքոյ միամ կրկին, այլ
կամաւորութեամբ եւս մահակից ձեզ գը-
տանիցիմ յամենայն գործս և 'ի տեսակս
տանջանաց. Եւ ոչ օտարանամ, կամ յուրաստ
կամ. եթէ բանիւք և կամ քննութեամբ էր
մեզ նեղութիւնս, և կամ հարցափորձու-
թեամբ, ահա պատրաստ կամք յամենայն ի-
րրս տալ պատասխանի զոր ինչ և հարցանի-
ցեն, բայց 'ի պատեհ և 'ի դիպող ժամու.
և եթէ տանջանօք է և կամ բռնութեամբ,
և ոչ յայնմանէ յուրաստ կամք. Եւ գոհանամք
զԱստուծոյ յամենայն ժամ, որ մինչև ցայժմ
յանաստուած հեթանոսաց տերանցն (220)
զանգիտէաք և դառնէաք, և այժմ 'ի քրիս-
տոնէիցդ այնպէս. Բայց դուք մի վհատիք,
կարող է Աստուած ընդ փորձութեանցն և
զելսն առնել՝ զի համբերել կարասջիք. սա-
կայն որչափ 'ի կարի մեր է, ամենեքեան որ-
պէս զքաջ զինուոր Քրիստոսի մարտիք ըզ-
բարիոք նահատակութիւնն Յիսուսի 'ի
վերայ ճշմարտութեանն. Կեայ է ինձ Տէր
Աստուած իմ որով կամք առաջի նորա, վա-
սըն զի չեմք 'ի սխալութիւն ինչ, և ոչ եմք 'ի
թիւրութիւն հաւատոց, և կամ յանդգնա-
բար իրաւ զմեզ կարծեմք, վասն զի այդ

գործ անզգամից է և անմտաց, այլ շնորհօքըն Աստուծոյ և սրբոց լուսաւորչացն մերոց առաջնորդաց զարքունականն և զճշմարիտըն ունիմք զճանապարհ որ ՚ի Քրիստոս Յիսուս, և ոչ յաջ խոտորելով զմեզ և ոչ յահեակ, և ՚ի պատուիրանացն Աստուծոյ ոչ օտարացեալք. և ոչ յարուցեալ ընդ առաւօտն և զհետ եղեալ մոլորութեանց (221), և կամ բարձրադէմ երեսօք հպարտացեալ և ամբարտաւանեցեալ իբրև զՀոռոմ ազգըն և զայլ ոմանս, որոց և աւելորդ է յիշատակել զանուանս նոցա։ Իսկ արդ եթէ խարդախութեամբ ինչ ունիմք զթերութիւն հաւատոց (222). վասն է՞ր չարչարիմք իբրև ըզպատժապարտս և ոչ ունիմք հանգիստ, այլ տագնապաւ շրջիմք ընդ ծով և ընդ ցամաք, որպէս և Պօղոս պատմէ զինքենէ, ընդ որ ասէր. «Ընդէ՞ր հանապազ մեռանիմք, և ՚ի «բանտ և ՚ի կապանս մտանեմք. և ՚ի գաղա«նամարտի լեալ էի, և յանդունդս տառա«պեցայց». և եթէ մնոտի յուսով էր վասն Քրիստոսի. զնոյն և ես ասեմ, եթէ յայս ամենայն շրջագայութիւնս և ՚ի փախուստս և ՚ի նեղութիւնս և յանձուկս ինձ տարապարտ է անցեալ, եթէ վասն պարսաւելի հաւատոյս զայս գործեցի։ Իսկ քառասուն

ամ կամ իմով հայրապետութեամբ (223), և զիմ հայրենի տուն 'ի խաղաղութեան ժամանակին թողի և յայս փոխեցայ. այս ուրեմն խաբեալ եմ միայն եղէ. բայց յուսամն Աստուծոյ եմ և վկայութեամբ սուրբ գրոցս, վասն զի ուղղափառ և զանթերի ունիմ ըզհաւատն: Արդ ամենեքեան որ իմում հայրապետութեանս և հաւատոցս կցորդ էք, մի թուլութեամբ և աշխատանօք պատկառէք և կամ երկնչիք, և զԱստուած վաճառէք վասն սնոտի կենացս. վասն զի ահա այս է ժամանակ ընտիր լինելոյ, և առնուլ պսակ 'ի Քրիստոսէ. և երաշխաւոր ես եմ ձեզ առ Քրիստոս, վասն զի որ զսուրբ հարցն (224) ցանկն ոչ պատուէ, ընդ սուրբսն պսակեսցի. այլ եթէ ոք զմարդկան փառսն առաւել սիրեսցէ քան զԱստուծոյ, 'ի դատաստանի արդարոյն Աստուծոյ ընդ ուրացողսն դասցի, որք զՔրիստոս Աստուած ոչ խոստովանեցան, 'ի մեր հաւատոյս և յօրհնութենէս անմասն եղիցի. իսկ հաւատացեալքն 'ի հաւատս մեր օրհնեալ լիցին յերկնաւորաց և յերկրաւորաց, յԱստուծոյ և 'ի մէնջ, որ է օրհնեալ յաւիտեանս. ամէն ։

Իսկ յորժամ հասաւ թուղթս այս յՄեծահայ, հաւատացեալն 'ի վերայ ճշմարտու-

թեանն։ Իսկ յորժամ եղեւ Զատիկն, Երուսաղէմնացիքն կեղծաւորութեամբ վառեցին զլոյսն եւ ոչ ճշմարտութեամբ, եւ խաբեցին զազգն իւրեանց, եւ յօտար հրոյ վառեցին զաստուածային զկանթեղսն. այլ ստուգապէս վառեցաւ 'ի Հայոց Զատկին, որ եւ վկայեցին ամենայն հաւատացեալք որք էին 'ի սուրբ քաղաքն Երուսաղէմ. եւ յայնժամ եղեն ամօթալից ամենայն ազգն Յունաց, վասն զի կատարեցին զԶատիկն յաւուր Օրակաղարդին։

ՃՀՋ. Յայսմ ամի դարձեալ ժողով արար Թագաւորն Եգիպտոսի եւ Պոմչկոյ, եւ գան 'ի վերայ սուրբ քաղաքին Երուսաղէմի անհամար բազմութեամբ։ Եւ Թագաւորն Երուսաղէմի Պաղտին [225], ելեալ գնայր ընդդէմ նոցա 'ի պատերազմ. եւ Եգիպտացիքն արարին զՊուանկն փախստականս սաստկապէս պատերազմաւ։ Եւ 'ի նոյն ժամուն ելաներ 'ի ծովէն բազում զօրք Պուանկաց, եւ յաղթեցին զօրացն Եգիպտացւոց, եւ արարին զնոսա հալածականս սաստիկ կոտորածով։ Եւ յայսմ ժամու գայր Թագաւորն Երուսաղէմի Պաղտին 'ի քաղաքն իւր, եւ Տանճիկ անն Մ'քրայ [226] Եթովպացի՝ նստեալ կայր գաղտաբար 'ի դարանի ընդ Թը-

փոխ միով, և հարեալ զԹագաւորն Երուսաղէմայ Նիզակովն 'ի վերայ քօղիցն, և յայնժամ Եղծովկացին սպանաւ։ Բայց խոց մարմնոյն անբժշկելի մնաց մինչև յօր մահուան իւրոյ. և յայնժամ լցաւ Երուսաղէմ ազգաւ և տրտմութեամբ 'ի վերայ Թագաւորին իւրեանց։ Այս եղև վասն անիրաւ կատարման սուրբ Զատկին, վասն զի նոյն յանդգնութիւնն յանդգնեցան ազգն Յունաց յաւուրս Վասիլ կայսեր, և ոչ վառեցաւ լոյսն, և այլազգին կոտորեաց զամենայն աղօթաւորսն 'ի մէջ սրբոյ Յարութեանն 'ի դուռն գերեզմանին Քրիստոսի Աստուծոյ մերոյ։

ՇԾԲ. Դարձեալ 'ի բարձրանալ Հայոց թուականութեանս ՇԾԲ (1103–1104). եղև մեծասաստ բարկութիւնն Աստուծոյ 'ի ձեռն սաստիկ 'ի քաղաքն Ուռհայ յաւուր հինգշաբաթի փոքրկանն. Որպէս պատմէ վասն առաջին ջրհեղեղին, այնպիսի նմանութեամբ սրտմտեալ ժողովեցաւ օդն վերին և ամպախաղաց կայծակաշունչ ճայթմամբ շարժեալ դղրդմամբ երեւաց երկնից. որպէս կարծեալ ոմանց եթէ եհաս օր կատարածի քաղաքիս։ Վասն զի հեղաւ յերկնից ահաւոր անձրեւ և կարկտախառն 'ի յաւուօ-

տու ժամուն. և 'ի ծագել արեգականն յարեւու և հեղեղն յարեւմտից կողմանէ եւ գայր դարէ 'ի դար, և եհար զպարիսպ քաղաքին և պատառեաց և ելից զմէջ քաղաքին, և արար աւեր զմասն քաղաքին. փլոյց բազում տունս և սատակեաց բազում կենդանիս, բայց մարդ ոչ անկաւ յորոգայթ, վասն զի լուսով եղեւ պատուհասն, փախեան 'ի չարէ:

ՃՀԸ. Յայսմ ամի գնեցին զկոմսն Ֆռանկաց Պեմունդն 'ի ձեռաց Դանիշմանին հարիւր հազար դահեկան, միջնորդութեամբ և օգնութեամբ մեծ իշխանին Հայոց որ ասի Կող Վասիլ. և սորա տուեալ տասն հազար դահեկան 'ի գինսն նորա: Իսկ կոմսն Անտիոքայ Տանգրի ոչ տայր 'ի գինս Պեմունդին և ոչ մի ինչ: Եւ յայնժամ ժողովեցան ամենայն գանձն առ Վասիլն, և մեծաւ իշխանութեամբ ջան եդեալ և տայր բերել զնա 'ի սահմանս աշխարհին իւրոյ, և տայր զգանձն հարիւր հազար դահեկան. և առեալ զՊեմունդն առ իւր, և եղանէր ընդառաջ նորա. և մեծաւ պատուով հանգուցանէր զնա 'ի տան իւրում, և բազում ընծայս տայր Պեմոնդին և համբերողացն [227]. որ ընդ ամենայն լինէր քան հազար դահե-

կան։ Եւ զկնի աւուրցն գնացեալ Պեմունդն 'ի քաղաքն իւր Անտիոք, և մեծաւ երդմամբ եդև որդեգիր Գող Վասլին Հայոց իշխանին. և զՌիչարդն զքուրորդին Պեմնդին երետ (ետ) Դանիշմանն տուրս Ալէքսին Յունաց Թագաւորին 'ի ձեռն բազում գանձուց։

ՃՀԹ. Յայսմ ամի զօրաժողով արար կոմսն Ուռհայոյ Պաղտինն և գնաց 'ի վերայ Թուրքին 'ի գաւառն Տաճկաց 'ի սահմանս Մերտնայ (228), և արար կոտորած զնոսա, և կալաւ զամիրայն նոցա որ ասի Աւլխ–սալար, և զկանայս և զորդիս նոցա վարէր 'ի գերութիւն, և ած 'ի քաղաքն Ուռհայ և անհամար հօտս ոչխարաց ընդ նմա իբրև հազարաց, և զձիոց և զպարեաց և զուղտուց, զամենայն միաբարձ արկին 'ի քաղաքն Ուռհայ։

ՃՁ. Յայսմ ամի իջեալ հայրապետն Հայոց տէր Բարսեղն 'ի քաղաքէն Անւոյ ամենայն պաշտօնէիւք իւրովք և ազատօք, եպիսկոպոսօք և քահանայիւք և գայր 'ի քաղաքն Ուռհայ. և կոմսն Փռանկաց Պաղտինն մեծարեաց զնա մեծաւ պատուով որպէս վայել է հայրապետի. և գիւղս և տուրս պարգեւէր նմա, և յոյժ սիրեաց զհայրապետն Հայոց։

ՃՁԱ. Յայսմ ամի մեռաւ կաթուղիկոսն Աղուանից տէր Ստեփաննոս, և կաթուղիկոսն Հայոց արար ժողովս զեպիսկոպոսունս Աղուանից աշխարհին, և ձեռնադրեցին զեղբայրն տէր Ստեփաննոսին յաթոռ տանն Աղուանից 'ի քաղաքն որ ասի Գանձակ. զոր և յետոյ անարժան գտին զնա աթոռոյ հայրապետութեանն, և ընդ բանադրօք փակեաց զնա տէր Բարսեղ կաթուղիկոսն Հայոց, և յաթոռոյ և 'ի պատուոյ հայրապետութեանն ընկեցին արտաքս զնա. զայս արարին վասն խոտոր վարուց իւրոց:

ՃՁԲ. Ի Թուականութեանս Հայոց ՇԾԴ (1104–1105) զօրաժողով արարին կոմսն Ուռհայոյ Պաղտոյինն և Ճօսլին, և գնացին 'ի վերայ քաղաքին որ կոչի Խառան. և առաքեաց յԱնտիոք և կոչեաց զմեծ կոմսն Փռանկաց զՊեմունդն և զՏանգրի, և զայլ ամենայն զօրսն Հայոց, և ժողովեցան առ նա ժողով մեծ, և իջան 'ի վերայ Խառանայ, և արարին սաստիկ խսար, և նեղութիւն մեծ հասաւ քաղաքին 'ի հացէ: Եւ ոմն 'ի Փռանկաց արար գործ՝ ընդ որ ոչ հաճեցաւ Աստուած. բացեալ զմէջ հացին և աղբեաց 'ի նմա, և տարեալ դնէր հանդէպ դրան քաղաքին. և տեսեալ քաղաքացեացն՝ առ ոտնդքին յար-

ձանկեցաւ մի ոտն. և առ զնա զի կերիցէ. և տեսեալ զաղտեղի գործն զարմացաւ. և առաքեալ ցուցանէր քաղաքացեացն։ Եւ տեսեալ արանց իմաստնոց, ասէին թէ՝ «Նշան մեծ գործ որ ոչ համբերէ Աստուած այս գործոյս, և ոչ տայ նոցա յաղթութիւն. վասն զի հասցէ յայս արար մեղս, զոր ոչ լուաք այսպիսի մեղս յերկրի»։ Եւ յայնժամ զօրքն Պարսից ահագին բազմութեամբ գային ՚ի վերայ նոցա, Ղրկտմըշ (229) ամիրայն Մօսլայ և Սուքման որդի Արդուխին։ Եւ լուեալ զայս իշխանքն Գնունեաց և գնացին մեծաւ ուրախութեամբ ՚ի վերայ Պարսից զօրացն, և երկու օրաւուրս հեռացեալ ՚ի քաղաքէն որ կոչի Նշուա (230)։ Եւ Սեռահայոց կոմսն և Ճօսլինն հաւաքեցեալ ընդ միաս իւրեանց, և զՊետրոնոսն և զՏանկրի հեռաւորեալ կացուցին ՚ի զօրաց իւրեանց, և ասացին՝ եթէ մեք յառաջ դիմեսցուք և առցուք անուն յաղթութեան։ Եւ եղեւ ՚ի համբերելն Պաղդուինին և Ճօսլինին զօրաց Թուրքին, լինէր ահաւոր և սաստիկ պատերազմ յառաջ աշխարհին Տաճկաց. և յայնժամ յաղթեաց զօրքն Պարսից զօրաց Գնունեաց, և զաստուածասաստ բարկութիւնն ածին ՚ի վերայ քրիստոնէից. վասն զի յայս ամենայն

երկիր արեամբ և դիականամբք ուեալ քան ե-րիս բիւրս հաւատացելոց, և հատուր մարդ ի գաւառաց: Իսկ կալան զՈւռհայոյ կոմսն զՊաղտին և զՃոսլինն, և տարան զնոսա ի գերութիւն, և այլք կացին ամբողջ զօրօք իւ-րեանց. զբռնաւորսն առին և անկանե-լին փոխատականն Ուռհայ քաղաք:

Եւ էր սուգ մեծ կատարածի ի քաղա-քին Ուռհայոյ. վասն զի Խառանեցիք կա-լան զառաջին միացեալ զօրացն, և փակեցին զերանն և զդաշտն, և զամենայն փախուստ կանանն սպանանէին առ հասարակ արս տասն հազար. և անթիւ մեծ անցումն հաւատացե-լոցն Քրիստոսի առաւել քան զԹուրքն. և բազում կսկիծ լալոյ և աղէտ Թախծանաց եղեւ Ուռհայ. որ և առ հասարակ ողբու-մին արտասուաց էր յաւուր յայնմիկ ի մե-րայ քաղաքին Ուռհայոյ, և ընդ ամենայն աշխարհն քրիստոնէից էր մեծ սուգ: Եւ յայնժամ տարան զկոմսն զՊաղտին ի Մօսլ քաղաք Տաճկաց, և զՃոսլինն տարան ի Հանքեւ (231) առ Սուգման որդի Արդու-խին, և Չըրկրմիշն տարաւ զՊաղտին:

Իսկ Պեմունդն խորհեցաւ գնալ յաշ-խարհն Փռանկաց ի խնդիր զօրաց, և տայր զՈւռհայ և զԱնտիոք ի քուերորդին իւր Տան-

դրի։ Եւ յորժամ հասաւ Գեմունդն 'ի յաշխարհն Փռանկաց, կին մի էր յոյժ մեծատուն, որ էր լեալ կին Սանեփան Գինօղին (232) կոմսին Փռանկաց, և մեծազգի բնակալ։ Սորա բռնեալ զԳեմունդն առ ինք և ասէր թէ՝ « Առ զիս քեզ կին, վասն զի այր իմ մեռաւ, և երկիրս. և զօրք հեծելոց անտէր շրջին »։ Եւ Գեմունդն ոչ առնոյր յանձն ասելով. « Ես բազում երդմամբ վասն զօրաց եկի այսըր, վասն զի շուտով երթիցուք յօգնութիւն մնացեալ զօրայն քրիստոնէից որք կան 'ի մէջ անօրինաց ազգայն Պարսից »։ Իսկ կինն հարկէր զնա մեծաւ ուժգնութեամբ, և նա ոչ լսէր նմա. յայնժամ երկաթի կապանօք արկանէր զնա 'ի բանտ. և կացեալ զաւուրս ինչ 'ի բանտի, հաւանեալ լինէր և էառ ըզնա իւր կին, և ծնաւ 'ի նմանէ երկու որդի. և զկնի հինգ ամի մեռանէր մեծ կոմսն Փռանկաց Գեմունդն 'ի յաշխարհն իւր, և ոչ ժամանեաց եկանել յայսկոյս աշխարհի։

ՇԾԴ. Յայսմ ամի մեռաւ Դանիշմանն մեծ ամիրայն Հոռոմոց աշխարհին որ լեալ (էր) յազգէն Հայոց, այր բարի և շինող աշխարհի, և էր յոյժ ողորմած 'ի վերայ հաւատացելոց Քրիստոսի, և եղեւ սուգ մեծ 'ի վերայ քրիստոնէից որք էին ընդ ձեռամբ

նորա ։ Նա մնաց իւր երկոտասան որդի, և
կոչաւ զաշխարհն առաք որդին որ ասի Խա-
զի, և զայլ եղբարսն իւր սպանանէր գաղ-
տաբար ։

ՃՁԴ. Յայսմ ամի մեռաւ Սուգման որ-
դի Արդուխին, այն որ ունէր յառաջագոյն
զսուրբ քաղաքն Երուսաղէմ. որ և յայտնի
երեւի նշան Արդուխին ՚ի սուրբ Յարու-
թեանն Աստուծոյ, զի երեք նետք հարեալ
կայ նորա ՚ի ձեղուանն եկեղեցւոյն մինչեւ
ցայսօր ։ Մեռաւ և անդ թաղեցաւ յԵրու-
սաղէմ ՚ի ճանապարհի Սողոմնի տաճարին ։
Իսկ որդի նորա Սուգմանն էր չար և արիւ-
նահեղ գազան ։ Նորա ժողով արարեալ ըն-
զօրսն Պարսից և դայ յօգնութիւն քաղաքին
Տրապոլսոյ ՚ի վերայ զօրաց Փռանկաց, և
՚ի ճանապարհին մեռեալ լինէր, և զօրքն իւր
դարձան փախստական և գնացին յաշխարհն
իւրեանց ։

ՃՁԵ. Յայսմ ամի մեռաւ թագաւորն
Պարսից Պարկիարուխն որդի Մէլէքշահին՝
որդւոյ Ալփասլանայ, և նստաւ յաթոռ թա-
գաւորութեանն Պարսից եղբայր նորա որ
ասի Տափար ՚ի Խոփչախ կնոջէն, այն որ դե-
ղեաց և եսպան զտիեզերակալ զՄէլէքշահն
՚ի Պաղտատ քաղաքն ։

փով միով, և հարեալ զԹագաւորն Երու-սաղէմայ Նիգալկոմն 'ի վերայ քօմիցն, և յայնժամ Եթովպացին սպանաւ: Բայց խոց մարմնոյն անբժշկելի մնաց մինչև յօր մահուան իւրոյ. և յայնժամ լցաւ Երուսաղէմ ազգաւ և ուրախութեամբ 'ի վերայ Թագաւորին իւրեանց: Այս եղև վասն անիրաւ կատարմանն սուրբ Զատկին, վասն զի նոյն յանդգնութիւնն յանդգնեցան ազգն Յունաց յաւուրս Վասիլ կայսեր, և ոչ վառեցաւ լոյսն, և այլազգին կոտորեաց զամենայն աղօթաւորսն 'ի մէջ սրբոյ Յարութեանն 'ի դուռն գերեզմանին Քրիստոսի Աստուծոյ մերոյ:

ՃՀԵ. Դարձեալ 'ի բարձրանալ Հայոց Թուականութեանս ՇԾԲ (1103—1104), եղև մեծասաստ բարկութիւնն Աստուծոյ 'ի ձեռն սաստիկ 'ի քաղաքն Ուռհայ յաւուր հինգշաբաթի փոքրկանն. Որպէս պատմէ վասն առաջին ջրհեղեղին, այնպիսի նմանութեամբ սրանմնեալ ժողովեցաւ օդն վերին և ամպախաղաց կայծակաշունչ ճայթմամբ շարժեալ դղրդմամբ երեւք երկնից. որպէս կարծեալ ոմանց եթէ եհաս օր կատարածի քաղաքիս: Վասն զի հեղաւ յերկնից ահաւոր անձրեւ և կարկտախառն 'ի յաւուռ-

տու ժամուն. և 'ի ծագել արեգականն յա-
րևաւ և հեղեղն յարեւմտից կողմանէ եւ-
գայր դարէ 'ի դար, և եհար զպարիսպ քա-
ղաքին և պատառեաց և ելեց զմէջ քաղա-
քին, և արար աւեր զմասն քաղաքին. փլոյց
բազում տունս և սատակեաց բազում կեն-
դանիս, բայց մարդ ոչ անկաւ յորոգայթ,
վասն զի լուսով եղեւ պատուհասն, փա-
խեան 'ի չարէ:

ՃՀԸ. Յայսմ ամի գնեցին զկամսն Ֆրանկ-
կաց Պեմունդն 'ի ձեռաց Դանիշմանին հա-
րիւր հազար դահեկան, միջնորդութեամբ
և օգնութեամբ մեծ իշխանին Հայոց որ
ասի Գող Վասիլ. և սորա տուեալ տասն
հազար դահեկան 'ի գինն նորա: Իսկ կոմսն
Անտիոքայ Տանգրի ոչ տայր 'ի գինս Պե-
մունդին և ոչ մի ինչ: Եւ յայնժամ ժողովե-
ցան ամենայն գանձն առ Վասիլն, և մեծա-
իշխանութեամբ ջան եդեալ և տայր բե-
րել զնա 'ի սահմանս աշխարհին իւրոյ, և
տայր զգանձն հարիւր հազար դահեկան. և
առեալ զՊեմունդն առ իւր, և ելանէր ընդ-
առաջ նորա. և մեծաւ պատուով հանդու-
ցանէր զնա 'ի տան իւրում, և բազում ըն-
ծայս տայր Պեմունդին և համբերողացն (227),
որ ընդ ամենայն լինէր քան հազար դահե-

կան։ Իսկ զկնի աւուրցն գնացեալ Պեմունդն ի քաղաքն իւր յԱնտիոք, և մեծաւ երդմամբ եղև որդեգիր Գող Վասլին Հայոց իշխանին. և զՌիճարդն զքուրորդին Պեմնդին երետ (ետ) Դանիշմանն տուրս Ալեքսին Յունաց թագաւորին ի ձեռն բազում գանձուց։

ՇԿԹ. Յայսմ ամի զօրաժողով արար կոմսն Ուռհայոյ Պաղտինն և գնաց ի վերայ Թուրքին ի գաւառն Տաճկաց ի սահմանս Սերունայ (228), և աւար կոտորած զնոսա, և կալաւ զամիրայն նոցա որ ասի Ալխասալար, և զկանայս և զորդիս նոցա վարէր ի գերութիւն, և ած ի քաղաքն Ուռհայ և անհամար հօտս ոչխարաց ընդ նմա իբրեւ հազարաց, և զձիոց և զպարեաց և զուղտուց, զամենայն միաբարձ արկին ի քաղաքն Ուռհայ։

ՇՀ. Յայսմ ամի իջեալ հայրապետն Հայոց տէր Բարսեղն ի քաղաքէն Անւոյ ամենայն պաշտօնէիւք իւրովք և ազատօք, եպիսկոպոսօք և քահանայիւք և գայր ի քաղաքն Ուռհայ. և կոմսն Փռանկաց Պաղտինն մեծարեաց զնա մեծաւ պատուով որպէս վայել է հայրապետի. և գիւղս և տուրս պարգեւէր նմա, և յոյժ սիրեաց զհայրապետն Հայոց։

ՃՁԱ. Յայսմ ամի մեռաւ կաթուղիկոսն Աղուանից տէր Ստեփաննոս, և կաթուղիկոսն Հայոց արար ժողովս զեպիսկոպոսունս Աղուանից աշխարհին, և ձեռնադրեցին զեղբայրն տէր Ստեփաննոսին յաթոռ տանն Աղուանից 'ի քաղաքն որ ասի Գանձակ. զոր և յետոյ անարժան գտին զնա աթոռոյ հայրապետութեանն, և ընդ բանադրօք փակեաց զնա տէր Բարսեղ կաթուղիկոսն Հայոց, և յաթոռոյ և 'ի պատուոյ հայրապետութեանն ընկեցին արտաքս զնա. զայս աւարտին վասն խոտոր վարուց իւրոց։

ՃՁԲ. Ի թուականութեանս Հայոց ՇԾԳ (1104—1105) ղօրաժողով արարին կոմսն Ուռհայոյ Պաղտինն և Ջօսլին, և գնացին 'ի վերայ քաղաքին որ կոչի Խառան. և առաքեաց յԱնտիոք և կոչեաց զմեծ կոմսն Փռանկաց զՊեմունդն և զՏանգրի, և զայլ ամենայն զօրսն Հայոց, և ժողովեցան առ նա ժողով մեծ, և իջան 'ի վերայ Խառանայ, և արարին սաստիկ խսար, և նեղութիւն մեծ հասաւ քաղաքին 'ի հացէ։ Եւ ոմն 'ի Փռանկաց արար գործ՝ ընդ որ ոչ հաճեցաւ Աստուած. բացեալ զմէջ հացին և աղբեաց 'ի նմա, և տարեալ դնէր հանդէպ դրան քաղաքին. և տեսեալ քաղաքացեացն՝ առ յոտանդքին յար-

ձանկեցաւ մի ամն. և առ զնա զի կերիցէ. և տեսեալ զաղտեղի գործն զարմացաւ. և առեալ ցուցանէր քաղաքայեացն։ Եւ տեսեալ արանց իմաստնոց, ասեն թէ՝ «Նհա մեծ գործ որ ոչ համբերէ Աստուած այս գործոյս, և ոչ տայ նոցա յաղթութիւն. վասն զի հայս յայս արար մեզ, զոր ոչ լուաք պապերաց մերոց յերկրի»։ Եւ յայնժամ զօրքն Պարսից ահագին բազմութեամբ գային 'ի վերայ նոցա, Դնիշմէնն (229) ամիրայն Սօսայ և Սուքման որդի Արդուխին։ Եւ լուեալ զայս իշխանքն Փռանկաց և գնացին մեծաւ ուրախութեամբ 'ի վերայ Պարսից զօրացն, և երկու օրաւուրս հեռացեալ 'ի քաղաքէն որ կոչի Նշուա (230). Եւ Ուռհայոյ կոմսն և Պօղէնն հպարտացեալ ընդ միմեանս իւրեանց. և զՊեմունդն և զՏանգրի հեռագոյնս կացուցին 'ի զօրաց իւրեանց, և ասացին՝ եթէ մեք յառաջ դիմեսցուք և առցուք անուն յաղթութեան։ Եւ եղեւ 'ի հանդիպել Պաղտինին և Պօղէնին զօրաց Թուրքին. լինէր ահաւոր և սաստիկ պատերազմ յառաջ աշխարհին Տաճկաց. և յայնժամ յաղթեցաւ զօրքն Պարսից զօրաց Փռանկաց, և զատուածասաստ բարկութիւնն ածին 'ի վերայ քրիստոնէից. վասն զի յոյժ ամենայն

երկիր արեամբ և դիականմբք ուռեալ քան ե-րիս բիւրս հաւատացելոց, և հատուած մարդ 'ի գաւառաց: Եւ կալան զՈւռհայոյ կոմսն զՊաղտին և զՃօսլինն, և տարան զնոսա 'ի գերութիւն, և այլք կացին ամբողջ զօրօք իւ-րեանց. զբռնաւորսն առին և անկանէ-ին փախստական յՈւռհայ քաղաք:

Եւ էր սուգ մեծ կատարածի 'ի քաղա-քին Ուռհայոյ. վասն զի Խոստանեցիք կա-լան զառաջին միացեալ զօրացն, և փոխեցին զերան և զդաշտն, և զամենայն փախուստ կանանց սպանանէին առ հասարակ արս տասն հազար. և առին մեծ անցումն հաւատացե-լոցն Քրիստոսի տուեալ քան զԹուրքն. և բազում կսկիծ լալոյ և աղէտ Թախծանաց եղեւ յՈւռհայ. որ և առ հասարակ ողբու-մին արտասուաց էր յաւուր յայնմիկ 'ի մե-րայ քաղաքին Ուռհայոյ, և ընդ ամենայն աշխարհն քրիստոնէից էր մեծ սուգ: Եւ յայնժամ տարան զկոմսն զՊաղտինն 'ի Մօսլ քաղաք Տաճկաց, և զՃօսլինն տարան 'ի Հանքեւ (231) առ Սուքման որդի Արդու-խին, և Ճէկրմիշն տարաւ զՊաղտինն:

Իսկ Պեմունդն խորհեցաւ գնալ յաշ-խարհն Ֆռանկաց 'ի խնդիր զօրաց, և տայր զՈւռհայ և զԱնտիոք 'ի քուրորդին իւր Տան-

դրի։ Եւ յորժամ հասաւ Պետմունդն ՚ի յաշխարհն Փռանկաց, կին ոմն էր յոյժ մեծատուն, որ էր լեալ կին Սանճիլան Զինօլին (232) կոմսին Փռանկաց, և մեծազգի բնակալ։ Սորա բռնեալ զՊետմունդն առ իւր և ասէր թէ՝ «Առ զիս քեզ կին, վասն զի այր իմ մեռաւ, և երկիրս. և զօրք հեծելոց անտէր շրջին»։ Եւ Պետմունդն ոչ առնոյր յանձն ասելով. «Ես բազում երդմամբ վասն զօրաց եկի այ-սր, վասն զի շուտով երթիցուք յօգնութիւն միացեալ զօրայն քրիստոնէից որք կան ՚ի մէջ անօրինաց ազգացն Պարսից»։ Իսկ կինն հարկէր զնա մեծաւ ուժգնութեամբ, և նա ոչ լսէր նմա. յայնժամ երկաթի կապանօք արկանէր զնա ՚ի բանտ. և կացեալ զաւուրս ինչ ՚ի բանտի, հաւանեալ լինէր և էառ ըզնա իւր կին, և ծնաւ ՚ի նմանէ երկու որդի. և զկնի հինգ ամի մեռանէր մեծ կոմսն Փռանկաց Պետմունդն ՚ի յաշխարհն իւր, և ոչ ժամանեաց եղանել յայսկոյս աշխարհի։

ՇԾԳ. Յայսմ ամի մեռաւ Դանիշմանն մեծ ամիրայն Հոռոմոց աշխարհին որ լեալ (էր) յազգէն Հայոց, այր բարի և շինող աշխարհի, և էր յոյժ ողորմած ՚ի վերայ հաւատացելոց Քրիստոսի, և եղեւ սուգ մեծ ՚ի վերայ քրիստոնէից որք էին ընդ ձեռամբ

նորա։ Նա մնաց իւր երկոտասան որդի, և կոչաւ զաշխարհն անուամբ որդին որ ասի Խա-զի, և զայլ եղբարսն իւր սպանանէր գաղ-տաքար։

ՃՋԴ. Յայսմ ամի մեռաւ Մուգման որ-դի Արդուխին, այն որ ունէր յառաջագոյն զսուրբ քաղաքն Երուսաղէմ. որ և յայտնի երեւի նշան Արդուխին ՚ի սուրբ Յարու-թեանն Աստուծոյ, զի երեք նետք հարեալ կայ նորա ՚ի ձեղուանն եկեղեցւոյն մինչեւ ցայսօր։ Մեռաւ և անդ թաղեցաւ յԵրու-սաղէմ ՚ի ճանապարհի Սողոմնի տաճարին։ Իսկ որդի նորա Մուգմանն էր չար և արիւ-նահեղ գազան։ Նորա ժողով արարեալ ըն-զօրսն Պարսից և գայ յօգնութիւն քաղաքին Տռապօլսոյ ՚ի վերայ զօրաց Փռանկաց, և ՚ի ճանապարհին մեռեալ լինէր, և զօրքն իւր դարձան փախստական և գնացին յաշխարհն իւրեանց։

ՃՋԵ. Յայսմ ամի մեռաւ թագաւորն Պարսից Պարկիարուխն որդի Մելէք-շահին՝ որդւոյ Աբասլանայ, և նստաւ յաթոռ թա-գաւորութեանն Պարսից եղբայր նորա որ ասի Տափար ՚ի Խփչախ կնոջէն, այն որ դե-ղեաց և եսպան զտիեզերակալ զՄելէք-շահն ՚ի Պաղտատ քաղաք։

ՃԶԶ. Յայսմ ամի առաւ Մարաշ քաղաք 'ի Յունաց, և ելաւ իշխանաց իշխանն 'ի նմանէ, և տայ զքաղաքն 'ի Ջօսլինն, և ըզ-պատկեր սրբոյ Աստուածածնին ծախեաց ընդ բազում գինս ոսկւոյ մեծ իշխանին Հայոց Թորոսի՝ որդւոյ Կոստանդեայ՝ որդ-ւոյ Ռուբէնեայ. և ինքն գնաց 'ի Կոստան-դինուպօլիս :

ՃԶԷ. Դարձեալ 'ի Թուականութե՛ Հայ-ոց ՇԾԴ (1105—1106) լինէր փոխումն սուրբ հայրապետին տէր Գրիգորիսի հոմանուն տէր Վահրամին՝ որդի Գրիգորոյ՝ որդւոյ Վասակայ, 'ի Պալհաւունի ազգէ. Յայսմ ա-մի եղեւ անկեալ սիւնն հաւատոյ Հայաստա-նեայց և պարիսպ սրբոյ եկեղեցւոյ տանն արեւելից. վասն զի սա եղեւ սքանչելագործ 'ի մէջ Հայաստանեայց և պայծառ առաքի-նութեամբ կայր յամենայն ճգնողական վա-րըս, և էր ժուժկալ պահօք և աղօթիւք, և կայր 'ի պաշտօնն Աստուծոյ անդադար սաղ-մոսերգութեամբ : Սա նորոգեաց զկարգ հաւատոյ Հայաստանեայց և անհանգիստ Թարգմանութեան էր պարապեալ, և զա-մենայն պակասութիւն կտակարանացն Ա-ստուծոյ առ մեզ կարգաւ կատարեալ զար-դարեաց 'ի Յունաց և Ասորւոց Թարգմա-

նութենէ. հոգս տարեալ անդադար խորհրդով, և ամենայն պայծառութեամբ սուրբ գրոց ելից զեկեղեցի Հայաստանեայցս: Նա էր ինքն հեզ բարուք և խոնարհ սրտիւ. և 'ի վերայ այսր ամենայնի էր յոյժ աստուածասէր և պատուիրանապահ, և յամենայն կողմանց կարող էր օգնել հօտին Քրիստոսի. վասն զի էր ընդ 'ի բուն կորովի գրոց շնորհաց: Նա էր սա նմանեալ առաջին իմաստնոց Հայոց՝ Մովսիսի ունիմ ասել և Դաւթի, վասն զի ունէր գլուխ աթենացի, և լեզու հրեղէն ներկեալ, և դիւրաւ առնոյր զծածկոց յերեսաց հին և նոր կտակարանացն Աստուծոյ, և բանայր զդուռն աստուածաբուխ աղբիւրացն և զհոսումն սրբոյ Հոգւոյն զեղոյր 'ի լսելիս հաւատացեալ ժողովրդոցն: Սա եղեւ օրինակ դասուց կրօնաւորաց. ամենայն քաջակիրթ առաքինութեամբ յառաջացեալ էր: Նա կացեալ սորա յաթոռ հայրապետութեան ամս քառասուն, և 'ի ժամանակի մահուանն հանդիպեցաւ առ մեծ իշխանին Հայոց՝ որ ասի Գող Վասիլ, որ էր այր հզօր և պատերազմող. վասն զի առ սա եղեւ ժողովեալ միացեալ գունդն Հայոց:

Իսկ երեւեալ պատանի ոմն Գրիգորէս

անուն՝ (որ) քուրոջ որդւոյ որդի էր տեառըն Վահրամայ, զնա յաթոռնի կացուցանէր տէր Գրիգորէս. և անուանէր զնա կաթուղիկոս տանն Հայոց զկնի մահուան տեառն Բարսղի. և միջնորդ կացուցանէր զիշխանն Հայոց զՎասիլ՝ զտէրն Քեսնոյ, և զամենայն աշխարհն նորա. Իսկ տէր Բարսեղ հընազանդ լեալ ամենայն հրամանաց տէր Գրիգորիսի, և յայնմ օրէ էառ առ ինքն զանուանեալ կաթուղիկոսն զԳրիգորէս զորդի Ապիրատին. Իսկ եղեւ 'ի տրէ ամիս, յառաջին շաբաթն ամռան աղուհացիցն, յաւուր շաբաթու վախճանեցաւ սուրբ հայրապետն տէր Գրիգորէս, և թաղեցաւ մեծաւ հանդիսիւ 'ի Կարմիր վանքն մերձ 'ի Քեսուն, և տէր Ստեփաննոս հայր վանացն արար ժողով 'ի վերայ գերեզմանին նորա, կրօնաւորաց և քահանայից, և հայրապետական պատուով յուղարկեաց զնա ընդ սուրբսըն. և իշխանն Հայոց Վասիլ և այլ ազատագունդք Հայոց արարին կոծ մեծ 'ի վերայ նորա, և դառնակոծ արտասուօք լացին առհասարակ 'ի վերայ նորա, վասն զի զըրկեալ եղեն յայնպիսի սուրբ հայրապետէն, և նովաւ յիշեալ լացին տունն Հայոց, և լային զանտիրանալն իւրեանց 'ի յոտար աշ-

խարհն ՚և զեղանել ՚ի հայրենի տանէն իւրեանց ։

ճՁԸ. Յայսմ ամի մեռաւ սքանչելագործըն և մեծ ճգնաւոր Սարգիս միայնակեացըն, որ զամս վաթսուն և հինգ կայր ՚ի խստաճարակութեան վարս. վասն զի զհաց՝ և ոչինչ նման հացի ոչ ճաշակեաց ՚ի կրօնաւորութեան իւրում. և սա իսկ ունէր ըզտեսողութեան հոգի սրբոյ մարգարէիցն, և էր բազմաց վկայեալ, վասն զի յամենայն աւուր տեսանէր նա զՀոգին սուրբ ։ Նոյն էր բնակեալ ՚ի յանձրդի լեառն մի ՚ի Մոկաց գաւառին որ ասի Կոնգանակ, որ էր Նորի խարսխնայքն՝ մերձ ՚ի յաշխարհն Մարաշ քաղաքին ։ Սա աղօթիւք իւրովք յերկուս տեղւոջ ջուր եհան յայնմ սահմանին. սա իսկ մարգարէացաւ ՚ի վերայ Փռանկաց յորժամ առին զսուրբ քաղաքն Երուսաղէմ, եթէ դարձեալ զօրանան ազգն Պարսից և գան սրով մինչեւ յեզր Ովկիանոս ծովուն. որ և տեսաք իսկ և ասացաք վասն քահանայից և վարըն ժողովրդոց, եթէ թուլանան ՚ի հաւատոց, և բառնի աստուածպաշտութիւնն յաշխարհէ, նուազին հաւատք և փակին դրունք սուրբ եկեղեցւոյ, խաւարին ՚ի գործոց բարեաց. մոռանան զպատուիրանս

սուրբ Աւետարանին Քրիստոսի, ծովանան մեղք և չարիք 'ի վերայ երկրի, և որդիք մարդկան իբրեւ 'ի ծով ծփին 'ի մէջ մեղաց. մոռանան գործել զարդարութիւն ամենայն ազգք հաւատացելոց։ Այս սուրբ Ճգնաւորըս մեռաւ յայսմ ամի և Թաղեցաւ 'ի վանքըն որ կոչի Կաստաղօն, մերձ 'ի յամուր բերդն որ ասի Վահկայ, 'ի Տօրոս լեառն։

ՃԶԹ. Յայսմ ամի ժողով արարեալ Ճըկըրմիշ ամիրայն Մօսլայ և Մծբնայ, և գայր թաղում զօրօք և իջանէր 'ի դուռն քաղաքին Ուռհայոյ 'ի ժամանակս արտոցն։ Եւ էր զօրագլուխ զօրաց Փռանկացն՝ որ ասի Ռիջարդ, զոր էր կացուցեալ պահապան քաղաքին Տանկրի, առեալ զզօրս քաղաքին, և անմտաբար հետեւակօք ելեալ 'ի պատերազմ ընդդէմ քաջ և պատերազմող զօրացն Պարսից։ Եւ տեսեալ նոցա զանպատրաստութիւն զօրացն Փռանկաց, բախեալ զնոսա և միաբան լցին 'ի խանդակ քաղաքին. և միաբան ամենայն զօրքն Պարսից արարին կոտորածս արս իբրեւ չորս հարիւր և յիսուն. և քերդեալ զամենեցուն զգլուխն և տարան 'ի Պարսիկս. և եղեւ սուգ մեծ յաւուր յայնմիկ 'ի վերայ Ուռհայոյ, վասն զի յամենայն տունն սուգ և աղաղակ լալոյ կայր, և

արեամբ զարդարեալ էր ամենայն վայրք քաղաքին Ուռհայոյ։ Եւ դարձաւ Ճըկրմիշն մեծաւ յաղթութեամբ յաշխարհն իւր։

ԾԴ. Յայսմ ամի մեռաւ կոմսն Փռանկաց Ջըռնծիլն, որ էր 'ի վերայ քաղաքին Տլապօլսոյ, և տայր զարտաքին քաղաքն զոր շինեաց և զզօրս իւր 'ի քուրորդին իւր 'ի Պերթրանն (233), որ էր այր քաջ և պատերազմօղ։ Սորա այս Ջըռնծիլս (էր) որ առլաւ եա զզէնն Պրիսասսի Յունաց Թագաւորին Ալէքսին 'ի Կոստանդնուպօլիս։

ԾԴԱ. Յայսմ ամի 'ի քաղաքին որ կոչի Սմլանթա (Սմլիսթան) 'ի Զահան գաւառի, ահագին նեղութիւնս և վիշտս և վտանգս կրեցին 'ի զօրացն Փռանկաց. և 'ի սաստիկ բարկութենէ անտի խորհեցան չար հասուցանել նոցա, և տարին զյոյժն իւրեանց 'ի յայլազգին, և գաղտաբար հանեալ մարդ և զդիմացի զհեծեալն 'ի ներքս ժողովեալ և առ իրար միաբանեցան ազգս Հայոց և գնացին 'ի վերայ կլային. և ասեն ընդ զօրագլուխն Փռանկաց, եթէ «Երի առ զազգիրդ քո և գնա. Աստուած ընդ քեզ»։ Եւ նորա լուեալ զայն՝ սրտմտեալ որպէս զչար գազան, և ելեալ 'ի պատերազմ 'ի վերայ քաղաքացեացն Յայնժամ քաղաքացիքն յաղ-

թեալ նոցա և կոտորեցին զնոսա առ հասա-
րակ, որ ոչ մնաց 'ի նոցանէ և ոչ մի. և Տէր
համարեցաւ նոցա զայն արդարութիւն։ Եւ
յայնմ աւուր կոտորեցան իբրև ոգիք երեք
հարիւր վասն չարեացն զոր ածին 'ի վերայ
հաւատացելոցն. զի յաւէտ դարձուցին զեր-
կիր և արարին անմարդաբնակ փշաբեր, և
խոպան եղեւ երկիր. առաջի նոցա այգիք և
ծառք գօսացան, և երեսք դաշտաց տատա-
կով լցեալ, և խցեալ ցամաքեցան աղբիւրք։
Բարձին զսէր և զեղբայրութիւն 'ի սիրելեաց,
մատնութիւն և պատրութիւն տարածեցաւ
'ի վերայ երկրի։ Հատուցին զերթեւեկ ե-
կեղեցւոյ 'ի դառն չարեաց իւրեանց, և
փակեցան դրունք տաճարին Աստուծոյ. չէ-
ջան կանթեղք 'ի լուսոյ, խափանեցան օրհ-
նութիւնք Աստուծոյ 'ի տաճարէն Տեառն։
Քահանայք մատնեցան 'ի չար ծառայութիւ-
նս, 'ի բանդս. սեղանք և աւազանք սուրբ
եկեղեցւոյ փլեալ կործանեցան, և ծած-
կեալ եղեն խորհուրդք խաչի, և բուրումն
խնկոց մոռացեալ եղեն, և ամենայն փառա-
բանութիւնք Աստուծոյ արգելեալ եղեն յա-
մենայն գաւառն Ապլաթանն։ Եւ յայլ տե-
ղիս քակեցան ժամատեղք, արհամարհեցան
քահանայքն։ Վերացաւ քննութիւն սուրբ

հաւատոյ, հալածեցաւ ճշմարտութիւնն, մերժեցաւ արդարութիւնն, որոշեցաւ աստուածպաշտութիւնն, և միաբան մոռացան զդատաստանն ահեղ ատենին Աստուծոյ: Այս այսպէս գործեցաւ 'ի մոլի ազգէն Ֆռանկաց, վասն զի փառաւոր իշխանքն և գլխաւորքն նոցա հասան, և իշխանութիւն նոցա յանարժան ձեռս անկաւ, եւ վասն այնորիկ յարուցին հալածանս և չարչարանս 'ի վերայ հաւատացելոց Քրիստոսի 'ի ձեռն սաստիկ արծաթսիրութեան իւրեանց:

ԾՂԲ. Յայսմ ամի փլաւ սուրբ Սոփի, որ էր 'ի քաղաքն Ուռհայ. 'ի յարեւմտից կողմանէն մեծ մասն եկեղեցւոյն 'ի վայր անկաւ:

ԾՂԳ. Յայսմ ամի երեւեցաւ աստղ մի գիսաւոր՝ ահաւոր մեծ և զարմանալի, և սոսկալի երեւեցաւ տեսողացն՝ 'ի յարեւմտից կուսէն 'ի հարաւոյ կողմանէ, և գէսքն նորա ելեալ զմեծ մասն երկնից. և էր 'ի փետրուարի ամսոյ ժԶ, և էր յերեկոյի Տեառնընդառաջին. և կացեալ զաւուրս յիսուն, և հրացումն գործէր տեսիլն նորա ամենայն արարածոց, վասն զի որպէս զգնացս գետոց երեւեալ լինէր գէսք նորա. Եւ ոչ ոք լուաւ զայսպիսի հրաշալի տեսիլ. և աստղն իմաս-

տունքն և հանճարեղքն՝ եթէ այս աստղ թա-
գաւորի է, թագաւոր ծնանի յայսմ ամի,
որ նա տիրէ ամենայն արարածոց, և հաստա-
նէ թագաւորութիւն նորա 'ի ծովէ մինչև
'ի ծով, որպէս զմեծն Աղէքսանդր Մակեդո-
նացին ։

Յայսմ ամի եկն բազմութիւն զօրաց Ա-
րապկաց աշխարհէն՝ տիրանալ Հալպայ և ա-
մենայն Տաճկաց աշխարհին. և էին իբրև
բիւրս երեք ։ Նա յայնժամ յարուցեալ քաջ
զօրականն Աստուծոյ Տանգրի կոմսն Անտիո-
քայ, և գնացեալ 'ի վերայ նոցա և արար ըզ-
նոսա փախստականս, և անթիւ աւարաւ
դարձաւ 'ի քաղաքն Անտիոք ։

ԾՂԴ. Դարձեալ 'ի Թուականութեանն
Հայոց յամի ՇԾԵ (1106—1107), մեռաւ
Ճորկմիշ ամիրայն Մօսլայ 'ի ձեռաց Ջօլէ[234]
ամիրային Պարսից. վասն զի եղեւ սաստիկ
պատերազմ յերկոցունց կողմանց և յաղ-
թեաց Ջօլի զօրաց Ճորկմիշին, և եհար ըզ-
նա նետիւ 'ի խոց մահու. և յետ սակաւ
աւուրց սատակեալ լինէր չար գազանն այն,
և զամենայն աշխարհն տայր 'ի ձեռն Խլիճ
Ասլան սուլտանին. տայր և զՊաղտինն ըզ-
կոմսն 'ի ձեռն նորա՝ զկոմսն Ուռհայոյ, վասն
զի նա ունէր զՊաղտինն իւր ծառայ ։ Նա

արար ժողովս զօրաց Խլիճ-Ասլան սուլտանն յարեւմտից եւ գնացեալ էառ զՄօսլ եւ ըզ-Ջզիրա եւ զամենայն աշխարհն նորա ։

ՃՂԵ. Յայսմ ամի յառաջ քան զայս գայր Խլիճ-Ասլանն բազում զօրօք ՚ի վերայ քաղաքին Ուռհայոյ, եւ կացեալ զաւուրս ինչ ՚ի վերայ բազում պատերազմաւ, եւ ոչ ինչ կարաց առնել. յարուցեալ գնաց եւ էառ ըզ-քաղաքն որ կոչի Խառան, եւ արար զամենայն աշխարհն ընդ ձեռամբ իւրով, եւ դարձաւ յաշխարհն իւր ։

ՃՂԶ. Իսկ ՚ի թուականութեանն Հայոց յամի ՇԾԶ (1107—1108) եղեւ սաստիկ պատերազմ յաշխարհին Տոճկաց ՚ի գաւառին Մօսլայ. Խլիճ-Ասլան եւ Ջօլի ամիրայն բազում զօրօք հարան ընդ միմեանս, եւ եղեւ սաստիկ արեան հեղումն յերկոցունց կողմանց. եւ յաղթեաց Ջօլի զօրացն սուլտանին, եւ մնացեալ զօրքն իւր փախստական գնացին ՚ի քաղաքն Մալտենիս. Եւ սպանաւ ՚ի մեծ պատերազմին սուլտանն Խլիճ-Ասլանն, եւ եղեւ մահ նորա սուգ մեծ ՚ի վերայ քրիստոնէից, զի էր այր բարի եւ քաղցր յամենայն կողմանց. եւ մնաց իւր չորս որդի, եւ տիրանայքն գաւառաց իւրոց ։

ՃՂԷ. Յայսմ ամի զօրաժողով եղեալ ա-

գըն Պարսից երկոտասան հազար, և ան-ցեալ ընդ Տօրոս լեառն որ կոչի Նաւարզա (Անազարբա), և արար աւար զամենայն եր-կիրն Թորոսի՝ որդւոյ Ռուբենեայ, և դայր անցանէր ընդ դաշտն քաղաքին Մարաշայ. և անթիւ գերութեամբ հասանէր յերկիրն Գող Վասլին, 'ի տեղի որ կոչի Բերդուս՝ 'ի սահմանս Նուկիրականն. Այլ լուեալ զայս իշ-խանն Հայոց Վասիլն, զօրաժողով արա-րեալ զգունդն զօրացն Հայոց. և նոքա որ-պէս զարծիւս և կամ որպէս զկորիւն ա-ռիւծոց հասանէին 'ի վերայ այլազգեացն. և արարին սաստիկ և ահաւոր պատերազմ, և մեծաւ յաղթութեամբ դարձուցին ըզ-Թուրքն 'ի փախուստ, և միաբան սրով ըզ-հետ ընթացան և արարին անթիւ կոտորա-ծըս զնոսա, և կալան զբազումս 'ի նոցանէ. և թափեցին զամենայն առ և զգերութիւնն. Այլ դարձեալ իշխանն Հայոց Վասիլ, և զամենայն ազատագունդն Հայոց մեծաւ յաղթութեամբ և բազումուրախութեամբ եկեալ 'ի քաղաքն իւր 'ի Քեսուն, և տուեալ գոհութիւն Աստուծոյ որ ամօթ արար ըզ-թըշնամիսն խաչին Քրիստոսի.

ՃՂԸ. Իսկ 'ի հասանել թուականութեա-նըն Հայոց ՇԾԷ (1108—1109), դարձեալ

կրկնապատիկ ժողով արարին ազգն Պարսից
և արս ընտիրս լինէին իբրև վեց հազար,
և հանդերձ սուլտանովն իւրեանց դային
յաշխարհն Վասլին՝ Հայոց իշխանին, և քի-
նախնդիր լինէին վասն առաջին կոտորածին
զոր կոտորեաց Վասիլ իշխանն 'ի Սերդուսն,
և գաղտնաբար հասանէին 'ի սահմանս քաղա-
քին որ կոչի Հասան-մսուր։ Եւ էր ժա-
մանակ հնձոցն արտեայ, և արարին կոտո-
րած զվաստակաւորսն, և հանդերձ գերու-
թեամբ դարձան և իջին առ բերդն որ ասի
Հարթան։ Եւ յորժամ լուաւ իշխանն Հա-
յոց Գող Վասիլն զգալ այլազգեացն, հա-
սանէր զօրօք իւրովք 'ի վերայ նոցա հինգ
հարիւր արամբք, և արարին սաստիկ պա-
տերազմ քաջազունդն Հայոց, և ազատք ըզ-
միմեանս յորդորէին և յօժարաբար քաջա-
նային ընդդէմ Թուրքաց զօրացն։ Ապլա-
սաթ յազատ ազգէ իւր զօրօքն յարձակեալ
'ի վերայ այլազգեացն, և Պետրոս քեռին
Գող Վասլին իւր ազատօքն արիանայր, և
Վասիլ ինքն Տղայ անուն՝ մայրենեօք յազատ
ազգէ, և նա իւր զօրօքն բեկանէր զթեւս
զօրացն Պարսից. և Տիգրան այր հզօր և
քաջ, որդի ազնուականի 'ի մեծամեծացն
Հայոց, և արարին պատերազմ ահաւոր քա-

ջագունդն Հայոց, և յաղթեցին զօրացն այլազգեացն մեծաւ յաղթութեամբ, և արարին սաստիկ կոտորած զնոսա, և կալան ըզսուլտանն Հայոց (235) և զայլ բազում իշխանս Պարսից, և 'ի գերութիւն վարէր զնոսա առաջի իւր. Եւ դարձաւ իշխանն Հայոց Վասիլն մեծաւ յաղթութեամբ և բազում աւարաւ, և եկեալ 'ի քաղաքն իւր Քեսուն, և փրկեաց զամենայն գերութիւնն զոր առին այլազգիքն. և եղեւ մեծ ուրախութիւն հաւատացելոց։

ՃՂԹ. Յայսմ ամի Ջօսլէնն գնեաց 'ի Ջօլէ զկոմսն Ուռհայոյ զՊաղտինն երեսուն հազար դահեկան, և երեկ (եկն) առ իշխանն Հայոց Վասիլն և արար մեծ ընդունելութիւն նոցա, և երետ սմա բազում տուրս։ Եւ գնաց Պաղտինն և արար ժողովս հեծելոց 'ի Սապանի 'ի քաղաք Վասլին, և կամեցաւ պատերազմել ընդ Տանգրի ընդ առն աստուածապաշտի։ Եւ տեսարին Պաղտինն և Ջօսլէնն զայս ինչ գործ անօրէնութեան, որ ոչ էր հաճելի Աստուծոյ. առաքեցին առ ամիրայն Պարսից Ջօլի, և բերին զնա իւրեանց յօգնութիւն հինգ հազար ձիաւորով, և յարուցին սաստիկ պատերազմ ընդ Տանգրէի կոմսին Անտիոքայ վասն գաւառաց

իւրեանց, զոր առեալ՝ էր Տանգրի յորժամ էին 'ի գերութեան, և ոչ տայր զնոսա. և կամէր զնոսա Տանգրի իւր 'ի ծորտութիւն առնել, և նոքա ոչ հաւանէին նմա: Այս եղեւ ժողովն Վասլին առ նոսա արս ութ հարիւր, և այլ զօրք Պածինկաց 'ի Հոռոմոց Թագաւորին զօրացն որք էին 'ի Մոխս քաղաք. և եղեւ ժողովս բազում: Այս յայնժամ գայր զինուորն Քրիստոսի Տանգրի հազար ձիաւորով և այլ հետեւակ զօրս ընդ նմա. և 'ի սահմանսն Թլպաշրայ եղեւ սաստիկ պատերազմ Գողտնին և Տանգրի, և մարտեան ընդ միմեանս ահագին և զարմանալի: Իսկ զօրքն Գորսեղ՝ արարին սաստիկ կոտորածս զհետեւակ զօրսն 'ի Տանգրէի գնդէն. իսկ 'ի բազմանալ պատերազմին յաղթեաց Տանգրի զօրացն Գողտնին և արարին փախստական զնոսա: Այս յայնժամ դարձաւ մեծաւ սրտմտութեամբ 'ի վերայ Ձ զեւոյ, և սուր 'ի գործ արկեալ էր և վարէր զնոսա սաստիկ կոտորածով. եւ մեռան յաւուր յայնմիկ 'ի դաստուց քրիստոնէիցն ոգիք իբրև երկու հազար. և դարձաւ Տանգրի մեծաւ յաղթութեամբ և գնաց Անտիոք քաղաքն իւր: Այս Գողտնին լինէր փախստական և անկանէր 'ի բերդն որ ասի Արեւընդան.

և Ջօսլինն մտանէր 'ի Թլպաշար 'ի բերդն իւր և զերծաւ ։

Եւ յորժամ լուան զայս 'ի քաղաքն Ուռհայ, առ հասարակ 'ի սուգ մտին և 'ի տրտմութեան վասն Պաղտնին, վասն զի մեռեալ գիտէին զնա. և արարին ժողով յեկեղեցին 'ի սուրբ Յովհաննէս և առ Պապիասն Ֆռանկաց վասն միաբանութեան, զի երկնչէին թէ դարձեալ անկանի քաղաքըն 'ի Տանգրի, և նա տայ 'ի ձեռս Ռիճարդին. զի նա յորժամ ունէր զքաղաքն Ուռհայ, բազմաց աւեր արար ։ Իսկ յորժամ եկին 'ի մի վայր քաղաքացիքն Ուռհայոյ[238] բան խօսեցան ընդ Պապիասն և ասացին. « Չեր մարդ և մեր Թող պահեն զկլայն քաղաքին, մինչեւ մեզ տէր յայտնէ »։ Եւ ընկնի միոյ աւուր գային Ջօսլինն և Պաղտին և մտանէին 'ի քաղաքն Ուռհայ. և արարին վասն այն խօսիցն քննութիւնս, և համարեցան զայն բանն արատ և թիւրեցին զխօսքն 'ի չար խորհուրդս և բազմաշատ աւեր ածին, և զայլոց անմեղաց զաչսն 'ի լուսոյ խաւարեցուցին ։ Եւ յաւուրն յայնմիկ արարին չարաչար խրատ քրիստոնէից, վասն զի ազգն Ֆռանկաց դիւրաւ լսէին ամենայն չար մատնութեանն, և յօժարութեամբ հեղու-

մին արեան առնէին և արդար արանց և ան-մեղաց. և այնչափ յանդգնեցան՝ մինչև զարքեպիսկոպոսն Հայոց զտէր Ստեփանո-սին զաչսն հանել ջանային, զոր գիտացեալ քաղաքացեացն զանմեղութիւն նորա՝ գնե-ցին զնա հազար դահեկան.

Մ. Յայսմ ժամանակիս եղեւ դառնա-շունչ, և 'ի գազան ձմերոցն և 'ի բարկու-թենէ օդոյն՝ հատան բազում վայրի անա-սունք, և թռչունք կորուստ եղեն ընդ ա-մենայն երկիր: Նաև երեւի 'ի յաշխարհն Պարսից սեաւ ձիւն, և եղեւ այն ահաւոր նշան 'ի վերայ Պարսից ազգին, զոր ոչ կարացին ի-մաստութիւնքն իւրեանց գիտենալ:

ՄԱ. Յայսմ ամի շարժեցաւ սաստիկ պա-տերազմ 'ի յԱրաբիա՝ որ ասի Նարայ, որ է տուն Յոքայ. ժողովեցան ազգքն Արաբկաց և Թուրքաց, և արարին ահագին պատերազմ ընդ միմեանս: Յայնժամ զօրքն Արաբկաց ա-րիաբար և քաջապէս մարտեան ընդդէմ զօ-րացն Պարսից, և մեծաւ յաղթութեամբ հարին զնոսա, և կոտորելով արարին զնոսա փախստականս: Դարձեալ արարին ժողով զօրաց զօրագլուխն Թուրքաց և գային 'ի վերայ արաբիկ զօրացն, և քաջացան պատե-րազմաւ և արարին զնոսա փախստականս. և

արք յիսուն հազար ՚ի զօրաց Արաբկաց եկին ՚ի գաւառն Հալպայ քաղաքին, և կամեցան լինել ընդ ձեռամբ Տանգրի Անտիոքայ կոմսին. և կացեալ աւուրս ինչ, եդարձան յաշխարհն իւրեանց։

ՄԲ. Իսկ ՚ի Թուականութեանն Հայոց յամի ՇԾԸ (1109—1110), զօրաժողով արար կոմսն Ուռհայոյ Պաղտինն և Ջօսլին կոմսն Թլպաշխոյ, և գնացին ՚ի վերայ քաղաքին Խառանայ, վասն զի զարտերս նոցա կերիցեն։ Էր ընդ նոսա ազատ ոմն հայեցի ՚ի զօրաց Վասլին, որդի Տաճատայ իշխանին Տարօնոյ, որ անուանէր Աբլասաթ, և էր այր քաջ և ընտիր պատերազմող։ Սա ՚ի Վասլէն խռովութեան աղագաւ եկեալ էր ՚ի յՈւռհայ. և յորժամ հասան ՚ի դուռն քաղաքին Խառանայ, յայնժամ Ուռհայեցիքն սկսան սպաս տանել զարտորայսն, և զօրքն Թուրքաց յանկարծակի հասանէին ՚ի վերայ նոցա հազար և հինգ հարիւր ձիաւորով, և սպանանէին ՚ի յՈւռհայեցւոցն մարդ հարիւր և յիսուն, և զօրքն Փռանկաց սակաւ էր, կամէր փախչել ՚ի յՈւռհայ։ Յայնժամ Աբլասաթ որպէս զառիւծ գոչեաց, և ձայն տուեալ զօրաց իւրոց՝ և նոքօք բեկանէր ըն-ճակատ այլազգեաց զօրացն. և ապա դար-

ձաւ Փռանկն 'ի վերայ և յետս պահեցին զօրքն Թուրքաց. և դարձաւ Փռանկն 'ի յՈւռհայ, և Թուրքն պատերազմաւ զհետ երթայր, և անցեալ մտան 'ի քաղաքն Ուռհայ։ Եւ Ապլասաթ ոչ հաճեալ 'ի գործ Փռանկին, և դարձաւ առ Վասիլն. և էր խոցեալ 'ի բազուկն, բայց անցեալ մնաց 'ի մահուանէ, վասն զի երկաթն էառ զարկածն (237)։

ՄԳ. Յայսմ ամի առին զծովահայեաց քաղաքն որ անուանեալ կոչի Տռապօլիս, կալեալ 'ի խսար զամս տասն և մի, և նեղեալ 'ի սաստիկ պատերազմացն և յարգելականս ժամանակացն, վասն զի Թագաւորն Երուսաղէմի Պաղտինն և Բերդրան ազգականն մեծ կոմսին Զընճլին՝ ունէին զնոսա 'ի մեծ նեղութեան. Յայնժամ Տռապօլսեցիք կոչեն զՏանգրի զկոմսն Անտիոքայ և տան զՏռապօլիս 'ի ձեռս նորա։ Եւ յայնժամ Թագաւորն Երուսաղէմի և Բերդրանն յարուցին պատերազմ 'ի վերայ Տանգրի, վասն զի զքաղաքն նոքա ունէին 'ի խսարի։ Յայնժամ պատրիարքն և եպիսկոպոսունքն իւրեանց մտան 'ի մէջ նոցա և արարին խաղաղութիւն երկոցունց կողմանց, և դարձաւ Տանգրի յԱնտիոք։ Իսկ Թագաւորն Եր-

բուսաղէմի արար ժողով 'ի վերայ Տրապօլ-
ւոյ զամենայն զծովեցի զօրսն , և պատեաց
զքաղաքն զծով և զցամաք , և արարին 'ի
վերայ նորա ահագին պատերազմ , և սրով
վառեցաւ քաղաքն և առ հասարակ զամե-
նայն քաղաքն կոտորեաց սրով , և լցաւ քա-
ղաքն արեամբ . և առին զօրքն Փռանկաց
անթիւ գանձս ոսկւոյ և արծաթոյ և անհա-
մար ծառայս տանէին 'ի յաշխարհն Փռան-
կաց .

ՄԴ. Իսկ 'ի գալ հասանել թուականու-
թեանն Հայոց յամս ՇԾԹ (1110–1111),
Ուռհայոյ կոմսն կամեցաւ երկրորդ պատե-
րազմ յարուցանել 'ի վերայ Տանգրէի : Յայն-
ժամ Պաղտինն և Ջօսլինն առ յանդգնու-
թիւն սրտից իւրեանց խորհեցան զոր ոչ
վայել է հաւատացելոց , և առաքեցին 'ի Մօ-
սուլ քաղաք և կոչեցին իւրեանց յօգնու-
թիւն զասպասալարն Պարսից որ կոչի Մամ-
տուտ (238) , այր գազան և հզօր պատերազ-
մող : Եւ նորա լուեալ զայս և յօժարու-
թեամբ յանձին կալեալ , և արարեալ ժո-
ղով առ ինքն զամենայն տունն Թուրքաց ,
և ահագին բազմութեամբ գայր հասանէր
'ի սահմանս քաղաքին Խառանայ . և արձա-
կեաց կոչեաց զկոմսն Ուռհայոյ , զի եկեսց-

ցէ առ նա ։ Եւ նորա զարհուրեալ ոչ իշխեաց գնալ առ այլազգին . յայնժամ գիտացեալ Մամդուտն, եթէ խաբեցաւ ՚ի նմանէ, դարձաւ ՚ի վերայ Ուռհայոյ ՚ի պատերազմ։ Եւ տեսեալ զայս Պաղտնին, հանէր զՃօշլինն ՚ի խնդիր զօրաց և առաքէր առ Թագաւորն Երուսաղէմի, զի հասանիցէ յօգնութիւն քաղաքին Ուռհայոյ . և նա կայր բանակեալ ամենայն զօրօքն Փռանկաց ՚ի վերայ քաղաքին որ ասի Պէրութ, ՚ի վերայ Ովկիանոս ծովուն ։ Իսկ ՚ի վերայ այսր ամենայնի գայր հասանէր ամիրայն Մամդուտոյն զօրօք անհամար բազմութեամբ և ելից զլայնատարած դաշտն Ուռհայոյ, և պատեաց առ հասարակ զամենայն քաղաքն եւ ծածկեաց զլեառն և զբլուրս ։ Եւ ժողովեցան առ նա ամենայն արեւելք, և փախեաւ ամիրայն, գաւառն եղեւ անմարդ, և սաստիկ պատերազմաւ ահաբեկեաց զամենայն քաղաքն ։ Եւ զաւուրս հարիւր կայր Ուռհայ (239) ՚ի մեծ նեղութեան, և տառապեալ լինէին յամենայն կողմանց ձանձրացեալք յանդադար պատերազմացն ։ Եւ սկսան ՚ի հացէ վտանգել, վասն զի մուտ և ելն արգելեալ էր ՚ի բազմութենէ զօրացն, զի զոր ըմբռնէին սպանանէին, և լցան վայր

քըն 'ի դխականց զօրս կոտորեալ էին շուրջ զքաղաքաւն. և առ հասարակ այրեաց զամենայն գաւառն, և ոչ մի տեղ ոչ մնաց չէն։ Զայս արար հրամանաւ Սուլթիմանայ (240) արեւելից ամիրային. և կոտորեաց առհասարակ զամենայն դրախտն որ կայր արտաքոյ քաղաքին, և հիմն 'ի վեր արար զամենայն վանորայս որք էին 'ի լերինն. և այսպիսի օրինակաւ կայր Ուռհայ 'ի մեծ նեղութեան։ Եւ զկնի այսր ամենայնի առաւ Պէրութ 'ի Տաճկաց օգնութեամբն Աստուծոյ, և առ հասարակ զամենայն քաղաքն սրով կոտորեաց, և լցան զօրք Փռանկացն բազմութեամբ աւարաւ։ Եւ Ճօսլին էր (անդ) 'ի յառնուլն քաղաքին Պէրութայ, և արար Ճօսլին ահաւոր քաջութիւն։

Եւ զկնի այսր ամենայնի շարժէր զամենայն զօրսն և գայր յօգնութիւն Ուռհայոյ. և Թագաւորն Երուսաղէմի գայր և Բերդրան կոմսն Տռապօլսոյ գային ամենայն զօրքն Անտիոք քաղաք առ Տանգրի, և մեծաւ հառաչանօք հաւանեցուցանէին զնա հասանել յօգնութիւն քաղաքին Ուռհայոյ։ Եւ խաղացեալ ամենայն զօրօքն Փռանկաց եկին առ իշխանն Հայոց առ Վասիլն, և նա փառեաց զամենայն զօրս իւր և հասանէր 'ի

Սամուսատ ։ Գնայր և զկնի նոցա իշխանն Հայոց Աբլղարիպ զօրօք իւրովք՝ որ նստէր 'ի քաղաքն անուանի որ կոչի Պէր . և յայնժամ բազմութեամբ զօրօք իւրեանց անցին 'ի սահմանս քաղաքին Ուռհայոյ ։ Իսկ լուեալ զայս ասպասալարն Թուրքաց Սամոստուան, և շարժեալ զբանակն իւր և իջանէր 'ի քաղաքըն (241) Խառան . և հասան զօրքն Փռանկաց 'ի դուռն Ուռհայոյ , և բանակս հարկանէին անդ . Իսկ 'ի լսանալ միւս այլ աւուրն կազմեցան միաբան 'ի գործ պատերազմին , և հանեալ բարձրացուցին զԱսրագայ սուրբ Նշանն 'ի վերայ գեղարդեան և տանէին առաջի զօրացն ։ Իսկ Թուրքն գնայր հասանէր յայնկոյս քաղաքին Խառանայ , վասն զի նենգաւորութեամբն իւրեանց տարցեն 'ի յօտար երկիր . և կացուցանէին 'ի Խառան բազում զօրս 'ի քմին ։ Իսկ զօրագլուխքըն Փռանկաց իմացան զկեղծաւորութիւն զօրացն Թուրքաց , դարձան բանակեցան 'ի վերայ ամուր բերդին՝ որ կոչի Շէնաւ , 'ի Տաճկաց սահմանին , և արարին 'ի վերայ նորա սաստիկ պատերազմ ։ Իսկ յայնժամ լսէ Տանգրէ չար համբաւ վասն իւր 'ի յայլ զօրագլխացն , առեալ զզօրս իւր և հասանէր 'ի Սամուսատ , և իջեալ յեզր Եփրատայ . և

դարձաւ ամենայն Ֆռանկաց զօրքն զհետ նորա։ Յայնժամ լուեալ քաղաքացիքն և գաւառացիքն որ 'ի քաղաքն Ուռհայ, ելին առհասարակ զհետ զօրացն Ֆռանկաց մայր ուդուովք խուռնվք։

Իսկ երկու Ֆռանկ գործեցին գործ անօրէնութեան, գնացին առ Սամոսատն և ուրացան զքրիստոնէական հաւատոն, և ասացին Սամոսատին՝ եթէ ամենայն բանակն Ֆռանկաց փախստական կան և երթան։ Ու լուեալ զայս Սամոսատն՝ դարձաւ զհետ զօրացն Ֆռանկաց, և 'ի քաղաքին Ուռհայոյ դրանէն մինչև 'ի Ասփրատ գետն ելից արեամբ զերկիրն, (կոտորելով) զքաղաքացիքն և զգաւառացիքն, և հասաւ Սամոսատն 'ի Ասփրատոս և արար անթիւ կոտորածս (242). Իսկ Ֆռանկքն առհասարակ անցեալ էին յայնկոյս գետոյն. և Թուրքն զհաւաստացեալս ընբախողխողս արարեալ, զի անդ բանակեալ կային որպէս զհօտ ոչխարաց. զաստուածասաստ բարկութիւնն էած 'ի վերայ նոցա աէին. Ասփրատ իսկ 'ի յարիւն դարձաւ. և շատայն էին որ խեղդեցան 'ի ջուրն, ուր մտանէին լողորդքն և. ջանային անցուցանել և ոչ կարէին. և առաւել մտանէին 'ի նաւսն, և հինգ վեց նաւ ընկղմեցաւ լի մարդով, զի

ամենայն որ Հոնայր մատանել։ Եւ յայսմ ա-
ւուր եղեւ աւերեալ ամենայն գաւառն
Ուռհայոյ և եղեւ անմարդ։ Նոյն էր զոր
գրեցին առաջին իմաստունքն, եթէ «փոյ
տանն Աբգարու դ։ Իսկ զօրքն Փռանկաց
որ էին յայնկոյս գետոյն Եփրատայ, տեսա-
նէին զայս ամենայն անցս քրիստոնէից և
ոչինչ կարէին օգնել նոցա, այլ լային զա-
նապէս։ Յայնժամ դարձաւ Մամոտուան մե-
ծաւ յաղթութեամբ և գնաց ՚ի Խորասան.
և անտի յառաջեաց ՚ի յաշխարհն իւր գե-
րութեամբ և աւարաւ անթիւ։

Իսկ Սուլեման մեծ ամիրայն արեւելից կա-
լեալ զՊալակ ամիրայն և կապեալ զնա երկա-
թի կապանօք և տարաւ եդ ՚ի զնդան Խա-
ծեաց բերդն Տարօնոյ։ Իսկ զօրքն Փռանկաց
գնացին ամօթով յիւրաքանչիւր գաւառն,
վասն զի փախստանօք փրկութեան՝ անցուին ա-
ւուրքն հաւատացելոց։ Իսկ քաջ զինուորն
Քրիստոսի Տանգրի արարեալ ժողով և գը-
նաց ՚ի յաշխարհն Հալպայ քաղաքին, և ի-
ջեալ ՚ի վերայ քաղաքաբերդին որ ասի Թե-
րեպ, և զբազում աւուրս կացեալ ՚ի վերայ
նորա, և սաստիկ պատերազմաւ էառ զնա
և ոչինչ վնասեաց մարդոյ։

Մէ. Յայսմ ամի զօրաժողով արարին զօր-

քըն Թուրքաց, և մտին 'ի յաշխարհն Մնաւարզայ. և արար աւար զամենայն երկիրն և զՄարաշայ։ Իսկ մեծ իշխանն Հայոց Թորոս որդի Կոստանդեայ՝ որդւոյ Ռուբենայ ակն ածեալ 'ի բազմութենէ զօրացն Պարսից, և ոչ համարձակեցաւ ելանել 'ի պատերազմ։ Եւ դարձաւ զօրք Թուրքացն անթիւ գերութեամբ և աւարաւ գնաց յաշխարհն իւր։

Եւ յայսմ ամի (243) բազում աւեր եղեւ յայնմ գաւառին 'ի յաւուրս ձմեռայնոյ ժամանակին. զի եղեւ յաւուր միում նշան ահաւոր և սոսկալի 'ի յաշխարհն Հայոց, 'ի միում մթան գիշերին, կորեալ եղեւ հուր 'ի վերնական հաստատութենէ երկնից, և 'ի բարձրութենէ անտի ցոլացեալ եղեւ, և հարեալ զարկաներ զծովն Վասպուրականայ. և սոսկալապէս գոչեաց ծովն և ցոլացեալ հարկաներ զցամաք, և դողաց ծով և ցամաք ահաւոր գոռմամբ, և փոխեաց զծովն 'ի գոյն իւր արեան, և հուրն այն պատառեաց(244) զհաստատութիւն (երկոս) անդնդոց։ Իսկ 'ի յառաւօտուն տեսանէին սատակեալ զբազմութիւն ձկանց ծովուն և կային կուտեալ ձկունք առ եզր ծովուն որպէս զփայտակոյտս մայրեաց, և հատեալ եղեն վայրքն 'ի

սաստիկ բազմութենէն, և տեսանէին զցա-մաքային վայրքն, զի պատառեալ հերձի ՚ի բազում տեղիս ահաւոր խորութեամբ։

ՄՁ. Դարձեալ եղև ՚ի Թուականութեանն Հայոց ՚ի յամի ՇԿ (1111—1112)․ գայր խաղայր Սամոսատն բազմութեամբ զօրօքն Թուրքաց, և հասանէր ՚ի վերայ բեր-դին որ կոչի Թլկուրան. և արար պատե-րազմ ՚ի վերայ նորա, և բերդացիքն ետուն առ վտանգին զբերդն ՚ի ձեռս Սամոսատին. և կային ՚ի բերդն քառասուն Ֆռանկ, ա-ռեալ զնոսա և կոտորեաց զամենայն սրով։ Էառ և զՊոտէթիլն, և գայր իջանէր ՚ի Ճէ-նաւ առ ամիրայն Արապկաց, որ ասէին Սնի (Սանի). և յարուցեալ իջանէր ՚ի գաւառն Ուռհայոյ ՚ի բերդն որ կոչի Գօլման. ժողո-վեցան առ նա ժողովք բազումք։ Յայնժամ գայր առ նա մեծ ամիրայն բազում զօրօք որ ասի Ահմատիլ. գայր և Սուլիման արևելից ամիրայն, գայր և որդին Պուրսուխին և հա-սանէին միաբան ՚ի վերայ Ուռհայոյ. և կա-ցեալ զաւակաւ աւուրս և գնացին ՚ի Սրուճ քաղաք և անցանէին ընդ մեծ գետն Եփ-րատ, և գային միաբան ՚ի վերայ ամուր բերդին Թլպաշրայ։ Իսկ լինէր յայնժամ ՚ի բերդն կոմսն Ֆռանկաց Ճօսլինն, որ էր այր

քաջ և հզօր պատերազմող․ իսկ բազմութիւն զօրացն Թուրքաց բազում վտանգս պատերազմաւ արկանէին 'ի վերայ բերդին և ոչ ինչ կարացին առնել։ Յայնժամ ամիրայն Պարսից Ահմատիլն լուեալ էր յառաջագոյն զքաջութիւն Ջօսլինին, և արար սէր միաբանութիւն ընդ նմա և եղեն եղբայր միմեանց։ Եւ յարուցեալ Մամտուտն ամենայն զօրօքն Պարսից գնայր 'ի վերայ Անտիոքայ, և իջանէր 'ի տեղին որ կոչի Շիզար։ Իսկ Տանգրի արարեալ ժողով զամենայն ազգն Փռանկաց, և Երուսաղէմի Թագաւորն գայր Պաղտինն առ նա եւ Պերդըրան կոմսն Տռապօլսոյ, գայր և Պաղտինն կոմսն Ուռհայոյ, և 'ի Շիզարն իջան։ Եւ երկոքեան բանակն հանդիպեցան միմեանց և ոչ արարին պատերազմ․ դարձաւ Մամտուտն և գաղտ գնաց յաշխարհն իւր, և զօրքն Փռանկաց գնացին խաղաղութեամբ 'ի տունս իւրեանց։

Յայսմ ժամանակիս սատակեցաւ (245) լինէր Սուքիման ամիրայն արեւելից 'ի Ճանապարհին յանկարծամահ եղեալ արժանաւոր սատակմամբ 'ի Տեառնէ․ վասն զի արար բազում աւեր և կոտորածս 'ի գաւառն Ուռհայոյ։

ՄԵ․ Յայսմ ամի եղեւ վրէժխնդրութիւն

Աստուծոյ անմեղ արեան Գագկայ Շահն շահի՝ որդւոյ Աշոտոյ Բագրատունւոյ, 'ի ձեռն առն հզօրի և մեծ իշխանին Հայոց Թորոսի որդւոյ Կոստանդեայ՝ որդւոյ Ռուբենայ։ Արդ 'ի յաւուրս Թորոսի էին սպանողքն Գագկայ արքայքն Հայոց 'ի բերդն որ անուանեալ կոչի Կնդրօսկաւիս, ահաւոր ամրութեամբ բարձրացեալ՝ անպարտելի յամենայն կողմանց. և որդիքն Մանդալէի դեռեւս կենդանի էին երեք եղբարք, և մի 'ի նոցանէ ունէր ընդ Թորոսի միաբանութիւն վասն խնամութեան, և յաղագս այսորիկ խոստացեալ էին տալ զբերդն՝ Թորոսի, վասն զի սահմանակից էր գաւառի նորա մերձ 'ի յերկիրն որ կոչի Չկնջուր, լեառնահայեաց Գամրաց աշխարհին (246)։ Յայսմ ամի յարուցեալ իշխանն Հայոց, և սակաւ ինչ զօրօք գնաց առ նոսա սիրով և աղագաւ, և իջեալ 'ի սահմանսն այն և յուղարկեաց զնոսա ծանուցումն (առնել) զգալն իւր։ Յայնժամ մի ումն 'ի սպանողացն առեալ ընծայս եւ գայր առ Թորոս։ Եւ նա մեծարեաց զնա. և նա հանեալ դանակ մի ծածկագին և հանդերձ մի գնէր առաջի Թորոսի. կերան եւ արբին։ Յայնժամ ասէր ցնա Թորոս՝ եթէ «Նա իս խոստումն կայ

ձեր վասն բերդին, „տուք ՚ի յիս, և յամենայն գաւառս իմ առէք ձեզ տեղի զոր կամիք»։ Եւ նորա առեալ զյառաջասացեալն, և տանէր ցիշխանն Հայոց, եթէ «Ոչ կարեմք տալ զբերդն, վասն զի մեր հայրենիք է և ազգի տեղիք»։ Եւ իբրեւ գիտաց Թորոս եթէ խաբեցաւ ՚ի նոցանէ, տայր զբերեալ նուէրս յինքն, և պատմեալ ասէր. «Արի և գնա ՚ի տուն քո, և յայսմ հետէ պատրաստ եղերուք յինէն»։ Եւ յարուցեալ աստուածասպանին դարձաւ ՚ի տուն իւր. դարձաւ և Թորոս դիմօք ՚ի տուն առաջի աչաց նորա։ Եւ իբրեւ գնաց սպանողն եղեւ աներեւոյթ, դարձաւ Թորոս զօրօքն, և ՚ի գիշերին հասանէր ՚ի վերայ բերդին, և դարանակալ առնէր զհետեւակ զօրսն, և ձիաւորօքն հեռանայր յագարակսն. կամեցաւ ապատակ առնել զերկիրն։ Իսկ ՚ի լուսանալ առաւօտուն ելանէին ՚ի բերդէ բերդացիքն, և հանդիպեցան ՚ի վերայ քմինին, և յորժամ տեսին՝ եղեն փախստական։ Եւ յարուցեալ զօրացն Թորոսի ընթանային ընդ-զառ ՚ի վեր բերդին. և յորժամ տեսին բերդացիքն, փակեցաւ դուռն, և նոքա արտաքոյ կալան զդուռն, և սկսան պատերազմել, և կրակ հարկանէին ընդ ցուեաց

բերդին, և նա յոյժ բորբոքեցաւ։ Եւ յորժամ տեսին բնակիչքն՝ բացեալ 'ի յայլ կողմանէ դուռն, և ելեալ փախեան, և զօրքն Թէոդորոսի առին զբերդն և կալան զփախըստականսն, և հասեալ պատմեցին Թէոդորոսի. և նա յոյժ հանայր, և գայր մեծաւ ուրախութեամբ 'ի բերդն 'ի Կոնդռօսկաւիս։ Եւ յորժամ մտաւ 'ի բերդն, սկսաւ քննութիւն առնել գանձատան նոցա, վասն զի ամենայն գաւառին գանձ ոսկի և արծաթանդ 'ի պահեստի էր ժողովեալ. և ասէր Թէոդորոս ցՄանդալէի որդիքն, եթէ «Բերէք առ իս զԳագկայ Թուրն, և զհանդերձն Հայոց Թագաւորին»։ Եւ նոքա բերին. և տեսեալ Թէոդորոսի ելաց դառնապէս, և ամենայն զօրքն լային։ Եւ յայնժամ հրամայեաց Թէոդորոս ցուցանել զգանձս իւրեանց, և նոքա պնդեալ ոչ գային 'ի խոստ, և սկսան 'ի խոշտանգանս արկանել զնոսա։ Յայնժամ միւս եղբայրն աղաչէր զզօրականսն զի տարցեն զնա 'ի քարակտուրն զի ջուր հեղցէ. և յորժամ տարան, ձգէր զինքն 'ի բարձրութենէ քարէն 'ի վայր, և անկեալ սատակեցաւ չարաչար։ Իսկ զմիւս եղբայրն սկսաւ 'ի վտանգ արկանել Թէոդորոս, և նա լքեալ երեսօք ասէր ցԹէոդորոս, եթէ «Դու Հայ-

մարդ ես, և մեք Հոռոմք իշխանք, զի՞նչ կամիս պատասխանիս տալ Հոռոմոց թագաւորին, որ դատես զմեզ»։ Յայնժամ սրտմտեալ Թորոս, և զայն երեսաց այլագունեցաւ, և առեալ ՚ի ձեռին իւրում քիր մի կռանի, և գազանաբար յարձակեցաւ ՚ի վերայ նորա և ասէր, եթէ «Ո՞վ էիք դուք որ զայր հզօր և զօծեալ թագաւորն Հայոց սպանիք, և կամ զի՞նչ պատասխանի ետուք ազգին Հայոց»։ և լալախառն սկսաւ չարաչար հարկանել զնա՝ մինչև սատակեցաւ դառնահառաչ մահուամբ։ Եւ յայնժամ գոհանայր զԱստուծոյ որ էառ զվրէժ արեան Գագկայ Հայոց արքային, վասն զի հայր հօր նորա Ռուբէն ՚ի զաւակացն Գագկայ էր։ Եւ միաբարձ արարեալ զամենայն տունս նոցա բազում գանձս և դիպակս և. խաչս յոյժ մեծամեծս արծաթիս, և պատկեր ոսկեձոյլ և արծաթ առեալ գնաց ՚ի Վահկայն, և զմիւս եղբայրն զկնի տանէր, և դներ զզօրսն ՚ի բերդն պահապանս (247)։

ՄԲ. Ի թուականութեան Հայոց ՇԿԱ (1112–1113), դարձեալ ժողով արար չար և արիւնարբու գազանն Մամտուտն, և գայր խաղայր ՚ի վերայ քաղաքին Ուռհայոյ. և էր յայնմ ժամու անհոգացեալ քաղաքն ՚ի

նմանէ. և նա յանկարծակի հասանէր ՚ի վերայ քաղաքին զկնի Զատկին՝ յաւուր մեռելոցին. և էր սահմի ամսոյ մուտ, և գայր իջանէր ՚ի Կուպրինն, և յարուցեալ ամենայն բազմութեամբ ՚ի դուռն քաղաքին Ուռհայոյ, և կացեալ զաւուրս ութ՝ փոխեցաւ ՚ի Մանցւոյն սայրն, և անտի գայր իջանէր ՚ի Սուրբ վկայքն մօտ ՚ի պարիսպն։ Յայնժամ յաղթող զօրականն Քրիստոսի կոմսն Ջօսլին առեալ հարիւր ձիաւոր և հարիւր հետեւակ և գայ մտանէ ՚ի Սրուճ քաղաք. յայնժամ զօրքն Թուրքաց հազար և հինգ հարիւր ձիաւոր արշաւեցին ՚ի Սրուճ Եղիայի շաբաթ օրն։ Եւ յարուցեալ Ջօսլինն անկանէր ՚ի վերայ Թուրքին և սպանանէր զնոսա առ հարիւր և յիսուն. և կալաւ հինգ արս գլխաւորս. և էառ զամենայն զձանրոցս նոցա. Եւ մնացեալքն փախստական գնացին առ Ամառուտ ՚ի քաղաքն Ուռհայ։ Եւ լուեալ Ամառուտն զայս ամենայն, և զօրօքն գնաց ՚ի վերայ Ջօսլինին ՚ի Սրուճ քաղաք. և նոյն ժամայն Ջօսլինն գաղտագնաց լեալ գայր յՈւռհայ քաղաք մտանէր։ Եւ կացեալ Ամառուտն ՚ի Սրուճ քաղաք զաւուրս եւթն, և դարձաւ ՚ի վերայ Ուռհայոյ. և արք ումանք նենգաւորք գնացին ընդդէմ նորա, և ՚ի

ճանապարհին առեն ցնա. « Ո՞րամ մեզ ողջու-
մութիւն, և տայցուք այսօր զՈւռհայ 'ի
ձեռս քո »: Եւ նա բազում ուրախութեամբ
արար զամենայն կամս նոցա, զի նեղեալ էին
'ի բազմութենէ սովոյն, և առ վտանգին ոչ
գիտացին զինչ գործեցին. և բերեալ զՍ՛ամ-
տուռն 'ի գիշերի, և արք հինգ տան զքաղա-
մամքումս քաղաքն Ուռհայ 'ի ձեռս Թուրքին.
եասուն բուրգն մի 'ի նոսա, որ բարձր էր
քան զամենայն քաղաքն 'ի յարեւելից կուսէ
քաղաքին, և արս հարիւր հանեալ կացուցին
'ի վերայ նորա. և առին երկու բուրգն այլ
և բազմացան: Իսկ Աստուած որ ոչ կամի
զկորուստ հաւատացելոց, յառաջագոյն էր
բերեալ զկոմսն Փռանկաց զՃօսլինն յող-
նականութիւն օրհնեալ քաղաքին Ուռհայոյ:
Եւ լուեալ զայս քաջ զօրականն Աստուծոյ
Ճօսլինն, առեալ զկոմսն Ուռհայոյ զՊաղտո-
նըն և զայլ զօրսն Փռանկաց, հասանէր 'ի
պարխայն 'ի պատերազմ ընդ Թուրքն զօրացն.
և այսպէս քաջապէս մարտ եդեալ արխաքար
'ի վերայ բրգանն, մինչեւ 'ի սատակութենէ
պատերազմին զամենայն բազմութիւն զօ-
րացն Թուրքաց 'ի վայր հեղոյր 'ի պարսպէն,
և տուողքն և առողքն 'ի միասին սատակե-
ցան. և յաւուրն յայնմիկ Թափեալ եղև քա-

զայն Մուշայ 'ի Թուրքաց քաջութեամբ Ջօղեկին և այլ զօրացն քաղաքացեաց։ Յայնժամ կոմսն Ջօսլին առ քաջութեան սրտի իւրոյ և 'ի ձեռն չարախօս լեզուաց բազում արիւն հեղլին յանմեղ քաղաքացեացն՝ սպանմամբ և այրմամբ հրոյ. (եռուն) և խորամս ցաւագինս, որ ոչ էր հաճելի Տեառնծոյ։ Իսկ յայնժամ Մամուռն յարուցեալ գնաց էառ զԹըլմուզն և ամօթալից երեսօք գնաց 'ի Խորասան մեծաւ անարգանօք։

ՄԹ. Յայսմ ամի զօրաժողով արար կոմսըն Անտիոքայ Տանգրի, և գնայր 'ի վերայ Վասլին՝ Հայոց իշխանին, և յարուցանէր պատերազմ 'ի վերայ Ռուպինայ. և սաստիկ պատերազմաւ էառ զքաղաքն Ռապան 'ի Վասլէն. և գնաց զօրօք 'ի վերայ Բեսնոյ և իջաւ 'ի գլուխ դաշտին Ներքեւ ակինն (248) 'ի Թիլն։ Իսկ յայնժամ զօրաժողով արար Վասիլն արս հինգհազար. և կացեալ զաւուրս ինչ և ոչ արարին պատերազմ, այլ հաստատեցին ընդ միմեանս սէր, և դարձեալ տայր զՌապան 'ի Վասիլն (249), և տայր Վասիլն զգաւառն Հասան-Մնրայ և զԹորէր, և զՄարեմն 'ի Տանգրի. վասն զի Վասիլն 'ի Ֆըռանկաց էր առեալ զգաւառս զայս զՀա-

տան-Սնուր և զԹորէր և զՍւրեմն. և դարձոյց 'ի յազգն Փռանկաց. և գնաց Տանգրի խաղաղութեամբ 'ի քաղաքն իւր Անտիոք:

Մժ. Յայսմ ամի յարեգ ամսոյ քսան և չորս մեռանէր մեծ իշխանն Հայոց որ կոչեցաւ Գող Վասիլ. և եղեւ սուգ սաստիկ ամենայն տանն Հայոց. վասն զի առ նա էին ժողովեալ մնացեալ զօրքն Հայոց, և ամենայն զօրքն Բագրատունեաց և Պահլաւունեացն, և որդիք Թագաւորացն Հայոց հանդերձ ազատագունդ զօրօքն առ նա կային հանգուցեալ մեծաւ փառաւորութեամբ. և աԹոռ հայրապետութեանն Հայոց աշխարհին անդ եղաւ, վասն զի աւերեալ էր բազում գաւառաց իւրով զօրութեամբն, և ամենայն երամք կրօնաւորաց, եպիսկոպոսաց, հարց և վարդապետաց առ սա ժողովեցան և առ հասարակ կային մեծաւ ուրախութեամբ: Մեռաւ իշխանն Հայոց և Թաղեցաւ 'ի Կարմիր վանքն. և էր հօգեբարձու նորա և հայր խոստովանութեան տէր Բարսեղ կաԹուղիկոսն Հայոց. և տուաւ հողադրամ հազար դահեկան, և պատարագուց հարիւր և յիսուն դահեկան աւելի և ոչ պակաս, և մատաղ անԹիւ: Եւ տարան Տանգրէի բազում տուրս 'ի տանէն Վասիլին,

բաղում գանձս և դիպակս, ձիս և ջորիս, տարան և զԹագն կնոջ Վասլին առ կինն Տանգրէի, և այլ իշխանաց Թագաւորացն տուաւ բաղում ընծայս, և աղքատաց բաղում ինչս: Եւ տան զիշխանութիւն Վասլին՝ տղայ Վասլին, որ է մայրենեօք յազգէ կամսարականն, սնեալ և զարգացեալ 'ի տան Վասլին՝ որպէս զորդի 'ի ծոց հօր իւրոյ, գեղեցկատեսիլ և առիւծադէմ, յաղթողական և որագլուխ, այր քաջ և պատերազմող, ամաց քսանևհնգից: Զսա նստուցին յաթոռ մեծ իշխանին Վասլին, և նմա հնազանդեցան ամենայն զօրքն, վասն զի յոյժ առատաձեռն և մեծատուր եղեւ, սիրեցեալ յաչս ամենեցուն և զօրացն: Եւ արար միաբան ժողով առ Բարսեղ, և տայ զամենայն իշխանութիւնն 'ի տղայ Վասիլն. և եղեւ ուրախութիւն 'ի վերայ տանն Հայոց:

ՄԺԱ. Յայսմ ամի 'ի մարերի ամսոյ ժը, դեղեցին զմեծ հաւատացեալն քան զամենայն (250) Տանգրի և մեռանէր կոմսն Անտիոքայ, որ էր այր սուրբ և աստուածասէր, և էր քաղցր բնութեամբ և ողորմած, հայելով 'ի վերայ ամենայն հաւատացելոց Քրիստոսի. և յոյժ խոնարհ էր առ ամենայն ոք և արդար 'ի դատաստանս և յիրաւունս Աստու-

ծոյ ։ Սա մեռաւ 'ի յԱնտիոք քաղաք և թաղեցաւ 'ի սուրբ Պետրոս, 'ի մեծ եկեղեցին Անտիոքայ, զոր հիմնարկեցին սուրբ առաքեալքն Պետրոս և Պօղոս ։ Եւ հրամանաւ Տանկրէի դնեն յաթոռ նորա զքուրորդին իւր որ կոչի Ռօճէր, այր քաջ և արիական պատերազմող ։ Յայնժամ պատրիարքն և ամենայն իշխանքն Փռանկաց դնեն զՌօճէրն յաթոռն Տանկրէի, եւ տան զԱնտիոք 'ի ձեռս նորա ։ Յայսմ ամի յառաջ սպանան երկու իշխանքն մեծք՝ Տիգրան և Ապլասաթ 'ի Թուրք զօրացն 'ի յերկիրն Լեւոնի Ռուբինայ որդւոյն, որք էին 'ի զօրաց Վասլին ։

ՄԺԲ. Դարձեալ եղեւ 'ի թուականութեանն Հայոց ՇԿԲ (1113—1114), անօրէն և արիւնարբու գազանն Մամտուտ ամիրայն՝ ասպասալարն Պարսից գայր խաղայր անհամար զօրօք 'ի վերայ Փռանկաց, և հասանէր 'ի քաղաքն Տաճկաց որ կոչի Խառան ։ Եւ յայնժամ Պաղտին կոմսն Ուռհայոյ էր զօրօք 'ի քաղաքին Թլպաշար. յայնժամ յազգէ Փռանկաց արք չարաշունչք և դառն որոճողք, համբաւ չարութեան և մատնութեան հաստուցանէին առ կոմսն և ասէին, եթէ “Բազումք միաբանեալ են, և կամին զքաղաքն Ուռհայ 'ի Թուրքն տալ»։

Իսկ նորա հաւատացեալ սուտ չարախօսութեամբն անօրէն և չար լեզուաց, և յայնժամ՝ վճիռ չար ելանէր 'ի նմանէ, առաքեաց փաղփաղակի զկոմսն Արճոյ զՊօյէն, և հրամայեաց զամենայն քաղաքն Ուռհայ հանել 'ի քաղաքէն, որ ոչ մնաց 'ի քաղաքն մի մնրդ։ Այլ խորհուրդ արարին չարադէմ ազգն և յաւուր յայնմիկ կամեցան սրով յարձակել և կոտորել զամենայն քաղաքն առհասարակ, և յաժարէին 'ի հեղուլ զարիւն անպարտից և զանմեղաց, որ ոչինչ էին գործեալ արատ յանցանաց. բայց 'ի չարութենէ սրտից ազգին իւրեանց զամենայն ոք չարաչարս կարծէին։

Իսկ 'ի յամսեանն սահմի ի̅ յաւուր կիւրակէի Ճաշուն հասանէր 'ի վերայ Ուռհայոյ չար աղէտ դառնութեան, որ ուրացաւ հայր զորդի, և որդի զհայր. վասն զի լաց և ողբ և աղաղակ էր առհասարակ յամենայն քաղաքն, և արտասուօք, ագով և տրտմութեամբ տուն առ տուն, վասն զի եհան վարեաց 'ի տանէ զամենայն քաղաքն, և այրել հրամայեցին՝ զորս 'ի տան գտանէին։ Ոչ մնաց՝ և ոչ մի, բայց միայն այր ութսուն, և զայն երկուսն յեկեղեցին 'ի սուրբ Թորոս ժողովէին 'ի կլայն զինուորօք և պա-

հեծին զնոսա։ Եւ էր յաւուր յայնմիկ սուգ մեծ 'ի վերայ Ուռհայոյ. և ամենայն ոք վա-կայ կարդային 'ի վերայ անձինն իւր, և ոչ միայն ինչ չարութիւն (231), զոր ոչ ածին 'ի վերայ քաղաքին Ուռհայոյ յազգէ Փռանկ-կաց։ Եւ յայսմ վայրի լուան աստացեալքն յառաջին տեսողացն, որք ասացին՝ եթէ «Մատանին Բագարու»։ Եւ գնացին ամենայն արք քաղաքին 'ի Սամուսատ. և եղեւ մայրաքաղաքն Ուռհայ դատարկ, և նստաւ իբրեւ զկին մի այրի, այն որ մայր էր յառաջ ամենայն արարածոց, և առ ինքն ժողովէր զամենայն ցրուեալսն աշխարհի, և կամ այն որ յառաջագոյն եղանէին խաչօք ընդդէմ Փռանկաց, յորժամ մօրանեալով գային առ նոսա, և ահա փոխանակ բարեացն զայս այսպէս գործեցին ընդ նոսա, և չար հատուցին ամենայն հաւատացելոց։

ՄՁԳ.. Յայնժամ զօրքն Թուրքաց որք էին 'ի Խառան, գնայր անցանէր ընդ Եփրատ գետն, և խաղաց ամենայն բազմութեամբ և գնաց 'ի սուրբ քաղաքն Երուսաղէմ առ 'ի պատերազմել ընդ Թագաւորին Երուսաղէմի, և ընդ ամենայն ազգն Փռանկաց։ Եւ յորժամ լուաւ զայս Պաղտինն, եթէ գնաց Մամտուտն և իջաւ 'ի դուռն Երուսաղէ-

մայ, անաչեալ լինէր ընդ ստութեամբ գոր-ծըն իւր. առաքէր թուղթ 'ի յՄլեհայ դարձուցանել զքաղաքացիսն. և զկնի երից աւուր դարձաւ ամենայն մարդ 'ի տուն իւր։

Յայնժամ զօրքն այլազգեաց իջեալ բա-նակեցան 'ի քաղաքն որ կոչի Տապար (Տիբե-րիա) մօտ 'ի ծովն Տիբերական։ Իսկ թագա-ւորն Երուսաղէմայ առաքեաց յԱնտիոք և զմեծ կոմսն Գռանկաց զՄօձէրն կոչեաց առ ինքն, զամենայն զօրքն Գռանկաց, և զկոմսն Տռապօլսոյ զորդին Զընճիլին (252), և միաբան գնացին 'ի կոչն Նորա։ Իսկ զօրքն Երուսաղէմայ հպարտացեալ լինէին, յառա-ջեցան և ելանէին 'ի վերայ զօրացն Թուր-քաց 'ի պատերազմ, եթէ զի մի՛ տայցեն Ան-տիոքացիքն և առնուցուն անուն քաջու-թեան։ Եւ Աստուած ոչ հաճեցաւ ընդ խորհուրդս հպարտութեան Նոցա, և յա-մօթ արար զամբարտաւանութիւնս Նոցա. վասն զի յորժամ յարձակեցան ընդ միմեա-նըս 'ի պատերազմ, յաղթեցին զօրքն Թուր-քաց զօրացն Գռանկաց, և դարձուցին ըզ-Նոսա 'ի փախուստ. և արս փառաւորս ըս-պանին 'ի զօրացն Գռանկաց, և զհետեւակ զօրսն ամենայն կոտորեցին. և մի ոմն այր քաջ 'ի զօրացն Թուրքաց հանեալ թագա-

ւորին Երուսաղէմի, և երկաթի լախտաւն հարկանէր զԹիկունս նորա։ Իսկ նորա օգ-նական Աստուած եղեւ և փրկեաց զնա. վասն զի նոյն ժամայն հասանէին զօրքն Ան-տիոքացւոց և Տռապօլսոյ, և առեալ զայն Ռօճէր կոմսն Անտիոքայ՝ և գոչեաց որպէս վառիւծ, և հասանէր փաղփաղակի անգր, և դարձոյց 'ի փախուստ զզօրս Թուրքաց, և փրկեաց զԹագաւորն և զամենայն զօրսն Երուսաղէմայ։ Յայնժամ բանակեցան զօրք այլազգեացն 'ի մի կողմն լերինն, և այլ ոչ արարին պատերազմ ընդ միմեանս։ Եւ կա-ցեալ սակաւ աւուրս և դարձաւ Մաւտու-տըն և մնաց 'ի Դմիշկ քաղաքն, և զօրքն Փռ-անկաց դարձան այր իւրաքանչիւր 'ի քա-ղաքս իւր։

Իսկ ամիրայն Մաւտուտ յորժամ մնաց 'ի Դմիշկ քաղաքն, խորհեցաւ կորուսանել զամիրայն Դմշկայ զՏուղ-Տիկինն և առնուլ զքաղաքն։ Եւ այս խորհուրդ նենգութեան ազդ լինէր ամիրայինն. և յայնժամ Տուղ-Տի-կինն հանեալ 'ի բանակէ իւրմէ այր մի մա-հապարտ Պարսիկ մի, և ազատութիւն նը-մա խոստացաւ և փառաւորութիւն, և տայր նմա հինգ հարիւր դահեկան զի սպանցէ զՄաւտուտն։ Եւ եղեւ յորժամ ելանէր

Ամատունն 'ի տանէ աղօթից իւրոց, և կայր կանգնեալ 'ի մէջ ճեմարանին առ կարմիր ծիւնոյն, գայր Պարսիկն և յանկարծակի հարկանէր դանակաւն զձախոյ քունն նորա, և սատակեաց զանօրէնն և զչար գաղանն ըղ-Ամատունն, և Պարսիկն 'ի նոյն տեղին չարաչար սատակեցաւ, և զօրքն Ամատունին գնացին փախստական յաշխարհն Պարսից:

ՄԺԴ. Յայսմ ամի յամսեանն տրէ, յաւուր հինգերորդի մեռանէր հայրապետն Հայոց տէր Բարսեղ, այս ինչ պատահեալ նմա 'ի չարին ազդեցութենէ: Վասն զի յաւուր միում ելանէր 'ի վերայ տանեացն 'ի գեօղն որ կոչի Վարդահերի, որ էր մերձ 'ի սահմանս (253) Պեհեւնու աշակերտօքն համդերձ կայր յաղօթս քահանայիւք, եպիսկոպոսօք. և յանկարծակի անկաւ և կործանեցաւ տունն, և ոչ ումեք եղեւ վնաս՝ բայց միայն տեառն Բարսղի, վասն զի հարաւ կողն ընդ պարիսպ տանն և բեկաւ. և ապրեալ եղեւ զաւուրս երիս, և տայր տանել զինքն 'ի վանքն իւր որ կոչի Շուղր. և կենդանութեամբ իւրով տայր զաթոռ հայրապետութեան իւր և ղքօղն 'ի Գրիգորէս որդի Ապիրատին, որ էր քուրորդի տէր Վահրամին: Ննջաւ տէր Բարսեղ և թաղեցաւ

'ի Շուղըն մեծաւ հանդիսիւ, և եդաւ 'ի հայրապետական գերեզմանի։

ՄԺԵ. Յայսմ ամի նստաւ յաթոռ հայրապետութեանն Հայոց տէր Գրիգորէս որդի Ապիրատին, որ էր յազգէ Գրիգորոյ Մագիստրոսին՝ որդւոյ Վասակայ Պահլաւունոյ։ Վասն զի զկնի մահուանն տէր Բարսղի եղեւ ժողով եպիսկոպոսաց և հարանց 'ի Կարմիր Վանքն մերձ 'ի Քեսուն գաւառ. և հրամանաւ Հոգւոյն ձեռնադրեցին զԳրիգորէս եպիսկոպոս 'ի վերայ ամենայն տանն Հայոց. և 'ի նմին աւուր տան զձեռնադրութիւն կաթուղիկոսութեանն 'ի վերայ աթոռոյ սրբոյն Գրիգորի։ Եւ նստաւ 'ի հայրապետական աթոռն մինչ էր 'ի տղայութեան հասակին. վասն զի չեւ եւս լեալ էր սկիզբն մօրուացն, և էր բարձրահասակ և գեղեցկատեսիլ և բարուքն խոնարհ։

ՄԺԶ. Իսկ Թուականութեանն Հայոց ՇԿԳ (1114—1115), զօրաժողով արար սուլտանն Պարսից Տափարն որդի Մելէք-շահին, և կացուցանէր 'ի վերայ զօրացն ասպասալար զմեծ ամիրայն որ ասի Բուրսուխ. և առեալ զհետ իւր զորդի սուլտանին տղայ գոլով, և դայր խաղայր բազմութեամբ զօրօք, և հասանէր 'ի վերայ քաղաքին Ուռհայոյ։ Եւ 'ի

տաճկի ամսոյ իէ յաւուր ուրբաթու իջանէր 'ի դուռն քաղաքին Ուռհայոյ. և կացեալ զաւուրս երեսուն մեծաւ պատերազմաւ, և դարձեալ գնայր իջանէր 'ի վերայ Եփրատ գետոյ, և աւերեաց զամենայն գաւառն առ եզր գետոյն. և գայր իջանէր 'ի վերայ քաղաքին որ կոչի Պիր, յեզր Եփրատ գետոյ. և ժողովեցան ամենայն զօրքն Փռանկաց 'ի յայնկոյս Եփրատ գետոյն, և ոչ համարձակեցան անցանել յիրար: Դարձաւ Բուրսուխն 'ի քաղաքն Ուռհայ, և անտի գնաց 'ի Մծբին քաղաք Տաճկաց: Եւ ժողով արար ամիրայն Խազի և Պալակն, և մեծաւ պատերազմաւ յաղթեցին Բուրսուխին, և արարին զնա փախստական. և կալան զորդի սուլտանին, և յետոյ 'ի բաց թողին զնա:

ՄԿԷ. Յայսմ ամի եղեւ աստուածասաստ բարկութիւն 'ի վերայ արարածոցս. վասն զի ինքն տէր Աստուած ամենակալ զօրութեամբն իւրով և մեծաւ սրտմտութեամբն իւրով հայեցաւ յարարածս իւր. զի որդիք մարդկան առ հասարակ եղեն մոլորեալ յարդարութեան ճանապարհէն անտի ըստ մարգարէին բանի որ ասէր, եթէ "Ոչ գոյ 'ի ժամանակի այսմիկ իշխան, մարգարէ և առաջ-

նորգ. և ոչ ոք է որ առնէ զբարի, և ոչ ոք է և ոչ մի»: Այսպիսի օրինակաւս ամենեքեան սիրեցին զանօրէնութեան ճանապարհն մեղաց, և ատեցին զամենայն պատուիրանս և զհրաւունս Աստուծոյ. վասն զի ոչ իշխանք և ոչ զօրականք և ոչ ժողովրդականք և ոչ առաջնորդք, քահանայք և կրօնաւորք, ոչ մնացին և ոչ կացին 'ի գործն Աստուծոյ ուղղապէս, այլ ընթացան զհետ ցանկութեան մարմնոյ, և զոր սիրէ աշխարհս. և զայս ամենայն համարեցաւ Աստուած 'ի գործ կատարման մեղաց. և ահա եղեւ ըստ բանի մարգարէին որ ասէր. «Ո՛հ հայր յերկիր, և տայ դողալ ամա»: Եւ արդ՝ զի հայեցաւ տէր Աստուած յարարածս բարկութեամբ, և արարածք յանձն առին կործանել յահէ զօրութեանց Տեառն: Եւ եղեւ այսպէս. վասն զի ահա յամսեանն մարերի յերկոտասան աւուրն, յաւուր կիւրակէին տօնի խաչ գիւտին եղեւ մեծասաստ արհաւիրք 'ի վերայ տիեզերաց, որ ոչ լուաք այսպիսի բարկութեան կատարած, ոչ յառաջ և ոչ այժմ, և ոչ 'ի պատուիրանաց գրոց սրբոց: Եւ արդ ահա մինչդեռ էաք յափշտակեալ 'ի խոր քնոյ, եղեւ յանկարծակի ձայթումն և թնդումն ահաւոր. եւ գոռայր առ հասարակ ա-

ամենայն արարածք . եւ եղեւ գղրգումն սաստկապէս, և ահագին Թնդմամբ շարժեցաւ երկիր և լերինք, և պատառեցան ապառաժ վէմք, և հերձան բլուրք. և 'ի սաստկութենէ ահաւոր բարկութեանն հնչէին լերինք և բլուրք. և իբրեւ կենդանի անասունք սասանեալ գոչէին (254), որ և լսելի իսկ լինէր բարբառ լերանցն, և գայր իբրեւ ընդ գոչիւնս բազմութեան բանակաց : Եւ այսպիսի օրինակաւ իբրեւ զծով ծփեալ երերեալ դողայր արարածք յահէ զօրութեան Տեառն Աստուծոյ : Վասն զի առ հասարակ իբրեւ զպղինձ՝ հնչեոց ամենայն դաշտք և լերինք և որպէս զծառս հողմակոծեալս երերայր, դողայր, սասանէր, և գայր Թնդիւն և հեծութիւն յարարածոցս որպէս զբազմարեայ հիւանդին, և մեծաւ երկիւղիւ զկործանումն յուզէր. և երկիր յուսահատեալ լինէր իբրեւ զփախստական և սարսափմամբ զարհուրէր, և իբրեւ մեղապարտ ոչ ձայն ողբոց և լալումն արտասուաց հանէր, և լսելի լինէր ձայնն զկնի շարժմանն իբրեւ զմի ժամ գիշերին : Եւ յահէ բարբառոյ բարկութեանն ամենայն ոք յուսահատեցաւ 'ի կենացս, և ասացին՝ եԹէ եհաս օր կատարածի և դատաստանի մերում, զի զայն ա-

ւուր զպատկերն ունէր։ Որն էր կիւրա-
կէի, և ձայնն 'ի վառի ձայն էր, և լուսինն
փուլ էր, և զամենայն պատճառ զվերջին ա-
ւուրն ունէր. և ահա կային ահաբեկեալ
իբրև զմեռեալս յուսահատեալք։ Եւ յայ-
սըմ գիշերիս կործանեցան բազումք քաղա-
քաց և գաւառաց. և ամենայն որ կործա-
նեցան՝ էին գաւառք Փռանկաց, և այլ գա-
ւառաց կամ այլազգեաց ոչ եղև վնաս
և ոչ ինչ։ Եւ յայսմ գիշերի կործանեցաւ
Սամուսատ քաղաք և Հասան-Մանսուր, Քե-
սուն և Ռապան, և Մարաշ քաղաք ահա-
ւոր և կործանեցան ոգիք իբրև քառա-
սուն հազար, զի էր բազմամբոխ քաղաք,
և ոչ մնաց 'ի նոցանէ և ոչ մի։ Եւ այսպէս
'ի Սիս քաղաք կործանեցաւ անթիւ (բազ-
մութիւն) արանց և կանանց, և այլ բա-
զում գեղք և վանորայք, և անհամար արք
և կանայք հազարս հազարաց և բիւրս բիւ-
րուց կործանեցան։ Եւ եղև 'ի Սեաւ լեա-
ռըն անուանի, յանապատն որ կոչի Բար-
սեղեանց էին ժողովեալ յեկեղեցօրհնէք
որբանեալ կրօնաւորք և վարդապետք Հայ-
ոց, և կային 'ի պաշտօն Աստուծոյ, անկաւ
եկեղեցին 'ի վերայ նոցա, և երեսուն կրօ-
նաւորք և երկու վարդապետք կատարեցան

'ի ներքոյ նորա, որ կան մինչեւ ցայսօր։ Նոյնպէս եղեւ մերձ 'ի Մարաշ 'ի մեծ անապատին որ ասի Յեսուանց, անկաւ և կործանեցաւ վանքն և ամենայն դաս կրօնաւորացն. և յորժամ դադարեաց շարժն, ընկլաւ ձիւն դալ, և զամենայն աշխարհս 'ի ներքոյ կոտորեաց։ Մեծ և փառաւոր վարդապետն Հայոց Գրիգոր, որ ասի Մաշկուոր, 'ի նմին տեղւոջ կատարեցաւ. և այսպիսի օրինակս բազում անցուածս և բարկութեամբ կատարած եղեւ հաւատացելոց ազգացս։ Նա այսպէս գործեցաւ վասն մեղաց, զի այր իւրաքանչիւր թողին զբուն պողոտայն պատուիրանացն Աստուծոյ, և զհետ բորբոքեցան մոլորական ճանապարհին, և ելին 'ի գրոց պատուիրանաց, և կան յիմարեալք. որպէս յաւուրսն Նոյի ուտէին ըմպէին մինչեւ կորեան ըստ գործոց իւրեանց, այսպէս և սոքա կային 'ի գործրս ուրախութեան՝ մինչեւ եհաս բարկութիւն 'ի Տեառնէ Աստուծոյ, և սատակեաց զգործողսն չարեաց, վասն զի գնային մեծամեծ յանցանօք։

ՄԺԸ. Յայսմ ամի մեռաւ սուրբ վարդապետն Հայոց որ անուանեալ կոչեցաւ Մեղրիկ, որ էր այր հրաշալի և սքանչելի

ճգնաւոր, և զամենայն ժամանակս կենաց իւրոց անցուցեալ էր միայնակեցութեան կարգօք զամս յիսուն, և վախճանեցաւ ամաց եօթանասնից ամենայն ժուժկալ և ճգնաւոր հանդիսիւք. և չարաճաշակ գոլով յամենայն կեանս իւրում, և հաւատարեալ էր ամենայն կարգօք և կրօնիւք առաջին սրբոց, և զամենայն ժամանակս կենաց իւրոց զկիւրակէքն ոտանաւոր արթնութեամբ անցուցանէր. և էր ինքն 'ի Հայոց աշխարհէն՝ 'ի Վասպուրականն գաւառէ, 'ի գեղջէ որ Նախիւր կոչի, և է մեծ (255)։ Սա կրօնաւորեալ լինէր 'ի տղայութեան հռչակաւոր անուամբ և փոքր սքանչելի ընտացեալ, և օրինակ բազմաց եղեալ, և հայր խոստովանութեան լինէր ամենայն Հայաստանեայցս. և դարձուցանէր զամենեսեան 'ի ճանապարհս լուսոյ. և 'ի ձեռն ապաշխարութեան յորդեգրութիւն Հօրն երկնաւորին ընծայեցուցանէր զամենեսեան։ Սա մեռանէր բարի խոստովանութեամբ 'ի Քրիստոս, և թաղեցաւ 'ի գաւառն Նաւարզայ, 'ի մեծ անապատն որ Դրազարկ կոչի, զոր նորոգեաց մեծ իշխանն Հայոց Թորոս։

ՄԺԹ. Դարձեալ 'ի թուականին Հայոց ՇԿԴ (1115–1116) եղև ահաւոր հրաշալի նը-

չան 'ի քաղաքն Տաճկաց, որ կոչի Յամիթ. զի վասն բազմանալոյ անօրէնութեանց չար և պիղծ գործոց ազգին իւրեանց, յանկարծակի անկաւ հուր յերկնից 'ի մէջ գիշերի 'ի վերայ աւագ ճեմարանին իւրեանց, և սաստկացեալ հուր յերկնից և բորբոքեալ մեծաւ բարկութեամբ և իբրև գազանաշունչ բնութեամբ զքարինս պարսպին որպէս զփայտ այրէր: Եւ եղեն բախեալ առհասարակ ամենայն ալք քաղաքին 'ի վերայ նորա, և ոչ կարացին անցուցանել զանշիջանելի հուրըն, այլ դիզանայր բարձրանայր հուրն և ելանէր մինչև յերկինս, և ապականեալ այրեաց զաղօթից ժողովարանն և . . . . . . . . . զհանդիսարանն: Այս եղև Յամիթ քաղաքըն, զոր շինեաց Տիգրան արքայ Հայոց:

ՄԻ. Յայսմ ամի դարձեալ ժողով արար ասպասալարն Պարսից ամիրայն Բուրսուխ, և գայր խաղայր և հասանէր 'ի դուռն Ուռհայոյ. և կացեալ սակաւ աւուրս՝ անցանէր ընդ Եփրատ գետ, և գնաց 'ի Հալապ քաղաք, և անտի անցեալ էառ զՇիզարըն զՏաճկաց քաղաքն, և կամեցաւ ասպատակ առնել զԹլպաշար և զամենայն գաւառըն Անտիոքայ: Եւ յայնժամ ժողովեցան ամենայն ազգն Փռանկաց յԱնտիոքք առ կոմ-

որն Ռոճէրն, և գայր Թագաւորն Երուսաղէմայ, և Պաղտին կոմսն Ուռհայոյ, և միաբանեցան ՚ի գաւառն Շիզարուն: Յայնժամ գայր ՚ի բանակն Փռանկաց մեծ ամիրայն Պարսից Խազի (Իլխազի), որ կոչի որդի Արտուխին, բազում զօրօք գայր առ Ռոճէրն. վասն զի յոյժ Թշնամի էր Բուրսուխին. գայր առ Նոսա և ամիրայն Դմշկայ որ ասի Տուղտիկին, և եղեն միաբանեալ ընդ ազգն Փռանկաց, և արարին ընդ միմեանս դաշինըս և սէր հանդերձ մեծամեծ երդմամբ՝ Խազի և Տուղտիկին. նոյնպէս և Հալպայ ամիրայն եղեւ միաբանեալ ընդ զօրսն Փռանկաց: Եւ կային հանդէպ միմեանց զօրքըն այլազգեաց և Փռանկաց զամիսս չորս. իսկ զօրքն Թուրքաց ոչ համարձակեցան ելանել ՚ի պատերազմ. և գաղտնաբար դարձաւ Բուրսուխն խաբ տալով զօրացն Փռանկաց: Եւ գիտացեալ եթէ փախեաւ Բուրսուխն, գնաց Թագաւորն Երուսաղէմայ և Տռապօլսոյ. դարձան ամիրայքն Խազի և Տուղտիկին և Հալպայն, գնացին ՚ի գաւառս իւրեանց. և զայն գիտացեալ Բուրսուխն զգնալ զօրացն Փռանկաց, դարձաւ յԱնտիոք և կամէր աւար հարկանել զգաւառն: Եւ լուեալ զայս կոմսն Ուռհայոյ,

դարձաւ յԱնտիոք․ և առեալ զՍեւօձէրն եօթն հարիւր ձիաւորօքն, և հասանէր 'ի վերայ Սուրբաւոխին 'ի Հալպայ գաւառին․ և գտեալ անպատրաստ զնա, յարձակեցաւ 'ի վերայ նորա, և մեծաւ զօրութեամբ յաղթեցին նոցա, և արարին զնոսա փախստականս․ կալան ոմս փառաւորս, և առին բազում աւարս, և առ հասարակ զամենայն բանակն աւար հարկանէին, և մնացեալքն գընացին ամօթով։

ՄԻԱ․ Յայսմ ամի կոմսն Ուռհայոյ Պաղտինն պատերազմ յարուցանէր 'ի վերայ Վասլին Հայոց իշխանին մեծի։

ՄԻԲ․ Յայսմ աւուրս գնաց Պաղտինն զօրօք 'ի վերայ ամուր քաղաքաբերդին Ռաւնայ, և բազում աւուրս պատերազմեալ 'ի վերայ՝ ոչինչ կարաց առնել, խարեալ ունէր զնա 'ի պահեստի։

ՄԻԳ․ Յորժամ Վասիլն գնաց առ մեծ իշխանն Հայոց, որ կոչէր Լեւոն որդի Կոստանդեայ՝ որդւոյ Ռուբենեայ՝ եղբայր Թորոսի և կին առեալ զդուստրն նորա․ յայնժամ Թորոս եղբայր Լեւոնի կոչեաց զողայ Վասիլն և նենգութեամբ կալաւ զնա, և տայր 'ի յՈւռհայոյ Պաղտինն կոմսն։ Իսկ նա գաղտնաբար 'ի խոշտանգանս արկանէր

զայր քաջ և հզօր պատերազմող, և բռնա-
թեամբ առեալ 'ի նմանէ զամենայն գաւա-
ռըն և խափանեաց զիշխանութիւն Հայոց
'ի յայնմ աշխարհէ: Եւ Վասիլ գնաց առ
Լևոն աներն իւր, և անդ յարուցեալ գը-
նաց 'ի Կոստանդինուպօլիս, և արար նմա
թագաւորն Հոռոմոց մեծ ընդունելու-
թիւն և ամենայն զօրաց իւրոց:

ՄԻԴ. Դարձեալ 'ի թուականութեանն Հայոց ՇԿԶ (1117—1118), զօրաժողով արար կոմսն Ուռհայոյ Պաղտինն, և կայր կոմսն Արճոյ, և գնացին 'ի վերայ Հայոց իշխանին՝ որում անունն կոչէր Ապլղարիպ, որ էր եղբայր Լևոնին և որդիք Վասակայ, արք քաջք և պատերազմողք, որ բռնակալեալ էին զեպիսկոպոսն առաջին տէր Թլպաշրայ (256), 'ի Պարսից առեալ էին բազում տեղիս քաջութեամբ իւրեանց. և ուժգին զօրութեամբ առին զքաղաքն զԲիրն, և շինեցին իւրեանց բնակարան, վասն զի էին քաջք և անուանի պատերազմողք, ունէին զօրականս իւրեանց արս հազար: Եւ յորժամ տեսանէր կոմսն զգաւառն նոցա, կարի յոյժ մախայր 'ի սիրտն, և ոչ կարաց ծածկել զնախանձ չարին, զօրաժողով արար և գնաց 'ի վերայ Բիրին, և 'ի հօգս առեալ զքրիստո-

նեայքն առաւել քան զԹուրքն, և զտարի մի ՚ի խառն արկեալ զիշխանն Հայոց զԱպլղարիպն չարաչար և ազգի ազգի նեղութեամբ. և յայնժամ առ վտանգին և առ վշտացն անձարեալ լինէր Ապլղարիպն, և տայր զՊիրն և զամենայն գաւառն ՚ի Պաղտինն, և ինքն գնաց առ իշխանն Հայոց առ Թորոս և Ռուբենայ որդին՝ յԱնաւարզա: Իսկ կոմսն տայր զՊիրն և զամենայն գաւառն ՚ի Գալերան (237) իշխանն Փռանկաց ահաւոր. մի առ մի կորզեաց, քակեաց զամենայն իշխանսն Հայոց առաւել նեղութեամբ քան զտունն Պարսից. և այսպիսի օրինակաւ հալածական արար զիշխանսն Հայոց, զայնոսիկ որ մնացեալ էին ՚ի . . . . . . ազգէն Թուրքաց: Սա մեծաւ նեղութեամբ տարագիր արար զամենեսեան, և քակեաց զամենայն իշխանութիւն Գող Վասլին, և փախստական արար զամենայն դասս ազատացն նորա ՚ի Կոստանդնուպօլիս: Վարեաց և զմիւս իշխանն Հայոց զԲագրատ զայր քաջ, և յափշտակեաց զամենայն գաւառն նորա որ բնակեալ էր յԱրեւընդան (258) մերձ ՚ի Կուրխ: Նոյնպէս և զԿոստանդին տէրն Կառկըռայ, որ և ՚ի կապանս մեռանէր չարաչար նեղութեամբ ՚ի բերդն Սամուսատ, և ՚ի գի-

ձերի շարժլին գուին զնա յեզր Եփրատ գետոյն, վերուստ 'ի վայր հոսեալ 'ի խոզակ Անջնկին(259) կայր թեւեռեալ (որպէս) 'ի բանտի, և այնոււելն 'ի վայր, և այնպէս մեռաւ: Նոյնպէս և Գեմուշտղն 'ի բաց վարեաց զմեծ իշխանն Հոռոմոց՝ զիշխանաց իշխանն որ բնակեալ էր 'ի Մարաշ քաղաք. նա և այլ բազում և գեղեցիկ իշխանք 'ի բանտս և 'ի չարչարանս և 'ի կապանս մեռանէին. և բազումք այն էին՝ որոց զաչս խաւարեցուցեալ էին, ըզձեռս կտրեալ և զունչսն հատեալ. հատանէին և զարականս և 'ի փայտ հանեալ ըսպանանէին. զողայսն անմեղս վասն ծնողացըն խրատեալ հրամայէին(260): Եւ այսպիսի գործս անթուելի և անպատմելի (գործէին). զի համապազ վասն գանձինոցս անիրաւաբար չարչարանօք յաւեր և յապականութիւն դարձուցին զերկիրն. և յամենայն ժամ պարապեալ կային, և այլ ոչինչ առնէին, բայց միայն նստեալ խորհէին զչարութիւն, զհէղս (զնենգութիւն), և զամենայն ճանապարհս չարեաց սիրէին. բարեաց և ամենայն երախտեաց մոռացօղք:

Զբազում անիրաւութիւնս նոցա կամէի գըրել, բայց ոչ համարձակեցայ, զի ընդ իշխանութեամբ նոցա էաք:

ՄԻԵ. Իսկ 'ի թուականութեանս Հայոց ՇԿԷ (1118–1119). յարուցեալ Պաղտին Ուռհայոյ կոմսն, և գնաց յաղթական 'ի սուրբ. քաղաքն Երուսաղէմ: Եւ մինչ լինէր աւուրք սուրբ աղուհացիցն, զօրաժողով արարեալ Թագաւորն Երուսաղէմայ Պաղտինն եղբայրն Կոդոփրեայ, և գնացեալ 'ի կողմանս աշխարհին Եգիպտացւոց, կամեցաւ ածել իւր 'ի հնազանդութիւն զազգն բարբարոսաց, և գտանէր զամենայն աշխարհն փախուցեալ 'ի մարդոյ. դարձեալ դիմօք 'ի սուրբ քաղաքն Երուսաղէմ: Եւ 'ի գալն ցաւ հասանէր նմա, որ և 'ի ճանապարհին մեռանէր: Եւ մինչդեռ կենդանի էր՝ պատուէր տայր ասելով. «Նստուցէք յՈւռհայ և բերէք զկոմսն զՊաղտինն և կացուցէք զնա յԵրուսաղէմ տեղւոյս, մինչեւ 'ի Ֆռանկաց գայցէ իմ եղբայրն. և զնա դիք ձեզ Թագաւոր յԵրուսաղէմ»: Եւ յայնժամ բերին դագաղօք զԹագաւորն յԵրուսաղէմ, և թաղեցին զնա առաջի սրբոյ Գողգոթային, զայր բարի և զօրաւոր և խոնարհ սրտիւ: Իսկ իբրեւ գտան զՊաղտինն յԵրուսաղէմ, հրճուեցան յոյժ. և դարձեալ ուրախ լինէին, և համարեցան եթէ յԱստուծոյ եղեւ կոչն այն. և որպէս ան

դարձ արարեալ էր Թագաւորն, տան զտե-ղապահութիւնն Երուսաղէմայ 'ի Պաղտինն։ Եւ նա ոչ առնոյր յանձն, այլ զաթոռ Թա-գաւորութեան խնդրէր. և պայման արա-րեալ զամ՝ մի ոչ դնել Թագ 'ի գլուխն, և ե-թէ ոչ գայցէ եղբայր Թագաւորին՝ դիցէ զԹագն։ Եւ հաճեցան ամենայն տունն Ֆռ-անկաց զբանն նորա, և յաւուր Ծաղկազարդի տարան զկոմսն Ուռհայոյ 'ի տաճարն Սողոմո-նի և դնէին զնա յաթոռ Թագաւորութեան Երուսաղէմի, և 'ի կատարման տարւոյն դը-նեն զԹագն 'ի գլուխ Պաղտնին։ Եւ այս Պաղտինս էր 'ի մեծամեծաց Ֆռանկաց, այր քաջ և պատերազմող, մարմնով որբասէր և մեղաց ատեցող, և բարուքն հեզ և ցած. այլ յաւէտ Ճարտար, և յափշտակել անյա-գուրդ, գանձուց և արծաթոյ անկուշտ և 'ի տուրս ընչից նուազ, և հաւատովն յոյժ ուղղափառ և բարուքն եւ բնութեամբն յոյժ հաստատուն։ Եւ արդ ահա երկու Թագաւորք որ եղին 'ի յՈւռհայոյ, և երկուքն զմի անուն ունէին Պաղտին կոչելով։

ՇԿԶ. Յայսմ ամի մեռանէր Տափար սուլ-տանն Պարսից որդին Մելէք-շահին, այր գազանամիտ յոյժ։ Արդ սա 'ի ժամ մահ-ուան իւրում գործեաց գործ զարմանալի,

որ անլսելի էր լսելեաց. վասն զի յորժամ գիտաց եթէ մեռանելոց էր, յաղագս որդեայն արար զայս: Առաքեաց և կոչեաց 'ի պաղատն զկինն իւր զԳոհար խաթունըն՝ զդուստրն ամիր Իսմայէլին, և գաղտ 'ի զօրացն հրամայեաց զենել զնա առաջի իւր զի մի արասցէ իւր այր, և հանցէ զորդիքս իմ 'ի յաթոռոյ հայրենեաց իմոց. վասն զի էր մեծազգի, և բազում զօրաց տէր, և նա յամենայն ազգաց գեղեցիկ աղջկունս էր ժողովեալ՝ կուսանս չորս հարիւր, որ կային յոտն առաջի նորա զարդարեալ գեղեցիկ զարմանալեօք, յականց և 'ի մարգարտաց՝ հանդերձ արաբացի ոսկւով. և թագ 'ի գըլուխն, և հիւսակ գլխոյն զարդարեալ ոսկւով և ամենայն սքանչելի զարդարանօք 'ի գոյնս փայլէին առաջի նորա: Իսկ նորա զայն զմեծ թագուհին առաջի իւր սպանանէր, զի մի առցէ իւր այր զեղբայրն իւր, զայն որ նստեալ էր սուլտան 'ի խորին աշխարհն Պարսից, 'ի յԱւզկան քաղաք և 'ի Խոզն, որ էր երեք ամսոյ գնաց 'ի խոր քան զԱսպահան: Եւ զկնի այսորիկ դնէր Տափարն յաթոռ թագաւորութեն իւրոյ զաւագ որդին իւր զՄահմուտն, և տայր զամենայն Պարսիկս 'ի ձեռս նորա. և զկրտսեր որդին զՄելքըն (Տուղրիլ)

դնէր տուլտան 'ի Գանձակ քաղաք Հայոց, և տայր զամենայն արեւելք 'ի ձեռս նորա։ Եւ կայր նորա այլ և ս երկու որդիք. բայց Գոհար խաթունին ոչ գոյր որդիք։

Յայսմ ամի մեռանէր Պարսից խալիֆայն, այն որ նստէր յաթոռն Մահմէտի 'ի Պաղտատ քաղաք (261)։

ՄԻԷ. Յայսմ ամի զօրաժողով արարեալ մեծ կոմսն Փռանկաց Ռոձէր, տէրն Անտիոքայ քաղաքին, և գնաց 'ի վերայ քաղաքին Տաճկաց որ կոչի Ազազ, մերձ 'ի Հալապ քաղաք։ Գայր առ նա իշխանն Հայոց Լեւոն որդի Կոստանդեայ՝ որդի Ռուբենայ, գայր զօրօք իւրովք 'ի վերայ այլազգեացն։ Եւ արար Ռոձէր պատերազմ 'ի վերայ Ազազուն զաւուրս երեսուն, և ոչ կարէին զօրս քաղաքին 'ի ներս ածել. և զկնի այսորիկ տայր զպատերազմն Ռոձէր Հայոց զօրաց. կոչեաց զԼեւոն և ասէր, եթէ «Վաղիւն քո ելցես զօրօքդ 'ի պատերազմ», փորձելով իմն զզօրսն Հայոց։ Յայնժամ ձայն տուեալ մեծ իշխանն Հայոց ամենայն զօրացն Հայոց որ էին 'ի բանակին, և ժողովեցան ամենայն զօրքն Հայոց առ քաջ զօրականն Թորոսո-րի Լեւոն, և նա յորդորէր զամենեսեան մի առ մի։ Եւ առ վաղիւն ելանէին զօրք այլ-

ազդեաց ընդդէմ զօրացն Փռանկաց. և իշխանն Հայոց Լեւոն վառեալ ունէր զզօրսն Հայոց ընդդէմ զօրացն Տաճկաց. և ձայն տայր զօրաց, և 'ի դիմի հարան զօրացն այլազգեաց. և պնդեաց ուժգին որպէս զառիւծ, և հանդերձ զօրօքն բախեցաւ 'ի վերայ նոցա և դարձոյց զնոսա 'ի փախուստ, և արավ (անկաւ) 'ի հետ մինչեւ 'ի դուռն քաղաքին կոտորեաց զնոսա, և արար զնոսա արգելականս, որ այլ ոչ ելին ընդ դուռն քաղաքին 'ի պատերազմ։ Նա էառ իշխանն Հայոց Լեւոն քաջութեան անուն յաւուր յայնմիկ, և գովեցաւ 'ի մէջ զօրացն Փռանկաց. և յայնմ օրէ սիրեաց Ոտճէր զզօրսն Հայոց։ Նա այսպիսի պատերազմաւ նեղէր զքաղաքն Աքայ, և սաստիկ պատերազմաւ հաւանեցուցանէր զնոսա, և էառ խաղաղութեամբ, և մարդոյ ոչինչ մեղուցաւ, այլ արձակեաց զբնակիչսն խաղաղութեամբ։ Նա յայնժամ եղեւ մեծ հակառակութիւն ընդ Խաղի ամիրային և ընդ Ոտճէրն, վասն զի յառաջն էին յոյժ սիրելիք և բարեկամք միմեանց, և յայսմ ժամուն եղեն թշնամիք, վասն զի Հալապն և Աքայն Խաղեայ էին ամիրային Թուրքաց՝ որդւոյ Արդուխին, և մռմռայր Խաղի 'ի սրտի իւրում։

ՄԻԸ. Իսկ 'ի հատանել թուականութեան

նըն Հայոց յամին ՇԿԶ (1117—1118)․ զօրա-
ժողով արար ամիրայն Խաղի որդի Արդու-
խային անհագին բազմութեամբ․ վասն զի (էր)
որպէս գնահապետս ՚ի վերայ Տաճկաց զօրաց
իւրով ազգաւն, և վասն այսորիկ ժողովե-
ցան ՚ի կոչ նորա։ Եւ յայսմ ամի խաղաց
բազում զօրօք ՚ի վերայ Ռոժէրին և Անտիո-
քայ կոմսին, և գայր ՚ի վերայ ազգին Փռան-
գանկաց ութսուն հազարով․ և այսպիսի
բազմութեամբ հասանէր ՚ի դուռն Ուռհայոյ
քաղաքին, և զաւուրս չորս կացեալ և ոչինչ
արարեալ վնաս՝ և անցանէր ընդ Եփրատ
գետն, և յընթացս լինէր իբրև զձի հաւա-
չակաւ ՚ի բազում ընթացից․ և խաւար (262)
հասուցանէր բազում տեղեաց, վասն զի ան-
հոգացեալ կային ամենայն գաւառք Փռան-
կաց․ առեալ բերդս և ագարակս և վանո-
րայս, և կոտորեաց առ հասարակ զամենե-
սեան զծերս և զտղայս։ Եւ եկեալ ՚ի Պզա-
հըն և անդ բանակ հարկանէր։ Իսկ Ռոժէր
կոմսն Անտիոքայ էր այր մեծ և հպարտա-
ցեալ, վասն այնորիկ ոչ յառաջապատրաստ
եղև պանծացեալ ՚ի զօրութիւն իւր․ և
յիշեաց նա զամբարտաւանութիւն ազգին
իւրոյ․ և առ ոչինչ համարեալ նա զզօրսն
Թուրքաց, զպատրաստութիւն և զհնարս

ոչ խորհեցաւ, և զզօրսն ոչ ժողովեաց միաբան, և յայլ զօրացն Փռանկաց ոչ կոչեաց իւր 'ի Թիկունս, և անմտաբար գնաց 'ի պատերազմ 'ի վերայ զօրացն Թուրքաց։ Այսին Փռանկ հարիւր (263) ձիաւոր, և Հայն հինգ հարիւր ձիաւոր, և հետեւակ չորս հարիւր, և իբրեւ զբիւր մի այլ խառնաղանճ։ Իսկ զօրքն Թուրքաց ամենայն հնարաւորութեամբ պատրաստեալ գնդեանս, 'ի բազում տեղիս դարանակալս կացուցին 'ի քըմիս։ Այս եղեւ 'ի սահմանս քաղաքին որ կոչի Թերբեպ, արարին ահաւոր և սաստիկ պատերազմ։ Եւ յայնժամ 'ի բազմութենէ զօրացն Պարսից փախեան ամենայն զօրք քըրիստոնէից 'ի մէջ զօրացն Թուրքաց, և ոչ գտանէին ճարակ փախստեան. և առ հասարակ խողխողեալ լինէին 'ի կեր սրոյ ամենայն ազգն հաւատացելոց. և մեծ կոմսն Փռանկաց Ոսճէր սպանաւ հանդերձ զօրօքն, և սակաւ ինչ էր որ փրկեցաւ։ Եւ յայնժամ 'ի Եփրատ գետոյն մինչեւ 'ի Ովկիանոս ծովն ասպատակ արարեալ զամենայն աշխարհն, ելից արեամբ և գերութեամբ զամենայն գաւառսն, և ամենայն բանակն անկաւ սրով և անցան։ Այս եղեւ յամսեանն քաղոցի վեց, բարեկենդանի շաբաթ օրն.

Վարդավառին հասու ՚ի քաղաքն Անտիոք. Թագաւորն Երուսաղէմայ Պաղտինն, և արա-րեալ ժողով զմիացեալ զօրսն Ֆռանկաց և գնաց ՚ի վերայ Թուրք զօրացն արաց ամսոյ քսան և հինգ, և օգոստոսի վեշտասան. և եղեւ ՚ի խմբել պատերազմին ՚ի նոյն տեղին, և բազումս կոտորեաց ՚ի զօրացն Թուրքաց, և երկու կողմանքն դարձան ՚ի փախուստ. և ոչ ոք էր որ յաղթահարեաց և կամ յաղ-թեցաւ, վասն զի զօրքն յերկոցունց կողմանց պակասեցան, բայց յայլազգեացն պակասեաց յայնմ աւուր հինգ հազար այր, ոչ թէ մի-այն սրով, այլ ՚ի սոլթոյն հարկանելով՝ ՚ի Թագաւորէն Ֆռանկաց: Եւ ամենայն զօրքն Ֆռանկաց գնացին յաշխարհն իւրեանց. գնաց և Թագաւորն Պաղտինն ՚ի քաղաքն իւր յԵրուսաղէմ:

Յայսմ ամի մեռանէր Թագաւորն Հո-ռոմոց Աղէքսն, այր բարի և իմաստուն և հզօր ընդդէմ պատերազմաց, և յոյժ ողոր-մած ՚ի վերայ հաւատացելոց Քրիստոսի. բայց ՚ի վերայ ազգիս Հայոց յոյժ ատեցող երեւեալ: Սա գործեաց գործ որ ոչ էր ըստ կամացն Աստուծոյ. հրամայեաց երկրորդ մը-կրտութիւն առնել, և անարգեաց զնիկիա-կան մկրտութիւնն, և զՔաղկեդոնի կար-

դըն հաստատելոց, և անամաչ զամենայն ազգըն Հայոց մերժէր. և ոչ զարհուրէր ՚ի Հոգւոյն սրբոյ, որ լուսաւորեաց զսուրբ մկրտութիւնն. ոչ յիշեաց զհրամանս սուրբ առաքելոյն Պետրոսի որ ասէր, եթէ «Որ ըղձի անգամ մկրտեալն մկրտեն, կրկնակի զորդին Աստուծոյ ՚ի խաչ հանիցեն, ակնեալ ՚ի մեռելոտի գործոց անտի». Արդ սա մեռանէր յայսմ ամի, և նստաւ յաթոռ թագաւորութեան որդի նորա որ ասի Պերփերօժէն, այր քաջ և պատերազմող, և բարուք հեզ և քաղցր. Սա եղեւ ընդունող ազգին Հայոց. և վերացոյց զցասումն անարժան մկրտութեանն, որ մկրտութիւնն և զհոգեւորն ՚ի բաց տայր մերկանալ, և զխերականատարին հաստատեաց (264).

ՄԻԹ. Յայսմ ամի Թագաւորն Երուսաղէմայ Պաղտին տայր զՈւռհայ և զԹլպաշար ՚ի կամսն Ճօսլինի, և դարձոյց զնա ՚ի քաղաքն Ուռհայ, զոր ՚ի ժամ մահուան Տանգրէի եհան զնա ՚ի տանէ և ՚ի պատուէ իւրմէ, և յափշտակեաց ՚ի Ճօսլէն զամենայն երկիրն զոր ունէր՝ անիրաւաբար. և բանտարգել արար զայր քաջ և զհզօր, և սակայն ունէր ըղնա ՚ի բանտի. և բռնութեամբ և ուժով զօրութեամբ եհան զնա իբրեւ զարատա-

ւոր, և արար զնա հաւրմանական՝ ծառայել տատար աշխարհաց. զոր առաջին թագաւորն Երուսաղէմայ կոչեաց զնա. և մեծաւ պատուով տայր զ.քաղաքն Տապարի 'ի Ջօսլինն, և կացոյց զնա յայնմ գաւառին տէր։ Եւ նա մեծաւ յաղթութեամբ կայր ընդդէմ թշնամեաց խաչին Քրիստոսի։ Սա ան զի յորժամ մեռաւ Պաղտինն, և թագաւորեաց միւս Պաղտինն Տղայուրէն, և դարձոյց զՋօսլինն 'ի յՍեռահայ, և կացուցանէր զնա ընդդէմ Պարսից պատերազմաց, զի էր այր քաջ հզօր և պատերազմող և անուանի յամենայն տունն Փռանկաց, և 'ի քաջութենէ նորա դողայր ամենայն տունն Պարսից. և դարձաւ 'ի գութ ողորմութեանն 'ի մերայս Ուռհայոյ, թողեալ զգազանական ընդբարսն զոր ունէր յառաջագոյն։ Եւ թագաւորեաց Պաղտինն 'ի վերայ Ոնտիոքայ և ամենայն աշխարհին Կիւլիկեցւոց, Երուսաղէմայ, և ամենայն աշխարհի նորա մինչև յԵգիպտոս։

ՄԼ. Իսկ 'ի գալ հասանել թուականութեանն Հայոց ՈԻԹ (1180—1181), գարձեալ ժողով արարեալ Խաղի ամիրայն և կազմեալ զգունդ զօրաց իւրոց հարիւր երեսուն հազար, և գայր 'ի վերայ աշխարհին.

Փռանկաց. առաքապէս հատանէր ՚ի դուռն Ուռհայոյ քաղաքին, և ելեալ զօրօք առ հասարակ զամենայն դաշտն: Եւ կացեալ զաւուրս չորս, ապականեաց զամենայն արտաբայսն ՚ի ձեռն անթիւ զօրացն, և յարուցեալ անցանէր ՚ի Սրուճ քաղաք, և դաստաքար անցուցանէր զմեծ մասն զօրացն ընդ Եփրատ գետն, և ՚ի Թլպաշխայ մինչեւ ՚ի Քեսուն առ հասարակ գերի վարեաց զարս և զկանայս. և կոտորեցին անողորմ սրով. և զայլայն զամենայն կրակով այրեալ խորովէին անողորմ՝ անթիւ բազմութիւն: Եւ յայնժամ Խաղի հանդերձ բազմութեամբ անցանէր ընդ Եփրատ, և բազում գերիս մատնեցին ՚ի ձեռն սրոյ, և քահանայք և կրօնաւորք սրով և հրով կոտորեցան: Եւ յայսմ ժամու կոմսն Ճօսլին էր ՚ի սահմանըս քաղաքաբերդին Սամնայ, ելեալ ՚ի Քեսուն և ՚ի Պեհեսնի, զօրաժողով արարեալ զզօրսն, և ՚ի դաշտն Առաւօտուն զհետ գնաց Թուրքին, և անկանէր ՚ի վերայ նոցա, և կոտորեաց ՚ի նոցանէ հազար այր. և դարձաւ Խաղի ամենայն զօրօքն և իջաւ մերձ ՚ի Հալապն: Յայնժամ Թագաւորն Երուսաղէմայ հանդերձ ամենայն զօրօքն Փռանկաց յարձակէր (265) ՚ի Հալապ առ ՚ի պատերազմել ընդ

տերապետող, և սա գերի վարեաց զԳաղատա քաղաք, և երեք պատերազմ փախեաց սա ընդ Տաճկարին Պարսից սուլտանին, որ և յաղթեցաւ: Եւ էր սա ազգաւ Ռուավատի և յոյժ հայհոյիչ Մահմետի և ամենայն կարգաց նորա (267): Նա բանակեցաւ փրանկօքն ընդ մէջ Եթովպայ և ընդ Հնդիկս. և յայսմ ժամանակիս գայր փեսայանայր Խաղի ամիրային Պարսից: Եւ յայսմ ամի խաղաց Խաղի հանդերձ բազմութեամբ զօրօքն և հասանէր յաշխարհն Գանձակայ՝ գնալով ՚ի վերայ աշխարհին Վրաց:

ՄԼԲ. Յայնժամ գայր Մելիք սուլտանն Գանձակայ չորս հարիւր հազար ձիաւորով արանց քաջաց, և խաղայր ահագին բազմութեամբ և մտանէին ՚ի յաշխարհն Վրաց ՚ի կողմն Տփխեաց քաղաքին ՚ի լեառն որ Դիկոր կոչի. Եւ լուեալ զայս Դաւիթ Վրաց թագաւորն որդի Բագրատայ՝ որդւոյ Գորգոյ և հասանէր ընդդէմ թուրք զօրացըն քառասուն հազարով կորովեաց և արանց քաջաց և կիրթ պատերազմողաց. ունէր և այլ զօրս ՚ի Խփչաղեաց թագաւորէն՝ տասն և հինգ հազար քաջս և ընտիրս, և յազգէն Ալանաց ասս հինգ հարիւր, և Ֆռանկ՝ հարիւր: Եւ էր օգոստոս ամսոյ ժԵ.

և զատկաց Աստուածածնի հինգշաբաթի օրն, եղև սաստիկ պատերազմ ՚ի մէջ երկուց լերանց, որ և յահագին ճայթմանէ զօրացն դողէին լերինքն. և յայնժամ օգնութիւն հասանէր յԱստուծոյ ՚ի վերայ Վրաց զօրացն. և ՚ի խմբել պատերազմին զամենայն զօրսն Թուրքաց դարձուցին ՚ի փախուստ: Եւ յայնժամ աւուր եղև սաստիկ և ահաւոր կոտորած զօրացն Թուրքաց. և լցան դիակամբք գետք և ձորք լերանց, և ամենայն քարափունք լերանց ծածկեցան: Եւ եղև համար կոտորածոյ զօրացն Թուրքաց քառասուն բիւր. և ձերբակալս արարին արս երեսուն հազար, և յերիվարացն և ՚ի զինուցն անկելոց ծածկեցաւ ամենայն երեսք դաշտացն. և զաւուրս ութ զհետ վարեցան զօրք Խափչաց և Վրաց մինչև ՚ի սահմանս քաղաքին Անւոյ: Եւ սուլտանն Պարսից Մելիքն և Խազէ դարձան բազում ամօթով յաշխարհն իւրեանց մազապուրծ փախըստեամբ, քան հազար չէր մնացեալ:

Յայսմ ամի էառ Դաւիթ Թագաւորն Վրաց զքաղաքն Տփխիս ՚ի Պարսից, և արար սաստիկ կոտորած զքաղաքն. և այս հինգհարիւր սրահանգս ՚ի փայտն հանեալ սատակէր չարաչար:

ՄԼԳ. Յայսմ ամի յամենայնն օդասուտ անկեալ եղեւ կրակ յերկնից եւ այրեաց զբա-ւադ ճեմարանն որ կայր 'ի քաղաքն Պաղ-տատ: Զայս ճեմարանս կանգնեալ էր Տուղ-րիլ սուլտանն Պարսից՝ եղբայրն Աբրահամայ, եւ շինեալ էր զնա զարմանալի եւ հրաշալի գործարանօք. զի յորժամ էառ նա զաշխար-հըն Պարսից, զամն քան մեծ պատերազմ վանեաց ընդ ազգն Պարսից, եւ այսպէս հալա-ծեցուցանէր զնոսա, եւ տիրեաց ամենայն աշխարհին Պարսից, եւ յայնժամ գայր 'ի Պաղտատ քաղաք, եւ հրամայեաց զայն աղօ-թից տուն կանգնել ազգին Թուրքաց, զի մի մոցեն ազգն Թուրքաց 'ի յաղօթից տունն Արաբկաց. եւ 'ի յայսմ ամի անկաւ կրակ եւ այրեաց զճեմարանն Թուրքաց . . . . . . ժողովարանն նոցա:

ՄԼԴ. Դարձեալ 'ի թուականութեանն Հայոց ՇՀԱ (1122–1123), զօրաժողով արար Խաղի ասպասալարն Պարսից եւ գնաց 'ի վերայ զօրացն Փռանկաց, եւ իջանէր 'ի վերայ Հալ-պայ քաղաքի, եւ անտի գնայր բանակ հար-կանէր 'ի Շիզարն 'ի Տաճկաց քաղաքն: Եւ յայնժամ գայր Պաղտին Թագաւորն Երուսա-ղէմայ, եւ գայր հասանէր առ նա կոմսն Ուռհայոյ Ջօսլինն, եւ միաբան գային իջա-

նէին հանդէպ զօրացն Թուրքաց, և զամենայն աւարսն անտանելին ոչ արարին պատերազմ լուռ ընդդէմ իւրեանց կային։ Յամսեանն սեպ-տեմբերի առանց պատերազմաց քակեցան եր-կոքին կողմանքն, և դարձան իւրաքանչիւր 'ի քաղաք իւր. և ամիրայն Իղազի մնաց 'ի Հա-լապ. և Պալակ ամիրայն՝ որ էր քեռորդի Իղազի և էր այր քաջ և ժիր պատերազմող, դարձաւ գաղտաբար և գնայր 'ի գաւառ իւր Հան-ձիթ։ Յայնժամ Ջօսլինն և Գալէրանն լը-ւեալ զայս՝ և ընթանային զհետ զօրացն Պա-լակին, և հասին նմա 'ի գաւառն Ուռհայոց 'ի գեղն որ կոչի Տափթիլ, հարիւր ձիաւորով. հասաւ 'ի վերայ նորա. և Պալակն իջեալ կայր ութ հարիւր ձիաւորօքն 'ի տեղի մի գետա-գնաց և մօրոտ յոյժ շուրջն, և զօրօք իւրովք ամրացեալ կայր 'ի նմա. և զօրքն Փռան-կաց անմտաբար խելագարեալ լինէին, յար-ձակեցան 'ի վերայ, և ընդ խորափիտն ոչ կարէին անցանել։ Իսկ Պալակն ամենայն զօ-րօքն կայր ընդդէմ նոցա և նետիւք խոցո-տեալ զամենայն երիվարս նոցա, և արարին հալածականս զամենայն զօրսն Փռանկաց, և արարին ձերբակալ զերկու կոմսն Փռանկաց զՋօսլինն և զԳալէրանն. և կոտորեցին զամե-նայն Փռանկն, և զՋօսլինն և զԳալէրանն եր-

կամօքն կապանօք տարան 'ի Խարբերդ, և եդին 'ի բանտի անդ, և զքաղն և Հինդ Թըռանկին տարան 'ի Խալու : Եւ լինէր այս ամենայն սուգ մեծ ամենայն հաւատացելոց, և կային անհարբեկեալ մեծաւ տառանութեամբ: Այս եղև 'ի սեպտեմբերի ամսոյ ժԳ:

Յայսմ աւուրս մեռանէր մեծ ամիրայն Խաղի որդի Արդուխին, և տայր զամենայն աշխարհն իւր 'ի քուրորդին իւր 'ի Պալակ ամիրայն, և յանձն արարեալ զտունն և զորդիսն իւր 'ի Պալակն զՍուլիմանն, զՏումրտաշն, և բերին դադաղօք զԽաղն 'ի Հալպայ 'ի Խառան, և անտի տարան թաղեցին զնա 'ի Մուֆարկինն 'ի քաղաքն իւր : Եւ Պալակ ամիրայն տիրեաց բազում գաւառաց:

ՄՀԵ. Դարձեալ 'ի թուականութեան Հայոց 'ի յամի ՇՀԲ (1123—1124), զօրաժողով արարեալ թագաւորն Երուսաղէմի Պաղուինոսն, և յուղէր պատերազմ ընդ Պալակայ ամիրային վասն երկու իշխանացն զոր արկեալ էր 'ի բանդի, զՃօսլին և զԴալէրան : Եւ հասանէր թագաւորն ամենայն զօրօքն Ֆռանկաց 'ի Սապան քաղաք, և Պալակն յառաջագոյն եկեալ էր մերձ այնմ գաւառին, զի զերկիրն արասցէ աւար և գերութիւն. և զմիմեանց ոչ գիտելով երկոցունց կողմանցն, և եկեալ

*Թագաւորն սակաւ զօրօքն 'ի Շնչէց կանդարայն (268), և անցեալ գետովն 'ի վեր կամէր ելանել 'ի տեղին որ ասի Շնչրիկ. և Պալակն բազում զօրօք կայր մերձ 'ի քմին յորժամ հարին զվրան Թագաւորին. և Թագաւորն կամէր որսալ բազէովն, և Պալակն յանկարծակի յարձակեցաւ 'ի վերայ իւր ամենայն զօրօքն, և արար կոտորածս սաստիկ հզօր, և կալաւ զԹագաւորն Երուսաղէմի և զքուր որդին Թագաւորին. այս եղեւ յամսեանն հոռի, զկնի չորս աւուր անցանելոյ սուրբ Զատկին։ Իսկ տարաւ Պալակն զԹագաւորն 'ի դուռն Սառկառայ, և նա տայր զկապկառ 'ի ձեռս Պալակին, և տարան զԹագաւորն և զքուրորդին 'ի Խարբերդ. և երկաթի կապանօք եդին 'ի խոր բանտին, ուր եդեալ կայր Ջօսլին և Գալէրանն։*

ՄԼԶ. *Յայնմ ամի զկնի հինգ ամսոց որ այս գործեցաւ՝ եղեւ զարմանալի ինչ. վասն զի յաղագս այսորիկ եղեւ կատարած կորըստեան։ Յարուցեալ միաբանեցան արք հընգետասանք 'ի յամուր բերդէն Պեհեսնու, և խորհեցան խորհուրդս քաջաց և կատարեցին զգործս անմահից։ Յարուցեալ արանցըս այսոցիկ գնան 'ի Հանձիթ գաւառն. և յաշու ունէին զամուր բերդն Խարբերդ*

գոյ, ուր կայր յարգելանոցի Թագաւորն Ֆռանկաց և Ճոսլինն և Գալերանն. և սպանին զպահապան բերդին սակաւս, և կալին անհոգս. գնացին 'ի դուռն գծուծ կերպարանօք և իբրեւ զդատաստանաւորք. կայր և այլ ոք բանտաւոր 'ի ներքս 'ի բերդն. և զկնի սակաւ մի ժամու զինեցին և մտին 'ի բերդն, և քաջապէս ջանացան 'ի բանտն, և զոր 'ի դուռն գտին՝ սպանին, և փակեցին զդուռն. մեծաւ աղաղակաւ հասանէին 'ի բերդն ուր էր Թագաւորն արգելած և Ճօսլինն. և Գալերանն և այլ իշխանքն, եւ հանին զնոսա 'ի բանտէն մեծաւ ուրախութեամբ. և զայլս ոմանս զօրս բազումս հանին 'ի կապանաց արք և կանայք. և ոմանք 'ի տեղացեացն մտին 'ի բանտն վասն փրկութեան Թագաւորին եւ Ճօսլինին և այլոց կալանաւորացն: Եւ ելեալ Թագաւորն և ամենայն բանտարկեալք, և առին զբերդն և տիրեցին ամենայն տանն Պալակին: Եւ իբրեւ լուան զայս զօրք այլազգեացն որք էին 'ի գաւառին, փախեան 'ի յայլ աշխարհ. և զմիւս այլ գիշերին չորեքշաբաթ լուսանալն՝ ելեալ Ճօսլինն և հետեւակ մի ընդ նմա, և գաղտաբար գնացին 'ի Բեռուն, և անտի գնացին յԱնտիոք զի զօրաժողով ա-

բառցէ և դայցէ յօգնութիւն Թագաւորին և այլոց կալանաւորացն։ Նա էր յայսմ ժամու զօրավարն Պռանկաց զօրաց կոմսն Ռօփրէ (260), որ էր այր քաջ և հզօր, և հաւատովն հաւատացեալ առաւել քան զառաւել, և սա մեծաջան աշխատութեամբ պահէր 'ի Թուրքաց զամենայն գաւառն Պռանկաց, զԵրուսաղէմ և զԱնտիոք ևս զՈւռհայ, և ամենայն հնարաւորութեամբ արիաբար կացեալ։ Իսկ յորժամ այս գործեցաւ, էր ամիրայն Թուրքաց Պօլակն 'ի Հալապ քաղաք, և յորժամ լուաւ զայս ամենայն եթէ հնարաւորութեամբ առին զԽարբերդ, յարուցեալ որպէս զարծուի, և յաւուրս հնգետասան հասանէր անդր և յարուցանէր սաստիկ պատերազմ 'ի վերայ բերդին. և կանգնեալ մքենայ (մեքենայ) և փորեալ ընկեցին զբուրգն մեծ ամիրային, և այնու ահաբեկեաց զնոսա. և ահիւ մեծաւ ելեալ կոմսն Գալէրան առ Պօլակն, և տայր ըզԽարբերդ 'ի ձեռս նորա։ Նա յայնմ աւուր կոտորեաց Պօլակն զամենայն կալանաւորսն ոգիք իբրև վաթսուն և հինգ, և կանայս ութսուն գեղեցիկս ձգեալ ընդ բարձրութեան բերդն 'ի վայր, և դարձեալ մեծաւ սրտմտութեամբ երկաթի կապանօք դնէր

զօրսն Թուրքաց. և գնաց Ջօսլինն զօրօք իւրովք յԱնտիոք, և հասանէր առ Թագաւորն: Եւ զօրք Թուրքաց և Փռանկաց կային ընդդէմ միմեանց զբազում աւուրս և ոչ արարին պատերազմ. յայնժամ դարձաւ Խաղի զօրօքն և գնաց յաշխարհն Մելտենոյ որ կոչի Կարմիան. և Թագաւորն դարձաւ յԵրուսաղէմ, և Ջօսլինն 'ի քաղաքն իւր Ուռհայ:

ՄԼԱ. Դարձեալ 'ի Թուականութեանն Հայոց ՇՀ (1121—1122), ամիրայ մին 'ի յաշխարհէն Գանձակայ՝ Խաղի անուն, այր արիւնահեղ, լիրբ, չար և հարամի, և էր սահմանակից աշխարհին Վրաց, և կայր սիրով 'ի հնազանդութեան Վրաց Թագաւորին: Եւ յայսմ ամի խորհեցաւ չար խորհուրդ, և առեալ Խաղի երիս բիւրս Թուրք զօրաց՝ և մտանէր յաշխարհն Վրաց. և միաւորն մի գերի վարեաց և եհան յաշխարհէն Վրաց, և գնացեալ բանակ հարկանէր 'ի տեղի իւր: Եւ լուեալ զայս Դաւիթ Թագաւորն Վրաց, առաքեաց զզօրս Վրաց աշխարհին, և եկեալ գաղտաբար անկանէին 'ի վերայ Թուրք զօրացն, և կոտորեաց 'ի նոցանէ արս երեսուն հազար, և զամենայն կանայս նոցա և զորդիս նոցա և զհօտս անա-

թիւ աշխարհաց նոցա վարէին 'ի գերու-
թիւն, հանդերձ բազում և անհամար ա-
ւարաւ տարան յաշխարհն Վրաց։ Յայն
ժամ մնացեալքն 'ի զօրաց առ սաստիկ վը-
տանգին պատառեցին զհանդերձս իւրեանց,
և հող արկանէին 'ի վերայ գլխոց իւրեանց,
և սեւազգեստիւք և բացագլխօք ճիչկա-
նըս առնէին առ 'ի Գանձակ քաղաքն իւ-
րեանց սուլտանին, առ Մելիքն որդի Տա-
փարին, և բողոք բարձեալ լալով առաջի նո-
րա զկորուստն իւրեանց։ Եւ այլք հասա-
նէին 'ի դուռն Արապկաց` 'ի յաշխարհն
Կարմիանեն առ ամիրայն Խազի որդի Ար-
դուխին, և սաստկապէս լալով զկոտորած
կորստեանն իւրեանց պատմէին նմա։ Եւ
նորա առ զօրութեան իւրոյ և բարձրամտու-
թեանն հրամայեաց ժողով լինել բազմու-
թեան զօրաց իւրոց զամենայն ազգն Թուր-
քաց, 'ի Յունաց աշխարհէն մինչեւ յարե-
ւելս զամենայն Կարմիան։ Եւ արար հա-
մար զօրաց իւրոց զամենայն` հարիւր յիսուն
հազար, և առաքեաց 'ի հարաւակողմն 'ի
յաշխարհն Արաբացւոց, և կոչեաց զհետ
իւր զթագաւորն Արապկաց որ կոչի Սա-
դայ որդի Տուպայսին (266), գայր առ նա
տասն հազարաւ. և էր նա այր քաջ և պա-

տերազմող, և սա գերի վարեաց զԳաղատա քաղաք, և երեք պատերազմ վանեաց սա ընդ Տափարին Պարսից սուլտանին, որ և յաղթեցաւ։ Եւ էր սա ազգաւ Սավլանի և յոյժ հայհոյիչ Մահմետի և ամենայն կարգաց նորա (267)։ Նա բանակեցաւ փրանգօքն ընդ մէջ Եթովպայ և ընդ Հնդիկս. և յայսըմ ժամանակիս գայր փեսայանայր Խաղէ ամիրային Պարսից։ Եւ յայսմ ամի խաղաց Խաղի հանդերձ բազմութեամբ զօրօքն և հասանէր յաշխարհն Գանձակայ՝ գնալով ՚ի վերայ աշխարհին Վրաց։

ՄԼԲ. Յայնժամ գայր Մելիք սուլտանն Գանձակայ չորս հարիւր հազար ձիաւորով արանց քաջաց, և խաղայր ահագին բազմութեամբ և մտանէին ՚ի յաշխարհն Վրաց ՚ի կողմն Տփխեաց քաղաքին ՚ի լեառն որ Դիդգոր կոչի. Եւ լուեալ զայս Դաւիթ Վրաց թագաւորն որդի Բագրատայ՝ որդւոյ Գէորգայ և հասանէր ընդդէմ թուրքք զօրացըն քառասուն հազարով կորովեաց և արանց քաջաց և կիրթ պատերազմողաց. ունէր և այլ զօրս ՚ի Խփչաղեաց թագաւորէն՝ տասն և հինգ հազար քաջս և ընտիրս, և յազգէն Ալանաց սոսա հինգ հարիւր, և Փռռանկ՝ հարիւր։ Եւ էր օգոստոս ամսոյ ԺԵ.

և պահոց Աստուածածնէի հինգշաբաթի օրն, եղեւ սաստիկ պատերազմ ՚ի մէջ երկուց լերանց, որ և յահագին ճայթմանէ զօրացն դողէին լերինքն. և յայնժամ օգնութիւն հասանէր յԱստուծոյ ՚ի վերայ Վրաց զօրացն. և ՚ի խմբել պատերազմին զամենայն զօրսն Թուրքաց դարձուցին ՚ի փախուստ: Եւ յայնժամ աւուր եղեւ սաստիկ և ահաւոր կոտորած զօրացն Թուրքաց, և լցան դիակամբք դետք և ձորք լերանց, և ամենայն քարափունք լերանց ծածկեցան: Եւ եղեւ համար կոտորածոյ զօրացն Թուրքաց քառասուն բիւր. և ձերբակալս արարին առս երեսուն հազար, և յերիվարացն և ՚ի զինուցըն անկելոց ծածկեցաւ ամենայն երեսք դաշտացն. և զաւուրս ութ զհետ վարեցան զօրք Խափչաց և Վրաց մինչեւ ՚ի սահմանս քաղաքին Նուոյ: Եւ սուլտանն Պարսից Սէլէքն և Խազէ դարձան բազում ամօթով յաշխարհն իւրեանց մազապուրծ փախըստեամբ, քանն հազար չէր մնացեալ:

Յայսմ ամի էառ Դաւիթ Թագաւորն Վրաց զքաղաքն Տփխիս ՚ի Պարսից, և արար սաստիկ կոտորած զքաղաքն, և արս հինգ հարիւր սրահանգս ՚ի փայտն հանեալ սատակէր չարաչար:

ՄԼԳ. Յայսմ ամի յամսեանն օգոստոսի անկեալ եղեւ կրակ յերկնից եւ այրեաց զդոււագ ճեմարանն որ կայր 'ի քաղաքն Պաղտատ ։ Զայս ճեմարանս կանգնեալ էր Տուղրիլ սուլտանն Պարսից՝ եղբայրն Աբասլանայ, եւ շինեալ էր զնա զարմանալի եւ հրաշալի գործարանօք. զի յորժամ էառ նա զաշխարհն Պարսից, զամս քան մեծ պատերազմ վաննեաց ընդ ազգն Պարսից, եւ այսպէս հաւանեցուցանէր զնոսա, եւ տիրեաց ամենայն աշխարհին Պարսից, եւ յայնժամ գայր 'ի Պաղտատ քաղաք, եւ հրամայեաց զայն առաջին թից տուն կանգնել ազգին Թուրքաց, զի մի մտցեն ազգն Թուրքաց 'ի յաղօթից տունն Արապկաց. եւ 'ի յայսմ ամի անկաւ կրակ եւ այրեաց զճեմարանն Թուրքաց . . . . . . . ժողովարանն նոցա ։

ՄԼԴ. Դարձեալ 'ի թուականութեանն Հայոց ՇՀԱ (1122–1123), զօրաժողով արար Խաղբ ատապակարն Պարսից եւ գնայ 'ի վերայ զօրացն Փռանկաց, եւ իջանէր 'ի վերայ Հալպայ քաղաքի, եւ անտի գնայր բանակ հարկանէր 'ի Շիզարն 'ի Տաճկաց քաղաքն ։ Եւ յայնժամ գայր Պաղտին թագաւորն Երուսաղէմայ, եւ գայր հասանէր առ նա կոմսն Ուռհայոյ Ճօսլինն, եւ միաբան գային իջա-

նէին հանդէպ զօրացն Թուրքաց, և զամենայն աւուրսն ամառնայինս ոչ արարին պատերազմ՝ լուռ ընդդէմ իրերաց կային։ Յամսեանն սեպտեմբերի առանց պատերազմաց քակեցան երկոքին կողմանքն, և դարձան իւրաքանչիւր 'ի քաղաք իւր. և ամիրայն Խաղի մնաց 'ի Հալապ, և Պալակ ամիրայն՝ որ էր քեռորդի Խաղիի և էր այր քաջ և ժիր պատերազմող, դարձաւ գաղտաբար և գնայր 'ի գաւառ իւր Հանձիթ։ Յայնժամ Ճօսլինն և Գալերանն լուեալ զայս՝ և ընթանային զհետ զօրացն Պալակին, և հասին նմա 'ի գաւառն Ուռհայոյ 'ի գեղն որ կոչի Տամիթիկ, հարիւր ձիաւորով. հասաւ 'ի վերայ նորա. և Պալակն իջեալ կայր ութ հարիւր ձիաւորօքն 'ի տեղի մի գետագնաց և մօրուտ յոյժ շուրջն, և զօրօք իւրովք ամրացեալ կայր 'ի նմա. և զօրքն Փռանկաց անմտաբար խելագարեալ լինէին, յարձակեցան 'ի վերայ, և ընդ խորութիւն ոչ կարէին անցանել։ Իսկ Պալակն ամենայն զօրօքն կայր ընդդէմ նոցա և նետիւք խոցոտեալ զամենայն երիվարս նոցա, և արարին հալածականս զամենայն զօրսն Փռանկաց, և արարին ձերբակալս զերկուս կոմսն Փռանկաց զՃօսլինն և զԳալերանն. և կոտորեցին զամենայն Փռանկսն, և զՃօսլինն և զԳալերանն եբ-

կոթի կապանօք տարան 'ի Խարբերդ, և եդին 'ի բանտի անդ, և զքսան և հինգ Ֆռանկն տարան 'ի Ռալու։ Եւ լինէր այս ամենայն սուգ մեծ ամենայն հաւատացելոց, և կային անհարբեկեալ մեծաւ տառանութեամբ։ Այս եղև 'ի սեպտեմբերի ամսոյ ԺԷ։

Յայնմ աւուրս մեռանէր մեծ ամիրայն Խաղէ որդի Արդուխին, և տայր զամենայն աշխարհն իւր 'ի քուրորդին իւր 'ի Պալակ ամիրայն, և յանձն արարեալ զտունն և զորդին իւր 'ի Պալակն զՍուլիմանն, զՏումրտաշն, և բերին գագաղօք զԽաղէ 'ի Հալպայ 'ի Խառան, և անտի տարան թաղեցին զնա 'ի Մուֆարկին 'ի քաղաքն իւր։ Եւ Պալակ ամիրայն տիրեաց բազում գաւառաց։

ՄԼԵ. Դարձեալ 'ի թուականութեանն Հայոց 'ի յամի ՇՀԲ (1123—1124), զօրաժողով արարեալ թագաւորն Երուսաղէմի Պաղտուինն, և յուզէր պատերազմ ընդ Պալակայ ամիրային վասն երկու իշխանացն զոր արկեալ էր 'ի բանդի, զՃօսլին և զԳալէրանն։ Եւ հասանէր թագաւորն ամենայն զօրօքն Ֆռանկաց 'ի Խառան քաղաք, և Պալակն յառաջագոյն եկեալ էր մերձ այնմ գաւառին, զի զերկիրն արասցէ աւար և գերութիւն. և զմիմեանց աչ դիտելով երկոցունց կողմանցն, և եկեալ

Թագաւորն սակաւ զօրօքն ՚ի Ճնճէց կան-
դարայն (268), և անցեալ գետոյն ՚ի վեր կա-
մէր ելանել ՚ի տեղին որ ասի Ճնճրիկ. և Պա-
լակն բազում զօրօք կայր մերձ ՚ի քմին յոր-
ժամ հարին զվրան Թագաւորին. և Թագա-
ւորն կամէր որսալ բաղէօքն, և Պալակն յան-
կարծ յարձակեցաւ ՚ի վերայ իւր ամենայն
զօրօքն, և արար կոտորածս սաստիկ հզօր,
և կալաւ զԹագաւորն Տրուաստէմի և զքուր
որդին Թագաւորին. այս եղեւ յամսեանն
հոռի, զկնի չորս աւուր անցանելոյ ուրբ
Զատկին։ Եւ տարաւ Պալակն զԹագաւորն
՚ի դուռն Կառկառայ, և նա տայր զԿառ-
կառ ՚ի ձեռս Պալակին, և տարան զԹագա-
ւորն և զքուրորդին ՚ի Խարբերդ, և երկա-
թի կապանօք եդին ՚ի խոր բանտին, ուր
եդեալ կայր Ջօսլին և Գալէրանն։

ՄԼԶ. Յայսմ ամի զկնի հինգ ամսոց որ
այս գործեցաւ՝ եղեւ զարմանալի ինչ. վասն
զի յազգաց այսորիկ եղեւ կատարած կորըս-
տեան։ Յարուցեալ միաբանեցան արք հըն-
գետասանք ՚ի յամուր բերդէն Պէհեսնոյ,
և խորհեցան խորհուրդս քաջաց և կատա-
րեցին զգործս անմահից։ Յարուցեալ արան-
ցըս այսոցիկ գնան ՚ի Հանձիթ գաւառն.
և յաշու ունէին զամուր բերդն Խարբերդ

գոյ, ուր կայր յարգելանոցի Թագաւորն Ֆռանկաց և Ջօսլինն և Գալերանն. և անեմին զպահապան բերդին սակաւս, և կային անհոգս. գնացին 'ի դուռն գծուծ կերպարանօք և իբրեւ զդատաստանաւորք. կայր և այլ ոք բանտապահ 'ի ներքս 'ի բերդն. և զկնի սակաւ մի ժամու զխեղդեցին և մտին 'ի բերդն, և քաջապէս ձեռնացան 'ի բանտն, և զոր 'ի դուռն գտին՝ սպանին, և փակեցին զդուռն. Մեծաւ աղաղակաւ հասանէին 'ի բերդն ուր էր Թագաւորն արգելեալ և Ջօսլինն. և Գալերանն և այլ իշխանքն, եւ հանին զնոսա 'ի բանտէն մեծաւ ուրախութեամբ. և զայլս ոմանս զօրս բազումս հանին 'ի կապանաց արք և կանայք. և ոմանք 'ի տեղացեացն մտին 'ի բանտն վասն փրկութեան Թագաւորին եւ Ջօսլինին և այլոց կալանաւորացն: Ապա ելեալ Թագաւորն և ամենայն բանտարկեալք, և առին զբերդն և տիրեցին ամենայն տանն Պալակին: Ապա իբրեւ լուան զայս զօրք այլազգեացն որք էին 'ի գաւառին, փախեան 'ի յայլ աշխարհ. և զմիւս այլ գիշերին չորեքշաբաթ լուսանալն՝ ելեալ Ջօսլինն և հետեւակ մի ընդ նմա, և գաղտագողի գնացին 'ի Թերուն, և անտի գնացին յԱնտիոք զի զօրաժողով ա-

բնացէ և գայցէ յօգնութիւն Թագաւորին և այլոց կալանաւորացն ։ Նա էր յայնմ ժամու զօրապետն Պռանկաց զօրաց կոմսն Ռօպերտ (260), որ էր այր քաջ և հզօր, և հաւատովն հաստատեալ առաւել քան զառաւել, և սա մեծաջան աշխատութեամբ պահէր ՚ի Թուրքաց զամենայն գաւառն Պռանկաց, զԵրուսաղէմ և զԱնտիոք եւ զՈւռհայ, և ամենայն հնարաւորութեամբ արիաբար կացեալ ։ Իսկ յորժամ այս գործեցաւ, էր ամիրայն Թուրքաց Պալակն ՚ի Հալապ քաղաք, և յորժամ լուաւ զայս ամենայն եթէ հնարաւորութեամբ առին զԽարբերդ, յարուցեալ որպէս զարծուի, և յաւուրս հնգետասան հասանէր անդր և յարուցանէր սաստիկ պատերազմ ՚ի վերայ բերդին. և կանգնեալ մքենայ (մեքենայ) և փորեալ ընկեցին զբուրգն մեծ ամիրային, և այնու ահաբեկեաց զնոսա. և ահիւ մեծաւ ելեալ կոմսն Գալէրան առ Պալակն, և տայր ըզԽարբերդ ՚ի ձեռս նորա ։ Նա յայնմ աւուր կոտորեաց Պալակն զամենայն կալանաւորսն ոգիք իբրեւ վաթսուն և հինգ, և կանայս ութսուն գեղեցիկս ձգեալ ընդ բարձրութեան բերդն ՚ի վայր, և դարձեալ մեծաւ սրտմտութեամբ երկաթի կապանօք դնէր

զԹագաւորն 'ի բանտի, և զՊաղերանն և զքուրորդին Թագաւորին: Նա Ճօսլինն գայր փորձ Պռանկաց 'ի յօգնութիւն. և յորժամ լուեալ զայս Ճօսլինն և Ճօփրէ, վիրաւորեալ լինէին յոյժ, դարձան լի տրտմութբ և գնացին 'ի գաւառն Խուրեանց, և Թագաւորն և Պաղերանն և քուրորդին Թագաւորին մնացին 'ի բանդին:

ՄԼԵ. Յայսմ ամի եղեւ պատերազմ Թռչնոց 'ի գաւառն Մելտենոյ. ժողովեցան արագիլք և կռունկք և արօսք և կռուեցան ընդ միմեանս. և կռունկն յաղթեաց արագիլն, որ բնաջինջ արար զնոսա, և ուր ուրեք մնացին:

ՄԼԶ. Յայսմ ամի մեռաւ մեծ իմաստասէրն Հայոց Պօղոս վարդապետն: Սա եղեւեալ այր հրաշալի, տեղեակ հին և նոր կտակարանացն Աստուծոյ. սա հասեալ շնորհացն առաջին սուրբ վարդապետացն և երկրորդ լուսաւորիչ երեւեալ տանս Հայոց. և վէմ ադամանդեայ ընդդէմ հերձուածողաց, և յոյժ ախոյեան լեալ ուղղափառաց և անպարտելի վարուք 'ի կեանս իւր կացեալ ընդդէմ հերետիկոսացն. և էր սա 'ի Տարօն գաւառէն, յայսմ ամի մեռաւ, և Թաղեցաւ 'ի վանսն Պաղպատու մերձ 'ի Սանահին:

ՄՂԹ. Յայսմ ամի Դաւիթ վրաց Թագաւորն կոտորեաց 'ի զօրացն Պարսից վեց բիւրս. վասն զի եկեալ սուլտանն Գանձակայ բազում զօրօք, 'ի վերայ Կուռ գետոյ կարմունջ կապեաց նաւերայնով (նաւօք) և անցուցանէր յերկիրն Աղուանից : Եւ լուեալ Թագաւորն Վրաց, առաջեաց զզօրս և զկարմունջն փլոյց, և զամենայն զօրսն որ անցան՝ առ հասարակ կոտորեաց, և գնաց սուլտանն փախստական 'ի Պարսիկս, և մնաց 'ի յԱւղկան քաղաք առ հօրեղբայրն իւր :

Իսկ էր այս Թագաւորն Դաւիթ այր քաջ և հզօր ընդդէմ Պարսից պատերազմաց : Սա բազում անգամ յաղթեաց զօրացն այլազգեաց, և բեկեաց զամենայն զօրութիւնս նոցա. և բազում անուանի գաւառս էառ 'ի Պարսից սրով և բռնութեամբ. էառ ըզ Տփխիս և զԴմանիս քաղաք և զՇրուանն և զՇաքի և զՇամքոր, էառ և այլ բազում գաւառս : Եւ էր Դաւիթ արքայ այր սուրբ և առաքինի, զարդարեալ ամենայն աստուածապաշտութեամբ և բարի արդարութեամբ, և սա երեւեցաւ ընդունող և սիրող ազգին Հայոց : Առ սա ժողովեցան մնացեալ զօրքն Հայոց. և սա շինեաց քաղաք Հայոց 'ի յաջ

խարհն Սրոց, և հաստատեաց եկեղեցիս և վանորայս բազումս, և անուանեաց զանուն քաղաքին Գուռոյ, և ունէր մեծաւ ուրախութեամբ և ցնծութեամբ զամենայն ազգըն Հայոց։ Կայր և հարազատ որդի մի Թագաւորին, որում անուն ասէին Դեմետրէ 'ի Հայ կնոջէ, և եղբօր Թագաւորին ասէին Թոտորմէ։

ՄԽ. Դարձեալ 'ի Թուականութեանն Հայոց ՇՀԳ (1124–1125) զօրաժողով արարեալ Պալակ ամիրային և գ՛նաց 'ի վերայ զօրացն Փռանկաց, և հասանէր 'ի Հալապ քաղաք. և վկնի սակաւ աւուրց 'ի պատերազմ գայր 'ի վերայ քաղաքին Տաճկաց, որ ասի Մնբէճ. և կանգնեալ բաբանս 'ի վերայ կլային, և սաստիկ պատերազմաւ հարկանէր զընակիչսն 'ի մեծ նեղութիւն։ Իսկ յայնժամ ամիրայն որ 'ի կլայն կայր, և նա օգնականի հասուցանէր (270) առ կոմսն Փռանկաց Ճօսլինն և Ճօփրէ. և 'ի հասանել իւր յօգնականութիւն՝ խոստանայր տալ զքաղաքն 'ի Ճօսլինն։ Իսկ նորա ժողովեալ զմիացեալ զօրսն Փռանկաց, հասանէին առ նա երկու կոմսն։ Գայր և Մարաշի կոմսն Տլքոյ, Ընթափայ և Սապանայ. և լըւեալ զայս Պալակն, յարձակեցաւ ընդդէմ

Նոցա 'ի պատերազմ մօտ 'ի Մնբէճ քաղաք։ Եւ եղեւ սաստիկ պատերազմ, զի զօրք այլազգեացն բազում էին և Փռանկացն սակաւ էին. բայց յաղթեաց Փռանկաց զօրքն՝ Թուրքաց, և զմի կողմն 'ի փախուստ դարձուցին, և Ջօսլինն կոտորելով տանէր ըզմիւս կողմն Թուրք զօրացն. և միւս այլ կողմն (Թուրքաց) փակեաց զկոմսն Մարաշայ, և զայլ բազում արս քաջս և զհեծել աւագն զՋօսլինն (271) կոտորեցին սրով մարտիրոսական հանդիսիւ։ Եւ յորժամ լուաւ զայս Ջօսլինն, դարձաւ փախստական և յաղթեցաւ 'ի տեղի պատերազմին, և վաղվաղն եմուտ 'ի Թլպաշար քաղաքն իւր։ Եւ յայսըմ աւուրքս կոտորեցան բազում իշխանք յազգէն Փռանկաց. և էր օրն այն ահեղ և մեծ 'ի վերայ հաւատացելոց. այս եղեւ յամսեանն սահմի տասն, և 'ի մայիս ամսոյ չորս։ Յայնժամ դարձաւ Պալակն մեծաւ յաղթութեամբ և իջաւ 'ի վերայ քաղաքին Մնբէճայ. և ձայն պատերազմի տուեալ զօրացն, և 'ի բազում ուրախութենէն 'ի բաց հանէր զերկաթապատ զգեստն իւր։ Եւ յայնժամ 'ի կլայէն արեւապաշտ (արեւորդի) ոմն արձակեաց զնետ իւր, եւ հարկանէր զնա 'ի հեծուկն 'ի խոց մահու.

և նա ձայն տուեալ Տումր—Տաշին, որդւոյ խաղէի, և զամենայն իշխանութիւնն եւ զամենայն գաւառն իւր նմա յանձն արարեալ, և ինքն 'ի նոյն ժամայն սատակեալ լինէր: Եւ լուեալ զայս ցրուեցան զօրք նորա, և եղեւ ուրախութիւն ամենայն աշխարհին Փռանկաց կորուստն նորա. բայց իւր գաւառացն ահեղ սուգ և տրտմութիւն եղեւ և կորուստ առհասարակ. վասն զի ողորմած էր 'ի վերայ ազգին Հայոց, որք էին ընդ ձեռամբ նորա:

ՄԽԱ. Յայսմ՝ աւուր էր Թագաւորն և քուրորդին և Պալէրանն 'ի Հալապ քաղաք. յայնժամ կոմսն Ջօսլինն և Թագուհին արարին դաշինս ընդ Տումր—Տաշն գնել ըզԹագաւորն, և տան պատանդ զդուստր Թագաւորին և զորդին Ջօսլինին, և այլ տասնև հինգ պատանդ ընդ հարիւր հազար դահեկան: Եւ յամսեանն սեպտեմբերի ելեալ Թագաւորն Պաղտին 'ի ծառայութենէն այլազգեաց, և եկեալ յԱնտիոք քաղաք. և եղեւ ուրախութիւն յաւուր յայնմիկ ամենայն հաւատացելոց Քրիստոսի: Իսկ կոմսն Պալէրանն, և քուրորդին Թագաւորին մնացին առ Տումր—Տաշն և անդ սպանան: Եւ արդ այս երկրորդ գերութիւնն՝ որ աշխա‐

տութեամբ Ճօսնին, ելեալ եղեւ Պաղտինն 'ի գերութենէն.

ՄԽԲ. Յայսմ ամի օգնականութեամբ Աստուծոյ առաւ Կառկառ 'ի Թուրքաց. վասն զի Միխայլ իշխանն տէրն Կառկառայ՝ որդի Կոստանդնայ, ժողովեաց արս յիսուն, և կացեալ 'ի վերայ մեծաւ աշխատութեամբ՝ և նեղեաց զԹուրքն որ 'ի բերդն էր, և ոչ գտաւ ոք օգնական բերդին, անճարեալ գային 'ի հաւանութիւն, և տան զԿառկառ 'ի Միխայլն. և այսպիսի օրինակաւ և հնարաւորութեամբ առին զՊեպուայ բերդն 'ի Թուրքաց, և եղեւ ուրախութիւն հաւատացելոց Քրիստոսի.

ՄԽԳ. Յայսմ ամի Թագաւորն Դաւիթ Վրաց արար դարձեալ սաստիկ կոտորած զզօրսն Պարսից իբրեւ երկու բիւրս, և եառ զԹագաւորաբնակ քաղաքն Հայոց Անի, և զորդիսն Մանուչէի հանեալ 'ի Անւոյ և տարաւ 'ի Տփխիս. և ապատեցաւ Թագաւորաբնակ քաղաքն Անի, որ կացեալ էր 'ի ծառայութիւն ամս վաթսուն. և զհրաշափառ և զմեծ եկեղեցին Անւոյ զսուրբ կաթուղիկէն, զոր մզկիթ էին արարեալ, ժողովեաց զեպիսկոպոսունսն և զքահանայս և զկրօնաւորս Հայոց աշխարհին, և օրհնեաց

զսուրբ կաթուղիկէն մեծաւ հանդիսիւ, և եղև ուրախութիւն ամենայն տանն Հայոց, զի տեսին ազատեալ 'ի ծառայութենէ ըզսուրբ կաթուղիկէն ։

ՄԽԴ. Յայսմ ամի գայր տուկ մի (272) բազում զօրօք 'ի Փռանկաց, և իջեալ բանակաւ 'ի վերայ քաղաքին որ կոչի Սուր (Տիւրոս) յեզր Ովկիանոս ծովուն, և կացեալ 'ի վերայ նորա զբազում աւուրս, և սաստիկ պատերազմաւ 'ի նեղ արկանէր զքաղաքն Սուր, և նաւօք պատեաց զծովն շուրջանակաւ, և բազում զօրօք զցամաքն կալեալ ունէր, և փակեալ էր յամենայն կողմանց ։ Եւ կանգնեաց փայտէ բերդս ընդդէմ քաղաքին, և բաբանս և փիլիպանս եդեալ կայր ընդդէմ պարսպին. և այսպիսի օրինակաւ վտանգեաց զքաղաքն բազում աւուրս. սովով և պատերազմաւ նեղեաց զքաղաքն զՍուր։ Եւ յայնժամ անճարեալ լինէին քաղաքացիքն և գային 'ի հաւանութիւն. և երդումն առեալ 'ի զօրագլխէն Փռանկաց, տան զքաղաքն Սուր 'ի տուկն, և քաղաքացիքն ելեալ գնացին 'ի Դմիշկ, և զկնի սակաւ աւուրց տան զքաղաքն Սուր, գերեզմանն Քրիստոսի. և դարձաւ տուկն զօրօք իւրովք յաշխարհըն Փռանկաց ։

ՄԽԵ. Յայսմ ամի զօրաժողով արար Թագաւորն Երուսաղէմի Գաղտինն և Ճօսլինն զամենայն զօրս Փռանկաց, և գան 'ի վերայ քաղաքին Հալպայ: Գայր յայնժամ առ Ճօսլին Թագաւորն Արաբկաց Սալէ որդին Տուպասին, որ փեսայացաւ Խաղէի. կապեաց սէր ընդ Ճօսլինն, և միաբանեցաւ ընդ նմա, և զօրօք իւրովք գայր յօգնութիւն Ճօսլինին: Եկն առ Ճօսլինն Թոռն Դղուշ սուլտանին, և սուլտանն Սնլտինոյ որդին Խլիճ-Ասլանին, և եղեւ մեծ հանդէս 'ի վերայ քաղաքին Հալպայ. և արկին զքաղաքն 'ի մեծ նեղութիւն սովով և պատերազմաւ զբազում աւուրս: Յայնժամ քաղաքացիքն հաստուցանէին առ ասպալարն Բուրսուխն 'ի Մօսլ քաղաք՝ գալ օգնել նոցա: Եւ նա ժողով արարեալ բազում զօրաց, և զկնի վեց ամսոյ հասանէր 'ի Հալապ քաղաք, և 'ի բաց վարեաց զզօրսն Փռանկաց, և զերծաւ Հալապ. և գնացին զօրք Փռանկաց իւրաքանչիւր 'ի տունն անվնաս: Եւ Թագաւորն Արաբկաց գնաց և արար ասպատակ զՄօսլ և զամենայն երկիր Բուրսուխին. և Բուրսուխ կացեալ 'ի Հալապ սակաւ աւուրս և գնաց 'ի Դմիշկ, և արար միաբանութիւն ընդ Տուղ-Տիկին ամիրային Դմշկայ:

ՄԽԶ. Յայսմ ամի գայր 'ի վերայ Մելէտինոյ Խազի ամիրայն Սեւաստոյ՝ որդի Դանիշմանին. սաստիկ պատերազմաւ պաշարեաց զքաղաքն մեծ նեղութեամբ, և կացեալ 'ի վերայ քաղաքին զամիսս վեց, մինչև 'ի սաստիկ սովոյն նեղեցաւ քաղաքն. և 'ի բազմանալ սովոյն բազումք մեռան, զի վարէին զաշխարհն զքաղաքացիքն 'ի դուրս 'ի բանակ առ 'ի չգոյէ կերակրոյ. և անճարեալ քաղաքն 'ի մեծ վտանգէն՝ տան զքաղաքն 'ի Խազի. և կինն Խլիճ–Ասլանայ տէրն քաղաքիս ելեալ գնաց 'ի Աշարն:

ՄԽԷ. Իսկ 'ի թուականութեանն Հայոց ՇՀԴ (1125–1126), գայր բազում զօրօք ասպասալարն Պարսից Բուրսուխն և Տօղ–Տէկինն և քառասուն հազար այր զօրաց ընդ նոսա, որք ընտրեալք էին ընդ ամենայն տանն Պարսից, և գայր մեծաւ զօրութեամբ և իջանէր 'ի վերայ ամուր բերդին Փռանկաց՝ որ կոչի Ազազ. և արար սաստիկ պատերազմ 'ի վերայ նորա, և ամենայն զօրութեամբ խրոխտանայր առնուլ զնա, և կոխեաց արհամարհելով զզօրութիւն Փռանկաց, եւ կանգնեաց երկոտասան բաբանս ընդդէմ նորա, և փորեալ ընկեցին զերկու պարիսպ նորա. եւ կայր Ազազն 'ի մեծ վտանգի, և

եղեն յուսահատեալք պահապանքն որ կային 'ի նմա։ Իսկ յորժամ լուաւ զայս Թագաւորն Երուսաղէմայ՝ Թէ դարձաւ Նուրատու-խըն 'ի Հալապ, յարուցեալ փաղփաղակի և գայր յԱնտիոք. և ձայն տուեալ զօրացն Փռանկաց, գնաց կոմսն Ջօսլին մեծաւ յօժարութեամբ առ Թագաւորն. գայր և կոմսն Տրապօլսոյ որդին Օընձլին, և Մանհի կոմսն Տլքոյ, և եղեւ հանդէս զօրացն Փռանկաց հազար և երեք հարիւր ձիաւորաց, կայր և 'ի Հայոցն հինգ հարիւր, եւ հետեւակ զօրս չորս հազար. և գայր Թագաւորն Երուսաղէմայ 'ի Կուրիս։ Եւ լուեալ զայս ասպասալարն Պարսից, խլեցաւ զօրօքն և իջաւ մերձ 'ի Հալապն։ Յայնժամ զօրքն Փռանկաց թողին զամենայն զծանրոցն իւրեանց 'ի Կուրիս, և ամենայն պատրաստութեամբ գնացին յԱզազն, և տեսին 'ի հիմանց փլեալ և աւերեալ զԱզազն, և մերձ էին 'ի յառնուլ զնա. յայնժամ դարձան զօրքըն Պարսից 'ի վերայ զօրացն Փռանկաց, և զաւուրս երիս պատեալ զնոսա՝ մեծաւ նեղութեամբ կային 'ի մեծ վտանգի և տագնապի ոչինչ ճաշակելով նոցա. և 'ի սաստիկ նեղութենէն զլոյս իւրեանց 'ի մահ եդին, և առհասարակ յուսահատեցան 'ի կենացս.

և զօրքն Թուրքաց գոռային խրոխտանալով 'ի վերայ նոցա և շրջապատեալ զնոսա, եւ բարձրաձայն աղաղակաւ որպէս զարծիւ որ յերամս աղաւնեաց խոյանայ. այնպէս զօրք այլազգեացն դիմէին առհասարակ 'ի վերայ Փռանկ զօրացն. և յամենայն կողմանց հայ- րին անճարեալ զօրքն քրիստոնէից, և ահա- բեկեալ մահու ցանկանային, և մինչեւ 'ի վերջին շունչն հասեալ ժամանէին: Եւ մինչ դեռ յայս տարակուսանս կային, խորհուրդ իմն բարւոյ խորհեցաւ Թագաւորն, և ասէր ցիշխանն զօրաց իւրոց. "Եկայք դարձցուք դիմօք 'ի Թերեպն, կարծիս տացուք Թուրքաց զօրացն եթէ 'ի փախուստ դարձաք, զի որք 'ի դարանի կան՝ յարուցեալ լիցին զհետ մեր, և մեք յայնժամ դարձցուք 'ի վերայ նոցա 'ի պատերազմ, և տեսցուք եթէ զինչ արասցէ ընդ մեզ Քրիստոս: Եւ նոցա պատուէր տայր որոց էին 'ի բերդն Նգաղ՝ և ասէր թէ "Յոր- ժամ միաբանին զհետ մեր, դուք մեզ նշան մխոյ արարէք 'ի վերայ բերդիդ ». և Թագա- ւորն խլեցաւ ամենայն զօրօքն 'ի Թերեպն: Եւ գիտացեալ Բուրսուխ ասպասալարն ե- թէ փախստական գնայ, ձայն տուեալ ամե- նայն զօրացն միաբան, և զհետ ընթացեալք գային որպէս գայլի զհետ ոչխարաց. և դի-

մեքին 'ի վերայ մեծաւ աղաղակաւ, և անհագին հանդիսիւ և գոչմամբ ձայնիւ զհետ Փռանկաց զօրացն վարէին։ Իսկ իբրեւ գնացին մղոնս երկուս, միաբանեցան զօրքն այլազգեաց զհետ զօրացն քրիստոնէից. և յայնժամ արարին յԱզազն զնշան մխոյն, և տեսեալ Թագաւորն Երուսաղէմայ և ամենայն զօրագլուխքն, ձայն օգնականութեան առ Աստուած աղաղակեցին՝ լալով և ողբալով ըղկոկիծ հարեալ 'ի վեր յերկինս առ Աստուած աղաչանս առաքէին, զի հասցէ յօգնութիւն առ սակաւ հօտին իւրոյ։ Յայնժամ հրամայեաց Թագաւորն հնչեցուցանել զփող պատերազմին, և միաբան զօրքն քրիստոնէից դիմեցին 'ի վերայ այլազգեացն, և զԱստուած օգնական կալեալ քաջաջան եղեալ(273)։ Իսկ լուաւ տէր աղօթից, նոցա և մեծաւ սրտմըտութեամբ դարձուցին զԹուրքն 'ի փախուստ. և յայնժամ սուր 'ի գործ արկեալ զօրք հաւատացելոց, և ընդ ամենայն երեսս դաշտաց ցիր և ցան հանին զնոսա. և կոմսն Ռօպլինն մեծաւ զայրացմամբ գաղտնաբար իբրեւ զառիւծ որ մռնչէ զհետ եղանց, այսպէս և սա վարէր զհետ զօրաց այլազգեացն, և յաղթեաց արեամբ անհաւատիցն։ Նոյնպէս և Թագաւորն և ամենայն զօրքն Քրիս-

տուն վաթսուն զհետ զօրացն . . . . . . . և կոտորեցին անխնայ մինչև 'ի Հալպայ քաղաքն, և եղև համար կոտորածոյն հինգ հազար ։ Եւ գնաց սպասալարն Պարսից և Տուղ–Տիկինն լի ամօթով, վասն զի հնգետասան ամիրայք 'ի պատերազմին կոտորեալ եղեն . և դարձան զօրքն քրիստոնէից մեծաուրախութեամբ և անհամար աւարաւ . և եղև օրն այն օր ուրախութեան ամենայն հաւատացելոցն Քրիստոսի. և այս եղև յամսեանն տրէի քսան և չորս, և յաւուր հինգշաբաթի ։ Եւ զկնի աւուրց ինչ առեալ Բուրսուխն զդուստր թագաւորին և զորդին Ջօսլնին, և տարաւ եդ (274) 'ի Խլաթ–Ջապար և ինքն գնաց 'ի Մօսլ. և յետ տարւոյ միոյ յազգէն իւրմէ որք ասին հաճիւաղօթաւոր կերպիւ լեալ մտանէին 'ի նորա տունն, և դանակով սպանանէին զնա . յայնժամ պաշտօնեայքն նորա սատակեցին զնոսա, և այլ եւս 'ի քաղաքէն զորս գտին այնպիսի կերպիւ արս ութսուն սատակեցին ։

ՄԽԲ. Յայսմ ամի զօրաժողով արար զօրագլուխն Պարսից անթիւ բազմութիւնս, ամիրայն արեւելից, որ էր Եբրէիմ որդի Սուլիմանայ. և ամիրայն Հանձթայ՝ որ էր Տաւութ որդի Սուգմանայ՝ որդւոյ Արդուխին,

և այլ բազում ամիրայք խաղացին բազում զօրօք և գնացին յաշխարհն Վրաց։ Եւ հասեալ ՚ի վերայ Նոցա Վրաց արքային, և սաստիկ կոտորածով դարձուցանէր զնոսա ՚ի փախուստ, և կոտորեաց զնոսա առաւել քան զառաջինն. և զաւուրս հինգ զհետ վարեալ և արեամբ ելից զդաշտս, և ՚ի դիականց անկելոց հոտեցաւ ամենայն երկիր։

**ՄԽԹ.** Յայսմ ամի մեռանէր սուրբ և բարեպաշտ Թագաւորն Վրաց աշխարհին Դաւիթ, և նստուցանէին յաթոռ նորա զորդի իւր զԴեմետրէ, զայր քաջ և աստուածասէր, նմանեալ հօրն իւրոյ Դաւթի ամենայն գործովք բարեաց։ Սա դարձոյց զորդին Մանուչէի ՚ի քաղաքն Անի, և բազում երդմամբ արարեալ զնոսա իւր ծառայս և հնազանդ զամենայն աւուրս կենաց իւրեանց, և տայր զԱնի ՚ի նոսա, զի բազում նեղութիւն կրեաց Անի ՚ի զօրացն Պարսից յորժամ մեռաւ Դաւիթ։ Եւ այլ հոգս պատերազմաց և գաւառաց անկաւ ՚ի վերայ Դեմետրէի Վրաց արքային, որ էր ՚ի Հայ կնոջէն։ Իսկ որդիքն Մանուչէի արարին սաստիկ երդումն, վասն զի սուրբ կաթուղիկէն որ էր յԱնի, հանապազ Հայոց կացցէ, և մի մնացէ ՚ի նա Տաճիկ և ոչ Մուսուլման ազգ։

ՄԾ. Դարձեալ ՚ի թուականութեան Հայոց ՇՀԵ (1126—1127), գայր ՚ի Ֆռանկաց որդին Պեմընդին՝ որդւոյ Բօշէրթայ, որ զանուն հօրն ունէր Պեմունդ. յայսմ ամի գայր զօրօք ՚ի քաղաքն Անտիոք, և առնու իւր կին զդուստր թագաւորին Երուսաղէմայ, և խոստանայր թագաւորն զթագաւորական աթոռն տալ նմա զկնի մահուան իւրոյ. տայր թագաւորն և զԱնտիոք ՚ի Պեմունդն և զամենայն աշխարհն Կիլիկեցւոց։ Եւ յայնժամ Պեմունդն որդի Պեմնդին բռնութեամբ և ուժգին զօրութեամբ արար իւր հաւան և հնազանդ զամենայն ազգն Ֆռանկաց, զկոմսն Ուռհայոյ զՃօսլին արար հաւան և հնազանդ, նոյնպէս և զորդի Ջընձլին։ Եւ ինքն էր մանուկ մարմնով ամաց քսանից առանց մօրուս, այր քաջ, հզօր և պատերազմող, բարձրահայեաց և առիւծադէմ, և սոսկ խարտեշ. և բազում հօր որդիք և մեծազգիք եկին ընդ հետ նորա ՚ի Հռոմայ։

ՄԾԱ. Իսկ ՚ի թուականութեանն Հայոց ՇՀԶ (1127—1128), մեռանէր սուրբ վարդապետն Հայոց Կիրոս, նմանեալ առաջին սրբոցն, ուսեալ զամենայն կտակագիրս Աստուծոյ, և ամենայն խորին քննութեան հասու եղեալ, լիապէս հասեալ ՚ի վերայ հին և նոր

կտակարանացն Աստուծոյ, ընկերակից Գէորգայ վարդապետին որ ասի Մեղրիկ։ Մեռաւ սա և թաղեցաւ ՚ի վանքն որ կոչի Դրազարկ, և կոչեցաւ վանքն այն գերեզմանատուն սուրբ վարդապետացն. վասն զի անդ թաղեցաւ սուրբ վարդապետն Հայոց որ ասի Մեղրիկ, որ ժողովեաց անդ զամենայն դասս ճգնաւորացն Քրիստոսի, և հաստատեաց անդ կարգ և կրօնք զառաջին սրբոց Հարցն։

ՄՃԲ. Դարձեալ ՚ի թուականութեանն Հայոց յամի ՇՀԷ (1128–1129), գայր ամիրայն ասպասալարն Պարսից, որ ասի Զանգի որդի Աղ–Սնգուրին, այն որ յառաջ ունէր ըզՀալապ քաղաք։ Սա գայ իջանէ զօրօք ՚ի սահմանս Ուռհայոյ. և հաստատեաց սէր ընդ կոմսն Փռանկաց ընդ Ճօսլինն, և անվընաս գնաց ՚ի Հալապ քաղաք, և խնդրէր սէր և խաղաղութիւն առնել ընդ մեծ կոմսն Փըռանկաց ընդ Պեմունդն տէրն Անտիոքայ, և միջնորդս կացուցանել զՃօսլինն. և կացեալ զաւուրս ինչ, գնաց ամենայն զօրօքն ՚ի Դմիշկ, զի մեռեալ էր ամիրայն Դմշկայ որ ասի Տուղ–Տիկին և ունէր զքաղաքն որդին նորա։

Յայսմ ամի մեռաւ Պարսից սուլտանն որ կոչէր Մահմուտ որդի Տափարին, և նրա-

տաւ յաղթու նորա եղբայրն նորա որ կոչէր Մելէք, այն որ յառաջ նստեալ էր 'ի Գանձակ, զոր կոտորեաց Դաւիթ Վրաց թագաւորն, և արար զնա փախստական 'ի Պարսիկս ։

ՄԾԳ ․ Յայսմ շրջագայութեան տոմարիս Հայոց ՇՁԵ (1136–1137), եկն Սահմուտ սուլտանն, որդի Ամր—Խազէի՝ որդւոյ Դանիշմանին ։ Սա եկեալ բազում զօրօք յաշխարհն Մարաշայ, և եկեալ իջաւ 'ի վերայ Քեսուն քաղաքին, և այրեաց զշէնս գեղիցն և վանօրէիցն 'ի ժամանակի կթոց այգեստանեացն ․ և նստեալ զաւուրս վեց 'ի վերայ քաղաքին, ոչ պատնէշ կանգնեալ և մեքենայս, և ոչ նետաձիգ եղեալ, այլ լռելով նստեալ, հատանելով զջուր գետոյն և կոտորելով զբուրաստանսն, այսր և անդր ապականելով, և զառ զկապուտ յինքեանս կուտելով ։ Իսկ որ 'ի ներքս քաղաքին էին, որ յաւուր ակն ունէին խռովութեանց և արեան հեղման և առման քաղաքին, և այնպէս սրտաթափ եղեալ, մինչև 'ի միում գիշերի թողուլ զարտաքին պարիսպն ։ Նա քաջալերեալ զմարդիկ քաղաքին առաջնորդք և քահանայք իւրեանց, յորդորելով պաղատանօք առ Տէր կարդային եւ զմեռանելն խնդրէին՝ քան թէ մատնիլ 'ի ձեռս անօրինացն, և ծաղր

և ծանակ լինել հեթանոսաց, անձամբ և ընտանեօք խաչիւք վառելովք, բազկատարած աղօթիւք զպաշտօնն բարձրացուցանէին ըղցայգն 'ի ցորեկ հաստուցանելով։ Իսկ որ ամենայնի բարեգութն և ողորմածն Աստուած ոչ կամեցաւ վասն մեղաց մերոց մատնել 'ի ձեռս թշնամեաց, այլ գթացեալ 'ի գինս արեան որդւոյ իւրոյ սիրելւոյ՝ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ոչ ետ հրաման պատերազմաւ պատել զքաղաքն՝ զօրացն։ Այլ արդ՝ 'ի յաւուր ուրբաթոյ, որ է օր չարչարանաց Փրկչին մերոյ, եղեւ ազատութիւն քաղաքին Բեռնու։ Ուր այրեաց զկարմիր վանքն՝ զտունն աղօթից, զխրճիթս միանձանց, զնշանս մանրեալ տէրունական վայրից և քարանց, գերի վարեալ, և զերկաթեղէնս և զպղնձեղէնս յերկիր կործանեալ, զանօթս սրբութեան հացի փշրեալ, և զդուռն դեղեցկահիւս յօրինուածոյ և զայլն ընդ ինքն բարձեալ տանելով յաշխարհն իւրեանց 'ի տես հարճից և ռամկաց, իբրեւ զՄաքեղացին զայն։ Որ սա կատարեցաւ թէ "Եքեալ թողի զդուստր Սիօնի իբրեւ զտաղաւար յայգւոջ, և կամ իբրեւ զհովանի մրգապահաց ”. և որպէս տատրակ ագալից միայն մնացեալ 'ի զուգակցէ, կամ որպէս զագռաւ

զազրատեսակ նստեալ 'ի վերայ կատողոյ ։ Եւ Մահմուտն գնաց փութանակի յաւուր ուրբաթու՝ որպէս ասացաք, քանզի համբաւ եհաս 'ի լսելիս նորա յաղագս թագաւորին Հոռոմոց, թէ դիմեալ գայ յօգնութիւն պաշարեալ քաղաքին Քեսնոյ, և մերոյ իշխանին Պաղտին կոչեցելոյ, մաղթելով առ ոտս նորա ։ Ի յաւուրսն յայնոսիկ մերձ էր թագաւորն Յունաց յԱնտիոք աւերելով ըզՏաճկաստան, և բարձեալ էր զիշխանութիւն մերոյ իշխանին Լեւոն կոչեցելոյ, և զքաղաքս և զբերդս ամուրս յինքն գրաւեալ. և զնա առեալ տանէր յաշխարհն Յունաց յայնկոյս ծովուն 'ի սահմանս Ասիացւոց աշխարհին ։



## ՇԱՐԱՅԱՐՈՒԹԻՒՆ

# Ի ԳՐԻԳՈՐ ԵՐԻՑՈՒԷ

---

Մտթ. Պռանզի 'ի բարձրանալ թուականութեանն Հայոց յամս ՇՁԶ (1137–1138), նոյն թագաւորն Հոռոմոց որդի Ալէքսին, որում անուն էր Պեռպեռօժէն, եկն մեծ խռովութեամբ 'ի մեծ քաղաքն Անաւարզա. Եւ էր յաւուրսն ամառնայինն յամիսն յուլիսի, և խսարեաց զքաղաքն աւուրս երեսուն և եօթն, և նեղեաց բաբնովն. և նոքա տաղտանգին ետուն զքաղաքն ցթագաւորն Պեռպեռօժէնն, և նա էառ զամենեսեան և զԼեւոն իշխանն Հայոց և զորդիքն և ընկերսն, էառ և զսուրբ պատկերն Աստուածածնին և տարաւ 'ի Կոստանդինու պօլիս. Եւ անդ մեռաւ մեծ իշխանն Հայոց Լեւոն որդի Կոստանդնայ որդւոյ Ռուբենայ. Եւ ինքն թագաւորն Պեռպեռօժէնն եկն 'ի

բերդն Պղահն, և էառ բռնութեամբ։ Եւ տարան զնա խաբելով ազգն Փռանկաց 'ի քաղաքն որ կոչի Շեզար, և անդ եկն Անտիոք։ Եւ գնաց Մէլէք Մահմատ այս 'ի բերդն Շուպլաս, բազում մարտիւք մարտուցեալ, և նեղս անթիւս հեղեալ՝ ոչինչ կարաց առնել բերդին, և այնպէս գնալով ընդ կատարս լերանցն որ Կուլլա կոչին, գնաց յաշխարհն իւր, և մեք գոհացաք ըզՏէառնէ որ փրկեաց զմեզ 'ի հրոյ պաշարմանէ, և ազատեաց 'ի ճշնամեացն։ Եւ 'ի յանցանել ձմեռանն, յորժամ մեր թագաւորն 'ի վերայ բերդին Պղահայ գնաց՝ Տաճկաց բերդին, զկնի սուրբ Զատկին, տէրն քաղաքին Քեսնոյ Պաղտինն զօրօք և հեծելովք իւրովք և բնակիչք քաղաքիս եւս գնացին, և թափուր մնաց քաղաքս 'ի յարանց. երկեան և ելին 'ի քաղաքէս տունովդօք, և գնացին ոմանք 'ի Պեհեսնի և ոմանք 'ի Սևապան, ոմանք 'ի Հռոմկլայն, և մնաց Քեսուն անմարդ, սակաւ իշխանք մնացին՝ տեղեպահն հետևակօք, եւ տուն քաղաքիս որոյ Վահրամ կոչիւր անուն։ Եւ ես նըւաստ Գրիգոր երէցս սրտապնդեալ զնոսա ժիրանալ 'ի պահպանութիւն քաղաքիս, զի մի գուցէ եկեալ այլեացն զքաղաք մեր,

որ և եղեւ խոկ ։ Զի 'ի դառնալ Թագաւորին Յունաց, որդի Տաւութին, որոյ անուն Խար—Ճոլան (275) կոչի, դարձեալ 'ի Տաճկաստանէ բազում զօրօք և եկեալ 'ի Թագաւորէն իբրև զփախստական, եկն 'ի քաղաքն Սապատն ։ Իսկ արքն որք էին 'ի քաղաքն Բեսուն, զարհուրեալք կարծէին եԹէ Մելէք Մահմատն իցէ, Թողին զքաղաքն և ելան երեկոյէն ։ Իսկ վաղիւն եկեալ սակաւ Թուրքաց անցանէին ընդ լեառնակողմն և ըմբռնեցին զայր մի, և տեղեկացան 'ի նմանէ եԹէ ոչ ոք կայ 'ի քաղաքին. ապա եկեալ արանց իբրև երեսնից՝ մտին և այրեցին զքաղաքն Բեսուն և զդրունս քաղաքին ։ Եւ զբարձրայարկ ապարանսն զոր շինեալ էր մեծ իշխանն Հայոց Գող Վասիլն և զայլ շէնսն բարձրագոյն տեղին, և ինքեանք գնացին փախստական՝ հասին այլոց ընկերացն իւրեանց ։ Իսկ մարդիկ քաղաքին դարձան 'ի միւս օրն իւրաքանչիւր 'ի տունս իւրեանց ։

Եւ էր 'ի Թուին ՇՁԹ (1140—1141), այն զօրականաց յազգէ Միրիմահէ (276) խէԹ կալեալ 'ի սրտի իւրում, որոյ անուն էր Միմոն, դողացաւ զՄնԹափ 'ի կողմէն Ուռհայոյ. և կալեալ ընդ ձեռամբ ամ մի, և ապա

միջնորդութեամբ բըռնծին Անտիոքայ դար-ձոյց զԱնթափ ՚ի կոմսն։

ՄՂԵ. Եւ ՚ի թուին ՇՂԱ (1142–1143) երեկ թագաւորն Յունաց Պեռպեռօժէնն և ջանաց որ գնով առնոյր զԱնտիոք ՚ի բըռն-ծէն Անտիոքու, և այս էառ ՚ի նմանէ գանձ և դիպակ, և լուր մտաւ ՚ի քաղաքն.

ՄՂԶ. Ի թուականութեան Հայոց ՇՂԲ (1143–1144) փոխեցաւ ՚ի կենցաղոյս թագաւորն Յունաց Պեռպեռօժէնն որդի Աղէքսին ՚ի զատկին ՚ի մուտն ապրիլի ամսոյ, և զորդին իւր հաստատեաց յաթոռ իւրոյ թագաւորութեան զկիւռ Մանուիլն (Մանուէլ)։ Եւ թագաւորն Երուսաղեմայ փոխեցաւ. և մեծ զարմանք են մահս այս երկուց թագաւորացն՝ Փռանկաց և Յունաց. զի Յունացն մեռանէր յորսն և խոզն վայրի լեալ պատճառ մահու նորա. և Փռանկ թագաւորին ՚ի նմին ամի յորսի հանդիպեալ. և նապաստակն եղեւ նմա առիթ մահուանն. և նստոյց զորդին իւր յաթոռ իւր ՚ի սուրբ քաղաքն Երուսաղէմ, որ ասէր Պաղտին։ Ի նմին ամի Սահմատ Մէլէքն որդի Ամր–խաղէ մեռանէր։ Եւ յայսմ ամի նշանս երեւեցաւ յերկինս ՚ի կողմն հիւսիսոյ, և իբրեւ զսիւն լուսոյ յաւազ հինգշաբաթի աւուրն. և

ութ օր միապէս երեւեալ, և զկնի այսր երեք թագաւորք փոխեցան։ Նա 'ի տարեկալատըն 'ի դեկտեմբերի ամսոյ քսան և երեք օրն, և օրն էր շաբաթ 'ի տօնի սրբոյն Ստեփաննոսի Նախավկային, առաւ Ուռհայ 'ի Զանգեայ որ էր որդի Աղ-Սնգուրին, և կոտորեցին անխնայ վասն հաւատոցն որ 'ի Քրիստոս, զոր պսակեսցէ զնոսա ընդ սուրբսն իւր, ամէն։

ՄԾԷ. Իսկ 'ի վերանալ թուականութեանն Հայոց ՇՂԳ (1144–1145). 'ի տէրութեանն Անտիոքու որդւոյ Պետեւնին, որ էր 'ի տիս մանկութեան՝ սկայազօր և ուժեղ, այլ ոչ խելանի յիմաստասիրութեան (277) իշխանութեան Պաղտնին, որ էր տէր Քեսնոյ և Մարաշայ և գաւառաց նոցա, 'ի սինոտին Մելտենոյ մինչեւ 'ի դուռն Անտիոքու, որ էր տղայ տիօք և ծեր մտօք, աստուածահաճոյ յամենայն 'ի գործս արդարութեան. 'ի կոմսութեան Ճօսլնին՝ փոքու որդւոյ մեծի քաջ զօրականին Ճօսլնին. 'ի հայրապետութեանն Հայոց տէր Գրիգորիսի տեառն Թորգոմայ. յաւուրս սորա և յառաջասացեալ թագաւորութեանս, 'ի տօնի սրբոյն Նախավկային Ստեփաննոսի, անտես եղեալ քաղաքն Ուռհայ 'ի քաղցր կամաց Սրարչին, որ և

տուաւ բռնութեամբ յորդւոց Հագարու, ո-րոյ անուն գլխաւորին Զանգի յորջորջէր, զոր բազում և անթիւ արիւն ետ հեղուլ, ոչ խնայելով 'ի պատուական ծերոյն, և ոչ ողոր-մելով դառնամանն տղայոցն, որ և յահէ սը-րոյն զարհուրեալ քաղաքացեացն փախըս-տեամբ դիմեալ յապաւէն իւրեանց զոր Սը-լայ Ս՝անիակայ ասէին. Ոչ եղբայր զեղբայր հոգայր, և ոչ հայր զորդին, ոչ մայր 'ի դուստր գթայր, և ոչ մերձաւոր բարեկամ 'ի սիրելիս իւր նայելով, յաղագս դառն և ծանր լուսոյն այնորիկ ոչ ժամանեալ փախուցելոցն մտանել յամուրն իւրեանց, խեղդամահ եղեալ 'ի դուռն ամրոցին և մեռան ոգիք իբրեւ եր-կու հազարք, որ և Պապիոսն Ֆռանկաց հեղ-ձաւ յամբոխամիջի անդ։ Զայսուսիկ տեսեալ բռնաւորին՝ զղջացաւ 'ի միտս իւր, և հրա-մայեաց վերացուցանել զսուրն որ անխնայ և անողորմ կոտորէին զմարդիկն 'ի փողոցա-միջի անդ իբրեւ զանասունս։ Եւ զազգն Ֆռանկաց զոր ըմբռնեցին, հրամայեաց ա-ռաջի իւր սրախողխող առնել, և կին և զոր-դիս 'ի գերութիւն վարել. և որք փախու-ցեալ քրիստոնեայքն էին, որք ժամանեցին մտանել յամրոցն, ոչ բաւեցին աւուրս բա-զումս, քանզի ջուր ոչ ունէին. առին և

զայս եւս սիրով և երդմամբ (278)։ Եւ ամբարտաւանն այն կամեցաւ խաղաղեցուցանել զքաղաքն, և հրամայեաց քարոզել մի ամենեւին այլ դժուար առնել քրիստոնէից, քանզի յագեցան ամենեքեան արեամբ և գանձիւ։ Դարձեալ խոստացաւ 'ի միւս եւր՝ որպէս և կատարեաց զյաղթութիւնն մեծ, զոր 'ի բազում ժամանակաց ոչ ոք 'ի մեծամեծաց և 'ի վեհագունից կարող եղեւ տիրել բռնութեամբ քաղաքին օրհնելոյ 'ի Տեառնէ, զոր անուա բերանովն հրամայեաց 'ի մարդեղութեանն իւրում՝ զոր գըրեաց 'ի Թղթին իւրում առ Աբգար թագաւորն, թէ « Սով և սուր ոչ մնացէ 'ի քաղաքս քո 'ի ժամանակի թագաւորութեան (279) քո և թէ կայցեն 'ի հրամին պատուիրանի իմոյ »։ Զոր և մոռացեալ նոցա յետ ժամանակաց ըզպատուէր Արարչին՝ նմանեալ Իսրայելացւոցըն, (որք) յետ բազում երախտեացն զոր ընդունէին յԱստուծոյ, դարձեալ փութանակի մոռանային զաստուածատուր և զանջան բարիսն, զոխն և զախտորն Եգիպտացւոց և զդառն ծառայութիւնն յոգւոց հանելով յիշէին, մինչեւ զանբարկանալին Աստուած 'ի ցասումն արտմութեան բորբոքէին՝ ոչ տալ տեսանել նոցա զերկիրն խոստացեալ։ Այն-

պէս և քաղաքացիքն զայս խոստումն Աստուծոյ մոռացեալ էին, և գործէին զանարժանս 'հակառակ կամաց ողորմածին Քրիստոսի, որ և զփոխարէնն առին ըստ անիմաստ մտաց իւրեանց։

Յետ այսորիկ արիւնահեղն Զանգի զօրաժողով արարեալ եկն 'ի Կղաթ-Ճապար. և 'ի նեղ արկեալ զոր 'ի ներքս էին և 'ի կորձէն իւրմէ սպանեալ եղեւ 'ի գիշերի յետ ամի միոյ, և ոչ եղեւ արժանի մեծ անուան վայելել. և անփոխան (280) քաղաքն Ուռհայ, որ եղև առումն նորա յաւուրս փոքր Ջօսլնին, որ մինչ տակաւին 'ի կամս Աստուծոյ էր, մեծ և յաղթող էր 'ի վերայ անհաւատից Քրիստոսի որպէս զհայրն իւր, որ յաւուրս իշխանութեան իւրում փառաւորեցաւ յԱստուծոյ և 'ի մարդկանէ և ոչ ետ հրաման հատանել յազգս քրիստոնէից։

ՄԾԸ. Դարձեալ յետ երկրորդ ամաց անցելոց Ջօսլինն, որ էր քաղաքին Ուռհայոյ կոմսն Ֆռանկաց, զօրաժողով արարեալ և առեալ ընդ իւր զմեծ իշխանն Պաղտին որ էր (տէր) երկուց աշխարհաց Գերմանիկեցւոց և Քեսունի, և եկեալ 'ի քաղաքն Ուռհայոյ հնարիւք 'ի գիշերի և գողացան զքաղաքն։ Զի թէպէտ և յաջողեցաւ գործն, այլ ոչ եւ

գլուխ 'ի բարին . քանզի ժողովեալ . . . . . . . . . յետ հինգ աւուր , և բռնութեամբ առին . և բազում քաջութիւն ցուցեալ մեծ և յաղթող զօրականն Քրիստոսի Պաղտոինն . անկաւ 'ի պատերազմին սուգ մեծ թողեալ իւրոյ աշխարհի , զի առաւել սիրէր զազգն Հայոց քան զՖռանկաց , զոր և սուրբ Հայրապետն Ներսէս որ էր երջանիկ և հայր խոստովանութեան Պաղտոնին , աստուածաշնորհ և բանական յոյժ , երկիւղած յԱստուծոյ և առաքինի 'ի պահս և յաղօթս , հմուտ հին և Նոր կտակարանաց Աստուծոյ , բարեխօս և օգնական ամենայն զրկելոց . զայս ողբերգական բանքս գրեաց վասն մահու նորա առ 'ի խրատ ամենայն ընթերցողաց և յիշատակ ազգաց յազգս :

Բարսեղ (281) , նուաստ ծառայ , գրեմ մեծականական ողբումք և բազմահառաչ արտասուօք համօրէն հաւատացելոց Քրիստոսի , մանաւանդ մերձակայից մերոց՝ Քեսնոյ , Պեհեսնոյ , Ռաբանոյ , Գերմանիկոյ , և որք ընդ սոքօք գեօղավանք և կրօնաստանք իցեն յիւրաքանչիւր ազգս և լեզուս , վասն անզգիւտ կորուսելոյ իշխանին և անտէր մեռանելոյն Պաղտոինն . զոր առաւել նշանակի և

ցոյց խորատու արար զնա ամենազօր արարիչն Աստուած՝ ամենայն տիեզերաց. մանաւանդ անզեղջ, սէգ (282) և անիրաւ իշխանաց զօրաց Հռովմայեցւոց, յայտ առնելով ամենեցուն՝ եթէ ակնարկելոյ կամաց Արարչին սպասեալ միայն տարերք և արարածք ամենայն, որ եթէ խեթիւ (283) հայեսցի՝ ոչ տանին զնա տիեզերք ամենայն։ Զի ծով աղաղակէ՝ թէ ոչ է աստ (Պաղտոինն), և երկիր գոչէ՝ թէ ոչ ծածկեցաւ հողով 'ի ծոց իմ. օդ և ջուր վկայեն հրայինն մասամքըն՝ եթէ ոչ մեք համարձակեցաք բառնալ, կամ յայտնել ումեք զառ 'ի խորատ պատուհասեօք թագուցեալն Աստուծոյ մահ. Այս գերեզմանք բողոքեն՝ թէ մեք ոչ ընդունեցաք եւ ոչ տեսաք ինչեալ 'ի կարգս մեռելոց. եւ 'ի մէջ կենդանեաց ոչ ուրեք երեւի. ըստ որում սիրելին իմ իշխան, հէքն այն մանուկ, խիզախն 'ի մարտի, յաղթող և քաջախրոխտն 'ի պատերազմունս բարբարոսաց, մեծազօր ըմբիշն և անթաքչելի սպառազէն զօրականն քրիստոնէից, սիրեցեալ անուն իմ Պաղտոին։ Որ ձեռն կոփեաց ընդհատաայեղց ապնդութիւնն, կարճեաց զձեռն հզօրին (284)։ Այժմ ո՞ր բազուկ տկար խոնարհեցուց զանձնասելի բազուկս անուանի քա-

ջին . կամ որ առն 'ի զօրականաց Թլփատելոցն զօրութիւն զօրեաց խորամանկել [285], իջուցանել յերկիր զյաղթանդամն զայն, ըղբաւան ոսկերօք, զբարձր հասակն, զսկայազօրն մարմին: Սա որ կատաղեցելոյ գազանի սիրտ ոչ խանդաղատեցաւ գեղեցկութեամբ նորա, և ոչ ամաչեաց 'ի դիմաց նորա, ոչ գթացաւ 'ի գեղեցկութիւն նորա, և ոչ ողորմեցաւ մանկական տիոց վայելչութեան նորա, խնայելով 'ի հասակ տղայութեան նորա: Սա հի՞մ ոչ ձայնեաց առ նա, Ո՞վ ոք իցես դու, կամ ուստի, հարցանելով զբան, Թերևս մեղկեալ զիջանէր կատաղութիւն գազանութեանն ընդ համեստ, հանճարեղ և ընդ իմաստուն պատասխանիս նորա: Սայթաքելի լեզուաւ 'ի հայերէն լեզու բարբառէր, և առ [286] 'ի բազմաց ծանուցեալն յիմաստութիւն 'ի զօրութիւն և 'ի հասակ, 'ի տեսակ, 'ի քաջամարտիկ յաղթութիւն և յամենայն կիրս անցաւոր կենցաղոյս, ուստի ճանաչի մեծանձնութիւն գովութեան իշխանացն:

Աւելորդ վարկանիմ երկայնել զբանս, զի մի՛ ստգտանիցիմ 'ի պարսաւադէտ ատողաց նորա: Այլ աւա՜ղ ասեմ անբախտ կորստեան նորա և անաջողակ ճանապարհին,

զոր բազում անգամ զեկուցաք ոչ գնալ զանդառնալի զճանապարհն զայն , և ոչ անսաց բանից մերոց , զորոյ առեալ էր զփորձ ։ Զի ոչ յայլ ինչ պարապէաք խօսել ընդ նմա , բայց զօգտակարն անձին նորա և զփրկութիւն և զխնայումն տառապելոց քրիստոնէից , որում անլուր գտաւ յայամ ամենայնի (287) ։ Ուստի և մեք իսկ գուշակեցաք ըզկորուստ առաջի նորա բազում անգամ. թէպէտ և ցաւ էր մեզ , և դժուարին էր զայն ասել նմա , այլ ոչ ոք իշխէր . սակայն հնարէաք զայն թերեւս զարհուրեալ երկիցէ և փոխեսցի 'ի յանցաւոր բարուց 'ի խոնարհութիւն (288) ողորմութեան , և յանոխակալութիւն քաղցրութեան ։ Զի ոչ անգիտանայր զայն , թէ անողորմ դատաստան լինելոց է յարդար դատաւորէն Աստուծոյ ամենայն անողորմ սրտից և աստ և 'ի հանդերձելումըն . և ամբարտաւանից հակառակ ոչ մարդոք է 'ի մարդկանէ , կամ հրեշտակ յերկնաւորաց , այլ Աստուած ինքնին գլխովին որ տէրն է հրեշտակաց և մարդկան ։ Զի յանցանք մնեզինացն բնութեամբ ընդ մեղաւորըս դատեն զմարդիկ , և ընդ սոքօք ածեն 'ի դատաստան , ուր և բազում անգամ ընդունին ողորմութիւն 'ի Տեառնէ , որ ոչ-

րող է մեղաւորաց , եւ վասն մեղաւորաց խոնարհեցոյց զերկինս և եկն 'ի խնդիր կորուսեալ պատկերին , մոլորեալ ոչխարին , դարձուցանել զմեղաւորն յապաշխարութիւն ։ Իսկ հպարտութեամբ , ամբարտաւանութեամբ եւ ապառումն կարծրութեամբ խստութեան սրտի և անողորմութեամբ՝ զրկանօք հանդերձ տանին յանցանքըն ('ի դժոխս), և զորս ըմբռնեն (289) 'ի հոգեղինացս աստի, դեւս 'ի մարդկանէ գործեն, և դատաստան ընդ սատանայի և դիւաց նորա ընդունելոց են 'ի սոսկալի աւուր անաչառ եւ արդար դատաստանին Աստուծոյ ։ Այլ և ոչ աստէն (290) այնպիսի խստացելոց արդարադատն Աստուած , մանաւանդ եւ զարժանաւորսն բժշկէ՝ որք ըստ մասին և 'ի պատճառէ և փոքր ժամանակաւ եւ ապաշաւանօք ունիցին զսատանայական զայս չարիս յանձին , որք առաղտկան աստէն եւ խոստովանութեամբ խայտառակեն և հնարեն զերծանել 'ի դիւական մեղաց աստի 'ի դէպ ժամանակի ։ Բայց զի ոչ փութան եւ ոչ շտապին 'ի բաց ընկենուլ, այլ օր ըստ օրէ 'ի նոյն յաւելուն աճեցուցանել զմեղսն և ժամէ 'ի ժամ և տարւոյ 'ի տարի անցուցանեն ապաշաւանօք (291) , խաբել կարծե-

լով զանխառնելին Աստուած, որոց ներէ Ա-
րարիչն։ Այլ նախ խրատէ պատուհասով
միանգամ և երկիցս, և իցէ որոց բազում
անգամ, և ապա յաւելուն ՚ի խստութիւն
սրտից իւրեանց ընդդէմ խրատուն, կորու-
սանէ իսպառ և բառնայ ՚ի կենաց աստի՝ զի
մի աճեցեալ բազմասցի չարն ՚ի կորուստ նո-
ցին։ Եւ վասն սոցին իւրաց վկայութիւնք լի
են յամենայն աստուածային գիրս, ՚ի հին և
՚ի նոր կտակարանս, որք կամիցին ուսանել։
Յայտնի է զղջացելոցն և իսպառ կորուսելո-
ցըն օրինակ, զորս տարադէպ և աւելորդ
համարեցաք արկանել ընդ գրով. քանզի
զիմոյ զանխտրաս հոգւոյն զանտէր մեռելոյն
եւ զանգնելի գերւոյն, զանդիւտ կորու-
սելոյն, զվայելուչ մանկանն, զյաղթող և
զօրաւոր քաջին, զհանճարեղ զիմաստուն և
զխելօք իշխանին զկարճօրեայ կենացն, զնա-
զելի և զգեղեցիկ և զմարմնաւոր անուան,
զՍերրի (292) Պաղանիս ախորժեմ պատմել ըզ-
կորուսան, և հրապարակագոյժ առնել խոս-
տովանութեամբ զյանցումն, ոչ զի խայտա-
ռակեսցի, այլ զի կատարելապէս թողու-
թիւն ընկալցի յԱստուծոյ, գիտելով զայս՝
զի ով ոք ծածկեալ թագուցանեն աստ ըզ-
յանցանս իւրեանց, և զգաղտնիս ամօթոյ

վասն ամաչելոյ, յիշատակ են այնպիսիք առաջի Հրեշտակաց և մարդկան, արդարոց և մեղաւորաց, որք յԱդամայ մինչև ցայսօր յարուցեալ կան սարսափելի ահիւ և զարհուրելի դիմօք, կորուս գլխօք, դողալով առաջի ահաւոր և սոսկալի բեմին և հրապարակաժողով ատենին, առաջի Հօրն բոլորեցուն և միածնի Նորա Բանին, և Հոգւոյն սրբոյ Նորոգողին զարարածս. ուր ոչ բան և ոչ գործ, և ոչ մի մտածութիւն գործոց թագուցեալ ծածկեսցի յամենատես գիտութենէ Արարչին մերոյ, այն է երկելի և արտասուաց արժանի և յաւիտեանս անբըժշկելի։ Քանզի և զրաւ լինել սոսկալի եւ ահաւոր դատաստանին, այնու ամօթով ըմբռնեալ մեղաւորաց ոգիք, կան և մնան յամաչանս խայտառակութեան մինչև յանեզր և յանսպառ եւ յանբաւ յաւիտեանս ըստ բանի Հրեշտակապետին մեծի յորժամ խօսէր ընդ Դանիէլ մարգարէին, յայտնի արար յասել իւրում այսպէս. «Յարիցեն ոմանք ՚ի կեանս և ոմանք յամօթն յաւիտենից»։

Իսկ որք կան առ խայտառակեալ հրապարակեալ խոստովանութեամբ առանց ամօթոյ և կեղծաւորութեամբ թագուցանե-

լոյ և պատճառանօք զամօթ բժշկելոյ, որ է ճշմարիտ և կատարեալ խոստովանութիւն և հաւատար սրբոյ աւազանին շնորհէ մեզ թողութիւն մեղաց, եթէ արժանաւորապէս ապաշխարիցեմք, անդ ամենեւին յայտնեալ կորնչին 'ի մէնջ, ջնջին, մաքրին և ոչ ևս ուրեք գտանին ամենայն յանցանքն. քանզի անտես առնէ, ներէ և թողու զամենայն անոխակալ և ողորմածն Աստուած, որք իմաստութեամբ ըստ այնմ օրինակի կամաւորապէս խոստովանին զմեղս իւրեանց յայսմ աշխարհիս։

Արդ զայս ամենայն զմտաւ ածեալ իմ, գիտելով զտկարութիւն սիրեցեալ իշխանին՝ հրապարակեմ 'ի լուր հանուրց և արձանացուցանեմ այսու գրով զախտալանս նորա՝ անձին իմոյ վարկանելով զնորայսն։ Քանզի որք այսպէս սիրեսցեն զսիրելիս իւրեանց, զկնի մահուանն մոռանալով կամ թագուցանելով զյանցանս նոցա կամ զերախտիս սիրոյ, ընչաւորք են յանքանից եւ մարմնոյն միայն սիրելիք։ Արդ զի մեք ըստ հոգւոյ հոգեւորապէս յոգի նորա պահեալ ունէաք զխնամ սիրոյ, յորում եթէ փոքր մի անսացեալ էր նորա մեզ, կենդանի էր այժմ հոգւով և մարմնով, զի խոստացաւ պտտիս,

կորեաւ երկոքումբք անդստանելի. վասն որոյ ձայնեմ ողբալից ողբերգական ձայնիւ. Լուարուք ազգք և ազինք և լեզուք ամենայն, մանաւանդ Թագաւորք, իշխանք և ամենայն դատաւորք երկրի և որք 'ի մեծութեան ըմբռնեալ էք, և 'ի վերակացութեան, կամ 'ի ցնորս ինչ կենցաղոյս առաջնորդութեան. լուարուք և 'ի միտ առէք զաղաչանս յանցանաց սիրելւոյ և փառաւոր իշխանին, զոր մեք 'ի դիմաց նորա և բերանով իբր նա՝ այսպէս առաջի անկեալ արտասուօք. — Նախ Աստուծոյ գիտողին զմեղս իմ, և ապա ձեզ ամենեցուն, ով իշխանք և իշխանակից ընկերք իմ և եղբարք, զորք ամենայն հեծելովք և հետեւակայ, որոց և բազում պակասութիւն անիրաւութեան առ ձեզ արարի. և ռամիկ ժողովուրդք ամենայն որք հակառակացս ընդ հնազանդութեամբ անկեալ էիք կարկամեալ մեղօք անարժան ձեռաց իմոց, ուստի անթիւ անհաշիւ անվճար անողորմ զըկանաց ձերոց և անիծից (պաճռ) զկեանս իմ արարեալ կորուսի, կորուստ՝ որ բազում ողբոց և արտասուաց է արժանի: Ո ի ոչ երբէք զմտաւ ածի զաստուածային բանս զոր հանապազ բողոքէին հնչելով յանլուր և 'ի խցեալ մեղօք լսելիս

իմ, զայսոսիկ առ իս ասելով. «Ո՜վ տացես
ումեք 'ի կեանս քո անիծել զքեզ. զի որ ըս-
տեղծ զնա Աստուած՝ լուէ հեծութեան սըր-
տի նորա»: Եւ դարձեալ՝ զմիւս եւս պա-
տուիրանն զոր վասն նենգութեան եւ
վասն չցանկանալոյ իրաց և ընչից ընկերին,
գեօղից ագարակաց և սահմանաց, և վասն
ամենայն ցեղ զրկանաց, և վասն 'ի սրտէ
հնազանդութեան քան զմեզ վեհագոյն իշ-
խանաց՝ որպէս Աստուծոյ մտերմութեամբ և
ոչ որպէս մարդոյ. և վասն չանիրաւելոյ զոք,
զորբս և զայրիս և զճանապարհորդս չկողոպ-
տելոյ. վասն անիրաւութեան և 'ի զրկանաց
և յափշտակութենէ չմեծանալոյ, և 'ի շին-
ուածս մեծամեծս շինելոյ և կամ պարիսպս
քաղաքին կանգնելոյ յօտար արտասուաց
որբոց և այրեաց հարկատու շինական մարդ-
կան լալագին հառաչանաց: Եւ վասն չպար-
սաւելոյ զընկերսն բամբասանօք և նախա-
տելի բանիւք աղարտելոյ. և վասն չպար-
ծելոյ յանձին զօրութիւն 'ի մեծութիւն և
յիմաստութիւն. և վասն չդատելոյ զօտա-
րաց փոքրագոյն շիւղս անուանեալ յանցա-
նըս, և զանձին մեծագոյն գերանն անտես
առնելով. և վասն չարհամարհելոյ զօրէնս
Արարչին և զարս սուրբս և զառաջնորդս

եկեղեցւոյ, և ոչ դատաւոր դատաւորացն մեղ յԱստուծոյ նստեալ անզգամութեամբ, և ոչ վասն 'ի ցաւս ցանկութեան ըմբռնելոյ մտօք և 'ի հեշտախտութիւնս աղտեղանալ մեղաց շողոքորթութեամբ, և վասն զօր կատարածին խմոյ զմտաւ ածելոյ հանապազ, և հնարել զերանելի յաշխարհէ աստի. Եւ վասն զուխտեալն իմ Աստուծոյ բազում անգամ կատարելոյ. Զայսոցիկ ամենից սխալանաց զյանդիմանութեան բանս որ գրեալ կայ յաստուածային գիրս, այնքան յաճախապէս լուայ 'ի քարոզչաց ոմանց, մինչ զի զամենայն 'ի բերան առեալ՝ այլոց նստեալ վարդապետէի կրկին լեզուօք, զոր անհատակատր, անսայթաքելի և յարմարական միշտ բարբառէ. զոր և ասեմ իսկ 'ի կարգի զխորագիտութիւն մտաց իմոց 'ի հանդիսաւոր խոստովանութեանս իմ Աստուծոյ և ձեր առաջի, զի գիտասջիք և դուք՝ թէ յիրաւի բարկացաւ ինձ Աստուած աններելի: Զի գիտէի թէ որ անողորմ սպանանէ զոք, և 'ի վճարել պատերազմին և 'ի խաղաղանալ զօրացն, այլ եւս սպանութիւն ստիպէ ունել ծարաւութիւն (293) ոտից և ձեռաց. և որք նենգութեամբ գնան առ ընկերս և առ զօրաւորս, և նենգաւոր լեզուօք

խօսքին, կամ գործեն զանօրէնութիւնս, ասացաւ Մարգարէն՝ թէ «Որ հեղու զարիւն մարդոյ, փոխանակ հեղցի արիւն նորա». և «Արք արիւնահեղք և նենգաւորք մի հասարակեսցեն զաւուրս իւրեանց». և զարս արիւնահեղս եւ նենգաւորս ընդ պիղծս համարի, և կորուսանէ Տէր։ Գիտէի զի գրեալ է. «Մի ցանկանայցես իրաց ընկերին քո, և մի յանիրաւութենէ մեծանայցես. զի մի 'ի կէս աւուրց թողցես զնոսա»։ Նա զայն եւս գիտէի, եթէ ապարանքն մեծամեծք և գեղեցիկ շինուածքն և քաղաքքն յանիրաւութենէ և 'ի զրկանաց կորեան, և այլք 'ի հառաչանաց և յարտասուաց ընկլեան շինիլ, ոչ եւս են բնակելոց 'ի նոսա։ Գիտէի և զասացեալն 'ի Պաւղոսէ անհնազանդելոց իշխանաց իւրեանց կամ հակառակ եղելոց կամաց նոցա, զի ոչ մարդոյ՝ այլ Աստուծոյ հրամանին հակառակ կան, վասն որոյ և դատաստան ընդունելոց են 'ի Տեառնէ աններելի աստ և 'ի կատարածի։ Գիտէի, զի ոչ է պարտ պարսաւել դատել կամ բամբասել զոք, և ոչ պարծանս առ անձին մեծութեամբ կամ իմաստութեամբ զասացեալսն 'ի Տեառնէ. «Մի դատիք՝ զի մի դատիցիք». և եթէ «Կեղծաւոր, հան

նախ զգերանն յականէ քումմէ »․ և որ ըզ-հետ գայ այսոցիկ բանս։

Իսկ զի՞ մի մի ՚ի կարգ անկեալ թուիցեմ զամենայն յանցանաց յանդիմանութիւնս որ գրեալ կայ յաստուածային գիրս, զոր ես զամենայն գիտէի, և գիտութեամբ և օրինօք եմ մեղուցեալ Աստուծոյ․ վասն ո-րոյ անկանիմ առաջի Աստուծոյ և խոստո-վանիմ զամենայն զմեղս իմ, մանաւանդ զամ-բարտաւանութեանն զստութեանն և զան-ողորմութեանն զրկանօք հանդերձ։ Մանկու-թիւն, իշխանութիւն եւ պատրանք սնոտի կենցաղոյս խաբեցին զիս։ Ոչ անյուսու-թեամբ ունէի զողողանս, կամ ՚ի նոսին հաստատեալ անզղջանալի (294) զմիտս․ այլ ՚ի բաց լքանել թողուլ զամենայն պատրա-նըս խաբէութեան կենցաղոյս կամէի, սա-կայն ոչ փութացայ մինչև զվերջին կորստական զայս խրատ պատուհասի ընկալայ ՚ի Տեառ-նէ։ Որովհետեւ յառաջագոյն զխրատ քաղ-ցրութեանն ոչ համարեցայ բժշկութիւն, և արդ դատախազեմ ինձէն լինիցիմ դա-տապարտ անձին իմոյ․ և արդարացուցանեմ զԱրարիչն, զի թէ փոքրագունիւքն զոր ած ՚ի վերայ իմ հարուածս վիրաց մարմնոյ, եւ տարաժամ մահու բարձումն կենակից կնոջ

ծննդովք իւրովք, և որ սոցին նմանս յօտարաց մարմինս խաբանեալ էր իմ, փոխադրելով 'ի բարիս՝ ոչ հաստանէի յանձներելն չարիս. այլ զի գանեցայ և ոչ խրատեցայ, հարայ և ոչ բժշկեցայ. խստացուցանելով զապառումն կարծրութիւն անբարտաւանութեան սրտիս, անգիտանալով թէ քաղցրութիւն Աստուծոյ յապաշխարութիւն զիս կոչէ՝ ողորմութեամբ ներելով անզգամութեան իմոյ։ Ոչ յիշեցի, ոչ զմտաւ ածի՝ մինչև ըզքաղցրութիւն ողորմութեան Արարչին 'ի ցասումն բարկութեան անձին իմոյ դարձուցի։ Եւ արդ գիտեմ զայս թշուառականս, զի ոչ որպէս մեռեալ 'ի մահու յիշատակիցիմ, և ոչ որպէս կենդանի 'ի կեանս երևելով, որքան Տէրն կենաց եւ մահու բարկացեալ է ինձ. ուստի և հրեշտակք յերկինս դարձուցին զերեսս իւրեանց յինէն 'ի բառնալ յինէն օգնութեան եւ ողորմութեան Արարչին. և մարդիկ ամենեքեան իսպառ ատեցին զիս, հայր իմ և մայր իմ մահուամբ թողին զիս. և որդիք մարմնոյ կենակից ընկերք և զօրք ամենայն անողորմք եղեն 'ի վերայ իմ. մերձաւորք բարեկամք և սննդեան ծանօթք և որդիք մերժեցան և օտարացան 'ի սիրոյ իմոյ, և ոչ ամենե-

ւրն (293) յիշեն զիս. որպէս յայլազգւոյ դար-
ձեցան և հեռացան ամենեքեան յինէն, և
լքեալ թողին զիս անյիշատակ մեռեալ և
անգնելի գերի 'ի մէջ այլազգեաց։ Եւ մո-
ռացեալ եղէ ես որպէս մեռեալ 'ի սրտէ
ամենեցուն, և ընկղմեալ խորտակեցայ որ-
պէս խեցեղէն անօթ կորուսեալ։ Եւ արդ
ո՞ւր է յոյսն իմ, և կամ զի՞նչ վճար յանբե-
րելի տառապանոյ ասաի. և ո՞չ ոք իցէ որ
ողորմեսցի 'ի թշուառացեալ հոգիս՝ զի երե-
ւեցայց ընդ կենդանիս և կամ՝ մեռեալս
յիշատակեցայց 'ի մարդկանէ։ Եւ ոչ ոք ե-
ղեւ. ամենեքեան ատեցին զիս իսպառ. քանզի
զի ահա խոստովան եղէ հանուրց եղբարց
և տիեզերաց հրապարակաւ հանդիսիւ
և անպատկառելի համարձակութեամբ ըղ-
ձերս անձին իմոյ՝ և ոչ բժշկեցայ, ոչ ազա-
տեցայ. վասն որոյ դարձուցանեմ զբանս ա-
ղերսալից խոստովանութեան իմոյ առ տէրն
իմ արարիչ և առ անոխակալ հայրն ամենե-
ցուն և Աստուած, և ըստ նմանութեան ա-
նառակ և արբշիռ մանկան անկեալ առաջի
ողորմած մարդասիրին գոչեմ ասելով. Հայր
երկնաւոր, մեղայ յերկինս և առաջի քո,
մնտանեւոյ, կօշկաց և անճառ պատմուճանի,
այլ ամենայն հողեղինաց մի զատեր որո-

չէր զիս, մի՛ կորուսանէր. եթէ կենդանի իցեմ յայտնեա և հան զիս 'ի կորստենէ, զի խորք անդնդոց յայտնի են առաջի քո, և 'ի մեռելոց կարող ես յարուցանել Տէր, զի երթեալ ապաշխարեցից մինչեւ 'ի լրումն կենաց մեղաշնչոյս (296)։ Օ՜ի այժմ ծանեայ ճըշմարտապէս և գիտացի զանհանդուրժական ցաւումն բարկութեան արարչիդ. և զի ահ մեծ է անկանել 'ի ձեռս Աստուծոյ կենդանւոյ։ Իսկ եթէ մեռեալ իցեմ մեղօք և վըճարեցայ 'ի կենաց մարմնոյ, շատ լիցի. ով անախական Աստուած, այսքան ժամանակս աւուրց մեղուցեալ հոգւոյ իմոյ մնալ 'ի տագնապի և 'ի տանջանս անյիշատակ և աննուէր. յայտնեսցես զիս ողորմութեամբ. Թերեւս լիցի յիշատակ կամ ողորմութիւն ողորմելի հոգւոյս. և մի նորոգինակ տանջանօք տանջէր զիս 'ի մէջ մեռելոց և կենդանեաց, զի տէր ես մահու և կենաց. և ակնարկելոյ հրամանին քո սպասեալ մընայ մահ և կեանք յայտնել կամ թագուցանել զիս։ Գիտեմ, Տէր, զի անչափ և աններելի բարկացուցի զքեզ մեղօք իմովք յաստուածայինս և 'ի մարդկայինս, կամաց և ակամայ, խորհրդով, բանիւ, գործովք. հոգւով, շնչով մարմնոյ և մտօք և ամենայն

զգայութեամբ (297), վարատեալ կապեցայ 'ի
տռուռունս մեղաց և զամենայն աւուրս կե-
նաց իմոց ։ Վասն որոյ դարձեալ անկանիմ
առաջի քո , ով ողորմած անոխակալ և մար-
դասէր Աստուած , գթա յիս անտէր մեռե-
լոյս և խնայեա 'ի ստեղծուածս ձեռաց
քոց , և մի վստահանար զկորուսեալ ծա-
ռայս քո 'ի մարդկան ողորմութիւն . զի ցա-
մաքեցաւ սէրն իմ յամենայն սրտէ , և չէ-
ջաւ գութ իմ յամենայն մտաց , և բարձաւ
անուն իմ 'ի մարդկանէ , և կորեաւ յիշա-
տակ իմ յերկրէն կենդանեաց ։ Որոյ զա-
ռուցեալ ընդ իս՝ ոչ այլ ոք ողորմի ինձ , քանզի
քեզ սպասեալ միայն արարածք ամենայն ճըշ-
մարիտ ողորմածիդ և անյիշաչար մարդասի-
րիդ ։ Ես վստահանամ զքեզ . հայր իմ և մայր
իմ թողին զիս , և եղբայրք իմ մոռացան
զգութ սիրոյ զոր դառնացուցի , այլ հարա-
զատն եղբայրութեան մերոյ զգաղեալ կա-
պեցաւ 'ի ցնորս աշխարհիս և 'ի հոգս եր-
կրաւորս՝ հետեւելով յիմօրինակ յընդար-
ձակ անզգուշական և սայթաքելի ճանա-
պարհն , որ ոչ ժամանէ թէ կամիցի՝ զանձն
իւր հոգալ կամ յիշել , թող թէ զանգիտս
գերել և զանգիւտ կորուսեալս (գտանել) ։
Արդ մի մերժեր իսպառ , և մի անտես

առներ և մի թողուր զիս կորստեան, Աստ-
ուած Աստուած իմ, և մի դարձուցաներ
զերեսս քո յինէն. մի սրտմտութեամբ խը-
րատեր և մի բարկութեամբ յանդիմաներ.
մի մտաներ 'ի դատաստան ընդ դատապար-
տեալ ծառայիս, և մի թողուր զիս աներե-
ւոյթ տանջանօք յօրինակ տիեզերաց։ Վկայ-
ութիւն դնեմ, վկայութիւն երկնի և եր-
կրի. հրեշտակաց և մարդկան՝ այլ ոչ եւս
գնալ զանառակ կորստեան ճանապարհն, և
ոչ եւս անցանել զպատուիրանաւ քո, եթէ
զայս անգամ ողորմեսցիս և թողցես զանչափ
անիրաւութիւն երկրորդ անառակիս, եթէ
հասցէ ինձ միւսանգամ լինել ընդ կենդա-
նիս։ Ապա թէ իսկապէս մեռեալ դատա-
պարտեցայ, և այն քեզ ողորմել պարտ է,
մարդասէր և միշտ ողորմած Աստուած. զի
'ի դժոխս ոչ ոք խոստովան լինի առ քեզ, և
ոչ մեռեալք օրհնեսցեն զքեզ։ Ցոյց զիս
արդարոց, և յայտնեա արժանաւոր ծառա-
յից քոց զանարժան ոգիս՝ որով գտից մաղ-
թանօք զողորմութիւն. քանզի գիտեմ զի
այժմ ոչ ոք ամենեւին յիշէ զանյիշատակս 'ի
բարիս քո։ Տէր տրտում գոլով ընդ իս և
երեսս դարձուցանելով բարկութեամբ,
բարկացան երկինք և երկիր. Հրեշտակք և

մարդիկ 'ի վերայ իմ, և ամենայն արարածք խեթիւ և խոժոռ դիմօք հային ընդ իս. զի թէ մահ փախեաւ յինէն և կեանք հեռացաւ, երկիր զարհուրեալ յահաւոր քո հրամանացդ՝ ոչ ընկալաւ զիս 'ի ծոց իւր, և ոչ ետ տեղի գերեզմանի զի կարդասցեն զանուն կորուսելոյս 'ի հողս ուրեք։ Արդ եթէ անզգայ և անբան տարերքս այսքան գարշեցան մերժեցան և 'ի բաց ընկեցին զիս յարարածոց աստի, ո՞վ այլ ոք 'ի մարդկանէ իցէ որ ողորմեսցի ինձ։ Արդ դարձիր Տէր 'ի բարկութենէ, և դարձո զերեսս քո 'ի մեղաց իմոց, հաշտ ակամբք և քաղցրութեամբ հայեսցիս ընդ իս։ Այո տէր, այո տէր, Հայր սուրբ, այո Փրկիչ աշխարհի, այո ողորմած և մարդասէր Հոգիդ սուրբ, բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնի և աղաչանօք առաքելոց և մարգարէից և համօրէն սրբոց որք 'ի սկզբանէ աշխարհի հաճոյ եղեն քեզ, գթա յիս և վերաբերեալ յայտնեա զկորուսեալս, կենդանի կամ մեռեալ, մեռելոց և կենդանեաց Աստուած, և քեզ փառք յաւիտեանս. ամէն։

Արդ զայս աղերսալի խոստովանութեան և մաղթանաց բանս կերպարանեալ գրեցաք 'ի դիմաց անտէր գերւոյն և անյիշատակ մե-

ուելոյն, սիրելւոյ իշխանին Ամրի Պալտնին. և ոչ դադարեմք նովին ձայնիւ բողոքել գոչելով առ սուրբ Աստուած և առ սուրբս նորա մինչև գթացեալ ողորմեսցի և բժշկեսցէ զվշտագնեալ միտս մեր որ պատուհաս եհար զնա վասն մեղաց նորա և մեր։ Այլ և դուք որ լուէք զայս ամենայն զամբարտաւանութեան բանս զոր 'ի դէմս նորա և վասն նորա գրեցաք, հրապարակեցէք (298) անպատկառելի և հանդիսաւոր խոստովանութեամբ որպէս օրէն է ճշմարիտ խոստովանողաց ըստ պատուիրանաց Առաքելին, այսպէս սաստկացուցանել զյանցանս խոստովանութեամբ առաջի գիտողին զխորհուրդս և զգործս ամենայն մարդկան, մինչեւ քաղցրացեալ թողցէ զամենայն։

Սակայն դուք մի յուրասատ կայք և անհոգս լինիք, ով իշխանք, իշխեցեալք և զօրք ամենայն, եթէ ձեզ ներեսցէ անքուն ակն Աստուծոյ դատաստանացն, 'ի նորայն հայեցեալ պատուհաս կորստեան, զմտաւ ածէք զաստուածասաստ բարկութիւնն. Արբեցէք, ասէ, ոճիրն, զի անկաւ մայրն։ Լուարուք և 'ի Տեառնէ զսոցին նման բանս, զոր առ անխրատն և առ անլուրն (298) Իսրայէլ բարբառեցաւ ասել զայս. « Համարիք թէ

այս Գալիլեացիք եղեն մեղաւորք քան զամենայն Գալիլեացիս, որոց զարիւնն Պիղատոս խառնեաց ընդ զոհս նոցա։ Կամ նոքա ութուտասանքն՝ զոր աշտարակն սպան, համարիք եթէ նոքա պարտապա՞նք եղեն քան զամենայն մարդիկ որ բնակեալ են յԵրուսաղէմ. ոչ, ասեմ ձեզ, այլ եթէ ոչ ապաշխարիցէք, ամենեքեան նոյնպէս կորնչիջիք ո։

Եւ արդ գիտելով զայս ամենայն զգուշացարուք անձանց ձերոց, ով բռնաւորք և իշխանք, զի բռնաւորաց՝ բռնաւորագոյն և անաչառ դատաստան լինելոց է աստ և 'ի կատարածին։ Դուք ոչ գրոց լսել կամիք, և ոչ այնպէս հրապարակեմք զյանցանս ձեր խոստովանութեամբ. քանզի այս բանք նմա 'ի պարծանս և 'ի բժշկութիւն գրեցաւ, և կենդանեաց յօրինակ զգուշութեան և 'ի յանդիմանութի, և նորայն թողան յանցանքն ամենայն, և բժշկեցաւ համապազորդ խոստովանութեամբ և յետոյ արեամբ 'ի մեծ պատերազմին։ Ամբարտաւանութի և ստութիւն նորա բժշկեցաւ յայն օր անչափ և սաստիկ խոնարհութեամբ, որով զիջանէր առ ամենեսին, առ զօրս հեծելոց և հետեւակաց, քաղցրագոյնս և ախորժականս և ողորմագին բանս բարբառելով. որդէս Աստուծոյ և եղ-

բարս հարազատս զամենեսեան անուանէր, իշխանս և տէրս և քաջազունս յանուանէ կոչէր։ Մարզէր զօրսն ամենայն, յորդորէր, սրտապնդէր, քաջալերէր իբրև ըմբիշ և զքաջ նահատակ, շուրջանակի զօրացն անցանէր, ուժգին և ահագին ձայնիւ ամրացուցանէր զօրսն ամենայն։ Ձայնէր առ ամենեսեան յանուանէ զանուն քաջութեան. «Մա՛հ, ով քաջք, մա՛հ բաղձալին և աւուրս շնորհի, որ սոսա նահատակի փոքր մի և յաղթէ (299)։ Մի՛ զանգիտէք 'ի նոցանէ. ահա օր հանդիսի և մահ երանելի վասն Քրիստոսի 'ի վերայ քրիստոնէից մեռանելը»։ Եւ իբրև այսպէս զօրացուցանէր հաստատէր զարտաքոյ կողմանս բանակին, դարձեալ 'ի միջոց անդ զօրացն մտանէր, զքեալն երկիւղիւ և զխուսափեալսն Թագստեամբ (299) յառաջ քարշէր, և զքաջասիրտսն գովէր, զ'ի բաց ընկեցեալ զէնս անարի արանցն, կամ որք ունէին կարկամեալ ցամաքեալ ձեռըս, յափշտակէր կորզէր և արիացելոցն մատուցանէր 'ի ձեռին. ոմանց տայր, յոմանց առնոյր։ Եւ դարձեալ առիւծաբար խրոխտանօք յայլ վայրս հասանէր ահաւոր գոչմամբ և բարձրաձիչ աղաղակաւ, զգիշերն ողջոյն և զտիւն ամենայն ընդ զմիջոց բանակին, զի

ոչ ունէին պարապէր զայլ ուրուք լսել զձայն քաղցրութեան, կամ ակնն՝ տեսանել զարագ-ընթաց սլացումն հաւասար և նման Սերի Պաղտոնին, մինչեւ պակասեալ հատաւ 'ի ձայնէ, և 'ի բանակն (դառնայր) ուժոյն զօրութեամբ հանդերձ երիվարաւն. և ժամանալ կարմրութեամբ գոլորշեաց՝ սրտին 'ի սանձապատ վրանից բերանոյ նորա, որպէս առի յամանց ։ Որդ խոստութիւն հպարտութեան նորա այսու օրինակաւ ընջեալ մաքրեցաւ.

Իսկ անողորմութիւն սրտին յայնմ աւուր ողորմութեամբ գթովք (300) աղէխարշեալ խորովէր 'ի վերայ տառապելոցն կորստեան. ուստի և դեգերելով ընդ նոսա՝ ինքն կորուսեալ եղեւ և զրկանաց անյուսումն, որով զամենեսեան զրկէր առանց ողորմութեան. և ինքն զրկեալ գտանէր յայն օր 'ի մարտի անդ յամենայն օգնականաց իւրոց. Քանզի լքեալ թողին զնա ընկերակից իշխանք և զօրք ամենայն 'ի մէջ մեծ պատերազմին, և ելին 'ի մարտէ անտի, և ոչ ոք ողորմեցաւ նմա դառնալ գիտել թէ ուր իցէ գլխաւոր իշխանն մեծ զօրականն մեր ։ Եւ յայտ անտի է՝ զի ոչ ոք այլ 'ի զօրացն նորա կորեաւ կամ ըմբռնեցաւ ընդ նմա, և ոչ ամենեւին. և-

տեսս որք զնա, և ոչ 'ի վատութենէ զօրացն ունիմ ասել զայս, կամ կամաւ զկարուստ նորա, այլ զի հարկ էր այնպէս բազմաժամանակեայ զրկանացն և անիրաւութեան որ առ նա՝ յայնմ աւուր զրկանօք 'ի զօրացն գտանել և բժշկութիւն (301), որպէս վերագոյն ասացաք:

Իսկ բազմաց արիւն որ հեղաւ յաւուրս նորա 'ի գալ յայս երկիր վատշուէր և ստու նենգաւորին Սալին միով արեամբն իւրոյ անձինն, զոր յօժարութեամբ սրտի եւս հեղուլ 'ի վերայ քրիստոնէից, որք եղին և աղատեցան 'ի պատերազմէ անաւր, զոր և իւքեանք յայսնապէս խոստովանին զերծեալքն ամենայն, յԱստուծոյ ունելով նախ շնորհ և երկրորդ 'ի մարդկանէ Սերի Պաղտնին՝ զազատութեան իւրեանց: Նա արդ եթէ կատարեցաւ մահուամբ 'ի պատերազմի անդ, Թողութիւն ընկալաւ 'ի Տեառնէ ամենայն յանցանաց իւրոց, և 'ի սոսկալի աւուր դատաստանին 'ի հատուցումն ամենայն արդար գործոց (302) ընդ բարեպաշտ իշխանօն և ընդ քաջ նահատակսն պսակելոց է յԱստուծոյ: զի այնպէս գիտեմք և հաւատամք զպատերազմաղաց մահ որ անօրինաց սրով մեռանին 'ի քրիստոնէից: Նա եթէ կենդանի իցէ՝ և յայտնեսցի քաջութիւն նորա. տարածեսցի՝ և տա-

րածի որ լուռ որէ ընդ ախերգերս ամենայն մին-
չեւ 'ի կատարած աշխարհի.

Նա արդ զայս ամենայն երկարաբանապատում բանս զոր գրեցաք վասն Նորա, մի՛ ոք 'ի պարսաւադէս առողջաց Նորա եւ յօտարաւէր մախողաց ստգտանիցէ զմեզ բամբասել. զի այս մոլորաց է եւ հացկատակաց: Նա որք առ կենդանութեան խօսեցին կամ գրեցին զայսպիսի բանս, եւ ոչ ոք վասն անուէր մեռելոյն եւ անդիւտ կորուսելոյն խօսեցի. զի որքան 'ի կեանս էր, ոչ երբէք լուաւ Նա զբանս քաղցրութեան կամ գովեստ 'ի մէնջ. այլ պատուհասի եւ յանդիմանութեան, առ րով հոկծեցուցանէաք (303) համապատաղորդ զմիտս Նորա: Նա թէ պատուհասէր եւ յաւանէր Նա 'ի մեռելոց, կամէր յայտնել կենդանի. ոչ ունէր առնանել Նա զայս գիր եւ զխաւան պատուերազմին եւ կորստեան Նորա զոր (303) գրեցաք, ոչ 'ի տաւանց եւ ոչ 'ի քանից. այլ յամենեցուն միապէս զայն լուաք, մանաւանդ յատողաց Նորա, եւ 'ի Նոցին իսկ 'ի զօրացն Հռովմայեցւոց: Այլ այն ինչ է յայտնի պատճառ բանից մերոց երկարութեան, (զի) սիրէաք զնա հոգեւորական սիրով. որպէս օրէն է ծառայից Աստուծոյ, բարում եւ Նա զմեզ. եւ զինի մահուան Նո-

րա հարկ էր մեզ փոխանակ անչափ սիրոյ նորա հատուցանել սէր կորուսանելոյն 'ի կենաց աստի։ Որ յԱնտիոքացւոց քաղաքէն մինչեւ 'ի սահմանս Սելտենոյ ձգէր իշխանութիւն նորա, և տեղի ոչ ուրեք երեւեցաւ գերեզմանի նորա. այնքան զօրաց և աշխարհաց տէր և անուանի երեւելի իշխան, և այժմ 'ի մեռեալս ոչ յիշատակի, ոչ 'ի կենդանիս երեւի, ոչ զանգակ նմա (304) հնչեցոյց, և ոչ ուրեք եկեղեցի զանուն նորա յիշեցոյց, և ոչ նուէր պատարագի եւ կամ մասն յիշատակի ողորմութեան ել նմա յերկրէ աստի. ուլ մի կամ դանգ ինչ ոչ կարի (305) աղքատացունիցն հասանէ։ Ոչ ոք է որ յիշէ զնա, և ոչ ոք որ ողորմի նմա. 'ի կենդանութեան իւրում ոչ հանգեաւ; ոչ վայելեաց 'ի սմա, այլ 'ի տղայական տիոցն սկսեալ 'ի տագնապի, 'ի ցնորս և 'ի տառապանս անցոյց զժամանակս մանկութեան իւրոյ, 'ի դիւաց 'ի թշնամեաց և 'ի խառերախս մարմնական տերանց և 'ի դաւաճանող ընկերակից իշխանաց. և այժմ 'ի կատարածի կենաց իւրոց կորեաւ անյիշատակ, ջնջեցաւ բարձաւ անուն նորա, և սէր յամենայն աշխարհէ և 'ի սրտէ ընտանեաց և օտարաց։

Զայս ամենայն դառն և անհնարին կա-
պուտ յորժամ տեսանեմ հասեալ 'ի վերայ
նորա, հեղձամղձուկ եղեալ ցնդիմ յար-
տասուս և ոչ գիտեմ զինչ արարից. և կամ
որպէս օգնեցից ձեռն կարկառելով. ցաւա-
կից մեզ յայսմիկ յԱստուած ապաւինեալ
վստահացայ, որ միայն է անոխակալ և մար-
դասէր, որ ոչ կամի զմահ մեղաւորի. և ոչ
խնդայ ընդ կորուստ ուրուք: Եւ գրեցաք
զայս գիր խոստովանութեան և աղերսի 'ի
դիմաց նորա և մեր, և ոչ դադարեմք յա-
րաժամ գոչել այսու յամենայն տեղիս առա-
ջի ողորմած հզօրին, որ բարկացաւ նմա և
մեզ, հաշտեսցի ողորմութեամբն իւրով, և
յայտնեսցէ զնա մեռեալ կամ կենդանի:
Այլ և զձեզ զամենեսեան աղաչեմ, ով
մարդիկ, որ լսէք զողբերգական բանս զայ-
սոսիկ, մի լքեալ ձանձրանայք. և տաղտկա-
ցեալ հրաժարէք անտես առնելով զպաղա-
տանս մեր որ վասն նորա՝ առ ծուլութեան
կամ ատելութեան նորա, այլ սրտի մտօք
թողութիւն արարէք նմա. և մի ընդ կորու-
սելոյն ոխս (308) բերեալ պահէք, այլ և ա-
ղօթս արարէք առ հասարակաց դատաւորն
և արարիչն Աստուած, զի ողորմեսցի նմա և
թողցէ զամենայն յանցանս նորա. զոր առ-

Աստուած կամաւ մարդիկ մեղուցեալ իցէ. և ամենազօր արարիչն Աստուած բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնին և աղաչանօք ամենայն սրբոց ողորմեսցի նմա և թողութիւն արասցէ ամենայն յանցանաց նորա մեծամեծաց և փոքունց. և զձեզ օրհնեսցէ հոգւով և մարմնով, և երկնից արքայութեանն արժանի արասցէ ընդ ամենայն սուրբս 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր, որում փառք յաւիտեանս. ամէն.

ՄԾԹ. Իսկ 'ի թուականութեանն Հայոց ՇՂԸ (1149—1150), սպանեալ եղեւ տէրն Անտիոքու Պրինձն, և անգլուխ եղեալ Պաղտոնին՝ ըստ ամբարտաւանութեան իւրեանց, որք անձնահաճութեամբ կամեցան պատերազմել ընդ թշնամեայն և ոչ հաւանեցան միաբանել ընդ զօրս քրիստոնէից որք էին յաւուրս յայսոսիկ, որ ոչ միայն ինքեանք կորեան և բարձան 'ի միջոյ, այլ և (307) գլխաւորք և բազումք 'ի քրիստոնէից.

Յայնմ աւուր նոյն որդին Զանգեայ՝ որոյ անուն Նուր-էտտին կոչէին ազգն իւր, այսինքն ըստ առասպելաց իւրեանց՝ Լուսահաւատոյ զոմանս պատախողխող արարին և զոմանս (308) 'ի գերութիւն մատնեցին, զխափիկաուն իշխանս

յարիւնաշէն քաղաքն Հալապայ։ Եւ ՚ի սոյն ամի յորում ոչ ոք փայլէր գլուխ քրիստոնէից․ բայց միայն կոմսն Ռօսլին յիշխանութեանն նորա, դարձեալ սաստկացաւ ահ դառնութեան․ ․․․ ՚ի վերայ սրբոյ եկեղեցւոյ, և եկն թագաւոր Խամայէլացւոց որում անուն էր Սառուա(310), բազում զօրօք հեթանոսաց․ էր թըւականն ՇՂԸ ամին ՚ի սեպտեմբեր ամսոյ, ՚ի տօն սրբոյ Խաչին, և ոչ երկարեալ ՚ի վերայ քաղաքին Սարաշայ՝ էառ զնա, քանզի ոչ գոյին զօրք ՚ի բերդին․ և ասպատակ արարեալ յերկիրն որ կոչի Թիլ Նաւետեաց, որ այժմ ասի Թլպաշար, և զամենայն սահմանս նորա սրոյ ճարակ արարեալ՝ զորս եգիտ յաշխարհին․ և բազում այն էր որ խաբէութեամբ երդնումին յանուն մեծին Աստուծոյ և իջուցանէին յամրոցաց զքրիստոնեայսն՝ գերի վարեալ զամենեսեան։ Որ և տէր երկրին Ռօսլինն հանդիպեցաւ ՚ի քաղաքին Թլպաշրայ, և (Սառուա) ոչ կարացեալ զդէմ ունիլ նորա, դարձոյց անդրէն զերեսս իւր տանելով զառեալ գերեալսն յաշխարհն իւր։ Դարձեալ կոմսին մեռեալ՝ յանհոգս եղեալ ՚ի թշնամեաց ոչ հոգս տարեալ հեծելոյ, և կամ թէ յաղթեաց ոք իւր, առաքէ զմնացեալ զօրսն իւր հետ բարի և մեծահաւատ իշխանին Վասլին, որ էր

եղբայր Կաթողիկոսին և տէր Կառկառայ, հաստատելով ընդ իւրեանս զի անցցեն 'ի ներքս։ Նոյն յառաջինմաց եղեալ ազգն Իսմայէլացւոց ; որոյ գլխաւորքն Խարա—Արսլան (311) կոչիւր, որ էր (տէր) աշխարհին Համձթայ և այլ բազում գաւառաց, 'ի վերայ անկեալ զօրացն քրիստոնէից, և ձերբակալս արարեալ զամենեսեան իբրեւ ոգիս չորս հարիւր, ըմբռնեալ և զՎասիլն եղբայր Կաթողիկոսին, և տարեալ առաջի մեծի դղեկին Կառկառայ, քանզի անդ էին կինն և որդիք Վասլին. և առեալ երդումն հաւատարիմ յամիրայէն վասն կալեալ քրիստոնէից զօրաց զոր ըմբռնեցին, զի տարցեն զնոսա խաղաղութեամբ յերկիրն իւրեանց առանց դաւ ինչ գործելոյ նոցա։ Զոր բռնաւորն յաղագս սիրոյ մեծի աւանին ոչինչ յապաղեաց նմա, և երդմամբ զամենեսեան 'ի ձեռն հաւատարիմ զօրաց իւրոց առաքեաց մինչեւ 'ի Սամուսատ։ Նոյն զիշխանն զՎասիլ ընդ իւր տարեալ յերկիր իւր մեծաւ փառաւորութեամբ և տուեալ երկիր որպէս սիրելի եղբօր իւր։ Յետ այսորիկ եկն ցրուեալ և վառնեալ զօրքն 'ի Սամուսատ քաղաքէն 'ի Բեսունի քաղաք, և ահա եհաս 'ի լսելիս ամենեցուն։ Քանզի կոմսն Ճօսլին, որ էր յա-

ւուրան յայնամիկ գլուխ քրիստոնէից. գը-նալով յԱնտիոք յաղագս խորհելոյ ինչ, Թե-րեւս կարացէ ուստեք օգնականութիւն գտանել, մատնեցաւ յաստուածասաստ բար-կութենէն, ինքն միայն 'ի զօրաց իւրոց՝ 'ի գե-րութիւն (312). որպէս 'ի հնումն որդին Դաւ-թի փախուցեալ 'ի հօրէն յաղագս չար կամաց իւրոց. զոր առեալ սաստ հրամանին Աստուծոյ զհերաց գլխոյ նորա վրէժխնդիր լինելով աստուածահաճոյ առն Դաւթի, ձեղք ծառոյն կախեալ պահէր զիւրեաւ, մինչեւ 'ի հետ մտեալ Թշնամեացն հասեալ և սուսերաւ կտրեալ զգլուխն անհնազանդ որդւոյն: Այսպէս գլխեցաւ այսմիկ կամօքն արտաքոյ գտեալ կամաց Աստուծոյ, գե-րեալ եղեւ յայլազգէմ և 'ի . . . . . . ;
. . . . . Քրիստոսի. և տարեալ 'ի քաղաքն Հալապ, և Տաճկաց ազգն անպատմելի խըն-դութեամբ լցան՝ հեռաւորքն և մերձաւոր-քըն. և յոյժ յոգիս խոցեալ կործանեցան եր-կիրս քրիստոնէից, վասն զի ոչ ունէին գլուխ որ մնացեալ զօրքն ժողովէին (ընդ առաջնոր-դութեամբ) նորին:

ՄԿ. Եւ յառաջ քան զայս ամ մի (313), յամսեանն յունվարի երեսուն, 'ի լուսանալ երկուշաբաթի, եղեւ յերկնուստ ահաւոր.

պատահմունք և հրաձգութիւնք. և փոխեալ տարերաց զբնական բնութիւնն իւրեանց. Եղեւ խաչն աստուածընկալ հրացեալ իբրեւ լոյս, զոր մեծ և անյաղթելի ախոյեանն Քրիստոսի սեւաստոս Վասիլն կանգնեալ (314) էր յիշխանութեան իւրում ի գումբէթ սրբոյ Յարութեանն ի Կարմիր վանքն. և այս նշանս հինգերորդ եղեւ ի Խաչս այս մեծափառ, զոր ոչ թուէր իմաստունն մտաց բարի. այլ արհաւիրս յաւերումն քրիստոնէից՝ որպէս եղեւ իսկ.

ՄԿԱ. Դարձեալ ի սոյն ամի յաւուր մեծի Պենտեկոստէին, յորժամ ամենայն որ ակըն ունէր զալստեան Հոգւոյն Սրբոյ. եկն յառաջացեալ սուլտանն Մասուտ անուն անհնարին բազմութեամբ. և ի ձայնէ հնչման զանգականցն և ի հրաձգութենէ աստերացն, և ի ձօձել բազմախուռն նիզակացն զմեզ զամենեսեան զտեսողս որք էաք ի քաղաքն Քեսնոյ՝ առհասարակ դողացոյց. որ ահաբեկ եղեալ առժամայն ետուն ըզքաղաքն Քեսուն՝ երդումն առեալ ի նըմանէ և յորդւոյ նորա. Նա յետ ութ աւուր զանմատոյցն և զանառիկն զՊեհեսնի. և զկնի չորրորդում աւուր զերեւելին Ռաբան. և ապա գնաց յերկիրն Թլպաշար.

զոր յանցեալ ամին քակեալ և աւերեալ էր. և անդ կացեալ զաւուրս բազումս ոչինչ կարաց յաղթել նոցա. քանզի որդի կոմսին ՚ի քաղաքին էր՝ պնդեալ ունելով զզօրսն հօր իւրոյ. և բնակիչք անդուոյն միաբանեալ ընդ նմա՝ սրտապնդեալ մեծապէս քաջացան ՚ի վերայ հաւատոյն իւրեանց. Թէպէտ և այլազգիքն պէսպէս հնարիւք կռուէին մեքենայիւք յորմնէին: Դարձեալ յետ այնորիկ ակաբացեալ և տխրեալ էր, գնաց յերկիր իւր և ոչ կարաց առնուլ զքաղաքն, և զառեալ երկիրս ՚ի քրիստոնէից եւս որդւոյ իւրոյ, որ էր աթոռակալ սուլտանութեան իւրոյ, անուն նորա Խլիճ-Արսլան.

ՄԿԳ. Իսկ ՚ի Թուականութեանս Հայոց Ո (1151—1152), եկն ՚ի յերկիրն Գահնոց ձիւն կարմիր, ՚ի նաւասարդի ամսոյ քան երեք. և ՚ի նմին աւուր յորժամ անդ կարմիր ձիւն եկեր, յերկիրս քրիստոնէից երեկ ձիւն սպիտակ և մոխրախառն որպէս յանցեալ ամին.

ՄԿԴ. Դարձեալ յետ այսր ամի զօրքն և քաղաքացիքն որ ՚ի Թլպաշար էին, զտարի մի և կէս համբերութեամբ տարեալ քաղցրութեամբ զնեղութիւնն զոր կրէին. Զայս իմացեալ որդւոյն Զանգեայ, որ էր տէր Հալպայ, եկն զօրօք ՚ի վերայ նոցա. և վասն

զի ոչ ունէին օգնականութիւն իւրեանց ուստեք, երդումն հաստատութեան առեալ ետուն կամօք իւրեանց զքերդն Թլպաշար, և զքրիստոնեայսն որ 'ի Փռանկաց կամ 'ի Հայոց որ անդ էին, կամեցցին գնալ յԱնտիոք կամ յայլ տեղիս, տարցին անվնաս հրամանաւն Նուր-էտտինին, զոր և արար իսկ նոյնպէս և Մասուտ սուլտանն և Մելէք որդի իւր. այսպէս արարին վասն սիրոյ աշխարհացս, որ դիւրաւ առաւ 'ի քրիստոնէիցս, և ոչ եթէ 'ի հաւատոց իւրեանց կամ 'ի սիրոյ զոր ունէին առ քրիստոնեայքս:

Նա եղև յաւուր փոքր Ճօսլինին, երևեցաւ ումն պատանի Թէոդորոս անուն, օգնական և ոչ ուստեք ունելով, բայց զօրութիւն բարեխնամ Արարչին ողորմութեամբ մատակարարէր 'ի դարս դարս յաղագս մարդկան 'ի ժամանակըս ամաց իւրոց ըստ առաքելական ձայնին, « Ում կամի՝ ողորմի, ում կամի՝ խստանայ». որպէս և առ երանելին Պօղոս արար յերկնուստ ձգելով 'ի կամս և 'ի գործս սպասաւորութեան իւրոյ. նոյնպէս և առ այրս արար: Ի յոյս և 'ի ջանս սորա նայեցեալ կամք աննախանձին, որ և ոչ մի ումեք զլանայ տալ ըզպարգևս ողորմութեան իւրոյ, քանզի առ փոքր մի և ոչ 'ի յերկար ժամանակս տիրեաց

հայրենեաց իւրոց։ Սա էր որդի Լեւոնին սեւաստոսի՝ մեծի և հանճարեղի որդւոյ Կոստանդեայ՝ որդւոյ Ռուբենի։ Սա կորովի և արիական գոլով 'ի պատերազմունս, ոչ միայն զհայրենիս իւր գրաւեաց 'ի յինքեան, այլ առաւել ևս տիրեաց բերդայ և քաղաքաց քան զնախնիսն իւր։ Զայսոսիկ տեսեալ Անդրոնիկէ ումն անուն, ազգաւ Հոռոմ, 'ի չար նախանձ մտեալ՝ ոչ կամեցաւ լսել զանուն հայ իշխանին։ Նա էր սա առաքեալ 'ի Թագաւորէն Յունաց Կիւռ Մանուէլէն, իբրեւ իշխան Սրոյ և Սսիսայ (314)։ Նա այնուհետեւ ոչ դադարէր խիթալ և մաքառել ընդ Հայերուն, որ ելեալ ժողովեցան 'ի միասին առ առնս այս Թորոս 'ի նախախնամութենէն Աստուծոյ. որ և պատերազմաւ դիմեալ 'ի վերայ նոցա՝ նեղէր զնոսա. և նոքա առ սէր և ահի մեծի Թագաւորին Յունաց ոչ համարձակէին տալ ընդ նմա պատերազմ, այլ հանապազ սիրոյ յաղագս աղաչէին միայն նմա 'ի հնազանդութեան. և նա ոչ լսէր, այլ եկեալ ամբարտաւանութեամբ իջաւ 'ի վերայ քաղաքին Մըսիսայ։ Իսկ Թորոս բազում աղաչանօք աղաչէր զնա, թէ "Ծառայ եմ՝ Թագաւորին և քո, մի՛ բարկանար։ Իսկ նոքա ձայնէին 'ի ներքս 'ի

քաղաքն, թէ «Օ երկաթն որով զքո հայոյն տարաք, 'ի հետ ունիմք, որով զքեզ կապեալ տարցուք »։ Իբրեւ ոչ կարաց տանել կորովլի այրս այս ամբարտաւանութեան և խրոխտ կամաց նորա, ապա վստահացեալ 'ի զօրութիւնն Քրիստոսի որ բարձրացոյց զնա 'ի չքոյէ և 'ի գոյ ած, և պատուեալ զպարիսպ քաղաքին Սիսայ 'ի գիշերի. և 'ի ծագել արեգականն առեալ զզօրս իւր ել ընդդէմ նորա 'ի պատերազմ, և հարեալ զնոսա յաղթեաց և արար փախստական զամենեսեան՝ առս երկոտասան հազար. և վառանէր զնոսա և 'ի սուր սուսերի մաշէր, 'ի միական քթթել տապաստ արկանէր զամենեսեան. ընդ որս և 'ի մեծ պատերազմին ըմբռնեցին զՕշինն որ էր տէր Լամբրոնին, և զՎասիլն որ էր տէր Բարձրբերդոյ և եղբայր Տիգրանայ. և այլ բազում զօրս կալեալ մերկացուցանէին և թողուին զթաւալամորթ Հոռոմանին. աւաղ, ասեմ զօրաց։ Եւ բազում արիւն հեղաւ 'ի պատերազմին, և տիրեաց (Թորոս) անհոգութբ քաղաքին Սիսայ, առեալ բռնութեամբ 'ի նմանէ իբրեւ 'ի կանայոյ՝ խնդրելով զվրէժ հօրն իւրոյ, զոր հանեալ էր 'ի հայրենեաց իւրոց տարագիր արարեալ տամբք և որդւովք մինչեւ յարեւմու-

տըն։ Արդ այրս այս նենգաժէտ ոչ կարացեալ տանել վշտի նախատանացն զոր կրեաց և զփորձ առ, զկորուստ իշխանացն մեծաց և զայլ զօրացն, գնացեալ փախստական առ Թագաւորն Յունաց բողոք մեծապէս ունելով յաղագս զօրացն Հայոց, զոր կրեաց յանմտութենէ իւրմէ։ Իսկ մեծն Թէոդորոս առեալ զկալեալ իշխանսն և զայլ կալանաւորսն, եմուտ խաղաղութեամբ 'ի քաղաքն իւր անթիւ ոսկւով և բազում արծաթով և այլ ազգի ազգի ստացուածով, և սարօք պատերազմին զոր առեալ 'ի զօրաց Յունաց և բազում ձիս և ջորիս։

ՄԿԴ. Յետ այսր մեծի յաղթութեանս և հարստանալոյ՝ սկսանէր բանսարկուն սատանայ շարժել զմեծամեծս 'ի վերայ զօրացն Հայոց. քանզի Յոյնք ոչ պարապէին խնդրել զվրէժ անձին կեսարոսին իւրեանց, և զանձս բազումս առաքեցին Մասուտ սուլտանին, որ էր գլուխ ամենայն Մուսուլմանաց։ Սորա պարտեալ 'ի բազում (315) Յունաց ընծայիցն, և գայր անհուն բազմութեամբ զօրօք՝ զառաջինն ընդ երկիր իւր. ահ արկանելով նոցա. սակայն զօրացան շնորհիւն Քրիստոսի զօրքն Հայոց. և եկեալ 'ի լեառն ընդ մէջ, նոքա յայնկոյս լերինն ընդ

սահմանս խուրեանց, և տեքա յայսկոյս լերինն ընդ երկիրս խուրեանց՝ անհոգութեամբ ոչինչ համարելով զբազմութիւն այլազգեացն։ Իսկ նոցա տեսեալ զհամարձակութիւն ազգին քրիստոնէից գնդին, զարմացեալք ապշեալք ասէին. «Ո՞ ինչ են նոքա անձն 'ի մահ եդեալ, որ գան ընդդէմ մեր իբրեւ թէ պատերազմել ընդ մեզ»։ Եւ մինչդեռ նոքա յայս մտաց խորհրդի էին, յանկարծակի շարժեալ 'ի վերին խնամոցն սուլտանն Թուրքաց, պատգամաւորս առաքէր առ զօրավարն Հայոց Թորոս և ասէր. «Ոչ թէ յաւերումն եկեալ եմք յերկիրս ձեր, այլ եկ մեզ 'ի հլունազանդութիւն. և զաւեալ երկիրն զոր առեր բռնութեամբ, դարձո անդրէն առ թագաւորն Յունաց, և լեր մեր որդի և սիրելի»։ Եւ լուեալ զայսոսիկ մեծաւ ուրախութեամբ լցեալք, և Ամենատեառն փառս մատուցանէին, որ այսպէս խստերախ և զամբարտաւան բարս նոցա կակղացոյց իբրեւ ընդ վեհագոյն ընկերի դաշինս սիրոյ խնդրելով 'ի զօրացն Հայոց. և արգել զնորա պատգամաբերսն յաւուրս բազումս։ Ապա դեսպան զկնի նոցա առաքէին ասելով այսպէս. «Կամօք մեր յանձն առնումք մեք, հնազանդիմք ձեզ իբրեւ Թագաւորի. քանզի ոչինչ

նախանձեալ քո ընդ յառաջանալս մեր, և կամ աւեր ինչ առնել յերկրի մերում, այլ եկիր դարձուցանել զմերն ՚ի Հոռոմս. անհնար է»: Զայս լուեալ սուլտանին, ոչ նեղեաց զնա, այլ դաշինս սիրոյ խաղաղութեան երդմամբ գրեալ ետ տանել առ զօրսն Հայոց ՚ի ձեռն դեսպանի իւրոյ, ծաղր արարեալ Յունաց Թագաւորին և զգանձս նորա. և ինքն դարձաւ յերկիր իւր ոչինչ վընասեալ ումեք: Եւ այս եղեւ ՚ի Թուականին Հայոց ՈԲ (1153—1154):

ՄԿԵ. Յետ այսորիկ փոխեալ ամք երեք՝ այլ բազմապատիկ ընծայս ոսկւոյ և արծաթոյ յղեալ Թագաւորն սուլտանին առաւել քան զառաջինն ասելով այսպէս, եթէ «Հանգո զսրտմտութիւն զայրացման սըրտի իմ յազգն Հայոց, և տապալելով զամուրս նոցա եւ զեկեղեցիս նոցա հրձիգս առնելով և հրոյ ճարակ զամենեսեան հըրամայեա առնել, զի դադարեսցէ զայրացումն սրտի իմոյ»: Եւ առեալ զգանձն բազմութեան՝ դարձեալ խաղայր գայր անհուն բազմութեամբ քան զառաջինն, դիմեալ եկն ՚ի Սիս, և անտի յԱնաւարզա. Եւ ոչ կարացեալ ինչ առնել ըստ կամաց իւրոց, գայ ՚ի Թիլն զոր Համտնոյ կոչեն, և

կացեալ զաւուրս բազումս ոչինչ կարաց վնասել նոցա ։ Ապա զմի ոմն 'ի մեծամեծաց որդւոյ իւրոյ Մելէքին , որոյ անուն Եաղուպ ասէին, այր ժանդ և չարասէր, բազմութեամբ զօրօք իբրև երեք հազար՝ առպատակաւ յերկիրն Անտիոքու առաքէր ։ Իբրև անցին ընդ տեղին այն զոր Դուռն կոչէն , յանկարծակի իբրև յերկնուստ առաքեալ 'ի քրիստոսասէր զօրաց փրերաց ՑԻԹ, և եղբայրն տապարապետին (Թորոսի) Ստեփանէ յանկարծակի 'ի վերայ անկեալ՝ առ հասարակ զամենեսեան սատակեցին, և զգլխաւորն իւրեանց Եաղուպն նիզակաւ ընդ լերդն անցուցեալ, և դառնագոչ ձայնիւ եհան զդանացեալ ոգին ։ Եւ լուեալ զայս բանակն՝ զարհուրեցան յոյժ , և 'ի զօրութենէ վերնոյն եկն ցաւ 'ի վերայ երիվարաց նոցա, զոր ինքեանք փաղախ ասէին, յորոց յոլովք սատակեցան քան թէ մնացին ։ և զայն տեսեալ մեծամեծացն Թուրքաց՝ ամենեքեան առ հասարակ 'ի փախուստ դարձան , ոչ ոք ուրեք մնացեալ ընկերի , կամ եղբայր եղբօր ։ և բազումք 'ի նոցանէ զձիս երիվարացն ևս ջորւոցն հատանէին՝ ընկենլով զզէնս իւրեանց 'ի փախստեանն , և ինքեանք ընդ մացառուս ձորս և ընդ դժնեայ վայրս հա-

տեալ անցեալ գնայրն մօլար ճանապարհաւ։ Մեծամեծ հեճուպք և բազումք սալարանի հետիոտս ընթանայրն 'ի յաՀէ Բարձրելոյն. քանզի ոչ գոյին նոցա երկիւղ 'ի մարդկանէ, զի զօրքն Հայոց ասպատակաւ երթեալ էին յերկիր այլազգեացն, և դարձան բազում աւարաւ յաշխարհն իւրեանց։ Նա իբրեւ եկին՝ տեսին զանկարծելի բարին զոր ահ հզօրին Աստուծոյ փախստական արարեալ ընդ կրունկն կոր 'ի կոր ամօթալից պարտեալ ամաչեցեալ իբրեւ զաղուէս որկար 'ի Թագաւորական առիւծէ, այնպէս ապրսեալ դողալով ընթանայրն՝ կարծելով թէ բազում զօրք հեծելոց զհետ մտեալ (էին) նոցա՝ բազում արեան ճապաղիս հանելով, այնպէս իմն թուէր փախուցելոցն։ Նա զորօրինակ առ Մծբին քաղաքն եղեւ, Կաւատ Թոռն Յազկերտի Պարսից արքայի մոռացեալ զդաշինս սիրոյ նախնեացն իւրոց զոր ունէր առ քրիստոնեայսն, և եկն սրտամրտութեամբ զօրօքն Պարսից յաւարի առնուլ զերկիրն զայն, և բազում աւուրս արարեալ մեքենայեալ հնարիւք խարխալեաց (317) զամուրս պարսպին Մծբնայ։ Նա իբրեւ կամեցան զօրքն մտանել 'ի ներքս, և ահա յանկարծակի տեսին զսուրբ հայրապե-

տըն Յակոբ, զի շրջէր 'ի վերայ պարսպի քաղաքին իբրեւ զԹագաւոր որ ծիրանազգեստ շուրջ և մերձ ունելով զզօրս երկնայինս, և դնելով 'ի վերայ գլխոյ իւրոյ զտախտակն նոյեան տապանի՝ զոր ետ նմա հրեշտակն յաղագս աշխատութեան իւրոյ զոր կրեաց 'ի ճանապարհին ելանելով 'ի լեառն տեսանել զտապանն, որում ոչ ետ հրաման հրեշտակն, այլ դարձոյց խաղաղութեամբ զսուրբն Աստուծոյ յերկիր իւր՝ տալով նմա նշան սիրոյ զտախտակն։ Զոր տեսեալ զօրքն Պարսից՝ ահաբեկեալ ոչ եւս իշխեցին մերձենալ 'ի պարիսպ քաղաքին զոր կործանեցին, այլ և պատուհաս եկն 'ի վերայ նոցա պիծակ գուեխ և ճանճ, և առհասարակ երիվարք նոցա պախուցաթափ լինելով յիւրաքանչիւր արգելմանէ, և ոչ որ կարէր 'ի բազմութենէն ըմբռնել զերիվարս իւրեանց. և այնպէս շտապ տագնապի հասուցանէր նոցա դոյզն պատուհաս արկեալ 'ի վերուստ, որպէս 'ի հնումն առ Իսրայէլացւոցն զԵգիպտոս հարկանէր աջ հզօրին Աստուծոյ։ Եւ այսպէս ամօթալից պարտեալ Թագաւորն Պարսից դառնայր յազգմանէն Քրիստոսի և յաղօթից սրբոյ հայրապետին Յակոբայ, քանզի զկամս երկիւղածաց իւրոց առնէ տէր։

Եւ այս ոչ ընդհատ յայնմանէ որ այժմ գործեցաւ, զոր տեսաք աչօք մերովք, երկիցս անգամ շարժեալ Թուրքաստանն ամենայն 'ի վերայ Թորոսի և զօրացն իւրոց, և ոչինչ կարացեալ առնել եկեղեցեացն՝ զոր բազում պատուէր առեալ էին 'ի Թագաւորէն Յունաց յածխուն դարձուցանել, և զխաչն և զեկեղեցի այսպն կատականաց արարեալ: Եւ թէ ոչ էր յօգնութիւն հասեալ բազուկն այն որ պարզեցաւ 'ի վերայ խաչին, ուրեմն կատարել կամէին զպատուիրան հերձուածողացն. տապալելով զեկեղեցին սուրբ և զերկիրն հիմն 'ի վեր առնելով: Որդ սոցա մնալով 'ի խաղաղութեան, և նոքա գնացին փախստեամբ և մեծաւ ամօթով որպէս յառաջին ասացաք:

ՄԿԶ. Յետ այսորիկ իբրեւ ոչ կատարեցաւ խորհուրդ չարութեան իւրեանց, ապա 'ի հնարս սիրոյ մտանէին (միջնորդութեամբ) Կիլիճ-Ասլանայ, որ էր 'ի մեծ սուլտանէն հօրէն իւրմէ հաստատեալ յաթոռ մելիքութեան: Եւ այսպէս առ ժամանակ մի կացեալ անհոգութեամբ ուրախութեամբ, փառաւորէին զամենասուրբ զԵրրորդութիւնն հանդերձ ձգնաւորական մաքուր եպիսկոպոսօք և սուրբ 'քահանայիւք և միշտ

բազկատարած միանձնացելոց դասուք: Նոյն խոկզբան գալոյ առելեացն Քրիստոսի յերկիրն Թորոսի, 'ի հաւաքելն իւրեանց 'ի մերայ Թիլին 'ի տրէ ամսոյ ժզ, եղեւ հողմ սաստիկ ահաւոր ձայնիւ, և բազում ծառք յարմատոյ հատան, և եկն կարկուտ 'ի տեղիս տեղիս և եհար զցորեան և զայգիս: Նոյն դարձեալ 'ի նոյն ամիս տրէ իե, այլ սաստիկ և ծանր արհաւիրք եղեն յամենայն երկիր զերիս գիշերս ըստ նմանութեան Նինուէացւոց, սկսեալ յառաջին պահու գիշերոյն մինչեւ 'ի լոյս առաւօտին: Ըստ ոչ սովորակի բնութեանց տարւոյն եղեւ խաւար անձանաչ ըստ օրինակի (318) նսեմացեալ խաւարին որ յԵգիպտոս. և յամպոցն բախմանէ ընդ իրարս որոտալով որպէս լերինք կարծր և անդամանդեայք բախելով զմիմեանս, և հրաձգութիւնք կայծականց ունէր զծիր երկնից, ոչ գոլով տեղի յերկինս՝ որ ոչ ունէր զփայլատակունս հողմախառն: Եւ ո՞վ էր բաւական հայել աչօք իւրովք յահաւոր դղրդմունսն որ լինէին անդադար: Եւ այնպէս ահաբեկ եղեն մարդիկ 'ի տեսլենէն այն զերիս գիշերս, և ամենեքեան արք եւ կանայք, ծերք և տղայք 'ի տունս Աստուծոյ ընթացեալք լինէին, բազում ահիւ և

դառն արտասուօք և մեծաւ հառաչանօք բարեխօս ունելով զՏիրամայրն և զսուրբս նորա։ Այս զԹացեալ ողորմածն Աստուած յարարածս իւր, դադարեցոյց զսպառնալիս կորստեան անդարձիցն 'ի մեղաց և նսեմացեալ անհաւատիցն։ Իսկ յորժամ եղեւ առհաւիրքս, էր Հայոց Թուականն ՈԴ (1154—1155)։ Մինչեւ ցայս վայր խօսեցաք զոր լուաք և տեսաք աչօք մերովք։

ՄԿԵ. Յետ այսորիկ եբրեւ դարձաւ ամօթով սուլտանն Թուրքաց յերկիր իւր, ապրեալ լինէր ամիսս տասն։ Քանզի բողջ անմեղ սպանելոյն անդարձ գերեացն եհաս յականջս Տեառն զօրութեանց։ Իսկ եղեւ նմա հիւանդանալ, կոչեալ զորդին իւր զանուանեալ Խլիճ-Ասլան, և յարուցեալ տէր յաթոռոյ իւրոյ երկիր եպագ որդւոյ իւրոյ առաջի մեծամեծաց իւրոց. և եդ զԹագ իւր 'ի գլուխ նորա, և ինքն վճարեաց 'ի կենցաղոյս, Թողեալ զամենայն մեծութիւն որդւոյ իւրոյ. և Թուականն էր Հայոց ՈԴ (1155—1156)։ Այն և այլ որդիք նորա երկու, մինն էր առատաձեռն առ ամենեսեան և զուարթ դիմօք քան զեղբայրն իւր որ եղեւ սուլտան, զոր կարծիս բերէր Թէ գուցէ ոչ հաւանի, երկնչէր 'ի նմանէ. և էր մարմնով

ամբողջ քան զնա. 'ի սադրելն ոմանց 'ի ժամ գինարբուխեանն և 'ի խրախուսեանցն իւրեանց՝ 'ի գիշերի խեղդամահ արարեալ սպանաւ յեղբօրէն։ Իսկ կրսեր եղբայրն առ անգամ մի հնազանդեալ նմա իբրեւ որդի սիրելի, բայց յերկիւղէ նորա փախուստական եղեւ յամուր աւանն իւր 'ի Գանգռն (319) և յԱնկիւրիա, և այլ ոչ եւս ետես զնա. զի ոչ միայն զեղբայրս եսպան, այլ և զայլ մեծամեծս իւր և զամիրայսն և զմեծ իշխանն հօր իւրոյ՝ որում անուն էր Պադտային, և զխատին (320) իւրոյ հօրն։ Իբրեւ ետես զայս մեծ ամիրայն Յաղուպ—Ասլան, որ էր որդի ամիր Խազեայ և տէր Սեբաստիոյ և աշխարհին Գամրաց, ոչ հաւանեալ նմա՝ զօրաժողով արարեալ զբազմութիւն հեծելոց, եկն յերկիրն Լիկանդոնին, և առեալ զքրիստոնեայս (321) յերկիր իւր. և զամուրն Լառիս և զայն եւս էառ։ Զայսոսիկ գործեաց վասն եղբօրորդւոյ իւրոյ՝ որ ունէր թշնամութիւն ընդ նմա։ Իբրեւ ծանուցաւ Կլիճ—Ասլանայ, ժողովեալ զզօրս հօր իւրոյ և այլ բազմութիւն զօրաց հեծելոց, և եկն ընդդէմ նորա՝ և ճակատեցան ընդդէմ իրերաց, և բազում ժամանակս միջնորդ մըտեալ . . . կուռայիցն իւրեանց, ոչ ե-

տուն պատերազմել ընդ միմեանս. 'ի վերին երեսս խաղաղութիւն արարեալ առ ժամանակ մի, և դարձան յաշխարհն իւրեանց: Եւ այս եղեւ երկու ամիս, ոչ խաղաղութեամբ դաշնաւորեալ և ոչ պատերազմաւ վճարեալ: Ապա յետ այսորիկ շարժեալ Եաղուպ—Ասլանըն, եկն գաղտագողի յերկիրն Ջահնայ 'ի մայրաքաղաքն Ապլասթա. և որպէս միտք մարդոյ հաստատեալ է 'ի խնամս չարեաց 'ի մանկութենէ, մոռացեալ (էր) զգութ հայրենի տիրութեան սուլտանին: Զայս լուեալ սուլտանին՝ յօժարութեամբ և խրոխտալով. գայ 'ի խնդիր վրիժուց սննդեան երկրին իւրոյ: Եւ Եաղուպ—Ասլան իմացեալ զգալուստ նորա, առեալ զերկիրն ամենայն ոգիս իբրև եօթանասուն հազար, տարեալ յերկիր ոչ գերութեամբ: Եւ սուլտանն ոչ ժամանեալ նմա յերկիր իւր, քանզի ընդ մոլար ճանապարհ գընաց տանելով զքրիստոնեայսն, և սուլտանն մտեալ յերկիրն Լիկանդոնին. և նորա ձանձրացեալ յահաւոր և 'ի մեծ դժարէ նորա, ելին յօժարութեամբ զհետ սուլտանին՝ երդմամբ ընկալեալ զնոսա ոչ տանելով յետս զոր գընացին զհետ նորա: Եւ Եաղուպ—Ասլան ամրացուցեալ զտարեալսն յերկիր իւր, եկն քանակեցաւ ընդդէմ սուլտանին ճակատ առ-

ճակատ. և առաջնորդք նոցա ընդ մէջ ան-
ցեալ ոչ տային պատերազմել: Այս յետ
աւուրց բազմաց սրտմտեալ սուլտանն՝ մե-
ծաւ զօրութեամբ եկն 'ի վերայ նորա, և
դարձեալ առաջնորդքն անկանէին յոտս
սուլտանին՝ աղաչէին ասելով: « Մի անցոյր
առներ զտուն Մսուրմանացն: Եւ խոնարհեալ
'ի պաղատանս նոցա՝ սէր առնելով գլուխ
առ գլուխ, և ոչ դարձուցանելով զտարեալ
քրիստոնեայսն: Այսու պատճառանօք հաւա-
նեալ սուլտանին, քանզի յարուցեալ ոմն Մաե-
վանէ անուն, եղբայր Թորոսի սեւաստո-
սի, որ շարժեալ եղեւ յանհանճար և 'ի քսու
մարդոց, և այս ոչ կամաւ Տեառն յաղագս
առնլոյ զերկիրս քրիստոնէից յայլազգեաց
և ոչ օգնելով իւր եղբօր, վասն զի յոլովս
քրիստոնեայս սրախողխող առնելով և յընչից
և 'ի ստացուածոց մերկ և կողոպուտ առնէին
զազգս իւրեանց, ոչ նմանելով անքրիստոնեան-
ցըն (323), խնամ ունելով առ իրարս որպէս վար-
ժեալ 'ի գրոց. յաղագս այսորիկ հարկ եղեւ
սուլտանին գալ յերկիրս Կիսանի (Քեսնոյ) զոր
Թափեալ էր հօր իւրոյ: Եւ անօգնական քը-
րիստոնէիցն լուեալ զգալ նորա, փախստա-
կան եղեալ՝ ուստի ոչ էին ժողովեալ: Եւ նո-
րա եկեալ դարձեալ նուաճեաց զերկիրս

*խաղաղութեամբ 'ի հնազանդութիւն հրամանի իւրոյ, սէր առնելով ընդ Թագաւորն Եգիպտացւոց և ընդ տէրն Անտիոքու և ընդ Թորոս յաղթողն. և ինքն դարձաւ յաթոռ իւր խաղաղութեամբ: Իսկ եղեւ այս 'ի Թուականութեան Հայոց* ՈԶ (1157—1158) *և 'ի յամիսն օգոստոսի: Յորժամ եկն 'ի Կերդուան զօր էր առեալ Ստեփաննեայ քունութք ննջեալ եղբօր իւրոյ Թորոսի, և սիրոյ աղագաւ տուեալ 'ի սուլտանն առանց կամելոյ եղբօր իւրոյ. և զորս 'ի ներքս 'ի բերդին էին մարդիկ հեծեալ և հետեւակ՝ զամենայն ազատ արարեալ (սուլտանին) վասն Թորոսի հնազանդութեն և տալոյ զբերդն:*

*Իսկ նախ քան զայս, մինչ Թուականն էր Հայոց* ՈԵ (1156—1157), *և 'ի հոկտեմբերի ամսոյ ի՞, սկսաւ շարժ լինել յամենայն երկիր, և քաղում քաղաքք Տաճկաց 'ի սահմանս Արաբիայ* (324) *որ է Հալապ՝ կործանեցան 'ի հիմանց, և զազգս քրիստոնէից պահեաց Տէր մինչեւ ցայժմ, և անդադար լինէր շարժն մինչեւ 'ի փոխել Թուականիս, որ ոչ կայր համար կամ Թիւ շարժմանն զամիսս չորեքտասան:*

ՄԿԲ. *Նոյա 'ի Թուականիս Հայոց* ՈԶ (1157 —1158) *'ի հոկտեմբերի ը, եղեւ հողմ սաստիկ*

անձրեւախառն, և զկնի անձրեւին կարկուտ
հեղեղախառն, և բազում վնաս արար յայ-
գիս և 'ի տարածոցս խաղողոյ 'ի տեղիս ուր
և հանդիպեցաւ ։

Իսկ զմեծի աւանին և զանառիկ (բերդին)
Պեհեսնոյ ասացից սուղ ինչ ։ Քանզի 'ի գաւռն
Ստեփանեայ 'ի յերկիրս Քեսնոյ անօգուտ
զօրօք և ոչ կամաւ եղբօրն իւրոյ, ետ նը-
մա արս ոմանս զոր ինքեանք Քարմուռ ա-
սէին, և խրատ տուեալ սեւաստոսին՝ մի
տանել 'ի գլուխ զառումն բերդին, և զայս
ոչ դիտացեալ մեր եթէ 'ի խնամոցն Աստու-
ծոյ եղեւ՝ կամ թէ 'ի նախանձուէ եղբօրն ։
Նա վասն զի դժնեայն այն և անքարհաւաճ
բռնաւորն որ էր տէր բերդին, զորոյ զա-
նունն (անպատեհ) վարկայ ընդ գրով արկա-
նել, ելեալ 'ի խրատուէ սուլտանին իւրոյ որ
վասն քաղցր կամօք նայելոյ 'ի քրիստոնեայս, նա
առաւել եղեւ 'ի պատուհաս արկանել նախ
զպատուական քահանայս և սարկաւագու-
նքս և զպխտանի տանուտեարս, և զայլ հա-
սարակաց քրիստոնեայս միապէս չարչարէր,
և ծանրացուցանէր զհարկակից բնակչաց
անուանին Պեհեսնոյ ։ Արդ մի ոք մեղադ-
րեսցէ նոցա, քանզի յաղագս չար բռնա-
ւորին զանձինս 'ի մահ եդեալ կոչեցին

զՍտեփանէ՝ Թերեւս կարասցեն դաւ գործել չարայուշ բռնաւորին. և ոչ կարացեալ զբարի խորհելն տանել 'ի գլուխ, զի մի ոմն ննջեալ 'ի քրիստոնէից ստեաց երդման ուխտին զոր ունէին առ իրարս, երթեալ զգուշացոյց զանիրաւն այն մի ելանել երթալով 'ի բաղանիսն՝ ուր մահն պատրաստ էր։ Իսկ նորա հաւատացեալ խրատուն իւրոյ որ զայս բարեսէր կեանս ընձեռեաց [325] նմա, ոչ ել արտաքս. և մռմռեալ իբրեւ զարբեալ արեամբ անմեղացն որ մերձ հանդիպեցան, հրամայեաց կապել ոտիւք եւ ձեռիւք և 'ի բարձր քարէն 'ի վայր տայր ձըգել։ Զայս չար գործոյ իւրոյ զաջողումն տեսեալ քրիստոնեայքն, յիշելով զմեծ արհաւիրքն Ուռհայ քաղաքին, դիմեալ առ Եկեալ օգնականն որ էր ընդդէմ բերդին զօրօք՝ միտ եդեալ տեսանէր զկատարածն, զոր ոչ եկն 'ի վերայ [326]։ Նա առեալ զօրավարըն զամենեսեան զարս և զկանայս, զծերս և զտղայս, Թողլով իւրեանց յօժարութեամբ զինչս և զստացուածս հայրենի ժառանգութեանս յոր 'ի հին և յերկար [327] ժամանակաց ծնեալ և սնեալ էին և 'ի բարեպաշտ իշխանաց պահեալ իբրեւ որդի սիրելի, տարեալ զհովանունդ և զփափկասէր.

առս յանախորժ և յանհանգիստ երկրի բնակեցուցանէր. մինչև զմտաւ ածեալ սուլտանին զաւերումն աստուածապահ բերդին Պեհեանոյ , զտառապանս քրիստոնէից, ըստ իմաստութեան իւրոյ հնարիւք զաւերումն ’ի աւանէն (328), ապա սկսան մի ըստ միոջէ գալ բնակիչք տեղւոյն ’ի քաղցրութենէ սուլտանին, և լցաւ քաղաքն ամենայն՝ (որ) թափուր և ունայն (էր) ’ի գոյից իւրոց ։

Եւ զինչ եւս ասացից յաղագս քաղաքիս Սփոռնի որ թարգմանի վայելուչ ։ Քանզի տէր քաղաքիս կարգեալ յարքայէն տեսուչ և կողմնապահ՝ ոչ կարաց ելանել և հալածել զեկեալսն ’ի վերայ ինքեանց ։ Զայսոսիկ խորհելով ինքն և իւրքն ամենայն չարին խորհրդով, հանեալ ’ի քաղաքէն զպատուական քահանայս զփառաւոր և զպիտանի տանուտէրս և զամենայն մարդիկն՝ զամենեսեան առ հասարակ , մինչև ոչ մի այր մնացեալ ’ի ներքս՝ բայց միայն զկանայս և զտղայս թողլով ’ի քաղաքն ։ Եւ այս միայն բարի գտեալ առ իշխանն, (զի) սրբութեամբ և առաց կարծեաց ետ պահել զընտանիս ելելոցն ’ի քաղաքէն. և զորս հանին արտաքոյ՝ եղեւ բնակութիւն փոխանակ բարձրայարկ ապարանից և տանց իւրեանց՝ գետօղք և վանորայք. և որք ոչ կա-

րող էին հեռանալ, 'ի հովանի ծառոց և 'ի պատից նստեալ դեգերէին, անքան և անգործ՝ ակն ունելով սրոյ և գերութեան. և յայսմ երկիւղէ մոռանային զպանդխտութիւն և զանհանգիստ կեանս իւրեանց։ Իսկ եղեւ երկարումն այս մեծի տառապանացս սկսեալ 'ի մարերի ամսոյ մինչեւ 'ի յուլիս ամիս. և 'ի գալ մեծի սուլտանին մինչեւ 'ի Ներդուսն, ապա խաղաղացաւ երկիր բնակելով մարդկան 'ի տունս իւրեանց. և հրամանաւ մեծին Թորոսի տուեալ եղեւ Ներդուսն 'ի սուլտանն սիրոյ աղագաւ առանց կամաց Ստեփանէի, զոր էր առեալ բռնութեամբ 'ի Թուրքէն՝ որ էր այր ժանդ և ատեցող քրիստոնէից, որ և սպանաւ 'ի Ստեփանեայ։

ՄԿԹ. Յետ այսր ամենայնի գնաց սուլտանն յաթոռ իւր խորհելով ընդ մեծամեծըս դրան իւրոյ յաղագս հաստատելոյ սէր՝ զոր ունէր ընդ Փռանկաց և ընդ Հայերն։ Իսկ նոքա հաւանեալ սուլտանին՝ դարձեալ առաքեաց զհաւատարիմս իւր յԵրուսաղէմ յԱնտիոք և առ Թորոս, անխափան ունելով զդաշինս սիրոյ զոր կամեցան երկոքեան կողմանքն։ Իսկ այս ոչ եթէ 'ի բռնութենէ սրտի իւրոյ սուլտանին եղև, քանզի զինչ հաղոր-

գութիւն է Քրիստոսի և Բելիարայ, այլ այս էր պատճառ՝ (զի) որդին Զանգեայ (Նուր-էտտին) որ էր տէր Հալպայ և փեսայ սուլտանին, Կլիճ-Ասլանի քոյր, յետ մահուան Մասուտ սուլտանին արհամարհեաց զորդի իւր զոր ետ յաթոռ թագաւորութեան իւրոյ և բռնացաւ 'ի վերայ երկրիս քրիստոնէից, և անց զսահմանն պատուիրանի Մասուտ սուլտանին. և էառ զոր կարաց զանառիկն Այնթափ և զՓարզման և զԴեղս ամենայն։ Եւ սուլտանըն Կլիճ-Ասլան բազում անգամ գրեաց առ փեսայն, «Այս առներ անիրաւութիւն. դարձո, ասէր, զերկիրն իմ՝ զոր հայրն իմ սահման եդ ընդ իս և ընդ քեզ»։ Եւ նա ոչ կամեցաւ լսել, և գուայր խրոխտալով ընդ ազգն արիական առաւել քան ընդ արքային Պարսից։ Եւ մինչդեռ յայս մեծի տարակուսի էին թագաւորն Երուսաղէմայ, տէրըն Անտիոքու Ռռնաղտն (329), այլ Այն որոյ կարողութիւն զօրութեն բարձր է քան զերկինս և ոչ իսպառ անտես առնելով թողու զգաւազանն մեղաւորաց 'ի վիճակս արդարոց ըստ անուսութեան մերոյ, ապա յանկարծակի ամենամաքուր արդար իրաւանցն Աստուծոյ եղ հրաման պատուհասի, և եհար զնա սաստիկ և դառն ցաւօք ; ուստի և յամե-

նոյն ազգաց իմաստայեղց բժիշկ ժողովեալ ոչ կարացին հնարս գտանել պատուհասի նորա, այլ օր քան զօր աւելեալ սաստկանայր բարկութիւնն Աստուծոյ 'ի վերայ նորա։ Զի էր դաշամբք և մեծապէս երդմամբ ուխտ եդեալ սրտի մտօք ընդ Ջօսլին կոմսին, թէ որպէս գործեաց առ նա անողորմ և անմարդի բարուք, զոր ոչ ոք լուաւ 'ի մարդկանէ յազգս և 'ի դարս ժամանակաց, եթէ ոք կալեալ զսիրելի յայլոց դաւելոյ և ոչ առ ինքեանցն պատերազմաւ, իննամեայ ժամանակօք կապեալ 'ի շղթայս, յետոյ խաւարեցոյց զաչս այնպիսի առն մեծի և յաղթողի բազում պատերազմաց, որ էր տէր աշխարհաց։ Օրհնութիւն և գոհութիւն բարեբանութիւն ամենասուրբ դատաստանացն Աստուծոյ յամենայն բերանոյ։

ՄՀ. Դառնամք յետ զոր մոռացաք։ Ի թըւականութեանն Հայոց ՈԲ (1153–1154) թագաւորն ատէր Երուսաղէմ ամաց ութ և տասանց [330], որդի Կոնթ–Անժու թագաւորին Փռանկաց, զոր 'ի ձեռն առեալ զնա մեծին Աստուծոյ, ետ նմա յաղթութիւն մեծ՝ տիրել անառիկ անմատոյց անքրիստոս [331] աւանին՝ Ասկաղոնի. զոր բազում աշխատութեանց համբերեալ արիական ազգն Փռանկ

կաց հանդերձ բարի և սուրբ Թագաւորաւն զտարի մի, և յոլովք 'ի նոցանէ արժանի եղեն մարտիրոսական պսակին և 'ի փրկերացն ոչ սակաւք ։ Սպա յետ այսորիկ տառապանաց բարեխօս և յոյս քրիստոնէից Տիրամայրն աղաչելով զտէրն մեր Յիսուս Քրիստոս՝ զի տարեալ լիցի յաղթութիւնն 'ի գլուխ յաղագս համբերելոյ նեղութեանն, և տուեալ եղև քաղաքն 'ի ձեռս Թագաւորին և փրկերացն յաւուր փոխման տօնի սրբոյ Աստուածածնին և Նորին բարեխօսութեամբ ։

ՄՀԱ . Յետ այսորիկ նենգութիւն գըտեալ յանաստուած ազգացն Սկիւթացւոց, մինչեւ հարկեալ մարդասէր Թագաւորն անհամարս 'ի նոցանէ սրոյ ճարակ արարեալ զլցեալն արեամբ քրիստոնէիցն , և զայլսն հանեալ արտաքոյ քաղաքին բնակեցուցանէր . և փոխանակ անքրիստոս ձայնից՝ ձայն կենսաբեր Աւետարանին (332) լսելի լինէր յամենայն տեղիս , կանգնեցին զխաչն փրկչական յամենայն բարձր ապարանս ժանդացեալ նսեմացեալ եղեռնաթիւր ազգացն յամօթ և 'ի կորանս իւրեանց , իսկ մեզ հաւատացելոցս 'ի պարծանս և 'ի յուրախութիւն ։ Սպա յետ այսր մեծի և սքանչելի յաղթութեանս սակաւ մի դադարեալ հան-

գնտեամբ, սկիզբն և հնար տանէին քաղաքին Դամասկոսի։ Բանզի 'ի փոխել Թուականին ՈԳ (1154—1155) եկն որդին Զանգեայ, որ էր տէր Հալպայ, և որպէս խաբէութեամբ տիրել կամեցաւ Դմշկայ, թէպէտ և քաղաքացիքն ոչ կամեցան յաղագս երկիւղի որդւոց իւրեանց՝ զոր պատանդ եդեալ էին յԵրուսաղէմ յաղագս հաւանելոյ կամաց Թագաւորին. և նա խաբէութեամբ մտեալ 'ի քաղաքն տիրեաց Դմշկայ։

ՄՀԲ. Եւ 'ի վերանալ Թուականին ՈԴ (1155—1156), տուեալ գանձս բազումս Թագաւորին Երուսաղէմի և տեառն Անտիոքայ, հաւանեցաւ չար կամաց նորա՝ սէր արարին, թոյլ տուեալ նմա գալ յերկիրս քրիստոնէից, զոր յառաջն Ֆռանկք ունէին։ Եւ նորա եկեալ բազմութեամբ զօրօք յանուանին մեծն Անթափ, ոչ կամելով 'ի վերայ նորա, բերելով փլուցին զպարիսպն, և մտեալ 'ի ներքս սրով սպանին զյոլովս յայլազգեացն, և բազումս 'ի քրիստոնէիցն (է) զոր գերեցին. և (է) զոր սպանին։ Յետ այսորիկ յղեալ պատգամս բազումս 'ի կողմնապահ երկրին Մասունոյ և Սիսանի խնդրել սիրով 'ի նոցանէ զեր-

կերպեւ այլազգեաց տիրելով՝ այնպէս աւե-րեցին զքաղաքն , և զգեօղս Թամփուր և ունայն առնելով ’ի տանց և ’ի ստացուա-ծոց , խրատելով զյոլովս յեկեղեցականացն Յունաց , զունչս և զականջս կտրելով ։ Որ կերպեւ լուաւ Թագաւորն և մեծամեծքն իւր , մեծապէս տրտմեալ յաղագս այս գոր-ծելոց , և առ ժամայն ոչինչ կարացեալ առ-նել ։ Այլ ’ի գալ Թագաւորին ’ի Սիս և յերկիրն ամենայն՝ մուտ էր նոյեմբերի ամ-սոյ , ոչինչ վնասեալ ումեք ’ի բնակչաց եր-կրին ։ Մնայր և Թագաւորին Նորուսաղէմի գալոյ և ’ի միասին խորհելոյ զարժանն յաղ-ագս յաղթելոյ անքրիստոս ազգացն , եւ ապատելոյ զեկեղեցիս զոր չունէր բնաւ ’ի միտս իւր փրկել զգերեալսն ։

ՄՀԴ. Յետ այսորիկ եկն Թագաւորն Նորուսաղէմի և զօրականքն Քրիստոսի Փրեր-քըն , և տէրն Անտիոքայ յառաջագոյն էր ե-կեալ առ նա անմեղութեամբ յաղագս վա-րուն (’ի վերայ) Կիպրոսի արշաւելոյն ։ Այս ժո-ղովեալ ըստ նախասացելոյս դասք քրիստո-նէից առ Թագաւորն Յունաց , բազում Թախանձեալ զնա մեծաւ աղաչանօք յաղա-գըս Թորոսի քաղցրանալ նմա . և ըստ աստե-րութեան՝ զոր ունէին առ Հայս , անմեղս

՚ի վերին երեսս յանձն առ (կայսրն) մխիթարել և երաշխաւոր առնելով զԹագաւորն Երուսաղէմի և զՓրերըքն: Եւ իբրև եկն Թորոս առ Թագաւորն Յունաց դատարկ ՚ի սեղանոյ զառաջինն (330), ըստ նախախնամութեանն Աստուծոյ հեշտ և բաղձալի թուեցաւ տես նորա Թագաւորին, և յոլով մեղադրանս մատուցանէր չարախօսացն վասն նորա. և սակաւ աւուրս կացեալ առ նա, կամեցաւ գնալ ՚ի տուն իւր, և Թագաւորին հրաման տուեալ գնալ և փութանակի դառնալ ՚ի բանակն: Եւ նորա ըստ իմաստութեան իւրոյ գիտացեալ՝ զպետս զօրացն առեալ ընդ իւր ՚ի դարձն բազում ոչխարս, արջառս; գոմէշս և ձիս տաճիկ. և եկն դարձեալ առ Թագաւորն առաջի անցուցանելով զբերեալ ընծայս ՚ի դիպող ժամու: Եւ նորա մեծապէս զարմացեալ ընդ բազմութիւն սեղանոյն, և գովէր զիմաստութիւն կորովի բանակին առաջի մեծամեծացն Հռոմոց եւ աւանէլեացն Թորոսի: Եւ տուեալ նմա գանձս ոսկւոյ և արծաթոյ և զգեստս որպէս վայել է Թագաւորին, Թողութիւն արարեալ ՚ի սրտէ ամենայն անհնազանդութեան և հակառակ կալոյ Թագաւորին. և խոստանայր նմա բազում համարձակու-

որոյ ճարակ առնել զամենեսեան մինչեւ 'ի սանդղի։ Ի յաղխի խորտակալով և ուրախուԹեամբ էին զօրք հաւատացելոցն իբրեւ յաւուրս հարսանեաց։ Եւ մինչդեռ յայսմ մեծի խորհրդի էին, յանկարծակի յաղդմանէ չարին հրովարտակ եհաս 'ի Թագաւորական քաղաքէն չփոխ լինելոյ աԹոռոյն, և կամ այլ կախարդասար դիպուածոց, զոր աստուգիւ ոչ կարացաք 'ի վերայ հասանել պատճառին որպէս եղեւ գործ սատանայի. բայց աստուգիւ այս էր պատճառն՝ որ լուրս (այս) զԱրինճն (338) հաւանեցոյց և զԹորոսի խլած երկիրն դարձոյց, և զայն բաւական համարեցաւ իւր յաղԹուԹիւն. Քանզի յառաջ ժամանակաց գիտեմք և 'ի ժամանակագիր պատմագրաց, որ Յունաց Թագաւորքն ոչինչ փրկուԹիւն չէին գործեալ քրիստոնէից, այլ մանաւանդ խլումն և առումն քաղաքաց և գաւառաց. և նոցա շնորհիւ ելին Հայք յերկրէն իւրեանց, և այլազգիք զօրացան և եկեալ տիրեցին ամենայնի, և առին առաջին զԱրծն քաղաք, զՄելտենի և զՍեւաստ և զԱնի Թագաւորանիստ ոսզայն, և մինչեւ 'ի մեծն Կոստանդինուպօլիս քաղաքի, և զամենայն ազգն . . . Թուրքաց բռնացեալ ունէին, և ազգն արիա-

կան որ են Ֆռանկք. երրորդ անգամ ելին 'ի փրկութիւն քրիստոնէից, և դաւաճանութեամբ և նենգութեամբ Թագաւորին Յունաց կործանեալ և յաղթեալ եղեն 'ի Թուրքաց, զոր մեք տեսաք աչօք մերովք. զի թէ վասն քրիստոնէից էր եկեալ, եօթնամեան ժամանակաւ ոչ էր 'ի Սնխս յամեալ. Նոյնպէս և Հայքն իւր արար, որ (337) զպատրան Լեւոն տարաւ և զայլ Հայերն: Այլ այս բաւական է որ միտս ունէին՝ առնելիք Թագաւորացն Հոռոմոց. և այնչափ ատելութիւնն զոր ունէին առ ազգս Հայոց՝ այս էր զոր ասացաք: Նա 'ի խորհուրդ մտեալ Թուլամորթ և կանացի ազգն Հոռոմոց ատելով ընդ Թագաւորն իւրեանց. «Մի լսեր Հայոց և Ֆռանկաց. փութացիր երթալ յաթոռն քո, և դարձեալ եկեսցես»:

ՄՀՋ. Զայս լուեալ ուղղափառացն, և փոխանակ ուրախութեանն զոր կարծէին յանմխիթար սուգ մտեալ յաղագս գնալոյ նորա, զոր բազում անգամ աղաչեալ զԹագաւորն ոչ կարացին դարձուցանել յերթալոյն, աղաչէին և զայս եւս երկու աւուրս միայն լինել 'ի վերայ Հալպայ: Իսկ նա ոչ կամեցաւ լսել բարի խնդրոյն, յղեալ դեսպանս առ տէրն Հալպայ. որոյ յանձնէն լուեալ

և զանձեր թագաւորին, առեալ ձիս և ջորիս քանի հազար. վասն որոյ յոլով խռովու-թիւն եղեւ ընդ թագաւորն Յունաց և ընդ սուլտանն Կլիճ — Ասլան.

ՈՀԵ. Նոյն այսպէս թուի ամառ և ան-զօր մնաց իմոց, ոչ այլ ինչ կարծել զեկեալ հասեալ փրկութիւնս դարձուցանել, եթէ ոչ առատութիւնն որ առ մեզ, և մարգարէ-ութիւն սրբոյ առն Աստուծոյ մեծին Ներ-սէսի մերոյ լուսաւորչին, որ հոգւոյ ակամբ դիտեաց 'ի մարգու պատմութեան իւրում յաղթեցութենէ Մերնոյն յաղագս թագա-ւորացն Յունաց, սակաւ ակներաց լինելով ոչ զպատերազմաց հոգալոյ, այլ զհարկաց և զհաւատոց քննութեանց(339).

Նոյն այսոցիկ այսպէս եղելոց զհնոց սա յանձնանձկեցելին իւր, մեռանեալ Պանտեւաստոսն որին (340) Թորոսի յերկիրն հայրենի իւր՝ հրա-մանաւ և սիրով թագաւորին խաղաղու-թեամբ յանհոգս. Իսկ առէքն Հիւլայոս, որ եղեւ լոյս աշխարհին, զերծեալ յերկիւղալից խռովութեանց աղօթեցութեամբ չարին յեղ-փոփէ և 'ի հաւատակցէ իւրմէ յազգէն Յու-նաց, յղեաց առ թագաւորն Լեւոնատէմի և խնդրեաց 'ի Նանանէ զաւշինս սիրոյ պայմանօք առնոց չորից. Տուեալ(341) Նահա զամենայն և

պատրեալ զնա որպէս զարծաթասէր և պարըսպեալ յամենայն կողմանց, եկն ՚ի Խառան, զոր յառաջ տուեալ էր եղբօր իւրում Միրանայ։ Նկին յետոյ չարախօս եղեն զնըմանէ՝ թէ ՚ի հիւանդութեան քում կորուսանելոց էր զ.քեզ։ Նւ նորա հաւատացեալ զաւաղացն՝ գնաց բազմութեամբ ՚ի Խառան, և կացեալ ամիսս երկուս, էառ զնա բանութեամբ և զայլ սահմանս դըրացեաց իւրոց զՄակա, զՄուռհայ ընդ բռամբ էած զամենեսեան, որ յառաջագոյն ընդվզեալ էին ՚ի նմանէ. եկն յերկիրն Մապնայ որ այժմ (է) սուլտանին, և էառ բռնութեամբ, և գնաց ՚ի Մարաշ և զայն ևս առձեռնեաց։ Գիտացեալ ամիրայն որ էր տէր Պեսնոյ՝ զյաղթութիւն բռնաւորին, երկուցեալ վասն առնլոյ քաղաքին իւրոյ, դարձոյց երեսս ՚ի սուլտանէն. և նուաճեալ նմա ՚ի ծառայութիւն՝ գնաց առ նա մինչդեռ ՚ի Մապան էր, դարձեալ միաբան եկին ՚ի վերայ Մարաշայ և Պեհեսնոյ. և նոքա ահաբեկեալ՝ ոչ ունելով օգնական, էառ և զայն խարխարելով պարսպին։ Նյս եղեւ պատճառ աւերման զաւառացս այսոցիկ. որ սէր արար ընդ թագաւորին Նդրուսաղէմի, պատրեալ զնա լերև զողայ։ Նւ մինչ

*գեռ 'ի Պեհեանի էր, ձայն գուժի եհաս առ նա 'ի Դմշկայ, գրելով՝ 'ի վճարել սիրոյ պայմանին եհաս Փռանկ 'ի զօրացն Փը-րերոց՝ աւերել զերկիրս ։ Եւ նորա գնացեալ 'ի Հալապ և 'ի Դմշկ, և զօրաժողով արար բազմութիւն յոյժ, կամէր պատերազմիլ ընդ Թագաւորին Երուսաղէմի ։*

ՄՀԸ. *Նոյն 'ի վերանալ Թուականին Հայոց յամս* ՈԹ (1160—1161), *ժողովեցան ամենայն ազգ Թուրքաց առ որդին Զանգեայ 'ի Դմշկ, և ազգն Փռանկաց առ Թագաւորն Երուսաղէմի, դիպել միմեանց պատերազմաւ ։ Եւ այսպէս կացեալ մինչեւ 'ի մօտ ձմերայնոյ առանց պատերազմի. ապա սէր արարեալ երկու տարւոյ, ցրուեցան և գնացին յիւրաքանչիւր տեղիս ։ Նոյնպէս և Իկիճ-Ասլան և Եաղուպ-Ասլան արարին սէր ընդ միմեանըս, տալով 'ի ձեռս նորա զԱսլանաթ քաղաք և զգաւառս նորա, որ իւր էր և հօր իւրոյ յառաջագոյն, զի զայն ուզէր 'ի շնորհելն իւրեանց ։ Իսկ 'ի նոյն Թուականիս գերեցին զօրդիս կոմսին և տարան 'ի Հալապ ։*

ՄՀԹ. *Ի նոյն Թուականիս յամսեանն հոկտեմբերի, ամիրայ ոմն անուն ամիր Ըհրան, որդի ամիր Աբրէհէմին, որդի Սուքմանին, որ էր տէր բազում քաղաքաց և գաւառաց*

Խլաթայ, Արճիշայ, Անշայ, Տօղատափայ և Մանծկերտոյ, առաքեաց զանձեր իւր, որում անուն էր Սոքմանին, բազում զօրօք յերկիրըն Վրաց։ Իսկ զօրք Վրաց թագաւորին Գէորգեայ և նոքա իւրեանց կամէին գալ առաջ-ասակ առնել զերկիրն Թուրքաց, և ընդդէմ դիպան իրերաց 'ի դաշտն որ կոչի Օխթխիս։ Եւ եղև սաստիկ պատերազմ 'ի մէջ նոցա. յաղթեցին Վրացիքն և արարին զնոսա փախստականս, և կոտորեցին զբազումս և ձերբակալս արարին աւս երեք հարիւր 'ի Թուրքէն ըն-գլխաւորս։ Իսկ նոքա հարին զհեծելազօրն Վրաց Նեստիւ 'ի ձեռան, և իջեալ 'ի ձիոյն նստէր, և դեղ դնէին լսոցոյն (342)։ Եւ 'ի յետուէն մնացեալ 'ի զօրացն Թուրքաց որդիք Ատուրմանայ (343), որ էին 'ի Վրաց սանէն՝ եկեալ առ Թուրքն զկնի Վասակայ ուրացելոյ Վրաց, որք էին առաջնորդեալ Թուրք զօրացն։ Նոքա եկեալ յանկարծակի գտին զնա յիջման, կալան և տարան առ ամիրայն որ Շահի-Արմէնն կոչէին. զնա միայն կալան, որոյ անուն Կայղ (344) ասէին, կալեալ գլխաւորին Վրացեաց։

**ՄՁ.** Ի Թուականութեանն Հայոց **ՈԺ** **(1161—1162)** թագաւորն Վրաց Գէորգէն որդի Դեմետրէի` որդւոյ Դաւթի, եկն 'ի վերայ

զտանէին զնահս բաղումս 'ի մէջ խոտին և բերէին։ Եւ Թագաւորն զայս բարութիւնս արար քաղաքին Ռնւոյ. յորժամ էառ զնա՝ երեւս քառասուն հազար դահեկան և գնեաց 'ի հեծելէն զգերեալ ծառայսն Ռնւոյ՝ զքրիստոնեայս և զայլազգիս։ Այս եղեւ 'ի պահն սուրբ Գրիգորի, միջինքըն ամռան աղուհացիցն՝ յորժամ առաւ Ռնի, և յամսեանն օգոստոսի կոտորեցին զամիր Ահրան որ էր Շահ–Արմէն։ Եւ զկնի երեք աւուր եղեւ խաւարումն լուսնի, որ և յարիւն դարձաւ մինչեւ 'ի հասարակ գիշերուն, սկսեալ յերեկորէն՝ որ է օր լուսնին չորեքտասան։

ՄՁԱ. Յայսմ ամի տէրն Անտիոքայ, որ և Ռոբինձ կոչի և անուն նորա Ալէր Ասլնաղր, եկն յաւուրս աշնանային և յանհոգս եղեալ իշխանէր յԱլէքսայ երկիրն. և 'ի բերդն կաթողիկոսի որ կոչի Օով, ապաստանս սփռէր 'ի շուրջակայ երկիրն, աւար առնելով և գերելով զԹուրքմանսն զոր գտանէր 'ի սահմանսն՝ ունելով ընդ իւր մարդս հազար ընդ ձիաւոր, ընդ ծառլուկ, ընդ խարտուանդա, ընդ հետեւակ։ Իսկ Սմոէին (345) որ էր երկրորդ Նուր–Էտտանին. յառաջագոյն ժողովեալ արս տասն հազար, 'ի քմին դղեալ

յառաջին, և պատրաստութեամբ եկեալ 'ի վերայ նոցա՝ գերեցին և սպանին զամենեսեան, և կալան զՊրինձն տէրն Անտիոքու, և ձիաւորս երեսուն. և սպանան յայնմ աւուր արք չորեքհարիւր: Եւ ինքն դարձաւ մեծաւ ուրախութեամբ և խնդութեամբ մտաւ 'ի Հալապ, տանելով ընդ իւր զկալանաւորսն, և զՊրինձն էած 'ի Հալապ բազում նախատանօք և հայհոյութեամբ. և առաքեաց աւետաւորս առ Նուր-Էտտինն, զի էր նա 'ի Դմիշկ յաւուրսն յայնոսիկ ժողովեալ բազում հեծելօք ընդդէմ Թագաւորին Երուսաղէմի. որ իբրև լուաւ՝ դարձաւ աւարեաց և գերի էառ զամենայն գաւառն մինչև 'ի Տրապօլիս, և եբեր 'ի Հալապ: Եւ դարձեալ գնաց 'ի վերայ Հերմին (346), և չկարացեալ հաստատուն (կալ) 'ի բազմութենէ անձրևուին, նաև յերկիւղէ Թագաւորին Երուսաղէմի, զի յաւուրսն յայնոսիկ եկեալ էր յԱնտիոք ինքն և Թորոս որդին Լևոնեայ և այլ զօրք Հոռոմին: Եւ իբրև գնաց Թագաւորն յԵրուսաղէմ և ամենեքեան յիւրաքանչիւր տեղիս, գնաց Նուր-Էտտինն էառ զանառիկ բերդն Արծխան երդմամբ, քակեաց և աւերեաց, էառ գերի զայլ մնացեալ քրիս-

տանեւայն և երեր 'ի Հալապ քաղաք ։

ՄՁԲ. Յայսմ ամի գնաց սուլտանն Կըլիճ-Ասլան առ Թագաւորն Յունաց Կիւռ-Մանիլն, տանելով ընդ իւր զՇահր Ամիրան զեղբայր Նուր-Դատնին, և դարձաւ անտի բազում ընծայիւք, եղեալ առ իրար դաշինս երդմամբ՝ կալ 'ի հնազանդութիւն Թագաւորին մինչեւ յօր մահուն իւրոյ. առեալ 'ի նմանէ գանձս ոսկւոյ և արծաթոյ, և եկեալ 'ի քաղաքն իւր ։

Իսկ 'ի փոխել Թուականիս ՈԺԱ (1162—1163), մեռաւ ամենապանծելին Բարսեղ վարդապետն և Թաղեցաւ 'ի վանքն Դրազարկի, ուր են գերեզմանք սուրբ վարդապետացն նմանեաց իւրոց ։ Այս եղեւ աւարտումն բանից և սկիզբն Թուականիս ։

ՄՁԳ. Յայսմ ամի սպանաւ Ստեփանէ եղբայր Թորոսի սեւաստի մեծի՝ որդի Լեւոնի նենգութեամբ և դաւով տուկին անօրինի (347), խեղդամահ արարին զայնպիսի քաջ և երեւելի զօրականն Քրիստոնէից ։ Իսկ եղբարց իւրոց առեալ զվրէժ արեան նորա հազարապատիկ յազգէն Յունաց, որոց պարտական եղիցի սպանող տուկն այն առաջի Աստուծոյ ։

ՄՁԴ. Յայսմ ամի առաւ Մեծանունն

քաղաքն Դուին 'ի Թագաւորէն Վրաց Գորգեայ. բռնութեամբ 'ի ներքս մտեալ զկնի փախստական զօրաց այլազգեաց՝ որք ելեալ էին 'ի քաղաքէն ընդդէմ նորա 'ի պատերազմ, և նա 'ի փախուստ դարձուցեալ կոտորեաց զնոսա. և մնացեալքն դէմս 'ի քաղաքն արարեալ, եւ (Վրք) միաբան մտեալ ընդ դուռն քաղաքին եւ կոտորեցին զամենեսեան անխնայ, գերեցին և այրեցին զբնակութիւնս նոցա, և ինքեանք դարձան մեծաւ աւարաւ և գերութեամբ յաշխարհն իւրեանց։ Եւ Քրիստոսի մարդասիրին փառք յաւիտեանս անզրաւ յաւիտենից օրհնեալ. ամէն։



# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

1. Առընթեր Հայ թուականիս յաւելաք 'և զհամապատասխանիչ նոցին զԹիւս Փրկչական կրկին ամաց. քանզի թուականն Հայոց ՆԱ սկսանի 'ի 2 ապրիլ ամսոյ 551 Փրկչական թուոյն, մինչեւ 'ի 1 ապրիլի յետագայ 552 ամին։

2. Ազգային պատմագիրք միջին դարու Հռոմ կամ Հռոմ անուամբ Նշանակեն զՅոյնս կայսերութեան Բիւզանդիոյ, այնու զի Կոստանդիանոս Մեծն 'ի փոխադրել զաթոռն Հռովմայ 'ի Կոստանդինուպօլիս, նորոգեալ և ընդարձակեալ զայն՝ կոչեաց Նոր Հռոմ. և զի, որպէս ասէ Միքայէլ պատմիչ Ասորի, “ Խառն էին ընդ միմեանս լեզուաւ և գրով ” բուն Հռովմայեցիք և Յոյնք։

3. Պառաչամանոս է աղաւաղեալն յունարէն բառիս Փարաքամոմենոս, որ էր անուն պաշտօնէին այնմ որ առընթեր ննջէր կայսեր առ 'ի զգուշութիւն անձին նորա։

4. Այն է ըստ յունական ձայնին՝ Ռոմանոս Բ. որդի Կոստանդնի Պորփիւրոժենի։

5. Եթէ սոտ հեղինակն Արտոյին ասելով իմանայ զազգն Արաբացւոյ, սխալէ ընդդէմ կարգի ժամանակագրութեան։ Քանզի 'ի սոյն յայսմ ժամանակի ոչ Արաբացիք՝ այլ Յոյնք առին 'ի ձեռաց Սէյֆ—Էտտովլայի զԱնարզաբա և զՀալապ ընդ զօրավարութեամբ Նիկեփորոյ։ Կեդրենոս, Զոնարաս եւ այլք։ Իսկ արդարացուցանել կամելով զպատմիչն մեր, մարթ է եւս ենթադրել՝ եթէ ունէր թերեւս կայսրն 'ի ծառայութեան իւրում արաբացի զօրավարս ոմանս, որոց յանձնեալ էր զբանակ իւր. քանզի մասամբ իւիք կարէ ճշմարտել զկարծիսն մեր կոտորածն զոր եւս առաւել քրիստոնէից՝ քան եթէ մահմետականաց արաբացւոց իւրոյին դաւանակցաց։

343. Յօրինակին՝ Մրտաբանոյ։ Կամի ասել. «Եւ նորա որք էին կրօնիւք Խալամ և ազգաւ Վրացի 'ի մէջ յետանաց բանակին Թուրքաց, և հետեւէին ուրացող Թուրքին՝ որ էր Վասակն Վրաց, առաջնորդէին Թուրք զօրացն։

344. Յօրինակն մեր նոխ. ուղղեցաք ըստ գաղղիականին։

345. Մճմանին է՝ Մէճմ–էտտանին իսկ Տայիէ, մի 'ի գլխաւոր ամիրայից որ կային 'ի ծառայութեան Նուր–էտ–տինի, և էր կառավարիչ Հալէպայ։

346. Հէրէմն որ և Հարէմ, էր ամրոց յիշխանութեան Անտիոքայ 'ի հարաւոյ արեւելից և միոյ աւուր ճանապարհաւ հեռի 'ի քաղաքէն։

347. Տուկն անօրէն, զորմէ խօսի աստ Գրիգոր երէց, է ամենայն հաւանութեամբ Անդրոնիկոս Կոմնենոս զօրավարն զօրաց Մանուէլի կայսեր, որ կացուցաւ ապա կառավարիչ Տարսոնի և Մսիսայ, և էր թշնամացեալ ընդ Հայոց վասն պատերազմացն զոր կրեաց 'ի Թորոսէ և 'ի Ստեփանեայ. վասնորոյ հրաւիրեալ զնա յաւուր միում 'ի ճաշ, գտաւ դիտապաստ անկեալ և անշնչացեալ առ դրան քաղաքին Տարսոնի, զորմէ ասէ Սմբատ համաձայն Վահրամայ՝ եթէ կալեալ արկին զնա 'ի պղնձեն յեռանդեանն։ Իսկ եղբարք նորա Թորոս և Մլեհ որ կենդանիք էին, լուծին զվրէժ արեան հարազատին իւրեանց՝ սպանեալ 'ի Յունաց արս տասն հազար, մինչեւ Թագաւորն Երուսաղէմի ընդ մէջ մտեալ հաշտեցոյց զԹորոս ընդ Յոյնս. այսպէս Աբուլֆարաճ։



